ЕРЕВАНСКИЙ ГОСУДАРСТВЕННЫЙ УНИВЕРСИТЕТ

Р. АЧАРЯН

# СЛОВАРЬ АРМЯНСКИХ ЛИЧНЫХ ИМЕН

ТОМ V

ИЗДАТЕЛЬСТВО ГОСУДАРСТВЕННОГО УНИВЕРСИТЕТА
ЕРЕВАН
1962

ԵՐԵՎԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆ



Հ. ԱՃԱՌՅԱՆ

# ՀԱՅՈՑ ԱՆՁՆԱՆՈՒՆՆԵՐԻ ԲԱՌԱՐԱՆ



ՀԱՏՈՐ Ե

ՊԵՏԱԿԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
ԵՐԵՎԱՆ 1962





Հրաչյա Աճառյանը իր տիկնոջ
Սոֆյա Աճառյանի հետ

# Վ

ՎԱԴՈՒԱԴ,ար. ծագումն անհայտ։

— Վադուադ, դավադիր, ուզում էր սպանել Հռովմայեցոց Կորբուլոն զորավարին (59 թ.).—Ն. Դուրեան, Ազգ. պատմ. 133։

ՎԱԶԱՐԻԱ, ար. նախնական անուն Բագրատունեան՝ ըստ Խոր. Բ. կգ (որ և Վազարեայ՝ ըստ Մխ. անեց. իա). հետո դարձավ Վարազ։

* ՎԱԶԳԷՆ, ար. <իրան. en̄ մասնիկով կազմված փաղաքշական անուն (Հիւբշ. 90). ըստ իս զնդ. vazaγa «գորտ» բառից (տե՛ս իմ Հայկականք Ն, № 28)։

— Վազգէն, բդեշխ Վրաց, ամուսնացավ Քաջ Վարդանի դուստր Շուշանի հետ. ուրացավ քրիստոնեությունը և չարչարելով նահատակեց իր կնոջ.—Յայսմ. դեկտ. 25.—սեռ. Վազգենայ՝ Յայսմ. դեկտ. 25, մրտ. 30.—սեռ. Վասկենայ՝ Սիմ. ապար. 58 և Վազգենի՝ Սիմ. ապար. 58։—Տե՛ս և Վկ. Շուշ.—Լ. Մելիքսեթ-Բեկ, Վրաց աղբյուրները, Ա. 11 (վրացերեն կոչվում է ვარსქენ), 21, 193—194 (այս վերջինում գրված է ვასქენ. «Սամխեթում կար մի իշխանաց որդի Վասքեն անուն, որն ամուսնացած էր իշխանազն Շուշանիկ կոչեցյալի՝ Վարդանի դստեր հետ»)։ Վրաց Բակուր թագավորը զորքով գնաց նրա վրա, հաղթեց և սպանեց նրան, ըստ Վրաց աղբ. Ա. 194, իսկ ըստ Սիմ. ապար. վրաց Վախթանկ թագավորն է սպանել նրան։

* ՎԱԶԻՐ, ար. <արաբ. وزير vazīr «եպարքոս» բառից. իբրև անձնանուն գործածվում է նաև մահմեդականների մոտ. մեր մեջ հիշված է 1715—1725 թվականներին (Ջամբռ 260). այլուր չեմ պատահած, այժմ էլ մեր մեջ անգործածական։

* ՎԱԼԱԹ, ար. <արաբ. ولد valad «որդի» բառից. հիշված եմ գտնում մի անգամ 1553 թ. (Ջեռ. Վենետ. Ա. 578)։

— Վալաթ, որդի Դանիէլի. Ականց գեղաքաղաքում (Արճէշ) Յովսէփ գրչին գրել տվեց մի Աւետարան, 1453 թ.—Թորոս Աղբ. Բ. 365։

ՎԱԼԱՆԴԷԶ, ար. ծագումն անհայտ. մի անգամ հիշված եմ գտնում 1655 թ. (Ջեռ. Վենետ. Ա. 48).—Թերևս պետք է կարդալ Վալանդէզ։

* ՎԱԼԱՆԹԻՆ, ար. <ֆրանս. Valentin անունից, որի իգականն է Valentine, դարձած Վալենտինա։ Ծագում են լատ. Valentinus ար. և Valentina իգ. անուններից, որոնց բուն նշանակությունն է «ուժեղ, կայտառ, առողջ, հաստատուն», valeo «ուժեղ, առողջ լինել» բայից. հմմտ. valens «ուժեղ, կայտառ, առողջ», valentia «ուժ, կորով»։ Այս անունով հայտնի են Valentinus նշանավոր հերեսիապետ Բ դարի, որ հնարեց Գնոստիկեան մի աղանդ (+161 թ.), Valentinus նահատակ (+270 թ.), Valentinus պապ Հռոմի (827 թ.), նաև Valentinianus I կայսր Հռոմայեցոց 364—375 թթ., Valentinianus II կայսր Հռոմայեցոց 425—455 թթ., Valens արևելյան կայսր Հռոմայեցոց 364—378 թթ.։ Հին տառադարձությամբ Վաղենտիանոս, Վաղէս, Վաղենտիոս, Վաղենտինոս, իգականը՝ Վաղենտինա (վկայուհի), որոնք գործածված չեն մեր մեջ։ Ունենք միայն նոր ժամանակներում մտած Վալանթին (ար.) Պոլիս, Վալենտինա (իգ.) Կովկաս։

* ՎԱԼԵՆՏԻՆԱ, տե՛ս ՎԱԼԱՆԹԻՆ։

* ՎԱԼԻԴԱ, իգ. <արաբ. والده valida «մայր» բառից, հիշված է 1749 թ. (Բանասէր 1899, 318) և 1785 թ. (Այրարատ 224)։

* ՎԱԼԻՋԱՆ, ար. <արաբ. ولي valī անունից, որ բուն նշ. «սուրբ, տէր, պաշտպան»+պրս. جان ǰān «հոգի, հոգյակ»։ Հիշված է ԺԵ—ԺԶ դարից անթվական մի ձեռագրում (Տաշեան, Ցուց. 544)։ Կա նաև Վէլի՝ ԺԶ դա՞ր (Ձեռ. Սանաս. 7բ)։ Վէլիճան՝ ԺԶ դա՞ր (Ձեռ. Սանաս. 7բ)։ Վէլիջան 1608 թ. (Manus. brit. mus. 43բ)։ Վալճան (թիվն անհայտ) Ձեռ. Թաւր. 76։— Տե՛ս նաև Ծարվելի։

— Վէլիճան կամ Վալիճան, որդի Ախիջանի. մեռավ մատաղ հասակում. հայրը կանգնեցրեց մի խաչքար նրա անունով՝ 1478 թ.— Բարխուդ. Արցախ 67։

ՎԱԼՐԷ, իգ. ծագումն ինձ անհայտ. մի անգամ հիշված է՝

— Վալրէ, կին Պիզայի հայ վաճառական Պետրոսի (+1366 թ.), որ տե՛ս։

ՎԱԽԱԽ, իգ. ծագումն ինձ անհայտ։

— 1. Վախախ, կին Հասան իշխանի, մայր Իւանէ իշխանի և Սարգիս արքեպիսկոպոսի։ Յովհան Որոտնեցու տատն է (ԺԲ դար).—Ազգապ. 1957։

— 2. Վախախ, մայր Մամախաթունի, որ շինեց Տեղերի եկեղեցին, 1232 թ.—ZAPh 2, 46։

— 3. Վախախ, կին Աղիզբէգ Եղվարդեցու. միասին ջուր բերեցին Եղվարդ գյուղը (1289 թ. կամ քիչ առաջ), շինեցին գյուղի

եկեղեցին (1301 թ.), Ներսէս քահանային գրել տվեցին մի Աւետարան (1318 թ.)—Ձեռ. Կարին 17, Այրարատ 197։

— 4. Վախախ, ա՞ր. հիշված է 1486 թվից հետո գրված անթվական մի հիշատակարանում.—Ձեռ. Նոր-Բայազ. 11 բ (ԺԸ դա՞ր)։

— 5. Վախախ Սուլթան, իգ. հիշված է անհայտ թվականով մի ձեռագրում. Bodleian 148։

ՎԱԽԱՍ, ար. ծագումն ինձ անհայտ. հիշված է մի անգամ 1661 թ. (Թորգոմեան, Ստամպօլոյ պատմ. 159)։

. ՎԱԽԹԱՆԿ կամ նաև ՎԱԽՏԱՆԿ կամ ՎԱԽՏԱՆԳ, ՎԱՂԹԱՆԿ. ար. իրանական անուն է. հմմտ. Վախտանգ զորավար Խոսրով Բ թագավորի Պարսից. ավելի սովորական է Վրաց մեջ Վախտանգ ձևով. ծագումն անհայտ է (տե՛ս Justi 343)։

— 1. Վախտանկ ի Վարազմանեան, որդի Վարազմանի, իշխան Աղուանից, Միհրական տոհմից (706 թ.).—Կղկնտ. Գ. ըժ.—սեռ. Վախտանգայ՝ Կղկնտ. Գ. ժգ։

— 2. Վախտանգ Ա., հայր Հասանի և պապ Վախտանգ (Բ) Տօնկիկի. նախահայր Ջալալեան տոհմի.—Շողակաթ 198։

— 3. Վաղթանկ իշխան, որ Արուճի և Թալինի ազատների հետ մասնակցեց Մարմաշէնի և Յովհաննավանքի սահմանային վեճերը կարգադրող ժողովին (1033 թ.).—Ջբր. սարկ. Գ. 10։

— 4. Վախտանգ իշխան խաչենի. հայրն է Հասան իշխանի և Գրիգորիսի, որ Դատիվանից առաջնորդն էր, 1182 թ. (№ 194)։

— 5. Վախթանկ խաչենեցի, ավագ որդի և հաջորդ Հասան իշխանի, իշխան Հաթերքի. կինն է Արզուխաթուն. եղբայրներն են Սըմբատ, Վասակ, Խոյդան, Գրիգոր և Գրիգորիս. մի ժամանակ Մխիթար Գօշը բնակվեց սրա մոտ. իր եղբայրների հետ օգնեց Մխիթար Գօշին շինելու համար Նոր-Գետիկը (1191 թ.). Աղուանից Ստեփաննոս Գ կաթողիկոսի հետ խնդրեց Գօշից՝ գրելու Դատաստանագիրքը (1184 թ.). մեռավ 1214 թվին և Հաթերքը անցավ Իւանէ աթաբէկին։—Իր որդիներն են Հասան և Գրիգոր (№ 239)։—Վախթանկ՝ Կիր. ժա.—Վաղթանգ՝ Վրդ. ձգ (հրտր. էմինի՝ Վախթանկ).—սեռ. Վախթանկայ՝ Կիր. ժբ.—Վախտանգայ՝ Մխ. դտ. Նխդր. ժա.—Justi 343, № 6. Վրաց աղբ. Բ. 15. Արձ. (Սմբատեանց, Գեղարք. 173). Բարխ. Պատմ. Աղուանից, 141։

— 6. Վախտանգ Բ Տօնկիկ, իշխան Ներքին խաչենի. որդի Մեծն Հասանի, որդւոյ Վախթանգայ Ա. ամուսնացավ խորիշահի հետ (այլուր Թամթա № 1, որ տե՛ս), որ էր դուստր մեծ սպարապետ Զարգսի և քույր Զաքարէի և Իւանէի. իր որդիներն են՝ Հասան-Ջա-

լալ-Դօլա, Զաքարէ և Իւանէ։ Թորոս գրչին գրել է տվել մի նկարազարդ Աւետարան՝ 1212 թ.։ Մեռել է 1214 թ. (Նախորդի մահվան տարին)։—Վաղթանգ Սակոեանց՝ Վրդ. ձգ (Հրատ. էմինի՝ Վախթանկ).—սեռ. Վախթանկայ՝ Կիր. իր.—Այրարատ 262, Շողակաթ 198. հիշված է Գանձասարի 1240 թվի մեծ արձանագրության մեջ. Շահխաթ. Բ 371—372 և Արցախ 173.

— 7. Վախթանկ, իշխան Տփղիսեցի, կրտսեր որդի Պարոն Ումէկի, մոր կողմից թոռն Ջալալ իշխանի և եղբայր Ծարի և Քարիմատինի. ըստ Խաղբակեանք 214 կա այս Վախտանգ իշխանի նկարը էջմիածնի № 155 ձեռագրում։ Սրա խնդրով Երզնկացին գրեց իր «Յաղագս երկնային զարդուց» գրվածքը՝ «1284 թ.»—մեռել է 1344 թ. և թաղվել Վայոց Ձորի Եղեգիս ավանում, ուր մնում է իր տապանաքարը ՉՂԳ թվից (Գ. արք. Հովս. Նիւթեր և ուս. հայ. ար. Ա 7). իր պատվերով են գրված մի Աւետարան և մի Թուղթք՝ 1279—1280 թթ. (Ձեռ. էջմ. 215 և 980).—սեռ. Վաղթանկայ՝ Երզն. Երկն. յուշ։

— 8. Վաղթանկ, որդի Սմբատ Թագավորազնի և հայր Հասանի. կինն է Նանա. այս Հասանը՝ իր կնոջ Ռուզուքանի հետ միասին Ս. Գրքեր է նվիրել Գեղարդայ վանքին.—Արձ. անթվ. (Այրարատ 340)։

ՎԱՀԱԲ, ՎԱՀԱՊ. իր եղբո՞ր Դավթի հետ միասին ներել են Ջալ գյուղի Գետարգել վանքի հարկերը 1325 թ.—Արձ. Այրարատ 292։

* ՎԱՀԱԳՆ, ար. <արշակունեան պհլ. * Varhraγn անունից, այն է զնդ. Vərəθraγna (վեդ. Vṛtrahan), որ բուն նշանակում է «Vṛtra-յի սպանողը» և ծագում է vərəθra «արգելիչ, խափանարար» բառից. հմմտ. նաև զնդ. vārəθraγna «հաղթական» (Bartholomae 1421—1422) և սոգդ. vašagn (ESL 35, № 105, էջ 32—34)։ Հայերենի հնագույն ձևը պիտի լիներ *Վարհագն։ Բառիս ավելի նոր ձևերն են՝ սասան. պհլ. Vazəhrān, Varhrān, նոր պհլ. Vahrām և վերջապես պրս. بهرام Bahrām։ Այս անունների օտար տառադարձություններն են՝ ասոր. Varəθrān, հուն. Οὐερεράνης (կրճատ Οὐαράνης), Βαραράνης, Γοραράνης, մանդ. Bahrān, հուն. Βαράμης, Βαράμ, լտ. Varanes. հմմտ. Bahrām Ա, որդի Որմիզդի. թագավոր Սասանեան (Շահն. հտ. 5, էջ 324), Bahrām Բ, որդի նույնի, թագավոր Սասանեան (անդ, էջ 328), Bahrām Գ, որդի նույնի, թագավոր Սասանեան (անդ, էջ 331), Bahrām Դ, որդի Շապուհի, թագավոր Սասանեան (անդ, էջ 391), Bahrām Ե, թագավոր Սասանեան (անդ, էջ 442), կոչված Գուր և այլն, և այլն

(Justi, 361—5)։ Նոր պահլավական ձևերից են հլ. Վահրամ, Վռամ (տե՛ս և Վահան).— Հյուբշ. 75—78։

— 1. Վահագն. հին Հայոց աստվածներից մին, որին համապատասխանում էր հունական Ἡρακλῆς, լտ. Hercules, իբրև «արև աստուած». հիշված է Փիլ. ժ բան 237. «ոմանք զԱրեգակն պաշտեցին և Վահագն կոչեցին, և այլք զԼուսին Արտեմիս ձայնեցին», Տոնակ. «նախնին Հայոց», որ գողացել է Ասորոց նախնույն յարդը և թափելով օդի մեջ՝ առաջացել է «Ծիր կաթինը» (յարդագող) Շիր. 48=Շիր. տիեզ. 37. արձանը բերվելով Ասիայից Արտաշես Ա-ի ձեռքով՝ կանգնեցրել են Աշտիշատում՝ Խոր. Բ. ժբ.—սեռ. Վահագնի՝ Բուզ. Գ ժդ. բ, Մակ. դ. 19.—Վիշապաքաղ Վահագնի՝ Ագաթ. § 809.—սենեակ Վահագնի՝ Ագաթ. § 809.—Վահեվանեան մեհեան (Վահագնի) յերկրին Տարօնոյ՝ Ագաթ. § 809.—Ի քաջէն Վահագնէ՝ Ագաթ. § 127.—հիշված է իբր համաստեղություն 53 աստղով՝ Էֆիմ. 35.—Սարգիսեան, Ագաթ. և իր բազմ. 139. Աբեղեան, Հայ. ժող. առասպ. էջ 96—175, ուր Վահագնը ցույց է տրված իբրև «ամպրոպի աստված»։ Վահագնի նկարը տպված է ըստ Ասպետ Petrowiez-ի Վաղարշակի և Մեծն Տիգրանի դրամների վրա (Տաշեան, Արշակունի դրամներ, Վիեննա, 1919, էջ 164, 174—175)։

— 2. Վահագն, կրտսեր որդի և հաջորդ Տիգրան Ա-ի, Ն. Ք. 520 թ. (Ջամչ. Ա. 120). սրանից սերվեցին Վահնունիք և Վաղարշակի ձեռքով կարգվեցին քրմապետ՝ իբրև առանձին նախարարություն.—Խոր. Ա. լա, Բ. ժբ. ՑՀ. կթ. գ. Մագ. թղ. ժթ. Սամ. անեց. 46. Մխ. անեց. գ. Մխ. այրիվ. 18, 55. Մին. համդ. 12. Վրդ. է.—սեռ. Վահագնի՝ Խոր. Բ. ը. Սամ. անեց. 49։—զՎահագնէ՝ ՑՀ. կթ. գ.—Վահանեկ շինել է Ունիկը և Վաղարշակերտը ըստ «Այս են քաղաքք» ZAPh 1, 190 (ըստ իս՝ կարդալ [զԱրշար]ունիք)։

— 3. Վահագն Հայկազնեայ, նիզակակից Ասուդ Արծրունույ՝ ի պատերազմի ընդդէմ Աղէքսանդր Մակեդոնացւոյ.—Արծր. Ա. գ (այլ օր. Վահան)։

* ՎԱՀԱՆ, ար. <Վահագն անունից կրճատված (ըստ Andreas և Marquart) կամ հյ. վահան բառի՞ց (Հյուբշ. 509)։ Տե՛ս և Վահանիկ։—Բառիս մեկնությունը տե՛ս և ՀԱ 1911, 526։ Շատ գործածական անուն էր հին հայոց մեջ մինչև 15-րդ դարը, այնուհետև դադարում է. վերակենդանացավ անցյալ դարում և այժմ էլ շատ գործածական է։

— 1. Վահան Արծրունի, հաջորդ Վարդէնի (Ն. Ք. Ա դար).—Արծր. Ա. գ։

— 2. Վահան, որդի Խոսրովի և Թոռն Շաբ իշխանի Գողթան (Ա դար).—Օրբ. ե։

— 3. Վահան եպիսկոպոս, առաջնորդ Կեսարիոյ. 151—161 թթ. հաջորդ Վլասիոսի.—Արրտ. 1868, 58 ա։

— 4. Վահան Արծրունի, հաջորդ Մուշեղի (Գ դար).—Արծր. Ա. թ։

— 5. Վահան Ամատունի, նահապետ. Տրդատի չորս զորավարներից մեկն էր՝ Շապուհի դեմ պատերազմի մեջ. Խոսրով Բ-ի ժամանակ զորավար արևելյան բանակի. վանեց Կովկասեան բարբարոսների արշավանքը, որի համար պարգև ստացավ Օշականը։ (Ըստ Բուզ. լոկ նիզակակից Վաչէի՝ սպարապետի Խոսրով Բ-ի, որ նստել է գահը «330—339 թթ.»)։—Խոր. Բ. ձե. Գ. գ. Բուզ. Գ. է (ձեռ. Վահրան, Վահրվան), ը, Կղկնտ. Ա. ժբ, Վրդ. իբ.—սեռ. Վահանայ՝ Խոր. Գ. թ, ժը. Արծր. Ա. ժ. Ասող. Բ. ա.—գրծ. Վահանաւ՝ Խոր. Գ. թ։

— 6. Վահան Արծրունի, հաջորդ Մուշեղի, ժամանակակից Խոսրով Բ («330—339») թագավորի.—Արծր. Ա. ժ։

— 7. Վահան Մամիկոնեան, եղբայր Վասակ սպարապետի, ազգական Մերուժան Արծրունու, որի հետ միացած ապստամբեց Արշակ Բ-ի («350—368») դեմ, ուրացավ հավատը, փեսայացավ Պարսից թագավորին և Պարսից զորքով քարուքանդ արավ Հայաստանը։ Իր որդին՝ Սամուէլը սպանեց նրան.—Բուզ. Դ. ծ, ծը, ծթ. Խոր. Գ. լե, խը (այստեղ սխալմամբ ասված է Վարդան). Արծր. Ա. ժ, ժա. Մեսր. եր. 17.—սեռ. Վահանայ՝ Բուզ. Դ. ծ, ծը, ծթ. Ե, խգ. Խոր. Գ, իթ. լե. Արծր. Ա. ժ։

— 8. Վահան Ամատունի, ուղարկվեց Արշակ Բ-ի կողմից՝ կանչելու համար Արծրունեաց, Ռշտունեաց և Մամիկոնեանց փախստական նախարարներին. Պապի ժամանակ հուղարկավոր էր Մեծն Ներսէսի թաղման «373 թ.».—Արծր. Ա. ժա.—սեռ. Վահանայ՝ Արծր. Ա. ժ։

— 9. Վահան Առաւեղեան, նախարար, ժամանակակից Արշակ Գ («379—386 թթ.») թագավորի.—Խոր. Գ. խգ, խե.—սեռ. Վահանայ՝ Խոր. Գ. խե։

— 10. Վահան, աբբանյակ Ս. Մեսրոպի. մասնակցեց նրա հուղարկավորության հանդեսին դեպի Օշական «437 թ.».—Խոր. Գ. կէ։

— 11. Վահան Ամատունի, հազարապետ Հայոց աշխարհի. ստացավ Ս. Մեսրոպի մարմինը և տարավ թաղեց իր սեփական

Օշական գյուղում «437 թ.»․ Պաշտոնանկ արվեց Դենշապուհի ձեռքով. անդամ Արտաշատի ժողովի («449 թ.»). Կոր. 27. Փ. 32, Կոր. 35. Խոր. Գ. կէ. Պատմ. սահ. 36. Յայսմ. փետր. 19.—սեռ. Վաճանայ՝ Կոր. էջ 27, 28. Փարպ. ժթ. Կանոն. 59. Արծր. Ա. ժա. Փ. Կոր. 33—34. Այրարատ 191։

— 12. Վաճան Ամատունի, անդամ Արտաշատի ժողովի «449 թ.», մին այն նախարարներից, որոնք Յազկերտի Դուռը կանչվեցին և առ երեսս ուրանալով՝ արձակվեցին։ Ուղարկվեց Հունաստան օգնություն խնդրելու։ Մասնակցեց Վարդանանց պատերազմին (451 թ.)։ Բանտարկվեց այլ նախարարների հետ Պարսկաստանում 12 տարի և հետո արձակվելով Հայաստան դարձավ «462 թ.».—Փարպ. իգ, իե, լա, լգ, խբ, խե, խէ. Եղիշ. 33, 77, 150. Յայսմ. օգ. 7։

— 13. Վաճան, թագավորազն Աղվանից, որին քաջն Վարդան նշանակեց Ճորայ պահակի պահապան «450 թ.».—Փարպ. լե.—սեռ. Վաճանայ՝ Եղիշ. 59։

— 14. Վաճան Արծրունի, որին հայերը ուզեցին թագավոր դնել. իր հրամանով էր, որ Մամբրէ Վերծանողը, եղբայրը Մովսէս և Թէոդորոս Քերթող գրեցին իրենց Պատմությունները։ Մասնակցեց Վարդանանց պատերազմին, ուր և մեռավ («451 թ.»).—Արծր. Ա. գ. Բ. ա, բ.—սեռ. Վաճանայ՝ անդ։ (Իր մասին իբր թե գրած է եղել Եղիշէն, բայց Բարձումա ասորին ջնջել է ու հանել. այս առասպելի հերքումը տե՛ս Դուրեան, Ուսումն. և քնն. Եմ. 1935, էջ 37—46). Ե. Տ.-Մինասեան, աշխ. Եղիշէ, էջ 12—13։

— 15. Վաճան Գնունի. մասնակցեց Վարդանանց պատերազմին, ուր և նահատակվեց («451 թ.»).—Փարպ. լթ. Եղիշ. 93. Շար. ղբ. Յայսմ. օգ. 7։

— 16. Վաճան Կամսարական, որդի Արշաւիր Կամսարականի. կուսակից Վահան Մամիկոնեանի. մասնակցեց Ներսեհապատի պատերազմին («489 թ.»).—գրծ. Վաճանաւ, Փարպ. հա։—Ըստ հաջող սրբագրության Կոգեանի, Կմսրկնները 105=107 վրիպակ է, որ պետք է կարդալ Սահակ և միացնել Արշաւրի երեց որդի Սահակ Կամսարականի հետ։

— 17. Վաճան Մամիկոնեան, երեց որդի Համայեակի՝ եղբոր Քաջն Վարդանի. հոր մահից հետո, իր եղբայրների հետ պատանդ գնաց Պարսկաստան. Վրաց Աշուշայ բդեշխը ազատեց նրանց և մեծարեց իր պալատում։ Հայաստան դառնալով՝ ապստամբության դրոշը բարձրացրեց Պարսից դեմ։ Երկար տարիներ հաջողապես մա-

քառելուց հետո՝ Պարսից Վաղարշ թագավորը ընդունեց նրա բոլոր պայմանները և նրան էլ հայոց մարզպան նշանակեց «485 թ.», մեռավ «505 թ.».—Փարպ. դ, կբ—կզ, կը, հ, հա, հդ—ձա, ձգ, ձզ, ձը—ղա, ղգ—ղէ, ղթ, էջ (185). Սեբ. ա. ՅՀ. կթ. ժզ, Արծր. Բ. բ. Ասող. Բ. բ, Մխ. այրիվ. 19, 63. Մխ. անեց. գ. Սամ. անեց. 72, 74. Կիր. 21. 23, Վրդ. իթ, լ. Նհպտք. 92. Սիմ. ապար. 8, 56, 57, 60, 66. Ջուղ. 46, Օրբ. ժզ, ժէ.—սեռ. Վահանայ՝ Փարպ. ա, կգ, կե, կզ, կը—հե, հէ—ձզ, ձը—ղը, էջ (186). Սեբ. ա. Գիստ. նշ. Թադ. 96. Դաւ. անյ. էջ 102 (կոչում է «որդի Մագնէսի»). ՅՀ. կթ. ժզ. Արծր. Բ. բ. Ասող. Բ. բ. Միխ. աս. իթ (=իը). Պտճ. Բրձր. 30, 31. Վրդ. իթ, լ. Նհպտք. 93. Օրբ. ժէ—ժթ, խա։ Սիմ. ապար. 59, 60, 63, 65, 68, 73 ZAPh 1, 207. Ջուղ. 46.—Վահանի՝ Սիմ. ապար. 58, 59, 72.—Վահանու՝ Սիմ. ապար. 68, 70.—Վրաց աղբ. 41։

— 18. Վահան եպիսկոպոս, առաջնորդ Արտազի, հաջորդեց Գրիգորին (Զ դարի Ա քառորդում).—Չբր. եպս. 281. Այրարատ 1868 դեկտ. էջ 103 բ։

— 19. Վահան Սիւնի, որ Խոսրով Նուշիրվանի (590—628 թթ.) ժամանակ ապստամբեց ի Հայոց և Սիւնիքը միացրեց Պարսից Ատրպատականի մարզպանության (շուրջ «564»-ից հետո). Հիւբշ. Հին հյ. տեղ. ան. 36 դնում է 571 թ.—Սեբ. ա։

— 20. Վահան Արշակունի, որդի Յովհաննէսի, եղբայր Արտաւանի, զորավար հայ բանակի՝ Յուստինիանոսի, հրամանատար Areobindus-ի ձեռքի տակ. նրա հետ արշավեց Ափրիկէ՝ Գոնթար զորավարի ապստամբությունը ճնշելու համար. բայց Արեոբինդոսը հաղթվեց և Վահանը սպանվեց (545 թ.).—Ջամչ. Բ. 249։

— 21. Գայլ Վահան Մամիկոնեան, իշխան Տարօնի, հաջորդեց Մուշեղին. խաբեությամբ կոտորեց Պարսից Միհրան զորավարի բանակը. հաղթեց Վախտանգին. մեռավ 606 թ. գերեզմանը ցույց են տալիս Մշոյ Ս. Կարապետի վանքում (տե՛ս Տրվըլէ, Ուղևորութիւն ի Փ. Ասիա, Վիեննա, 1892, էջ 54, Հնոց և Նորոց 15).—Մամիկ. բ, գ.—սեռ. Վահանայ՝ Մամիկ. բ—ե. Յայսմ. սեպտ. 30։

— 22. Վահան, որդի իշխանին Հաշտենից, մասնակցեց Գայլ Վահանի որդի Սմբատի պատերազմներին՝ Պարսից դեմ. հիշված է 607 թ.—Ջամչ. Բ. 322։

— 23. Վահան Պալունի, որդի Վարազի. եղավ գործակից Սըմբատի՝ որդւոյ Գայլ Վահանի, Պարսից դեմ պատերազմներում. շինել է (606 թվից ուշ) Վահանովիտը.—Մամիկ. գ, դ։

— 24. Վահան իշխան, Կամսարակա՞ն. հիշված է Բագարանի արձանագրության մեջ 628 թ.—Կոգեան, Կմսրկնները, 137։

— 25. Վահան արքեպիսկոպոս Հաղբատի, անդամ Կարնոյ ժողովի (632 թ.).—Տաշեան, Ցուց. 114։

— 26. Վահան (Baanes, Malıan) իշխան հայ, որ Հունաց բանակի սպարապետն էր արաբների դեմ պատերազմում Յերմուկ գետի մոտ 636 թ. Երուսաղէմ.—Lebeau, Hist. du Bas-Empire, XI, էջ 240—242, հրտր. Ղև. էջ 173 ծան.։

— 27. Վահան, մայրեննօք Կամսարական, որդի Սմբատի՝ որդւոյ Գայլ Վահանի, Մամիկոնեան տոհմից. գործակից եղավ հորը՝ Պարսից դեմ պատերազմներում. հոր մահից հետո կառավարեց Տարօնը՝ հետ մղելով Պարսից արշավանքները։ Գնաց Կեսարիա, ուր գնեց Ս. խաչի մասը։ Արաբների արշավանքի ժամանակ, 8000 զորքով ուղարկեց նրանց դեմ իր եղբորը՝ Տիրանին, որ քաջությամբ կռվեց նրանց 18 000-անոց բանակի դեմ, բայց Սահուռ Անձևացու դավաճանությամբ հաղթվեց և սպանվեց «639 թ.».—Մամիկ. գ, դ, ե, էջ 54—56.—սեռ. Վահանայ՝ Մամիկ. գ, դ, ե, էջ 55, 56, 59.—Չամչ. Բ. 342—343։—Նույն անձն է՝

— 28. Վահան Մամիկոնեան, սպարապետ Հայոց. սրա օրով Մուհամմէդ մարգարեն նվաճեց և հարկատու դարձրեց Հայաստանը.—Սոտ-Շապհ. 17։

— 29. Վահան Մամիկոնեան, որին Անաստաս վարդապետը (?) գրեց Թուղթ Երուսաղէմից (թիվը անհայտ).—Կղկնտ. Բ. ծը (հրտր. Շահն. Վահրամ)։

— 30. Վահան Մամիկոնեան, «մարզպան և սպարապետ Հայոց» (723 թվին!).—սեռ. Վահանայ՝ Յայսմ. մայ. 30։

— 31. Վահան Խոռխոռունի, հայ իշխան Պոլսում. միացավ հույների հետ՝ սպանելու համար Հերակլ կայսեր և գահ բարձրացնելու Աթալարիկոս որդուն. աքսորվեց և վերադարձավ 643 թվին.—Սեբ. իթ, լը։

— 32. Վահան ի Վարազյոհաննեան, իշխան աղուան, Կամբեճան գավառից, Մաղխանացոց ցեղից, յակոբիկ դավանությամբ (706 թ.).— Կղկնտ. Գ. ը, ժ։—Նույն է Վահան ի Վարազվահանեան՝ հրտր. Սամ. անեց. 286։

— 33. Վահան Կամսարական պատրիկ, հայր Ներսեհ պատրիկի և Գագիկի. քաշվեց Վաղարշակերտի Ս. Աստուածածին վանքը և ճգնությամբ էր ապրում. իր խնդրով Գրիգոր եպիսկոպոս Արշարունեաց գրեց Մեկնութիւն ընթերցուածոց։ Սրա դուստրն է Շուշան

Կամսարական խոստովանող (706 թ.).— Ջամչ. Բ. 373—374, Տաշեան, Ցուց. 338, 656, 927, Այրարատ 56. Կոգեան. Կմսրկնները, 147—150, 157—159։

— 34. Վահան, կուսակալ Չորրորդ Հայոց. ձանձրանալով արաբների արշավանքներից և հույներից անօգնական մնալով՝ ընդունեց արաբների գերիշխանությունը. հույները նախատական անունով կոչեցին նրան Եփթադէմոն «յոթնադև» (707 թ.).—Ջամչ. Բ. 382։

— 35. Վահան Գողթնացի, որդի Խոսրով (№ 15) իշխանի Գողթան. 4 տարեկան հասակում գերի տարին Դամասկոս «707 թ.» և մահմեդական դարձնելով՝ կոչեցին Վահապ. մեծանալուց հետո վերադարձավ Հայաստան «719 թ.» և տիրացավ իր իշխանության։ Նորից ընդունելով քրիստոնեությունը, ման եկավ շատ վանքեր և գնալով արաբների մոտ՝ խոստովանեց իր քրիստոնեությունը։ Նահատակվեց Դամասկոսում «737 թ.»։ Իր կինը կոչվում էր Սիսակուհի, որ տե՛ս։ Իր վկայաբանությունը գրել է Արտավազդ վարդապետ. տպված է Սոփերք ԺԳ (Վենետ. 1854 թ.). ավելի ընդարձակը տե՛ս Ձեռ. Վենետ. Բ. 489. իր շարականը իբր եղերերգ, ավանդում են, թե իր քույրը (Խոսրովիդուխտ № 2) է երգել (Ազգապ. 862).—ՅՀ. կԹղ. խա. Շար. ղբ. Արծր. Գ. իթ. Մխ. այրիվ. 67. Յայսմ. մրտ. 28. Վկ. Գողթ. 10—95 (ստեպ). Կիր. 37. Վրդ. լէ. Ջուղ. 60. Ջքր. սարկ. Բ. 122. Ասող. Բ դ. (սխալմամբ գրում է Վարդան).—սեռ. Վահանայ՝ Շար. ղբ. Արծր. Գ. իթ. Ճշ. 50. Յայսմ. մրտ. 28. Սամ. անեց. 87. Վկ. գողթ. 10, 54, 57, 58, 61, 71, 89—91. Ջքր. սարկ. Գ. 29. Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Ա. 188—217. Յուշիկք Բ. 129—200։

— 36. Վահան Արծրունի, հայր Սահակի և Համազասպի, որոնք նահատակվեցին Սուլէյման ոստիկանի դեմ պատերազմի մեջ (Եզիդի օրով, շուրջ 758—764 թվերին).—սեռ. Վահանայ՝ Ղև. լ. Ասող. Բ դ.

— 37. Վահան, տէր Վանանդայ, անդամ Պարտաւի ժողովի, որ գումարեց Սիոն կաթողիկոսը՝ «768 թ.».—Կանոն. 166. Տաշեան, Ցուց. էջ 653. Ջամչ. Բ. 411։

— 38. Վահան Գնունի, կոչված «դաշնակ». մասնակցեց Մուշեղ Մամիկոնեանի ապստամբության՝ Հասան ոստիկանի դեմ և նահատակվեց Բագրևանդի պատերազմում «775 թ.».—Ղև. լդ։

— 39. Վահան վանահայր, անդամ Նիկիոյ ժողովի՝ 787 թ.— Ջամչ. Բ. 423։

— 40. Վահան, աղանդապետ Թոնդրակեցիների մի կուսակցության, որ իր անունով կոչվում էր Վահանեան կամ Կիւնոխորիտ

(շնաւանցիք կամ շնակեացք)։ Լևոն Ե՝ հայ կայսր Հունաց (813—820 թթ.) Նէոկեսարիոյ եպիսկոպոս Թովմասին և Փոքր Հայոց կառավարիչ Պարակոնդակէսին հանձնեց հարցաքննել նրանց։ Աղանդավորները սպանեցին քննիչներին և փախան Մելիտինէ, ուր արաբներից լավ ընդունելություն գտան և ստացան Արգաս աւանն ի բնակութիւն։ Այստեղ ամրացած աղանդավորները շարունակ հարձակվում էին բյուզանդացոց վրա.—Ջամչ. Բ. 895. Սարգիսեան, Ուս. Թոնդրակեց. աղանդին, 43, 45։

— 41. Վահան Սիւնի՞, հայր Արշակի՝ որ իբր վկա հիշվում է Տաթևի 839 թվի արձանագրության մեջ (ուրեմն հայրը Վահան՝ պետք է դրվի Ը դար).—սեռ. Վահանայ՝ Օրբ. լը։—Նույն պետք է լինի Վահան Սիւնի, հայր Աշնակի (ուղղել Արշակ. տե՛ս Աշնակ անվան տակ), որ հիշված է Տաթևի 844 թվականի կալվածագրում.—Օրբ. լը։

— 42. Վահան Սիւնի՞, հայր Ջագիկի Ա, որ հիշված է Տաթևի 844 թվի կալվածագրում.—Օրբ. լը, Սիսական 273։—Նո՞ւյն է նախորդի և հաջորդի հետ։

— 43. Վահան Սիւնի՞, որդի Վարդանի. այս Վահանը իբրև վկա հիշված է Տաթևի 844 թվի կալվածագրում.—Օրբ. լը։—Թերևս նույն է նախորդ երկուսի հետ, որով Վահան Սիւնի, որդի Վարդանի, լինում է հայր Արշակի և Ջագիկի։

— 44. Վահան, որդի Մխիթարի. իբրև վկա հիշվում է Տաթևի 844 թվի կալվածագրում.—Օրբ. լը։

— 45. Վահան, որդի Բաբկէնի՝ որդւոյ Փիլիպպէի Ա. իբրև վկա հիշվում է Տաթևի 844 թվի կալվածագրում.—Օրբ. լը, ծդ։

— 46. Վահան Հաւնունի, նիզակակից իշխանաց Արծրունեաց՝ ընդդեմ Հագարացոց՝ 850 թ.—Այրարատ 27։

— 47. Վահան Հաւնունի, մասնակցեց Մուշէի պատերազմին «851 թ.».—Արծր. Բ գ.—սեռ. Վահանայ՝ անդ։

— 48. Վահան Արծրունի, մասնակցեց Մուշէի պատերազմին «851 թ.».—Արծր. Բ. գ։ Այլ է՝

— 49. Վահան Արծրունի, մասնակցեց Մուշէի պատերազմին «851 թ.».—Աշոտի հետ նկան բերդումն էր՝ Բուղայի պատերազմին. նրա հետ գերի քշվեց Բաղդադ՝ Բուղայի ձեռքով՝ «852 թ.»։ Գագիկ Ապումրուանի հայրն է.—Արծր. Բ. գ. Գ. բ, գ. ժը.—սեռ. Վահանայ՝ Արծր. Գ. գ, ժը. Դ. բ։—Տե՛ս և Համզա № 1 և 2։

— 50. Վահան Գնունի, մասնակցեց Գուրգէնի պատերազմին, ընդդեմ Բուղայի «852 թ.».—Արծր. Գ. դ։

— 51. Վահան Գազրիկ, մասնակցեց Գուրգէնի պատերազմին ընդդեմ Բուղայի «852 թ.».—Արծր. Գ. դ։

— 52. Վահան Արծրունի, որդի Աշոտի իշխանաց իշխանի Բուղայի ձեռքով հոր հետ միասին գերի էր քշված Բաղդադ. գերությունից վերադառնալով՝ ուզեց խլել Վասպուրականը Գուրգէնի ձեռքից, բայց հաղթվեց.—Արծր. Գ. ժգ, ժզ, ժէ.—սեռ. Վահանայ՝ Արծր. Գ. ժգ, ժզ.—գրծ. Վահանաւ՝ Արծր. Գ. ժզ։

— 53. Վահան պատրիկ, Հունաց Միքայել Գ կայսեր ժամանակ (842—867 թթ.) Փոտ պատրիարքի (858—867 թթ.) կողմից պատգամավոր ուղարկվեց Իգնատիոս պատրիարքի մոտ (861 թ.).—Չամչ. Բ. 680։

— 54. Վահան կամ Յոհան (Ἰωάννης) արքեպիսկոպոս Նիկիոյ. Կոստանդնուպոլսի Փոտ պատրիարքի (858—867 թթ.) կողմից, առանձին թղթերով ուղարկվեց հայոց Զաքարիա Ձագեցի (855—876 թթ.) կաթողիկոսի և Աշոտ (ապա Աշոտ Ա թագավոր) իշխանի մոտ՝ կրոնական խնդրի առթիվ։ Սրա համար Ձագեցին գումարեց Շիրակաւանի ժողովը 862 թ.—Ձեռ. Վեննա. Բ. 1069, Չամչ. Ա. 527, Բ. 685, Ըստկարեան՝ Եկեղ. պատմ. 195. Զարբ. Հին դպր. 501. Ակինեան, Մատեն. հետազ. 131։—Ըստ Չամչ. հայ-հոռոմ է, իսկ ըստ Ազգապ. 975 հայ-հոռոմ համարելը մտացածին ենթադրություն է։—Վրդ. էջ 82 կոչում է պարզապես «Յոհան մետրապոլիտ Նիկիոյ»։

— 55. Վահան, եպիսկոպոս Տարօնի, ժամանակակից Աշոտ Ա-ի (+890 թ.). Հունաց Վասիլ կայսեր ծագումը կապեց Արշակունիների հետ.—Վրդ. խե, Ազգապ. 986։

— 56. Վահան Ամատունի, իշխան՝ Բուղայի օրով (880 թ.).—Արծր. Գ. բ։ Անշուշտ նույն է Վահան Ամատունի՝ եղբայր Սարայի և Շապուհի, որոնք սպանեցին Գագիկ Ապումրուանին 895 թ.—Արծր. Գ. իդ։ Նույնը գիտե նաև Սոււտ-Շապհ. 69, 74, որ տե՛ս Յազդ. № 2 Ամատունի։

— 57. Վահան Բագրատունի, որդի Դաւիթ Բագրատունւոյ՝ կյուրապաղատի Տարօնոյ և փեսա Շապուհի՝ եղբոր Սմբատ Ա-ի. երբ Միջագետքի Ահմատ ոստիկանը սպանեց Տարօնի Գուրգէն իշխանին (894 կամ 895 թ.), Վահանը ժառանգեց երկիրը և իսկույն խնդրեց Սմբատի օգնությունը. մեռել է 898 թ., ըստ Չամչ. Բ. 719, 725։

— 58. Վահան Արծրունի, եղբայր Վասակ Կովակերի (Թ դար).—սեռ. Վահանայ՝ Արծր. Գ. ժզ։

— 59. Վահան Բաղացի, հայր Վասակի (Թ դար).—սեռ. Վահանայ՝ Օրբ. ծթ։

— 60. Վահան, որդի Զագիկի և եղբայր Ջևանշիրի՝ իշխանի Բաղաց. դիվահարվելով վանք քաշվեց, ուր ճգնելով «բժշկվեց», որի փոխարեն շինեց Վահանու վանքը՝ 911 թ.—Օրբ. լէ, խդ.—բց. ի Վահանայ՝ Օրբ. խդ։

— 61. Վահան, առաջնորդ «Բարձրաքաղխս Ս. ուխտին և սքանչելագործ ս. Գրիգորին», 966 թ.—Ձեռ. Սևան. 2 (թվական չի դրված. բայց Զարբ. Թրգմ. 158 դնում է 966 թ. և կոչում է առաջնորդ Սևանի)։

— 62. Վահան Մամիկոնեան, ի գիւղն որ կոչի Վարժի. որդի Մեսրոպ երեց պատմագրի «967 թ.».—Մեսր. եր. 139։

— 63. Վահան Սիւնեցի, կաթուղիկոս Հայոց՝ «968—969 թթ.». Բաղաց գավառից էր և նույն գավառի Ջևանշիր իշխանի որդին. կրթությունը ստացավ Վահանու վանքում, ուր հետո առաջնորդ դառնալով՝ նորոգեց. ընտրվեց եպիսկոպոս Սիւնեաց՝ իբր հաջորդ Հակոբոս և պատամբ Յակոբի («959 թ.») և ձեռնադրվեց Անանիա Մոկացի կաթուղիկոսի ձեռքով «961/2 թ.»։ Այս առթիվ Վահանը տվել է հնազանդության խոստմնագիր, որ տպված է Արրտ. 1897, էջ 141. վեց տարի հետո եղավ կաթուղիկոս Հայոց «968 թ.», իբր հաջորդ Անանիայի։ Հարեց քաղկեդոնության, ուստի վտարվեց կաթուղիկոսական աթոռից «969 թ.»։ Փախավ Վան և նստավ Ձորոյ վանքը, ուր և մեռավ «972 թ.».—Անան. ապստ. 141 աբ. Օրբ. ժմ. 11, 12. Սամ. անեց. 100. Մխ. անեց. գ. Տարօն. Բ § 3. Մխ. այրիվ. 21. Ուռհ. 33, 34. Միխ. աս. իթ (=իը). Լմբ. ոսկ. 27. Յայսմ. մայ. 27. Կիր. 49. Վրդ. խէ. Սմբ. սյոմ. 39, 40, Օրբ. խդ, ծա—ծգ, կը, հա. Օրբ. Հկճռ, ժբ. Մին. համգ. 33։—Վահանեկ՝ Ասող. Գ. ը. Սամ. անեց. 101. ՔՀնպ. 272. Կիր. 49. Վրդ. կզ.—սեռ. Վահանայ, բց. ի Վահանայ՝ Անան. ապստ. 141 ա. Ասող. Գ. ը, թ. Մեսր. եր. 138. Լմբ. 158. Ուռհ. 18, 34. Յայսմ. մայ. 27. Օրբ. ծա—ծգ, ծզ. Մին. համգ. 111.—Զարբ. Թրգմ. 158. Սեդրակեան, Հայ եկեղ. պատկերյարգութիւնը, էջ 117—123։

— 64. Վահան Բագրատունի, որդի Աշուտանի, եղբայր Թոռնիկի և Սմբատի. իրենց հոր մահից հետո ժառանգեցին Տարօնը (Ժ դար).—Ջամչ. Բ. 726, 818։

— 65. Վահան քահանա, գծող Բագարանի 1034 թվականի արձանագրության.—Այրարատ 66։





— 66. Վահան, եղբայր Մատթէոս կրոնավորի. երկուսով մի Աւետարան են գրել տվել Թէոդորոս գրչին՝ շուրջ 1082 թ.—Գարեգին կթղ. Կեանք և գիր, Կահիրէ, 1948, էջ ա—դ։

— 67. Վահան, եպիսկոպոս Ս. Խաչի (Աղթամար). Տեր Ստեփանոսին գրել տվեց մի Աւետարան, 1161 թ. այս Ստեփանոսը Արծրունեաց կյուրապաղատի որդին և Աղթամարի Դաւիթ Ա կաթողիկոսի եղբայրն էր.—Ձեռ. Դադեան, Բ 28 բ (մագաղաթը ծակոտված է. լրացումը կատարել է Ակինեան, Գաւազանագիրք 36)։

— 68. Վահան, նորոգեց Բջնիի Ս. Աստուածածին վանքը, որ շինել էր Գրիգոր Մագիստրոսը 1031 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 137։

— 69. Վահան, շինել է Իշխանավանից մեծ եկեղեցին և նորոգել է Բջնիի Ս. Աստուածածին եկեղեցին, 1209 թ.—Արձ. Այրարատ 272։

— 70. Վահան, սպասավոր Երզնկայի Ս. Կիրակոս վանքի, 1304 թ.—Թորոս աղբ. Բ. 421։

— 71. Վահան, գրիչ. Դրազարկում օրինակեց Կիրակոս Արեւելցու Յայսմաւուրքը 1316 թ., որ ապա Լևոն Դ թագավորը նվիրեց Քարաքոյ գյուղի (Ասորիքի ծովակողմում) եկեղեցուն, 1330 թ.—Սիսուան 234 ա, Շողակաթ 212։

— 72. Վահան քահանա, գրիչ. օրինակեց Ճառընտիրը Դրազարկում 1321 թ.—Ջարբ. Թրգմ. 728։

— 73. Վահան գրիչ, օրինակել է Գրիգոր Սկեռացու Ներբողեան Ս. Կուսին, հեղինակի կենդանության ժամանակ՝ ՉՀ=1321 թ.—Ջարբ. Հին դպր. 716։

— 74. Վահան աբեղա, եղբայր Գրիգոր աբեղայի, որ Սուրխաթում (Խրիմ), Նադիր գրչին գրել տվեց մի Աստուածաշունչ 1346 թ.—Թորոս աղբ. Բ. 426։

— 75. Վահան գրիչ, օրինակել է Աստուածաշունչը Սարկաւագեան օրինակից (ԺԴ դա՞ր).—Տաշեան, Ցուց. 632 բ։

— 76. Վահան երեց, Սսոյ մեծ գաղթականության առաջնորդներից՝ դեպի Կիպրոս կամ Իտալիա (1404 թ.).—Ազգապ. 2007, Սիսուան 542 բ։

— 77. Վահան երեց, հայրն է Աւետիք աբեղա գրչի, որ օրինակեց Սաղմոսը՝ Պալախորի վանքում 1495 թ.—Ձեռ. Սանաս. 24 ա։

— 78. Վահան Մամիկոնեան, նորահայտ մատենագիր, որի անունով կա երկու ճառ. 1) «Ի սուրբ յարմաւենիսն և ի գալուստ Տեառն», 2) «Ի մեծի աւուր չորեքշաբաթին», որոնք գտնվում են Վե-

նետիկի ԼԳ ճառընտրում (տե՛ս Ձեռ. Վեննա. Բ. 499—500)։ Հրատարակիչը (Հ. Բ. Սարգիսյան) կարծում է, թե այս Վահանը կամ Հովհ. Արշարունու Մեկնությունը խնդրող Կամսարական իշխանն է և կամ Յովհաննէս-Վահան կաթողիկոսը (տե՛ս և Զարբ. Հին դպր. 790)։

ՎԱՀԱՆԱԴՐԷ, ար. անշուշտ Վահան անունից. բայց ի՞նչ է -դրէ: Մի անգամ հիշատակված է՝

— Վահանադրէ, որդի Յովհաննէս քահանայի. օգնեց Պետրոս երեցին՝ արտագրելու համար Աւետարանը՝ Նիկոպոլսի Խամ քաղաքում, 1223 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 422։

*ՎԱՀԱՆԻԿ, ար. <Վահան անունից -իկ մասնիկով (իբր փաղաքշական ձև գործածվում է նաև այժմ, որ և Վահիկ)։

— Վահանիկ, որի որդուց Փիլիպպէ Սիւնին գնեց Աղուերց գյուղը և նվիրեց Տաթևի վանքին՝ 943 թ.—րց. ի Վահանկայ՝ Օրբ. ծ։

+ ՎԱՀԱՆՈՅՇ, իգ. կազմված է Վահան+անոյշ բառերից, իբր «Վահանի դուստրը». հիշատակված է միայն մի անգամ 1494 թ. իբր կին Աբուղամր (№ 8) Արծկեցու, որի կենսագրությունը տե՛ս վերը (Անահիտ, 1931 սեպտ. 152).—Այժմ դարձել է Վենանոյշ, որ տե՛ս։

* ՎԱՀԷ, ար. <հպ. vahya, զնդ. vahyah «լավագույն» բառից։ Հիշատակված է միայն մի անգամ մեր պատմության մեջ և այլևս չի գործածված։ Վերանորոգվեց մեր դարում և այժմ բավական հաճախ լսվում է։

— 1. Վահե, որդի Վանի. Ն. Ք. 351 թ. (Չամչ. Ա. 121). վերջին թագավոր Հայկազանց. մեռավ պատերազմելով Աղեքսանդր Մակեդոնացու դեմ, Ն. Ք. 328 թ. (Չամչ. Ա. 125).—Խոր. Ա. լա. Յհ. կթ. գ. Մխ. անեց. գ. Մագ. թղ. ժթ (Վահէ վեհն և վախճանեալ). Սամ. անեց. 46. Միխ. աս. դ, ե. Վրդ. է. Մխ. այրիվ. 18, 55. Մին. համդ. 12.—Վախէ՝ Սիմ. ապար. 20.—Նույնի փոխարեն Ուխտ. Ա. իե դնում է Տիգրան:

— 2. Վահէ, համարվում է հայր Ալի ոստիկանի, որ Աշոտ Ա-ին բերեց իշխանաց իշխանի տիտղոսը (862 թ.)։ Արաբների մոտ կոչված է Ալի-իբն-Եահեա-ալ-Արմանի, որ Վրդ. էջ 82 գրում է «որդւոյ Վահէի», որին հետևում է նաև Չամչ. Բ. 676։ Սակայն Ասող. Բ. բ, ե կոչում է «որդի Յահէի»։ Ըստ այսմ Վահէ անճիշտ ենթադրություն է միայն, որովհետև Հայոց պատմության մեջ բացի վերջին Հայկազանց Վահէից, ուրիշ համանուն անձ չէ հիշատակված (տե՛ս վերը Ալի № 1), Ազգապ. Ա. 962 նույնիսկ արմանի կոչումը բավական չի համարում Ալին հայ ընդունելու։

ՎԱՀԻՏ, ար. գործածական է այժմ Հալէպում (տե՛ս Սիւրմէեան. Պատմ. Հալէպի ազգ. գերեզմ. 52 ա)։

* ՎԱՀՐԱՄ, ար. ծագումը տե՛ս Վահագն։—Պոլսում գործածվում է ռմկ. աղավաղեալ ձևով՝ Վառնաւ։ (Յայսմ. յուլ. 30 մեկնում է «անձրև», բնականաբար հանելով պհլ. vārān> պրս. باران bārān «անձրև», բառից. «Վահրամ, որ է անձրև... Սուրբն անձրև՝ այս է Վահրամ)։—Հմմտ. Բեհրամ։

— 1. Վահրամ (Οὐαρανης), զորավար հեծեալ զորաց, սպարապետ Թէոդոս Բ կայսեր օրով (408 թ.)։ —Հա՞յ է. —Justi 362ա։

— 2. Վահրամ, իշխան Հոմահայաստանի. երբ Խոսրով Բ Պարսից թագավորը Մորիկի սպանման վրա զայրացած, արշավում էր Հոնաց երկիրը, գրեթե առանց դիմադրության, այս Վահրամը Արարատեան հոմական բաժնի հայոց գլուխն անցած՝ ասպատակում էր սահմանակից վրացական գավառները և մեծ վնասներ հասցնում Վրաստանին և Արեաց արքային (606/7 թ.).—սեռ. Վահրամայ՝ Գիրք Թղ. էջ 171—173 (ըստ Ակինեան, Կիւրիոն կթղ. էջ 33—34 և 208—209)։

— 3. Վահրամ Խոռխոռունի, անդամ Պարտաւի ժողովի, որ գումարեց Սիոն կաթողիկոսը՝ «768 թ.»։—Կանոն. 166. Տաշեան, Ցուց. 653 բ. Չամչ. Բ. 411։

— 4. Վահրամ Տրունի, Աշոտ Արծրունու իշխաններից. նրա հետ քաշվեց Նկան բերդը՝ փախուստ տալով Բուղայից «852 թ.».—Արծր. Գ. բ, դ 2։

— 5. Վահրամ սեպուհ, թիկնապահ Աշոտ Արծրունի իշխանի. նրա հետ քաշվեց Նկան բերդը՝ Բուղայից փախչելով «852 թ.».—Արծր. Գ. բ։

— 6. Վառամ, հայր Գրիգորի, որ Սմբատ սպարապետի հրամանով գնաց դադարեցրեց Կող և Արուճ գյուղերի ջրի կռիվը՝ 867 թ.—Արձ. Այրարատ 144=Շաղախաթ 177։

— 7. Վահրամ, հայր Արտակի (Թ դար), նախնին Գրիգոր Մագիստրոսի (Արձ. Բագնայրի).—Justi 363 բ։

— 8. Վահրամ (Վրախամիա), հայազգի դուքս Կիպրոս կղզու. 965 թ.—Բակուրան, Կիպրոս 115։

— 9. Վահրամ Գուրճեւորդի, գնեց և ընծայեց Մաղարդի վանքին՝ էջմիածնի Փղոսկրյա Աւետարանը՝ 989 թ.—Ջեռ. Կարին 16։

— 10. Վահրամ, որի որդին Իսահակ, զորավար Հոնաց, Անտիոքի հաղթականներից էր (Ժ դար).—Դուրյան, Ազգ. պատմ. 353։

— 11. Վահրամ, իշխանաց իշխան, որդի Աշոտ իշխանաց իշխանի (+ 1002 թ.). թոռն Գէորգ Պահլաւունի՝ իշխանի, ամուսնացած Գրիգոր Մագիստրոսի քրոջ՝ Սեդայի հետ.—Ալիշան, Շնորհ. 13։

— 12. Վահրամ Պահլաւունի, որդի Գրիգոր Համզայի, անթիպատ պատրիկ, իշխանաց իշխան և սպարապետ. ծնվել է 967 թ. հորեղբայրն է Գրիգոր Մագիստրոսի. շինեց Մարմաշէնը (սկսելով ՆԼԵ=986 թ. և ավարտելով ՆՀԸ=1029 թ.). ըստ Արձ. Շիրակ 148. ներել է Մաստարայի հարկերը 1015 թ.։ Գագիկ Ա ուղարկեց նրան օգնական Դավիթ Կյուրապաղատի ընդդեմ Ատրպատականի Մամլան ամիրայի «998 թ.»։ Յովհաննէս-Սմբատի մահից հետո՝ գլուխ էր կանգնել այն կուսակցության, որ հակառակ Վեստ-Սարգսի՝ գահ էր ուզում բարձրացնել Գագիկ Բ-ին, որ և կատարեց։ Վանեց Հոնաց արշավանքները Անիի գրավման համար։ Գագիկի հրաժարումից հետո, մեռավ Հոնաց պատերազմում ընդդեմ Դուինի ամիրային, 80 տարեկան հասակում՝ «1045 թ.»։ Իր որդին էլ կոչվում է Գրիգոր, որին Հեսսէ բժիշկը մի դեղագիր ունի գրած.—Լաստ. ժ. Ուռհ. 85, 86, 98. Մագ. Թղ. (կա). Մխ. այրիվ. 71. Սմբ. պատմ. 57, 64.—սեռ. Վահրամայ՝ Լաստ. ժ. Մագ. թղ. ժա. Սամ. անեց. 103. Կիր. 50. Օրբ. ժմ. 11. Ասող. Գ. խա։—Վարհամ՝ Վրդ. ծդ. (հրտր. Էմինի՝ Վահրամ).—Տաշեան, Ցուց. 601, 1154, Յովնանեան՝ Հետազոտ. նախն. ումկ. Ա, 136. Շիրակ 148 (մեծ. Արձ. Այրարատ 136, Արձ. 1015 թ.)։

— 13. Վահրամ Պահլաւունի, վեսր, որդի Գրիգոր Մագիստրոսի, նույն է Գրիգոր Բ Վկայասէր, կաթողիկոս Հայոց «1066—1105 թթ.» (տե՛ս անդ)։—Վահրամ՝ Սամ. անեց. 113, 117—118, 120, 122. Գիրք թղ. ծզ (Ցիշատ.), Շնորհ. Վիպ. 1139, 1153, 1218. Շնորհ. թղ. 298. Վիք. Շնորհ. 15, 18. Ուռհ. 154—155, 190, 207, 229, 267. Գր. եր. 374. Մագ. թղ. ձդ (նաև նույնի ծայրանունը), Լմբ. մատ. 535. Միխ. աս. իթ (=իը). Երզն. Պտճռ. 87. Մ. Մաշտ. 336 ա. Կիր. 57. Վրդ. կ, կզ. Օրբ. ողբ. 59. Սմբ. պատմ. 78, 85.—«Վահրամ, որ է անձրև... Սուրբն Անձրև՝ այս է Վահրամ». Յայսմ. յուլ. 30.—Վարհամ՝ Մխ. անեց. դ. Կիր. 54. Վրդ. ծը (հրտ. Էմինի՝ Վահրամ).—սեռ. Վահրամայ՝ Մագ. Թղ. ձե. Կրպտ. սարկ. յոչ. Միխ. աս. իթ (=իը). Ուռհ. 257, 300, 329. Սամ. անեց. 139. Վրդ. կ.—Վահրամի՝ Ուռհ. 298։

— 14. Վահրամ, դուքս Քեսունի (1137 թվին)։—Հա՞յ է.—Գր. Եր. 370։

— 15. Վահրամ Պահլաւունի, հորեղբայր Շնորհալու և եղբայր Գրիգոր եպիսկոպոսի՝ առաջնորդի եգիպտահայոց, որի շնորհիվ կանչվեց Եգիպտոս և եղավ քաջ զորավար, հետո վեզիր՝ Ալ-Իմամ Հաֆըզ խալիֆային Եգիպտոսի. կոչվեց Թաջ-ադ-դաւլա, որ է «Թագ պետութեան»։ Իր օրով Հաֆըզի որդին՝ Ալ-Հաշէմ ապըստամբելով՝ Վահրամը զորքով նրա վրա գնաց և փախցրեց։ Հակառակորդ խուլամները իր դեմ ելան՝ իշխանությունը խլելու համար։ Վահրամը զիջեց և կրոնավոր դառնալով՝ վանք քաշվեց (1137 թ.)։ Խալիֆան մեծ աղաչանքով ստիպեց նրան դառնալ իր արքունիքը, ուր և ապրեց իբրև կրոնավոր մինչև իր մահը.—Արուսահլ պատմիչ, էջ 33, 45—49. Շնորհ. Վիպ. 1275. Ալիշան, Շնորհալի և պրգ. էջ 163—167. Տաթև 1927 թ. էջ 196։

— 16. Վահրամ, նվիրատու Արտավազայ վանից 1161 թ.— Սմբատեանց, Գեղարքունի 365։

— 17. Վահրամ, Մխիթարի հետ շինեցին Պղնձահանքի Աստվածածին վանքը 1161 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 138։

— 18. Վահրամ իշխան, որդի Պատրոնկան, օգնություն է արել շինելու համար Թեղենեաց վանքի գավիթը, 1167 թ.—Խաղբակեանք 158։

— 19. Վահրամ, հայր Գուրծիի, որ գնեց մի Աւետարան և նվիրեց Մաղարդի վանքին 1173 թ.—Rapport Arm. 28։

— 20. Վահրամ, որդի Վասլի, եղբայր Գրիգոր Տղայ կաթուղիկոսի. մեռավ երիտասարդ հասակում, նախքան 1174 թ.—Թորոս աղբ. Ա. 118։

— 21. Վահրամ, Սայիդ-էդ-Դովլա, պաշտպան Հայոց, նորոգեց Եգիպտոսի Հայոց եկեղեցին՝ 1177 թ. (ուրիշ է Ներքևինը).— Արուսահլ պտմ., էջ 30։

— 22. Վահրամ Այասցի, որի կինը՝ Ֆիմի 1193 թ. գնեց մի Աւետարան, որ գրել էին Լամբրոնի բերդի ավերման ժամանակ.— Սիսուան 85։

— 23. Վահրամ, աշխարհական անուն Գրիգոր Ե կաթուղիկոսի (+1194 թ.) ըստ Սմբ. պտմ. 106 և Սամ. անեց. շար. 164։

— 24. Վահրամ, որդի Վասակի՝ որդւոյ Ապիրատ իշխանի Անւոյ, մայրն է Գր. Մագիստրոսի (+ 1059 թ.) աղջիկը.—Ջամբ. Գ. 18։

— 25. Վահրամ, հայր Սմբատ պատրիկի, որ ստացավ մի Աւետարան 1072 թ. և նույն թվին էլ կրոնավոր դառնալով կոչվեց

Յովհաննէս.— Ջեռ. Կարին 18. Rapport Arm. 50, 57. Ծողակաթ 194։

— 26. Վահրամ, որդի Մարիամ ճգնավորուհու՝ քրոջ Ն. Շնորհալու (ԺԲ դար).—սեռ. Վահրամայ՝ Յս. որդի Հիշ.։

— 27. Վահրամ, մերձավոր Գեորգ վրդ. Քեսունցու, որ Թարգմանեց Եփրեմ Խուրու ճառերը՝ Ակների վանքում, 1215 թ.—Բանասէր 1901, 42։

— 28. Վահրամ Կանաչողկեցի, իր կնոջ հետ միասին շինել են Խորանաշատի հյուսիս-արևելյան խորանը, 1216 թ.—Արցախ 323, Տեղեկ. Արմֆանի 1940, № 4, էջ 174։

— 29. Վահրամ վարդապետ, ունի Հարցմունք, որոնց Պատասխանը գրել է Վանական վարդապետը՝ 1221 թ.—Ջեռ. Հալէպի, Բ. 123 բ (Սև լեռնցի՞ն է).—Ալիշան, Հին հաւատք 25 կոչում է «Վահրամ իշխան հայ-ազուանից»։

—30. Վահրամ Պահլաւունի, հայր Գր. Մագիստրոսի՝ տեառն Բագնայրի (1233 թ.) և պապ Ապուղամրի (1262 թ.).—Ալիշան, Շնորհ. 14։

— 31. Վահրամ, որդի Տիգրանայ, պատմիչ. գրել է Թուրքերի ծագման պատմությունը, որ կորել է.—սեռ. Վահրամայ՝ Վրդ. ծգ։— Զարբ. Հին դպր. 790. Հայապ. 92, Մխ. Այրիվ. (+ 1289 թ.) էջ 37, պատմիչների շարքում հիշում է Վահրամ Տիգրանակերտցի, որ անշուշտ միևնույնն է։ Թերևս կարելի էր կարծել նաև Վահրամ Րաբունին, բայց երևի այս վերջինը դեռ ծանոթ չէր Այրիվանեցուն։

— 32. Վահրամ իշխան, որի որդիներն են Վասակ՝ քաղաքագլուխ Տփղիսի, Քուրդ՝ իշխան Կարնոյ և Սարգիս (ԺԲ դար).—Հայապ. 389։

— 33. Վահրամ, ումն գրիչ (1202 թ.)։—Տե՛ս Յ. Մուրատ, Յայտ. Յովհ. էջ ԺԳ։

— 34. Վահրամ Գագեցի (կամ Գագել), որդի Զաքարէի և թոռն Վահրամի. Սարգիս մեծի (+1187 թ.) եղբոր թոռն է (Ծողակաթ 76)։ Վրաց ծառայության մեջ էր. մասնակցեց Թամար (+ 1213 թ.) թագուհու կազմած զինվորական արշավանքներին. հասավ մինչև Արդաբիլ. թագուհին շնորհեց նրան մսախուրթուխուցեսության տիտղոսը.—Վրաց աղբ. Բ. 23, 24, 34, 51—57։

— 35. Վահրամ, որդի Զաքարէ Ա-ի, եղբայր Սարգիս մեծի (+1187 թ.) և հայր Զաքարէի և Սարգսի, որոնք մասնակցեցին Դվինի արշավանքին. Թոռն է Աւագ-Սարգսի (Ծողակաթ 76)։ Սրանով է

սկսվում Երկայնաբազուկների երկրորդ ճյուղը։ Հայ պատմիչների մոտ շփոթված և դրված է Սարգիս մեծի հայր։

— 36. Վաճրամ, իշխան Գագայ, որդի Պլու Զաքարէի, հայր Սարգիս Աղբուղայի և պապ՝ Վահրամի, Զաքարէի և Իւանէ աթաբէկի։ Գրավեց Շամքորը պարսիկներից։ Իվանէ աթաբէկի հետ գնաց կռվելու թաթարների դեմ Կոտմանի դաշտում, քշեց նրանց հաջողությամբ, բայց հետո Համիդոլայի դավաճանությամբ պարտվեց (1214 թ.)։ Սա է, որ Դաւիթին հանելով Կեսարիոյ բանտից՝ նստեցրեց թագավոր Վրաց, որով կոչեցին նրան «Վարհամով թագավոր»։—Վաճրամ՝ Կիր. բ, իա, իէ, լգ, լզ, Վրդ. ձդ, ձե. Մաղաք. աբ. 18. Զքր. սարկ. Գ 11.—Վարճամ՝ Մաղաք. աբ. 5, 6, 18, 19.—սեռ. Վաճրամայ՝ Կիր. բ, ի—իբ, լբ, լզ, էջ 72։ Վրդ. ձդ (հրտր. էմինի՝ Վարմայ), ձե.—Վարճամայ՝ Մաղաք. աբ. 14, 18. Վրդ. ձբ (հրտ. էմինի՝ Վահրամայ).—Վրաց աղբ. Բ. 12, Հայապ. 447։

— 37. Վաճրամ, որդի Եղբայրիկի. իր կնոջ՝ Թայիկի հետ զանազան նվերներ են արել Յովհաննավանքին 1216 թ.—Արձ. Այրարատ 168։

— 38. Վաճրամ, ամիրա Անի քաղաքի, հաստատում է Վրաց Եպիփան կաթուղիկոսի արձանագրությունը 1218 թ.—Օրբէլի, Անւոյ աւերակները 57. Յովսէփեան, Խաղբակեանք 14. Շիրակ 43, 49։

— 39. Վաճրամ, որդի Կոփրեղի կամ Գերվասի, տեր Կոռիկոսի, մարաջախտ Հայոց, Լևոն Բ-ի ժամանակ, սկսած 1215 թվից։ Նրա մահից հետո, ամուսնանալով Ստեփանէի թոռ Ալիծի հետ, ուզեց թագավոր դնել նրա որդի և Անտիոքի բրինձ Ռուբէնին։ Կոստանդին Պայլը հարձակվեց նրա վրա և կուսակիցների հետ կոտորեց «1220 թ.»։—Հեթ. ժմնկ. պտմ. Կիլ. 210. Սիսուան 143, 270, 333—334, 485, 526։ Սիսուան 459ա համարում է օտար, որովհետև հայրը՝ Գերվաս է Gervais, եղբայրը՝ Ժուլին=Juzelinus.

— 40. Վաճրամ (կամ Վարճամ), ինքնակալ տանն Ռանայ, Այրարատի և Խաչենի, եղբայր Ասադի, հիշված 1224 թ.—Խաղբակեանք 34, Թորոս աղբ. Բ. 272։

— 41. Վաճրամ, մեծ հեջուբ Անւոյ. սրա դուստրը Խաթուն՝ կինն է Նոր-Բերդի իշխան Վասակ Կիւրիկեանի. կինն է Թամար. շինել է Հառիճի ժամատունը, ջուր է բերել. արձանագրության մեջ հիշված է Վաճրամ և Վարճամ ձևերով՝ 1229—1235 թթ..—Շիրակ 22, 23, 162. Տեղեկ. Արմֆանի 1940, № 4, էջ 172։

— 42. Վաճրամ, եղբայր Ստեփաննոսի՝ դռան եպիսկոպոսի,

որ ստացավ մի Աւետարան, Հռոմկլայում, 1248 թվին.—Ձեռ. Հալէպի, Բ. 5։

— 43. Վարխամ (կամ Վարդան) Սկևռնցի, միաբան Սեաւլեռան վանքում. գրեց Կոստանդին Ա. կաթուղիկոսից Թուղթ առ Հեթում (արքայ) Ա և կաթոլիկ եկեղեցու մեջ գտավ 15 մոլորություն։ Սրանից հետո նույն հեղինակը գրեց և մի ուրիշ գիրք՝ նույն բովանդակությամբ։ Կաթոլիկ եկեղեցին այրելու դատապարտեց այդ գրքերը (1249 թ.).—Ջամչ. Գ. 231, 344. Զարբ. Հին դպր. 753։

— 44. Վարհամ, որդի Սմբատի. իր եղբոր Հասանի հետ միասին նվերներ է արել Մեծարանց վանքին՝ իր հոր հոգու համար՝ 1251 թ.—Բանասէր 1901, 142։

— 45. Վահրամ, կինն է Շողիկ. ծնողներն են Կոստանդին Ա. (1221—1267 թթ.) Բարձրբերդցի կաթուղիկոսի. հիշված է 1253 թ.— Միխ. աս. յաւել. նաև Նաթանեան, Տեղ. Սեբաստ. 83. Ձեռ. Սեբ. (ՀԱ 1924, 333), Զարբ. թրգմ. 565. Թորոս աղբ. Ա. 187. Բ. 359. Ձեռ. Հալէպի Բ. 140 ա. Ձեռ. Վենետ. Ա. 652։

— 46. Վահրամ վարդապետ, օգնել է Ստեփաննոս վարդապետի հետ Կիրակոս Արևելցուն ընդարձակելու Յայսմաւուրքը 112 նոր գլուխներով՝ Տայոց Կողայ վանքում, 1253 թ.—Հայապ. 107, 472։

— 47. Վահրամ Համուսցի, տեր Համուսի, քաջ զորական, փեսա Սմբատ Գունդստապլի։ Երբ Իկոնիայի սուլթանը եկավ պաշարեց Մունդաս բերդը՝ խլելու համար Օշին իշխանի ձեռքից, Հեթում իր բանակով օգնության շտապեց։ Բանակի առաջից գնում էր Լևոն սպասալար Ապլհասանանց (№ 19), որ պատահելով սուլթանի պահակ խմբին, կոտորեց նրանց և փախցրեց։ Թշնամին լսելով այդ՝ ավելի մեծ ուժով հարձակվեց Հեթումի բանակի վրա։ Այստեղ շրջապատեցին Վահրամ Համուսցուն և ամեն կերպ աշխատում էին ձիուց ցած գցել նրան։ Վրա հասավ Սմբատ Գունդստապլը, թշնամուն հաղթեց չարաչար, Վահրամին ազատեց, Մունդաս բերդը գրավեց և Օշինին ու նրա հետ բոլոր հայերին դուրս բերելով տարավ Կիլիկիա բնակեցրեց (1295 թ.).—Սիսուան 178 ա։

— 48. Վահրամ, իշխան Խաչենի, որդի Գրիգոր իշխանի և Թոռն Հասանի. եղբայր Սարգիս եպիսկոպոսի և Սևադա (+1260 թ.) իշխանի Խաչենեցւոյ.—Բարխուդ. Պատմ. Աղուանից, Ա. 136։

— 49. Վարհամ միայնակեաց, լմել է տվել Դաւիթ Բջնեցուշուխան (այս Դաւիթը օրինակել է Ագաթանգեղոսը 1261 թ.).— Հրատ. Ագաթ. 1909 թ. յոց. էջ Լ և էջ 77։

— 50. Վահրամ, հայր Սարգիս եպիսկոպոսի Սիւնեաց (+ 1261 թ.).—Justi 364, № 68։

— 51. Վահրամ (1271 թ.). տե՛ս Մհեռր:

— 52. Վահրամ պարոն, շինել է Երնջակում Ջուղայու Ս. Ամենափրկիչ վանքը, 1271 թ.—Սմբատեանց, Երնջակ 488։

— 53. Վահրամ պարոն, որին «զարկին» հաշիշինները՝ 1272 թվին.—Ձեռ. Օշ. 99 բ։

— 54. Վահրամ վարդապետ Սւլեռնցի, կոչված Րաբունի. Լևոն Գ-ի ատենադպիրն էր Սսում. Լևոն Գ-ի օծման օրը գրեց «Ճառ ի մեծի աւուր Յայտնութեան» «1271 թ.», հրտր. Այրարատ 1869, փետր. ապր. և առանձին տպ. Երուսաղէմ. նրա խնդրով է գրել նաև «Ճառ ի Ս. Երրորդութիւնն և ի մարդեղութիւն». ունի դարձյալ. Յաղագս փրկական տնօրէնութեան, ի մկրտութիւն Տեառն, ի Յաղկազարդն և ի Համբարձումն, Վասն թաղման, Վասն գալստեան Քրիստոսի յԵրուսաղէմ, Դաւանութիւն Վահրամ վարդապետի, Լուծմունք գրոց Պորփիւրի, Պատասխանիք հարցմանց Հեթմոյ արքայի, թերևս և Հարցում-Պատասխանիք, բայց ամենակարևորն է Ոտանաւոր պատմ. Ռուբինեանց՝ իբր շարունակություն Շնորհալւոյ Վիպասանութեան, որ գրել է Լևոն թագավորի խնդրանօք.—Վահր. ոտ. 186. Տաթև, Ոսկիփ. 507, 560.—սեռ. Վահրամայ՝ Վահր. երրդ. 115, 117, 174. Վահր. մարդ. 176. Վահր. ոտ. 185.—Տե՛ս և Տաշեան, Ցուց. 1154 ա. Զարբ. Հին դպր. 790—793. Սիսուան 516։

— 55. Վահրամ Լադիֆ, մատակարար Լևոն Գ թագավորի Հայոց, գլխավորն էր այն դեսպանության, որ ուղարկվեց Սիկիլիոյ թագավորի մոտ և Նէապոլիս 1278 թ.—Սիսուան 363 ա, 555 բ։

— 56. Վահրամ, որդի Հայրանունի, իր եղբայրների հետ միասին շինել են Տաշքենդ գյուղի (Նոր-Բայազետ) Ս. Աստուածածին եկեղեցին Արուղա խանի ժամանակ (նստել է 1265—1282 թթ.).—Արձ. Սիսական 72, Գեղարքունիք 629։

— 57. Վահրամ, մի խաչքար է կանգնեցրել իր վաղամեռիկ զավակների՝ Շնոհորիկի և Թամամի հիշատակին, 1282 թ.—Արձ. Այրարատ և ավելի լավ՝ Բանասէր 1901, էջ 122—123։

— 58. Վահրամ սպարապետ Շահունեցի, որդի Վասակ Շահունեցոյ և թոռն Մագիստրոսի. մայրն է Մամքան, տատն է Սանդուխտ (կին Մագիստրոսի). կինն է Գոնցա՝ դուստր Խոսրովիկի Տարսայիճեանց. որդիքն են Թուխտին, Հասան, Ամադին, Ուքան. եղբայրն է Ուքան. շինել են Հերհերի եկեղեցին 1283 թ.—Արձ. Սիսական 112, 114, 115, 116 (Վահրամայ), Արրտ. 1889, 322, 331։

— 59. Վահրամ, եղբայր Աւետիսի, երկուսն էլ որդիք Մխիթարի. մի խաչարձան են կանգնեցրել իրենց հոր հիշատակին, Մարտիրոս գյուղում, 1286 թ.—Արձ. խաղբակեանք 146, Սիսական 177 (սխալներով)։ Հմմտ. նաև Աւետիս № 24։

— 60. Վահրամ քեթոբար, հրամանաւ Սահմադինի շնորհել է Օշականի քահանաների հարկերը 1286 թ.—Այրարատ 189։

— 61. Վահրամ կրօնավոր, միաբան Երէզ անապատի, 1295 թ.—Bodleian 123։

— 62. Վահրամ սարկավագ, գրիչ. աշակերտ Ստեփաննոսի Գոյներիցանց. օրինակեց Փիլոնի գործերը Տաւրոս լեռան «Հայոց» կամ Արմէնի վանքում, Կիլիկիա, 1298 թ.—Տե՛ս յիշ. Փիլոնի, հտ. Բ. էջ 622. Սիսուան 96, Հայապ. 502. Ոսկեան, Մատ. քնն. 165, Տաթև 1927, 183։

— 63. Վահրամ, մի այգի է նվիրել Հայրավանքին (ԺԳ դար).— Սիսական 41, Սմբատեանց, Գեղարքունի 435։

— 64. Վահրամ Կուլաղեանց, միաբանեց Հաղբատի վանքին և Բերդիկի այգին նվիրեց նրա գրատան (մոտ ԺԳ դար).—Գ. արք. Յովս. Նիւթեր և ուս. Ա. 7Q։

—65. Վահրամ, իշխան Նոր-Բերդի, իր օրով ավարտվեց Նոր-Բերդի մոտիկ Ս. Աստուածածին տաճարի կառուցումը (ԺԳ դար).— Կիր. 73։

— 66. Վահրամ ճգնավոր, քեռորդի Սարգիս եպիսկոպոսի՝ Նորավանից առաջնորդի (ԺԳ դար).—սեռ. Վահրամայ՝ Օրբ. կբ։

— 67. Վահրամ, իբրև վկա հիշվում է Քանաքեռում, մի այգու վաճառման առթիվ, 1306 թ.—Արձ. Բանաս. 1903, 32, Այրարատ 298։

— 68. Վահրամ, այլ, անդ։

— 69. Վահրամ, որդի Վասակի. շինեց Հերհերի Ս. Սիոնի վանքը 1321 թ.—Սմբատեանց, Երնջակ 494։

— 70. Վահրամ Լօտիկ, պարոն, որդի պարոն Օշին մարաջախտի. մեռավ եգիպտացոց դեմ պատերազմում, 1322 թ.—Սմբ. պտմ. 130 (տպ. Մոսկ. Զօտիկ)։

— 71. Վահրամ, հակառակ դուս եկավ Կոստանդին Գ («1307—1323 թթ.») կեսարացի կաթոլիկացած կաթուղիկոսին, որի համար էլ իր ընկերների հետ աքսորվեց Կիպրոս կղզին (Հայապ. 552)։

— 72. Վահրամ քահանա, Հայր Բարսեղ երեցորդու, որ Հալէպում գնեց մի հին Աւետարան 1323 թ.—Ջեռ. Կես. Ածած. 64 բ։

— 73. Վահրամ, հայր Գրիգոր գրչի, որ Ակների վանքում ար-

տագրեց Ոսկեբերանի Մեկնությունն Թղթոցն Պօղոսի, 1325 թ.—Սիսուան. 155 ա, Ձեռ. Վեննա. Բ. 572։

— 74. Վահրամ քահանա, որդի Ներսէս քահանայի և հայր Ներսէս Վարդապետի, որ Յովհաննէս գրչին օրինակել տվեց Մանրուսմունքը՝ 1328 թ.—Manus. Brit. mus. 67 ա։

— 75. Վահրամ, հանգուցյալ հորեղբայր Պարոնշահի, որ գրել տվեց մի Աւետարան 1329 թ.—Ձեռ. Վասպ. 179։

— 76. Վահրամ Կոռեցի (Սասուն), հայր Ներսէս վարդապետ Սասնեցու, որ Գայլաձորի վանքում գրել տվեց մի օրինակ Աստուածաշունչ 1332 թ.—Հայապ. 546. Ձեռ. Վեննա. Ա, 126։

— 77. Վահրամ Դօփեան, որդի Գրիգոր Բ բարի իշխանի Խաչենոյ, եղբայր Սարգիս եպիսկոպոսի (+ 1333 թ.) մայրն է Ասփա, դուստր Տարսայիճ իշխանի Օրբելեան. այս Վահրամի աղջիկն է Խոշ, որ նույնպես մեռել է 1333 թ.—Կրպտ. եպս., Դօփեանք 45, 78, Ձեռ. Դաղեան Ա. 89 բ, Justi 364 բ։

— 78. Վահրամ, որդի մեծին Իվանէի, իշխան Արագածոտն գավառի, հիշված 1333 թ.—Խաղբակեանք, 21։

— 79. Վահրամ իշխան, շինեց Մարմաշէնի վանքը 980 թ.—Տաթև, 1927, 186։

— 80. Վահրամ, հայր Սահակի, ստրատիկոսի Վարդ Սքլերոսի, որին առաջնորդ հանդիսացավ և գրավեց Lykandos ամուր քաղաքը (976 թ.).—Ալպօյաճեան, Պատմ. Հայ. կես. Ա. 318։

— 81. Վահրամ, հայր Գրիգոր գրչի, որ Կիլիկիայում Պօղոս քահանայի համար արտագրեց Աւետարանը 1334 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 698։

— 82. Վահրամ աթաբէկ, սպարապետ պարոն, որդի Զաքարէ Գ-ի, թոռն Շահնշահի և թոռնորդի Զաքարէ Բ ամիրսպասալարի. մեռավ 1342 թ.—Հայապ. 447, Շիրակ 175 (տախտակը)։

— 83. Վահրամ իշխան, մատնիչ. Լևոն Զ-ի դավադիրներից մեկն էր, որից անտեղյակ լինելով, Լևոն Զ-ն ուղարկեց նրան բանակցելու եգիպտացոց զորավարի հետ, Սսի պաշարման ժամանակ. բայց նա ընդհակառակը ավելի գրգռեց թշնամիներին Լևոնի դեմ, ասելով, որ բոլոր հայերը պատրաստ են Սիսը հանձնելու նրանց («1375 թ.»).—Ազգապ. 1943, Դարդել, 121—122։

— 84. Վահրամ իշխան, ամուսին Ցիմի Այասցու, որ տե՛ս վարը, 1375 թ.։

— 85. Վահրամ, որդի Հասան իշխանի Դօփեան, 1387 թվին

Հանկթամուրի կոտորածից ազատվեց և հոր նահատակությունից հետո իշխանության գլուխ անցավ.—Կրպտ. եպս. Դոփեանք, 85։

— 86. Վահրամ, վարդապետ Երուսաղէմի. սրա և Պետրոս վարդապետի աշխատությամբ ստացավ Սարգիս պատրիարքը Գողգոթայի տիրապետության հրովարտակը 1393 թ.—Աղգապ. 2015։

— 87. Վահրամ բժիշկ, ունի բժշկական երկասիրություններ. հիշում է Ամիրտ. անգ. 2՝ Մխիթար Հերացուց և Ահարոն, Ստեփանոս, Ճոսլին, Սարգիս, Յակոբ, Դեղին և Սիմաւոն բժիշկներից հետո։—Հավանաբար ԺԴ դար.—Տաշեան, Ցուց. 199։

— 88. Վահրամ պարոն, իշխան Ծար երկրի, Դոփեանց տոհմից. հիշված է 1411 թ.—Նոտարք 39=Կրպտ. եպս. Դոփեանք, 185։

— 89. Վահրամ աթոռակալ Հակոբ Գ Սսեցի կաթուղիկոսի. հիշված 1413 թ.—Աղգապ. 5528։

— 90. Վահրամ, որդի Ամիրխալիլի՝ պարոնի Աղուանից (Ղարաբաղ), 1438 թ.—Ձեռ. Դաղեան, Բ. 44 ա։

— 91. Վահրամ, որդի պարոն Ասպետի. իր քույր տիկին Թիֆանէի հետ գնեցին մի Աւետարան և նվիրեցին Կիպրոսի եկեղեցուն, 1468 թ.—Ձեռ. Մինխ. 8 բ։

* ՎԱՀՐԱՄՇԱՀ, ար. <Վահրամ անունից + պրս. شاه šāh թագավոր»։ Տե՛ս և Բեհրամշահ։

— Վահրամշահ, նվիրատու Ս. Թորոս վանքի (Նախքան 1420 թ.).—Տաշեան, Ցուց. 666 ա։

— Վահրամշահիկ (գրված է սեռ. Վարհամշկան), հայր մահտեսի Սամուէլի, որ մի Մաշտոց գրել տալով նվիրեց Յովհաննավանքին 1664 թ.— Այրարատ 197—198։

— Վահրատ, տե՛ս Ֆահրադ։

* ՎԱՀՐԻՃ, ար. <պհլ. * Vahrič անունից, որ է պրս. Vahrīz, բուն նշ. «բարեհոս» (vah «լավ» և rīz «հոսել» բառերից), ըստ Justi 340բ „guten überfluss beritzend“. տառադարձված հուն. Οὐαρίζης. կա և հուն. Ουαφρίζης, ասոր. Gofrīz, որոնց հետ միացնելով Հիւբշ. 78—79 եյ. Վախրիճ ձևը՝ իբր տարբեր անուն նախորդից, գնում է պհլ. Vafrīč? (ճիշտ չէ այս երկրորդը, որովհետև միևնույն անձի անունը գրված է թե Վահրիճ և թե Վախրիճ, որից երևում է, թե հ>խ ձայնափոխության արդյունք է)։ Այս անունով հայտնի են Վահրիճ զորավար Պարսից (Բուզ.), Շահր-Վահրիճ՝ զորավար Պարսից Խոսրով Բ թագավորի (Սեբ.) Vahrīz նըվաճող Եմէնի (562—572 թվերին) (ըստ Համզայի՝ ժառանգական ազնվականության մի տիտղոս է)։

— 1. Վաճրիճ խադունի, որ Վռամշապուհի կողմից ուղարկվեց Միջագետք և բերավ Դանիէլեան նշանագրերը, «404 թ.».—Կոր. էջ 8. Փարպ. ժ. Խոր. Գ ծը։—Վրախճայ (իբր ուղղական ձև)՝ Կիր. 15.—սեռ. տր. Վախրճաց. Շիր. քրոն. 57 (այլ ձեռ. Վաճրճայ).—բց. ի Վաճրիճէ՝ Փարպ. ժ։—Իսկ Յայսմ. նոյ. 25 գրում է Վախրիճ և համարում է Սամոսատի փիլիսոփա, որին դիմել է Մեսրոպը՝ տառերը գեղագրելու համար։

— 2. Վաճրիճ Անձևացի, օգնական Տաճատ Ռշտունու և Քաջն Վարդանի. ձերբակալեցին Պարսից Վնդոյ մարզպանին և նրա որդի Շերոյին. հորը այրեցին, իսկ որդուն կախեցին Դուինում։—Վախրիճ՝ Արծր. Բ ա։

* ՎԱՂԱՆ, թողել է Երուսաղէմի Ջիթենեաց լեռան վրա մոզաիկ մի արձանագրություն, որ թվում է Զ—է դարից (Շողակաթ 171)։

* ՎԱՂԱՐՇ, տր. <իրանական անուն է. հմմտ. պհլ. Valaxš, պրս. և արաբ. Valāš, Balāš, Gulāš, տառադարձված հուն. 'Ολαγάδου, 'Ολαγαίδου, 'Ολογάδου (սեռ. հոլով պարթևական դրամների վրա), Οὐολόγαιδος, Οὐολόγεος, Βολόγιδος, Βολόγεδος. լտ. Vologesus, Vologaesus, Vologessus, Vologeses, ասոր. Valgeš, Volageš, նաև *Blšfr* = հուն. Βολογεδιφοζα (Հիւբշ. 79)։ Այս անունով հայտնի են 6 պարթև թագավորներ, որոնք են՝ Վաղարշ Ա (Արշակ ԻԲ) 51—61 թթ., Վաղարշ Բ (Արշակ ԻԳ) 61—77 թթ., Վաղարշ Գ (Արշակ ԻԴ) 77—147 թթ., Վաղարշ Դ (Արշակ ԻԷ) 147—191 թթ., Վաղարշ Ե (Արշակ ԻԸ) 191—208 թթ., Վաղարշ Զ (Արշակ ԻԹ) 208—222 թ.։ Սասանեաններից՝ Վաղարշ, եղբայր Պերոզի՝ 484—488 թթ.։

— 1. Վաղարշ, այսպես է դնում Ուխտ. Ա. իզ. փոխանակ՝ Վաղարշակ Ա։

— 2. Վաղարշ Ա Արշակունի, թագավոր Հայոց (ըստ արտաքին պատմության) «117—140 թթ.», հաջորդ Պարթամասիրի. խաղաղությամբ կառավարեց երկիրը.—Լէօ Հայոց պատմ. Ա. 475։

— 3. Վաղարշ, որդի և հաջորդ Տիգրան Գ-ի, թագավոր Հայոց՝ «193—213 թթ.», շինեց Վաղարշակերտ, Վաղարշապատ և Վաղարշաւան քաղաքները. պատերազմեց խազրաց և Բասլաց դեմ, քշեց նրանց Ճորայ կապանից դուրս, բայց ինքն էլ մեռավ կռվում.—Խոր. Բ. կե, կզ. Սուտ-Սեբ. Ա. 10. Ուխտ. Ա. խզ, ծգ. Ասող. Ա. ե. Մագ. Թղ. ժթ. Մխ. այրիվ. 18. Մխ. անեց. գ, ժ. Սամ. անեց. 59. Շնորհ. Վիպ. 359. Վրդ. ժէ. Օրբ. ողբ. 25. Մին. համդ. 21։—Վաղարշակ՝ Արծր. Ա. ը. Մխ. անեց. թ. ZAPh 1, 190. Նհպտք. 90. Ջքր. սարկ. Ա. 2.—սեռ. Վաղարշայ՝ Խոր. Բ. կե, կէ. Նհպտք. 90. Ուխտ.

Ա. խզ. Մին. համդ. 21. Սիմ. ապար. 8։—Վաղարշու՝ Սուտ Սեբ. Ա. 10. Ուխտ. Ա խէ, ծդ. Արծր. Ա. ը. Վկ. ոսկ. 65. Վրդ. ժէ. Վրդն. լս. 45. Զքր. եպս. 280։—Վաղարշոյ՝ Ջեն. 20։—Վաղարշաշէն (իբր Վաղարշից շինված) Սասն. 69։—Ըստ Աղգասյ. 71 այս Վաղարշը նույնանում է արտաքին պատմության Վաղարշի հետ, որ Պարթևաց Արտաւան Դ թագավորի եղբայրն է և ներկայացնում է Խորենացու Վաղարշակ Ա-ին։ Վրաց աղր. Ա. 75 սխալմամբ կոչում է Արշակ։

— 4. Վաղարշ Բ, որդի և հաջորդ Սանատրուկի, թագավոր Հայոց 195—217 (ըստ Գրգշ.) կամ 196—215 (ըստ Լէօ Ա. 477) թվերին։ Պարթևաց հետ միասին դուրս եկավ Հռովմայեցոց դեմ. բայց երբ Սեպտիմոս Սևերոս կայսրը արշավեց ու գրավեց Տիզրոնը (198 Թ.), Վաղարշը հաշտություն խնդրեց. կայսրը ո՛չ միայն վերահաստատեց նրան, այլև Փոքր Հայքից նոր հողեր տվեց։ Վաղարշն իր աթոռը դրավ Նորաքաղաք, որ իր անունով կոչեց Վաղարշապատ։ Սևերոսի հաջորդը Կարակալլա՝ խարդախությամբ կանչեց և բանտարկեց նրան (211 Թ.). հայերը պատերազմի դուրս եկան և չարաչար հաղթեցին կայսեր Թէոկրիտոս զորավարին։ Վաղարշը մեռավ բանտում, իսկ կայսրը սպանվեց իր սեփական զորքից (217 Թ.).—Գրգշ. Բ, 263—265, Գ. 300, 302. Լէօ Հայ. պատմ. Ա. 477—480։

— 5. Վաղարշ, իշխան Անձտայ, հազարապետ Հայոց Մեծաց. Տիրան Բ-ի հրամանով ուղեկից եղավ Յուսիկ կաթողիկոսին՝ իբրև նախագահ այն շքախմբի, որ առաջնորդեց նրան Կեսարիա կաթողիկոսական օծում և ձեռնադրություն ընդունելու համար՝ «341 Թ.».—Բուզ. Գ. ժբ.—սեռ. Վաղարշու՝ անդ։ (Այս մասին տե՛ս իմ հոդվածը Արրտ. 1911 Թ. էջ 225)։—Նույնը հետո Մեծն Ներսէսի՝ Մեսր. եր. 25։

— 6. Վաղարշ տե՛ս Վռամշապուհ։

* ՎԱՂԱՐՇԱԿ, ար. <նախորդից՝ փաղաքշական -ակ մասնիկով։ Համարվում է առանձին անուն։ Այժմ էլ գործածական է, մինչդեռ Վաղարշ չէ գործածվում։—Justi 485, 488 կցելով սանս. bala և լտ. valor բառերին՝ մեկնում է «ուժեղ Արշակ»։—Կեղծ է։

— 1. Վաղարշակ Ա, թագավոր Հայոց, եղբայր Արշակայ Պարթևի, հիմնադիր հայոց Արշակունի հարստության։ (Ըստ Սուտ Սեբ.՝ Մեծն Արշակի որդիներն էին Արշակ փոքր և Վաղարշակ. առաջինը թագավորեց Մծբինում, իսկ Վաղարշակը՝ Հայաստանում)։ Մարաբաս ասորու ձեռքով Նինուէից բերել տվեց Հայոց հին պատմությունը. հաստատեց Հայոց նախարարական տոհմերը, պատերազմեց և հաղթեց Փոքր Ասիայ Մորփիւղիկէս թագավորին։ Թագավորել

է 22 տարի (Ն. Ք. 149—127 թթ. ըստ Չամչ. Ա. 208)։—Այս թագավորի դրամներից 26 հատ գտած է կարծում Petrowiez, Arsaciden Münzen, էջ 183—186, Ն. Ք. 139 և 138 թվերից. հյ. թրգմ. տե՛ս Տաշեան, Արշակունի դրամներ, Վիեննա 1919 թ. էջ 172—182, ուր կա նաև դրամի նկարը և իր եղբոր՝ պարթևաց Միհրդատ Ա թագավորի նկարը, որին դիմագծերով էլ նման է գտնում.—Խոր. Ա. ը, թ, ժբ, լա. Բ. գ, դ, զ, է, ը, կը, հէ. Սուտ Սեբ. Ա. 10, Բ. 11. Ուխտ. Ա. իէ, խը, ծդ. Յհ. կթ. յոչ. դ. Արծր. Ա. զ. Մագ. թղ. ժթ, հգ. Յայսմ. նոյ. 18. Մխ. անեց. գ, զ, է, ժ. Միխ. աս. ե. Ասող. Ա. դ, ե. Կղկնտ. Ա. դ. Ջեն. 36. Շնորհ. Վիպ. 172. Սամ. անեց. 47. Կիր. ը. Վրդ. ժդ, ժը. Վրդ. լս. 45. Վրդ. աշխ. 520. Օրբ. գ. Մխ. այրիվ. 18, 57. Սիմ. ապար. 27, 28. Մին. համդ. 13, 14. Ջուղ. 36, 37. Չքր. սարկ. Ա. 2. Ծս. կթղ. 3։—Սեռ. Վաղարշակայ, բց. ի Վաղարշակայ՝ Խոր. Ա. ժբ. լա. Բ. ա, գ—ե, ը, թ, իը, ծթ, կը. Կղկնտ. Ա. գ, դ, զ. Ուխտ. Ա. իդ—իէ, ծդ, կե. Բ. ժը, կե, Յհ. կթ. ա, գ, դ. Ասող. Ա. ե, Գ. բ. Մագ. թղ. ժթ. Տարօն. Բ. § 14. Սամ. անեց. 46, 50, 61. Մխ. անեց. թ, ժ, ժա. Վրդ. ժե. Վրդն. լս. 46. Մին. համդ. 13, 15. Նհպտք. 88. Օրբ. գ. Ջուղ. 37.—բց. ի Վաղարշակէ՝ Արծր. Ա. զ.—Վրաց աղբ. Ա, 79 (Վաղարբ ձևով)։ Նկարը տե՛ս Ջեռ. Դաղեան, Բ. 36 բ. Վաղարշակի Արշակունի ծագման մասին ըստ Եպիփան Կիպրացու (կեղծիք). տե՛ս Սարգիսեան, Երեք թագաւոր մոգերու գրոյցն, Վեներ. 1910, էջ 12։

— 2. Վաղարշակ Բ. թագավոր Հայոց, Պապի կրտսեր որդին էր. Վարազդատից հետո նստավ գահը՝ քբրև իր եղբոր՝ Արշակ Գ-ի գահակից, «379 թ.» և մի տարուց մեռավ.—Բուզ. Ե. լէ, խդ. Խոր. Գ. խա. Սուտ Սեբ. Բ. 17. Ասող. Բ. ա. Յհ. կթ. ժգ. Արծր. Ա. ժա. Մագ. թղ, ժթ. Շնորհ. վիպ. 896. Մխ. այրիվ. 18. Մխ. անեց. գ. իբ, իգ. Կիր. 14. Վրդ. իդ. Չքր. սարկ. Ա. 3. Նհպտք. 91. Մին. համդ. 26.—սեռ. Վաղարշակայ՝ Բուզ. Ե. լը, խդ. Խոր. Գ. խա, խգ. Ասող. Բ. ա. Միխ. աս. իթ (=իը).—գրծ. Վաղարշակաւ՝ Բուզ. Ե. խգ, խդ։

— 3. Վաղարշակ, երևակայական թագավոր Հայոց երկրորդ Արշակունեաց, որ պիտի գա մի օր, պիտի գնա մինչև Պոլիս և Հունաց օգնությամբ Նետողաց ազգին հաղթելով պիտի տիրե Կուր գետից և Ալանաց դռներից մինչև Միջագետք Ասորոց և մինչև Պոլիս ու Բիւզանդիայի ծովը.—Ագաթ. 398—399.—սեռ. Վաղարշակայ՝ 399—400.—Սարգիսեան, Ուս. հին կտ. անվավեր գրոց, էջ 184—186։—Տե՛ս և Ագաթոն անունը։

* ՎԱՂԱՐՇԱԲԱԹ. այս անունով Վրաց աղբ. Բ. 95—96 ճա-

Նաչում է երկու անձ. առաջինն է Տիրան Բ-ի որդին և Արշակ Բ-ի եղբայրը. երկրորդը՝ Վարազդատի որդին, որ ուներ ևս երկու եղբայր Պապ և Արշակ անուններով. երեքը միասին թագավոր դարձան։—Առաջին Վաղարշաբաթը բոլորովին սուտ է. երկրորդը Վաղարշակ Բ-ն է։

* ՎԱՂԵՆՏԻՆԻԱՆՈՍ, ար. <լտ. Valentinianus? գործածվում է մի անգամ հին մատենագրության մեջ։

— Վաղենտիանոս Արշակունի, Հունաց Հերակլ կայսեր զորավարներից, Արևելյան բանակով արշավեց Պոլիս, Մարտինա կայսրուհուն և Հերակլակ որդուն գահազուրկ արեց և կայսր հռչակեց Կոստաս Բ-ին «641 թ.».—Սեբ. խբ։ Սպանվեց ժողովրդական մի ապստամբության ժամանակ (644 թ.)։

ՎԱՂԻՆ, իշխան Արծկէի, ըստ Ջամչ. Գ. 441 և Ազգապ. 2055, տե՛ս Մուրադշահ։ Նահատակվել է 1420 թ.։

ՎԱՂԻՆԱԿ, ար. ծագումն անհայտ. չի կարող լինել նախորդ Վաղին ձևից, որովհետև արմատը պիտի լիներ Վաղէն:

— 1. Վաղինակ, իշխան Սիւնեաց. սիրելին էր Խոսրով Բ-ի, մին այն վեց նախարարներից, որոնք նվաճեցին Աղձնեաց Բակուր ապստամբ բդեշխին. Վաղինակը ամուսնացավ Բակուրի միակ աղջկա հետ և ժառանգեց Աղձնեաց տունն ու բդեշխությունը։ Տիրան Բ-ին կուրացնելուց հետո՝ Պարսից թագավորը նշանակեց նրան Հայոց արևելյան բանակի սպարապետ. Արշակ Բ սպանեց նրան՝ Փառանձեմ թագուհու թելադրությամբ.—Բուզ. Գ. թ. Խոր. Գ. ժը, իդ.—սեռ. Վաղինեկայ՝ Բուզ. Գ. Թ։

— 2. Վաղինակ, իշխան Սիւնի, որդի Անդովկի, կրտսեր եղբայր Բաբիկ Սիւնւոյ՝ աներոջ Արշակ Գ-ի և հորեղբայր Վասակ Սիւնի մարզպանի, հաջորդ Սամի. օգնեց Ս. Մեսրոպին՝ լուսավորելու Սիւնիքը. սպանվեց իր եղբորորդի Վասակ մարզպանի քսությամբ, որ և այսպիսով գրավեց Սիւնեաց իշխանությունը (ըստ Բ. վրդ. Կիւլէսէրեանի, Եղիշէ, 254—255, նստել է 401—410 թթ).—Կոր. էջ 14 (գրված Վաղենակ). Բուզ. Ե. խբ. Խոր. Գ. խէ. Եղիշ. 106. Օրբ. ժբ, ժգ. Մեծոփ. 15.—սեռ. Վաղինակայ՝ Օրբ. ժդ։

ՎԱՂԽԱԹՈՒՆ, իգ. անծանոթ է վաղ արմատը։ Հիշված է մի անգամ ԺԶ դարի վերջում (Սիւրմէեան, La vie et la cult. 39)։

ՎԱՂՈՏ, ար. ծագումն անհայտ։ Հիշատակված ունենք մի անգամ։

— Վաղոտ, եպիսկոպոս Արշամունեաց, ժամանակակից Ներսես Բ կաթողիկոսի՝ «548—557 թթ.»։ Ստորագրում է այն թղթին.

որ միաբանական ժողովով գրեցին Ներսես կաթողիկոսը և եպիսկոպոսներն ու իշխանները նեստորականների դեմ.—Գիրք Թղ. ժէ։

ՎԱՂՈՒՂ, ար. ծագումն անհայտ. մի անգամ հիշված է՝

— Վաղուղ, որդի Յոհանի, իշխան Սիւնեաց (Զ դար).—Justi 347 ա։

ՎԱԼՈՒՐՁ, իգ. ծագումն խնձ անհայտ. մի անգամ հիշված ունենք՝

— Վալուրջ, կին Կոստանդ քահանայի և մայր Կոստանդ քահանա գրչի Մլէճում, 1307 թ.—Սիսուան 74։

— Վաղուրջ, մայր Կոստանդին քահանայի, որ Մլիճի վանքում գրել տվեց Պրոխորոն գիրքը, 1370 թ.—Manus. Brit. mus. 242 բ։

+ ՎԱՃԱՌԱԿԱՆ, ար. <հյ. վաճառական բառն է. մի անգամ հիշված է Վաճառական սարկավագ (hierodiakonus), որդի Վրթանէս Գառնեցու 1261 թ.—Justi 366 ա (թյուրիմացություն չէ՞ արդյոք)։

ՎԱՅԿՈՒՆ, ար. ծագումն անհայտ. մի անգամ ունենք հիշված՝

— Վայկուն, նշանավոր ավազակ, որ խռովում էր Հայոց երկիրը Տիգրան Բ-ի ժամանակ. իր գրաված զավառը կոչվեց Վայկունիք. Տիգրանը նվաճեց նրան՝ Պաղեստինի արշավանքից վերադառնալու ժամանակ (շուրջ Ն. Ք. 69 թ.).—Խոր. Բ. ժդ.—Վակոն՝ Սամ. անեց. 50։

+ ՎԱՅՐԵՆՈՐԴԻ, ար. <հյ. վայրենի+որդի բառերից. երկու անգամ հիշված է ԺԶ դարի՞ մի հիշատակության մեջ.—Ձեռ. Սանաս. 2 ա։

ՎԱՅՐ տիկին, կին Շնորհաւորի և մայր Անդրէաս երեցի, որ Եւդոկիայում օրինակեց Աւետարանը, 1463 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1925, 133)։

ՎԱՆ, ար. այս անունը ստուգաբանելով Մագ. Թղ. ժթ. դնում է՝ «վանօղն բազմաց»։ Խորենացու հնարած անուններից մին է։

— 1. Վան, թագավոր հայկազն, հաջորդեց Բազամին Ն. Ք. 371 թ. (Ջամչ. Ա. 121). նորոգեց Շամիրամակերտ քաղաքը, որ իր անունով կոչվեց այնուհետև Վան.—Խոր. Ա. լա. ՅՀ. կթ. գ. Մագ. Թղ. ժթ. Մխ. անեց. գ. Մխ. այրիվ. 18, 55. Վրդ. ե. Սամ. անեց. 46. Մին. համդ. 12.—բց. ի Վանայ՝ Սամ. անեց. 46. Մին. համդ. 12.—ի Վանէ՝ ՅՀ. կթ. գ։—Պահլավերեն Աշխարհագրական ցանկում (հմտ. Blochet, Liste géogr. էջ 3) կա «Վան քաղաքը հիմնվեց Վանի ձեռքով, որ էր որդի Գորսի» (պհլ. գրված), որ կարելի է շատ ձևերով կարդալ, որոնցից հրատարակիչը ընտրում է Վան։

— 2. Վան Օրբելեան, որդի Շաւե կամ Շալուէ Խաչենցու. ծա-

ռայության մեջ էր Սելճուքեան Ղիաթ-էդ-դին սուլթանի մոտ 1243 թ.—Ջամբ. Գ. 217 (ըստ իս՝ բնավ կապ չունի Վան անվան հետ, այլ կրճատված է Յովհան. Իվան, Վանէ անուններից)։

+ ՎԱՆԱԿԱՆ, ար. <հյ. վանական «վանքի միաբան» բառից. հնում քիչ գործածական, այժմ խափանված։

— 1. Վանական վարդապետ, տե՛ս Յովհաննէս Վանական վարդապետ։

— 2. Վանական եպիսկոպոս Բջնոյ 1051 թ.—Այրարատ 260։

— 3. Տէր Վանական, մի գյո՞ւղ է նվիրել Հայրավանքին, 1211 թ.—Սիսական 40, Սմբատեանց, Գեղարքունի 435։

— 4. Վանական վարդապետ, շինող և առաջնորդ Խորանաշատի վանից. հիշված է 1224 թվին, մի Աւետարանի հիշատակարանում։ Նույն Աւետարանը 1233 թվին թաթարները Տաւուշից Մուղան գերի են տանում և 3 տարի հետո, 1236 թվին, բերում Տփղիս, վաճառում «ի դրան սուրբ քառասնիցս», ուր Վանականը նորից գնում է իր հիշատակությունը (Թորոս Աղբ. Բ. 272, 275)։

— 5. Վանական, եպիսկոպոս Բջնոյ՝ 1246—1267 թթ.։ Գրիգոր եպիսկոպոսի հետ Կանոն գրեց 1251-ին, որ կաշառքով ձեռնադրություն չլինի.—Կիր. խա.—սեռ. Վանականի՝ հիշատ. 1267 թվից (տե՛ս Գ. Տ. Մկրտչ. Անան. Շիր. էջ 31), Ալիշան, Այրարատ 273 ա և 276. Ձեռ. Վեննետ. Բ. 312, Շողակաթ Ա. 31։

— 6. Վանական (կամ Վանակ), եպիսկոպոս Բջնոյ՝ 1358—1387 թթ. նահատակվեց Լանկթամուրի ավազակներից.—Մեծոփ. 19, Այրարատ 274, 276 բ, Տաշեան, Ցուց. 260, Ազգապ. 1971, Ջամբ. Գ. 422։

— 7. Վանական քահանա. սրա և Թումայ քահանայի համար Կիրակոս երեցը օրինակեց Շնորհալու Թղթերը, 1294 թ. (Ձեռ. էջմ. № 57)։

— 8. Վանական քահանայ, թուղթ էր կոկում, երբ Մխիթար քահանան արտագրում էր Աւետարանը՝ Որոտանի Աղիտու վանքում, 1276 թ.—Սմբատեանց, Երնջակ 201։

— 9. Վանական քահանայ, նորոգել տվեց Գետաշէնի Նշանաւոր Աւետարանը, 1325 թ.—Գ. արք. Յովս. Նիւթեր և ուս. Ա. 44, 61։

— 10. Վանական քահանայ մերձաւոր Սարգիս եպիսկոպոսի գրչի, որ օրինակեց Աւետարանը, 1416 թ.—Ձեռ. Թաւր. 31 բ։

— 11. Վանական վարդապետ (կամ կրոնավոր). գրիչ. օրինակել է Մայր Մաշտոցը, որ սկսել է Փոնձաթաղ գյուղում, ապա տեղից տեղ փախչելով ավարտել է Ջորեվանքում (Ջորոյ վանքում)

1498 թ.—Ձեռ. Կարին. 137, Սեդրակեան՝ Հայ. եկեղ. պատկերյարդ. 106. Խաղբակեանք 41, 237. նույն պիտի լինի նաև Գ. Տ. Պօղոսեան, Շանթի Հին աստ. էջ 39 հիշածը։

ՎԱՆԱՆ, դուստր Վարդի, քույր Գրիգոր միայնակեացի, որ Իտալիայի Salerno քաղաքում գրել տվեց մի ժողովածու, 1283 թ.—Ձեռ. Մխիթ. 10 բ։

+ ՎԱՆԱՏՈՒՐ, ար. <հյ. վաճf+տուր բառերից, իբր «հյուրընկալ, հյուրասիրություն ցույց տուող»։

— Վանատուր դիք, հին հայոց աստվածներից մին.—«Հյուրասէր որմզդական դիցն Վանատրի». Բ. Մակ. գ. 2.—«Հյուրընկալ դիցն Վանատրի», Ագաթ. § 836.—Ալիշան, Հին հաւատք հայոց, 302—307։

ՎԱՆԴՐԱՄ(Ի), ար. հիշված է 1621 թ.—Manus. brit. mus. 23 ա։

ՎԱՆԵԿ, կին Գրիգորի և մայր Աւետիք քահանայի, որ Հարք գավառի Դոնեվանք գյուղում, Յովհաննէս քահանային գրել տվեց մի Աւետարան, 1316 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 464։

+ ՎԱՆԵՆԻ, իգ. կարծում եմ վանակն. ակն վանի. կոչված դոհարեղենի անունից. Տե՛ս և Վանէ:

— 1. Վանենի, դուստր Սաթուն Աթաբէգի, կին Զաքարէ Դ սպասալարի (ԺԴ դար).—Հայապ. 447։

— 2. Վանենի, դուստր Վասլի՝ եղբոր Գրիգորիսի և Ներսէսի Շնորհալվոյ, ամուսնացավ Սասնո Վիգէն իշխանի որդի Զորտուանել Գ-ի հետ, մեռավ երիտասարդ հասակում 1165 թ.—Թորոս աղբ. Բ. 312. Հայապ. 394 (գրված Վանինէ)։ Որ և Վանէն՝ Թորոս աղբ. Ա. 117։

— 3. Վանենի, դուստր Ջաջուռ Բ իշխանի Խաղբակեանց և քույր Հաղբակ Բ-ի Պռօշեանց. կին Կուկ իշխանի որդւոյ Աբասայ Սևադեանց. «բարեպաշտ իշխան Ջաջուռ և ի սմին որդի Այեսալ քրիստոսասէրս Վանինի» (կեղծված ավանդություն). այս Վանենին հիշված է 1222 թ. (Այրարատ 269). ստացել է մի Աւետարան (որ գրել է 1232 թ. Գետկայ վանքում Ստեփաննոս գրիչը) և նվիրել Հաւապտուկ վանքին։—Բարխ. Պատմ. Աղուանից 235—236. Յովսէփ. Խաղբակեանք 27։—Ստացել է և մի ուրիշ Աւետարան 1224 թ. և նվիրել Խորանաշատի Ս. Աստուածածին վանքին (Թորոս աղբ. Բ. 272, Խաղբակեանք 34 և 80). մեռել է 1269 թ. իր շիրիմը գտնվում է Սևանում (տե՛ս Խաղբակեանք 81).—Յովսէփեան, Նյութեր և ուս. Ա. 9։

— 4. Վանենի, դուստր Վահրամի և քույր Կոստանդին Ա կաթողիկոսի. հիշված է 1256 և 1262 թ.—Նաթանեան, Տեղեկ. Սև-

բատ. 83, Թորոս աղբ. Ա. 187, Ձեռ. Հալէպի, Բ. 140 ա, Ազգապ. 5527։ Ձեռ. Սեբ. (ՀԱ 1924, 333)։

— 5. Վանենի, Թվի կին պարոն Սմբատի, որ հիշված է Գլաձորի վանքում գրված մի Աւետարանի հիշատակարանում, 1334 թ.— Թորոս աղբ. Բ. 375։

ՎԱՆԷ, իգ. ծագումը տե՛ս Վաննի. մի անգամ միայն ունենք՝

— Վանէ, դուստր Կիւրիկե Գ-ի, քույր Ռուսուքանի, Մամքանի և Աբաս Բ Թագավորի Կիւրիկեանց, կին Դաւթի՝ որդւոյ Աբանի. հիշվում է 1189 թվի արձանագրության մեջ.—Մուվսէսեան, Լոռիի Թգ. պատմ. 71։

— Վանէն (հոգով) ար. 1627.—Վասպ. 874։

— ՎԱՆԷՍ, ար. 1588 թ.—Ձեռ. Վասպ. 711։

— 1. Վանէս, 1613 թ.—Ձեռ. Վասպ. 846։

— 2. Վանէս, 1648 թ.—Ձեռ. Վասպ. 436։

ՎԱՆԻԿ, ար. <Թերևս Յովհաննիկ անունից է կրճատված։ Այս անունով ունինք Վանկոյ կամ Վանկու Ս. Նշան վանքը։ Նույն անունից եմ կարծում՝

— 1. Վանիկ գանձասաց. ունի «Գանձ Հոգեգալստեան», որի նախատառերը յօդում են «Վանիկա» (Տաշեան, Ցուց. 436 բ, որ և համարում է Յովհաննէս Վանական վրդ.)։

— 2. Վանիկ, ար. հիշված կա Ձեռ. Վենետ. Ա. 414, թիվն անհայտ։

— 3. Վանիկ, ? 1508 թ.—Ձեռ. Վասպ. 633։

ՎԱՆԻՍ, ար՞.—Ձեռ. Վասպ. 392։

ՎԱՆԼԱԼԱ, ար. <վանի՞+լալա «կակաչ» բառերից, եթե ընթերցումը ճիշտ է. մի անգամ գտնում եմ հիշված 1655 թ. (Արցախ 116)։

+ ՎԱՇՏԱԿ, ար. <անշուշտ հյ. վաշտ «գունդ» բառից։ Մագ. Թղ. ժԹ. ստուգաբանել ուզելով այս անունը, ասում է՝ «Վաշտակ, որ ըստ անուանն վաշեակ?».—Կա նաև պրս. vašt «գեղեցիկ». հմմտ. Vašdakku երկու մար իշխան ասորեստանցոց շրջանից (Justi 359 ա)։

— 1. Վաշտակ, Հայկազն նահապետ, հաջորդ Հաւանակի. Ն. Ք. 1403 թ. (Ջամչ.). Խոր. Ա. ժԹ. Կղկնտ. Ա. ժե (հրտր. Էմինի՝ Վշտակ), Մագ. Թղ. ժԹ. Մխ. այբիվ. 17, 50. Մխ. անեց. գ. Սամ. անեց. 45. Մին. համղ. 9.—Վրաց աղբ. Ա. 74։

— 2. Վաշտակ, իշխան (հուն. Աւաստակ Թէոփիլակտոս), պատրիկ Հունաց կայսերական պալատում։ Վասիլ Հայկազն կայսեր

հետ արշավեց այլազգիների վրա, և երբ թշնամիները Վասիլին բռնելու վրա էին, Վաշտակը կայծակի պես հասնելով՝ ազատեց նրան. իր որդին էր Ռոմանոս Լակապէն կայսր Հունաց (Ժ դար).— Զամչ. Բ. 817։

ՎԱՉԱԳԱՆ, ար. (գրված նաև Վաչական). այսպես Կղկնտ. հրտր. Էմինի գրում է միշտ կ-ով, մինչ հրտր. ՇաՀՆ.՝ միշտ գ-ով. անշուշտ իրանյան անուն՝ կազմված Վաչակ, Վաչէ ձևից. անծանոթ է մնում վերջավորությունը. համտ. Վաչական նախարար Պարսից՝ Բուզ. Դ. խ։ Այս անունը գործածական է այժմ էլ Կովկասում, մանավանդ Ղարաբաղում, ուր և ստացել է Վարժական ձևը։

— 1. Վաչագան Ա. քաջ, թագավոր Աղուանից.—Կղկնտ. Ա. գ. ժե. Գ ժ. Մխ. այրիվ. 23. Ուխտ. Բ. կե. (գրված Վաջագան). Կիր. ը.—սեռ. Վաչագանայ՝ Կղկնտ. Ա. ժդ. Գ. իգ։

— 2. Վաչագան Բ. թագավոր Աղուանից. հաջորդ Ուռնայր Բ-ի (ըստ ՇաՀՆ. կոչվում է Յաւչագան) Դ դար.—Կղկնտ. Ա. ժե.—Յաւչաքան՝ Կիր. ը։

— 3. Վաչագան Գ. Բարեպաշտ, թագավոր Աղուանից. Վաչէ Բ-ի եղբոր՝ Յազկերտի որդին էր. գահ բարձրացավ Վաչէ Բ-ից հետո տիրող 30 տարվա անիշխանությունից հետո. ժամանակակից է Պարսից Պերոզ և Վաղարշ թագավորներին (Զ դար)։ Ինքը նախ մոգ էր, հետո քրիստոնյա դարձավ և հաստատեց նոր բարեկարգություններ. ջնջեց մատնահատության աղանդը և ուրիշ հեթանոսական մնացորդներ։ Իր օրով գտնվեցին Զաքարիայի, Պանդալէոնի և Ս. Գրիգորիսի մասունքները։ Շինել է Ամարասի մատուռը. գումարել է Աղուէնի եկեղեցական ժողովը։ Սրան է գրել Յովհ. Բ կաթուղիկոսը («557—574 թթ.») շրջաբերական մի կոնդակ նեստորականների դեմ.—Կանոն. 198. Կղկնտ. Ա. է, ժդ—ժը, ի, իա (հրտր. ՇաՀՆ.), իգ, իե, իզ, Գ իգ, Աբր. Մամիկ. էջ 1. Կիր. ը. Յայսմ. սեպտ. 21, մրտ. 6 (Տաշեան, Ցուց. 58 բ համարում է կաթուղիկոս Աղուանից!). —Օրբ. ի. Մխ. այրիվ. 63։—Յաւչագան՝ Մխ. այրիվ. 23.—սեռ. Վաչագանի՝ Պետր. եպս. Սիւն. էջ 22.—սեռ. Վաչագանայ՝ Կանոն. 192, 198, բց. ի Վաչագանայ՝ Կղկնտ. Ա. ժդ—ժը, իա, իգ, իդ, իզ (ժզ և իգ ըստ ՇաՀՆ.). Բ. ե, Գ. ժ. Յայսմ. սեպտ. 5. մրտ. 6. Կիր. ը. Տաթե. Հարց. 545. Օրբ. ի, իա.—ի Վաչագանէ՝ Կղկնտ. Ա. ժզ (հրտր. Էմինի).—գրծ. Վաչականաւ՝ Կղկնտ. Ա. ժէ (հրտր. Էմինի)։ Իր կյանքը տե՛ս Բարխ. Պատմ. Աղուանից 80—84։ — Լէօ, Անի, էջ 122 ասում է, թե Ղարաբաղի Ջրաբերդ գավառում, Եղիշէ առաքեալի վանքի կողքին, կա մի մատուռ, որի դռան ճակատին

գրված է. «Այս է տապան Վաչագան թագաւորին»։—Հայտնի չէ, թե ո՛րն է։

— 4. Վաչագան-ի-Պատրիկեան, Ծռանչահիկ տոհմից, իշխան Աղուանից. պատերազմեց Սլիման արաբ զորավարի հետ միասին՝ խազիրների դեմ (Ը դար).—Կղկնտ. Գ. ժէ։

— 5. Վաչագան, թագավոր Աղուանից Կապանի. սրան հաջորդեց որդին Գողազգակ (Գոշակտակ) և սրան էլ Փիլիպոս՝ որ օծեց Հայոց Աշոտ Գ (954—977 թթ.) Ողորմած թագավորին.—Վաչագան՝ Ուռհ. 231.—սեռ. Վաչագանայ՝ Ուռհ. 4։

— 6. Վաչագան, իշխան Գորոզուաց (Աղուան), հիշված է 962 թ.—սեռ. Վաչագանայ՝ Անան. այսր. 144 ա։

* ՎԱՉԱԿ, ար. <պհլ. vačak «ձագուկ, տղա» բառից, որ է պրս. بچه bača ձագ, բելուճ. bačak տղա. — Justi 342 բ։

— Վաչակ անապատական, աշակերտ Գինդի (Մեծն Ներսէսի մահից «373 թ.» հետո).—Բուզ. Զ. ժզ։

ՎԱՉԱՆ (հոդով Վաչանն), ար. ծագումն անհայտ. մի անգամ ունինք՝

— Վաչան, որդի սանամօր Յովհաննէս քահանա Գանձակեցու, որ Տփղիսի Կրծանիս գյուղում օրինակեց գանձարանը, 1436 թ.—Ձեռ. Դաղեան, Ա. 27 բ։

* ՎԱՉԷ, ար. կրճատ ձեն է Վաչակ անվան. ժղ. պրս. vače «ձագուկ». կա նաև վրաց. Վաչէ. օր. Վաչէ թագավոր Վրաց. Մխ. այրիվ. 22, Վաչէ (գրված Վաջէ) իշխան Վրաց (Տաշեան, Ցուց. 802, ըստ Մեսր. եր.).—Ծագումը տե՛ս նաև ՀԱ 1911, 526։ Այս անունը այժմ էլ երբեմն լսվում է։

— 1. Վաչէ Արծրունի, որդի Խուրէնի. Արշաւիրի հետ գնաց Ասորոց Ներսեհ թագավորի մոտ և պալատում պաշտոնի անցավ. չարախոսվելով փախան Պարսից թագավորի մոտ և Արտաշէս Բ-ի հետ վերադարձան Հայաստան (85 թ.).—Արծր. Ա. է.—սեռ. Վաչէի՝ Արծր. Ա. է, ը.—պտմ. զՎաչէէ՝ Արծր. Ա. է։

— 2. Վաչէ, թագավոր Վրաց, որդի Ռևի, թոռ Հայոց Վաղարշ թագավորի, հաջորդելով իր հորը՝ նստավ 213—231 թթ. օգնեց Հայոց Խոսրով թագավորին՝ պատերազմելու Սասանեան Արտաշիր թագավորի դեմ (Mourier, Hist. de Géorgie, էջ 94, 98)։

— 3. Վաչէ, նահապետ Մամիկոնեան, որդի Արտաւազդ Մամիկոնեանի, զորավար Խոսրով Բ-ի («330—339 թթ.»), որի հրամանով ջնջեց Մանաւազեան և Որդունեան ցեղերը. չարաչար հաղթեց Մազքթաց և նրանց Սանեսան թագավորին սպանեց, քաջությամբ

կռվեց ու վանեց Պարսից բազմաթիվ արշավանքները, որոնցից մեկի մեջ նահատակվեց.—Բուզ. Գ. դ, է—թ, ժա. Մեսր. եր. 11, 120. Վրդ. իր. Յայսմ. մրտ. 6 (տպ. Վաչէ).—սեռ. Վաչէի՝ Բուզ. Գ. ը, ժա. Մեսր. եր. 11, 17. Ասող. Բ. ա.—գրծ. Վաչէիւ՝ Բուզ. Գ. ը։

— 4. Վաչէ Արծրունի, Հայր Մարդպետի քսութեամբ և Տիրան Բ-ի («339—350 թթ.») հրամանով ցեղովին կոտորվեց.—սեռ. Վաչէի՝ Բուզ. Գ. ժը. Արծր. Ա. ժ։

— 5. Վաչէ, իշխան Ամատունեաց, ուղեկցեց Մեծն Ներսէսին Կեսարիա գնալու առթիվ՝ կաթողիկոսական ձեռնադրություն ստանալու համար «353 թ.».—Մեսր. եր. 25։

— 6. Վաչէ Ա թագավոր Աղուանից, հաջորդեց Վաչագան Ա-ին.—Կղկնտ. Ա. ժե. Գ ժ. Կիր. ը. Մխ. այրիվ. 23։

— 7. Վաչէ Մամիկոնեան, հրամանով Վարազդատ թագավորի («374—378 թթ.») նշանակվեց նահապետ Մամիկոնեանց՝ Մուշեղի մահից հետո. բայց երբ Մանուէլը դարձավ Պարսկաստանից, նահապետական իշխանությունը հանձնեց նրան։ Մերուժանի դեմ պատերազմի ժամանակ՝ ձիու տակ մնալով մեռավ.—Բուզ. Ե. լէ, խգ.—սեռ. Վաչէի՝ Բուզ. Ե. խգ։

— 8. Վաչէ, իշխան Արծրունի, ժամանակակից Արտաշէս Գ-ի «432» թվին պատգամավոր գնաց Պարսից Վռամ թագավորի մոտ խնդրելու, որ կաթողիկոսացնե Ս. Սահակին.—Խոր. Գ. կե. Արծր. Ա. ժա.—սեռ. Վաչէի՝ Արծր. Ա. ժա։

— 9. Վաչէ Բ, թագավոր Աղուանից, հաջորդ Եսուաղէնի. Յազկերտի ժամանակ ուրացավ քրիստոնեությունը, բայց դարձի գալով ապստամբեց Պերոզ թագավորի դեմ. թագավորությունից հրաժարվելով՝ ճգնավոր դարձավ։ Սրան է գրել Գիւտ կաթողիկոսը «461—478 թթ.» երկու հորդորական և գովաբանական թուղթ։ Շինել է Պերոզապատ քաղաքը, որ է Պարտաւ.—Կղկնտ. Ա. ժ, ժա, ժդ. Կիր. ը.—սեռ. Վաչէի՝ Կղկնտ. Ա. ժ, ժե, ժէ, ժը.—բց. Վաչէէ՝ Կղկնտ. Ա. ժե, ժզ. Մխ. այրիվ. 62.—գրծ. Վաչէիւ՝ Կղկնտ. Ա. ժդ։

— 10. Վաչէ, իշխան և կուսակալ Ջարևանդ գավառի, հիշված է Աշոտ Ողորմածի կեղծ նվիրագրում, 976 թ.—Սմբատեանց, Երընջակ 420։

— 11. Վաչէ զորավար Տայոց Դաւիթ Կիւրապաղատի, պատերազմեց Ատրպատականի Մամլան ամիրայի դեմ «998 թ.».—Ուռհ. 36։

— 12. Վաչէ Ա կամ Վաչուտ, նախահայր Վաչուտեան տոհմի, հայր Սարգիս Քուրդի և պապ հաջորդ Վաչէի Բ Վաչուտեանց.—Այրա-

րատ 162 (Արձ.), 253, 261. գնեց Աշկունծ գյուղը Շահնշահի որդի Իվանէից և նվիրեց Սաղմոսավանքին 1191 թ.—Բանասէր 1903, 31։

— 13. Վաչէ իշխան, որի տապանաքարը մնում է 1201 թվից.— Տաշեան. Ցուց. 984։

— 14. Վաչէ, որդի Հասանի Արամանեաց, եղբայր Տիթվասանի. հիշված է Հաղբատի մի արձանագրության մեջ 1201 թ.— Justi 342 բ։

— 15. Վաչէ իշխան, նորոգել է Կեչառուի Ս. Գրիգոր Լուսաւորիչ վանքը 1223 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 138։—Պետք է լինի Վաչէ Բ։

— 16. Վաչէ պարոն, իշխան Արարատեան գավառի Սերկևլի գյուղում, 1441 թ.—Հրար. Ազաթ. 1909 թ. յուշ. էջ ԽԸ։

— 17. Վաչուտ, որդի Վաչէի Բ և թոռ Սարգսի-Քուրդ Ա Վաչուտեանց.—Քուրդ Բ մեծի եղբայրն է և հիշված է 1213 թ.—Այրարատ 253, 261։

— 18. Վաչէ Բ, որդի Սարգսի Քուրդ Ա-ի Վաչուտեանց. Զաքարէ սպասալարի կողմից կարգված էր վերակացու Արագածոտան, Շիրակի և Անբերդի. կոչվում է իշխանաց իշխան. շինեց զանազան վանքեր, ի միջի այլոց նաև Յովհաննավանքը, ուր և թաղվեց։ Կինն է Մամախաթուն (№ 2), որ շինեց Սաղմոսավանքի և Տեղերի եկեղեցիները 1232 թ. այս թվին էլ մեռել է.—Զքր. սարկ. Գ. 12—14.— տես. Վաչէի՝ Զքր. սարկ. Գ. 15.—Արձ. Այրարատ 146—147, 156, 162, 167—168, 253—254, 255, 261, 262. Բանաս. 1903, 29, 31. Յովսէփեան, Մի էջ հայ արուեստի 18, ZAPh 2, 47 (ուր կա Սաղմոսավանքի իր մի արձանագրությունը՝ 1215 թվից), 48. Ջամբռ, 289, 291 (տալիս է Սաղմոսավանքի և Լուսաւորչի կանթեղի պատմությունը)։

— 19. Վաչէ, որդի Քուրդ Բ իշխանի Արագածոտնի, որի (Քուրդի) մոտ իջևանեց Հեթում Ա թագավորն իր ուղևորության ժամանակ «1254 թ.».—Կիր. ծզ։—Թոռն է Վաչե Բ-ի. եղավ վաղամեռիկ.—Այրարատ 258։

— 20. Վաչէ ոմն, հիշված Ձեռ. Էջմ. № 945 (ԺԵ դար)։

— 21. Վաչե իշխան, շինեց Յովհաննավանքի կաթողիկէն (տե՛ս Էջմ. № 936 Ճառընտրի յիշատ. 1687 թվից)։

— 22. Ուշ ժամանակի հիշատակություններ են նաև Վաչ ար. Ձեռ. Վասպ. 640 (1509 թվից կամ ավելի ուշ), Վաջոյ ար. Թվականն անհայտ (Ձեռ. Վասպ. 441)։

ՎԱՐԳՈՇ, ար. ծագումն անհայտ. մի անգամ հիշատակված ունենք՝

— Վարգոշ Գնթունի, Ակոռիի պատերազմից հետո սուտ գույժ տարավ Վահան Մամիկոնեանին՝ թե հայերը չարաչար հաղթվեցին «481 թ.».—Փարպ. կթ։

ՎԱՐԷՆ, ար. -էն վերջավորությունից երևում է, որ պարսկերեն փաղաքշական անուն է. ծագումն անհայտ. մի անգամ հիշված ունինք՝

— Վառէն իշխան Մաղխազունեան տան. մին է այն իշխաններից, որոնք ուղեկից եղան Մեծն Ներսէսին՝ Կեսարիա օծման գնալու ժամանակ («353 թ.»).—Մեսր. եր. 25։

— Վառենար, կին Խլղաթի և մայր «ոսկի այրիչ» Քամալի, որ գնեց մի հին Աւետարան 1709 թ.—Ձեռ. Վասպ. 265։

* ՎԱՐՎԱՐԷ, իգ. <յն. Варвара անունից, որ երևի թե «բարբարոսուհի, ոչ-հելլեն» իմաստն ունի։ Սրանից են նաև գերմ. անգլ. Barbara, ռուս. Варвара, փաղք. Ва́ренька, ֆր. Barbe։ Այս անունով հայտնի է Վառվառէ կույս և նահատակուհի, որի վկայաբանությունը մտել է Յայսմաւուրքի մեջ։ Գործածական է այժմ. հնագույն վկայությունը ԺԷ դարից (Տաշեան, Ցուց. 718 և Կամենից 177 հիշում են Վառվառ ոմն՝ մեծ մայր՝ 1624 թվին)։ Փաղաքշականն է Վարիկ, որ հիշված է ԺԷ դար (Ձեռ. Սանաս. 7 բ). կրճատ Վառվառ. ռուսական ձև Վարինկա, շատ կրճատ՝ Վառ 1647 թ. (Ձեռ. Թաւր. 101 բ)։

— 1. Վառվառէ, կին Հակոբոս քահանայի և մայր Գևորգ վարդապետի, որ Սով ամրոցում գրել տվեց մի Աւետարան, 1151 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 748։

— 2. Վառվառ, դուստր Հովսէփ քահանայի և քույր Ալեքսիանոս եպիսկոպոսի, որ Արքայից վանքում օրինակեց Աւետարանը, 1486 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 11 ա։

— 3. Վառվառ, իգ. 1670 թ.—Ձեռ. Վասպ. 938։

— 4. Վառվառէ, կույս, Կարնո Դվնիկ գյուղից, Զուրիկեանց ընտանիքից. նշանված էր մի երիտասարդի հետ և մոտ էր պսակը. մի թուրք սիրահարվեց նրան և զրպարտեց, թե իրեն խոսք էր տված իսլամանալ։ Հավատը ուրանալով նահատակվեց թուրքերի ձեռքով («1810 թ. հուլիսի 16»).—Նոր վկ. 631—674. Ազգապ. 3622. Փիրղալէմեան, Ջրոս ընկ. 74—80։

* ՎԱՍԱԹ, ա՞ր. <արաբ. وسات vasaṭ «միջակ» բառից. մի անգամ գտնում եմ. հիշված 1599 թ. Սիսական, 423։

* ՎԱՍԱԿ, *որ. <իրան.* *Vasak *անունից, որ տառադարձված է* Οὐασάκης, Βαττάκης, *լա.* Vasaces. *այսպես Վասակ՝ հրամանատար պարթևական հեծելազորի (Տակիտոս) և այլն։ Ըստ* Justi 538 *բ կրճատված է զնդ.* Vaso, xšaθra *«ինքնիշխան, ազատ» բառից.— Հիբշ. 80։— Գործածված է մեր մեջ սկսած Ա դարից մինչև ԺԹ դար. այժմ խափանված է և Վասակ ստացել է «մատնիչ, դավաճան» իմաստը. արևմտահայոց մեջ բնավ ամենևին չի գործածվում. բայց զարմանալի է, որ Կովկասում մինչև ԺԹ դարի վերջը դեռ կար այս անունը։*

— 1. Վասակ, *հայ, առաջնորդ* Arrianos-*ի՝ Ալանների դեմ պատերազմում.—*Justi *357 բ։*

— 2. Վասակ, *զորավար Արտաւազդ թագավորի. Պարթևաց հրամանատար Բակուրի հետ (որ Արտաւազդի քեռայրն էր) արշավեց Հռովմայեցոց դեմ և տիրեց Ասորիքին ու Պաղեստինին (Ն. Ք. 40 թ.).—Լէօ, Պատմ. Հայոց, Ա. 430։*

— 3. Վասակ, *հրամանատար Հայոց հեծելազորքի, Պարթևաց Վաղարշ թագավորի կողմից պատգամավոր գնաց Հռովմայեցոց Պետրոս պարտված զորավարի մոտ ի Հռաղամէա և առաջարկեց թողնել Հայաստանը (62 թ.).—Գաթըրճ. Տիեզ. պատմ. Բ. 119. Լէօ, Պատմ. Հայոց, Ա. 465։ Տե՛ս նաև ՀԱ 1911 թ. 521։*

— 4. Վասակ *Մամիկոնեան, զորավար Հայոց՝ Տիրան Բ թագավորի («339—350 թթ.») և Արշակ Բ-ի («350—368 թթ.») օրովնըղավ ուղեկից Փառէն կաթուղիկոսին՝ Կեսարիա ձեռնադրության գնալու ժամանակ։ Երբ Շապուհը կանչեց Արշակին Պարսկաստան՝ դաշինք կնքելու համար, Վասակը ևս նրա հետ էր և քաջաբար սպանեց Պարսից շահախոռապետին, որ հանդգնել էր վիրավորական խոսք ասել Հայոց թագավորին։ Իբրև օգնական Շապուհի՝ Մծբինի մոտ ջարդեց Հոնաց զորքը։ 28 անգամ ճակատեց Պարսից դեմ և հաղթեց։ Արշակի հետ գնաց Պարսկաստան, ուր հանդգնաբար պատասխանելով Շապուհին՝ մորթազերծ եղավ՝ «368 թ.».—Բուզ. Գ. ժզ, ժը. Դ. բ, ժա, ժզ, ժը—իե, իէ—լէ, լթ—խգ, խե—խէ, ծգ, ծդ. Ե լէ. Խոր. Գ. իե (համարում է զինակիր Արշակի, որի հրամանով սպանեց իր եղբայր ապստամբ Վարդանին).—Արծր. Ա. ժ. Մեսր. եր. 17, 60, 61, 66, 67, 68, 120.—Ասող. Բ. ա.—սեռ.* Վասակայ՝ *Բուզ. Դ. ժա, ժզ, ժը, ի, իա, իբ, իդ, լ, լզ, լը, խա, խէ, խը, ծ, ծե, Ե. ա, բ. Խոր. Գ. իե, լէ. Կղկնտ. Ա. ժգ. Մեսր. եր. 17, 52, 60, 68, 69, 117, 119, 120. Ասող. Բ. ա.—բց.* ի Վասակէ՝ *Բուզ. Դ. խթ. (ցանկում* ի Վասակայ).—*գրծ.* Վասակաւ՝ *Բուզ. Դ. իդ, խթ, ծա։—*

Վրաց. աղբ. Ա. 75 կոչում է Վասա։—Առանձին մենագրություն Վասակի մասին, բայց ժողովրդական ձևով, տե՛ս Գիտ. նյութ. ժող. № 1, էջ 227—249։

— 5. Վասակ Մամիկոնեան, Ստորին Հայոց հունական բանակի սպարապետը՝ Պարսից սահմանի վրա. Վասակ Սիւնին դիմեց սրան և նրա միջոցով կարողացավ հեռու պահել հույներին՝ օգնելու հայոց՝ ընդդեմ Հազկերտի, «450 թ.».—Եղիշ. 72. Ուխտ. Բ. ա։

— 6. Վասակ Սիւնի, որդի Բաբիկի. օգնեց Ս. Մեսրոպին՝ տարածելու լուսավորությունը Սիւնիքում։ Քսությամբ սպանել տվեց իր հորեղբայր Վաղինակին և ժառանգեց Սիւնեաց նախարարությունը։ Նշանակվեց Պարսից կողմից մարզպան Վրաստանի՝ «440 թ.» և հետո Հայաստանի «441 թ.», վարեց 10 տարի «441—451 թթ.»։ Բռնեց Հազկերտի կողմը և գլուխ կանգնեց ուխտապահների հակառակ կուսակցության։ Վարդանանց պատերազմից հետո, ամբաստանվելով հայերից, Պարսից Դուռը կանչվեց և տերության առաջ հանցավոր գտնվելով՝ գցվեց բանտ, ուր մեռավ։ (Մանրամասն տե՛ս Բ. վրդ. Կիւլէսէրեան՝ Եղիշէ, էջ 255—258, որ նրա կյանքը դնում է 387—455 թթ., իշխան դարձավ 410 թ., գահից զրկվեց 451 թ., բանտարկված էր դեռ 452 թ., մեռավ «454—455 թթ.».—Կոր. էջ 15. Փարպ. իգ, իե, լա—լդ, լզ, խբ, խե, խզ, Եղիշ. 32, 54, 72, 73, 82, 89, 94, 100, 101, 103—105, 108. Խոր. Գ. ծդ, Ուխտ. Բ. ա. Կղկնտ. Բ. բ, գ. Արծր. Բ. ա. Յայսմ. յուլ. 31, օգ. 7. Վրդ. իէ, իթ. Օրբ. ժբ, ժգ, ժզ. Մեծոփ. 15. Տաթև. ձմ, լբ, խգ. Սիմ. ապար. 39, 41.—սեռ. Վասակայ, բց. ի Վասակայ՝ Փարպ. ի, իբ, լ—լդ, լզ, խբ, խե, խզ, ծթ. Եղիշ. 49, 56, 57, 60—62, 70, 75, 94—96, 98, 100, 101, 103. Կղկնտ. Բ. բ. Կանոն. 59. Յայսմ. յուլ. 31, օգ. 7. Սամ. անեց. 71, Կիր. 20. Վրդ. իէ, Օրբ. ժբ, ժգ, ժե, ժզ, լբ, կդ, հ. Տաթև. ձմ, խգ. Սիմ. ապար. 39, 40.—ի վասակէ՝ Սիմ. ապար. 49, 55.—գրծ. Վասակաւ՝ Փարպ. լբ. Եղիշ. 96. Յայսմ. յուլ. 31. Ասող. Բ. բ։

— 7. Վասակ Արծրունի, որդի Մերշապուհի և թոռն Մերուժան ուրացողի. Արշակ Գ-ի հետ գնաց Յունահայաստան (384 թ.) և Խոսրով Գ-ի ժամանակ վերադարձավ։ Հայրն է Աղան Արծրունու (որ աշակերտն էր Ղազար Փարպեցու) և եղբայրը Տաճատ Արծրունու, որ Յազկերտի բանտարկած նախարարներից մեկն էր։ Վարդանանց պատերազմից հետո գնաց ծառայելու կայսեր Դուռը, ուր և մեռավ Լևոն Ա (457—474 թթ.) կայսեր օրով.—Արծր. Ա. ժա. Բ. բ.—սեռ.

Վասակայ՝ Փարպ. գ. Արծր. Ա. ժա, Բ. ա, բ։ (Տե՛ս և Վռամ մեծ իշխան)։

— 8. Վասակ Սահառունի, Ակոռիի հաղթանակից հետո սուտ գույժ տարավ Վահան Մամիկոնյանին, թե հայերը չարաչար հաղթվեցին «481 թ.».—Փարպ. կթ։

— 9. Վասակ սեպուհ Մամիկոնեան, որդի Հմայեակի և եղբայր Վահան Մամիկոնեանի. մասնակցեց նրա ապստամբական կռիվներին. մեռավ Վրաց պատերազմում՝ «482 թ.».—Փարպ. կը, կթ, հգ, հէ. Ասող. Բ. բ. Վրդ. իթ. Օրբ. ժէ. Մխ. այրիվ. 63. Սիմ. ապար. 61, 63.—սեռ. Վասակայ՝ Փարպ. կգ, կը, հգ, հդ, զդ.—գրծ. Վասակաւ՝ Փարպ. հդ։

— 10. Վասակ Մամիկոնեան, հայր Վարդան Բ Մամիկոնեանի (Զ դար).—սեռ. Վասակայ՝ Սեբ. բ. Ասող. Բ. բ. Սամ. անեց. 75. Վրդ. լբ. Օրբ. իդ (ըստ Չամչ. Բ. 283՝ որդի Վարդ Մամիկոնեանի)։

— 11. Վասակ Սիւնի, նախարար Սիւնեաց 494—505 թթ. հաջորդեց Վռամին (Զ դար).—Օրբ. ժգ. Justi 358 ա։

— 12. Վասակ, փեսա Յովհան Արշակունու և քեռայր Արտաւանի. երբ Յուստինիանոս կայսեր Բուզ զորավարը խնջույքի մեջ դավաճանությամբ սպանեց իր մտերիմ բարեկամ Յովհան Արշակունուն, Վասակն էլ Արտաւանի հետ փախավ Պարսից Խոսրով թագավորի մոտ և գրգռելով նրան՝ պատերազմի դուրս եկավ Հունաց դեմ (538 թ.), բայց երկարատև կռիվներից ձանձրացած՝ գնացին Պոլիս և մտան կայսեր ծառայության մեջ (542 թ.).—Չամչ. Բ. 243—246։

— 13. Վասակ, տե՛ս Գիւտ № 6 վանահայր (Զ դար).—Օրբ. ի.—սեռ. Վասակայ՝ Օրբ. ի։

— 14. Վասակ Արծրունի, որդի Սահակի. Կեսարիոյ հունական զորավար էր. Խոսրով-Փոկասեան կռիվների ժամանակ, երբ Կեսարիան գրավվեց, սա էլ բռնվեց և սպանվեց (շուրջ 602 թ.).—Սեբ. իգ։

— 15. Վասակ, որի որդին է Գրիգոր իշխան, մի այլ որդին X, որի որդին Գրիգորաս շինեց Մաստարայի եկեղեցին (շուրջ 645 թ.).—Արձ. Այրարատ 135։

— 16. Վասակ պատրիկ, Կոստանդ կայսեր կողմից նշանակվեց հաջորդ Մժէժ Գնունու (Թէոփանէս և Անաստաս հույն պատմիչները կոչում են նրան Վասակնադէս). քիչ ժամանակ հետո ապստամբեց Կոստանդ կայսեր դեմ (նրա 11-րդ տարին, որ է 652 թ.) և անցավ արաբների կողմը։ Կայսրը արշավեց Կեսարիա՝ նրա դեմ,

*բայց հաղթվեց և Հայաստանի տիրապետությունից ձեռնթափ եղավ։ Արաբները լսելով, որ Հունահայաստանի հայերը քշել են հույներին, իրենք էլ եկան Մեծ Հայք և Վասակի խնդրանոք գրավեցին երկիրը առանց արյունահեղության (653 թ.).—Ջամչ. Բ. 354։*

*— 17. Վասակ Բագրատունի, որի որդին Աշոտ (կուրացեալ) Մրուան ոստիկանից պատրիկ կարգվեց «715 թ.» Աշոտ Մսակերի պապի հայրն է և Սմբատ Խոստովանողի պապի պապը.—սեռ. Վասակայ՝ Ղև. իա. Ասող. Բ. բ, դ. Վրդ. խդ։*

*— 18. Վասակ պատրիկ, օգնական Արտաւազդ կայսեր. միասին քաշվեցին Պիղու, բայց Կոստանդին Կոպրոնիմոսը հաղթեց նրանց և սպանեց (742 թ.).—Ջամչ. Բ. 406։*

*— 19. Վասակ Բագրատունի, որդի Աշոտ պատրիկի (կուրացեալ) և եղբայր Սմբատ սպարապետի. նախորդի թոռն է. միացավ Մուշեղ Մամիկոնեանի ապստամբության ընդդեմ Հասան ոստիկանի. չարաչար հաղթվեց Արճէշի առաջ («775 թ.»). փախավ Կղարջք և բնակություն հաստատեց Արտանուջի ամրոցում։ Սրա որդին է Ատրներսեհը և թոռը՝ Աշոտ Մեծ (813—826 թթ.), որոնք ընդունում են վրացական դավանանքը և նրանցից է սերում Վրաց թագավորական տոհմը.—Ղև. լդ. Վրդ. խդ.—սեռ. Վասակայ՝ Վրդ. խա։*

*— 20. Վասակ Սիւնի, հայր Ատրներսեհի (Ը դարու վերջերը).—սեռ. Վասակայ՝ Օրբ. լը։*

*— 21. Վասակ Սիւնի, որդի Ատրներսեհի (?), որդւոյ Վասակայ, եղբայր Աշոտի, Գրիգորի և Սահակի.—*Justi *358 ա։*

*— 22. Վասակ Սիւնի, նահապետ, հայր Փիլիպպէի Ա և Սահակի. Պարսից Բաբան իշխանի հետ միացած՝ քշեց Սեւադայ անուն տաճիկ իշխանին Սիւնիքից, բայց նույն տարին մեռավ (820-ական թվերին)։—Նույն անձի մասին խոսում է նաև Օրբելեանը, բայց պատերազմը դնում է Մրուանի դեմ և մահը՝ 727 թվին.—Կղկնտ. Գ. ի. Օրբ. լբ, ծդ.—սեռ. Վասակայ՝ Կղկնտ. Գ. ի. Օրբ. լբ, լզ, լը, թ, ծ, ծդ, ծը.* Justi *358 ա։*

*— 23. Ամիր Վասակ, որդի Վասիլ իշխանի. շինել է մի եկեղեցի և հանել է Գաւառի առուն (Նոր-Բայազետ), 842 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 58, 448 (թվականը կասկածելի եմ կարծում)։*

*— 24. Վասակ ազատ Սիւնի, հայր Սահակի, որ իբրև վկա հիշվում է Տաթևի 844 թվի կալվածագրում.—սեռ. Վասակայ՝ Օրբ. լը։*

*— 25. Վասակ Արծրունի, մասնակցեց Մուշէի պատերազմին «851 թ.».—Արծր. Բ. զ. Գ. ժբ։*

— 26. Վասակ Արծրունի (տարբեր է նախորդից). մասնակցեց Մուշէի պատերազմին՝ «851 թ.».—Արծր. Բ. զ. Գ. ժբ։

— 27. Վասակ Արծրունի, որդի Գրիգոր Արծրունու. մասնակցեց Մուշէի պատերազմին՝ «851 թ.».—Արծր. Բ. զ. Գ. ժբ.—սեռ. Վասակայ՝ Արծր. Բ. զ։

— 28. Վասակ Գաղրիկ. մասնակցեց Գուրգէնի պատերազմին՝ ընդդեմ Բուղայի «852 թ.».—Արծր. Գ. դ։

— 29. Վասակ Ակէացի. մասնակցեց Գուրգէնի պատերազմին՝ Բուղայի դեմ, «852 թ.».—Արծր. Գ. դ։

— 30. Վասակ Արծրունի, նահատակվեց Բուղայի ձեռքով՝ «853 թ.».—Արծր. Գ. ը։

— 31. Վասակ Արծրունի, ամբարիշտ. մասնակցեց Մուշէի պատերազմին. օգնական էր Գուրգէն Արծրունուն՝ Բուղայի դեմ պատերազմում «852 թ.»։—Բաղդադում սրտանց ուրացավ հավատքը և մնաց իբր մահմեդական.—Արծր. Բ. զ. Գ. դ, զ.—սեռ. Վասակայ՝ Արծր. Գ. ի, իբ. Դ. բ։

— 32. Վասակ Կովակեր. ընտրվեց Վասպուրականի իշխան, փոխանակ Ապուջափրի, երբ սա հաղթվեց Բուղայի Աբրահիմ զորավարից.—Արծր. Գ. ժզ.—սեռ. Վասակայ՝ Արծր. Գ. ժզ։

— 33. Վասակ Իշխանիկ, տեր Վայոց Ձորի. Բուղայի ձեռքով գերի քշվեց Բաղդադ.—Արծր. Գ. ժա։

— 34. Վասակ, հայր Գրիգորի, որ իբր վկա հիշվում է Տաթևի 881 թվի կալվածագրում.—սեռ. Վասակայ՝ Օրբ. լթ։

— 35. Վասակ Գաբուռ, որդի Գրիգոր Սուփանի, նահապետ Սիւնեաց և Սիսականի. ամուսնացավ Աշոտ Ա-ի Մարիամ աղջկա հետ. «արևակէս» կամ «արևմպէտ». մեռավ 887 թ. (ըստ Չամչ. Բ. 705) կամ 859 թ.՝ ըստ Կղկնտ.—ՅՀ. կթ. իե, իբ. Օրբ. լզ, ծդ.—սեռ. Վասակայ՝ Ստեփ. սևան. 46. Ձեռ. Դաղեան Ա. 44 ա. Արձ. 907 թ. (Սմբատեանց, Գեղարքունի 275). Օրբ. լզ.—Գաբուռայ՝ Օրբ. խ.—Վասակայ Գաբուռին՝ Կղկնտ. Գ. իա (ըստ Թոփճեան, Politische und Kirchengesch. Armeniens, 1905, էջ 155 գաբուռ=պրս. قبور qabūr «թույլ, տկար, փափուկ»).—Օրմանեան, Ազգապ. 943 նույն է համարում Վասակ Գաբուռ կամ Իշխանիկ։

— 36. Վասակ Արծրունի, հայր Հասանի, քեռայր Գրիգոր-Դերենիկի. ուրացավ հավատքը. ժամանակակից է Աշոտ Ա-ի («858—890 թթ.»).—սեռ. Վասակայ՝ ՅՀ. կթ. լը։

— 37. Վասակ Իշխանիկ, որդի Փիլիպպէի, իշխան Սիսական, Բուղայի ձեռքը չընկնելու համար քաշվեց Կոտայք, ուր հաղթելով

արաբներին, անցավ Գարդմանի Կորիճ իշխանի մոտ, որ դավաճանությամբ բռնեց նրան և ուղարկեց Բուղայի մոտ։ Գերի քշվեց Բաղդադ, ուր առերես ուրացավ հավատը և ազատ արձակվեց։ Հայաստան դառնալով հնազանդ մնաց Աշոտ Ա-ին («858—890 թթ.»).— Յհ. կթ. իգ, իը, իթ. Ասող. Բ. բ. Վրդ. խգ. Օրբ. լգ, լը, ծդ.—սեռ. Վասակայ՝ Յհ. կթ. ըգ. Օրբ. լգ, լը—խ, խե, խը, ծ, ծդ, ծը։

— 38. Վասակ իշխան Գաբեղեան, որդի Կատենի. երբ Միջագետքի Հապիպ ոստիկանը (=Ահմադ) պատրաստվեց հարձակվել Սմբատ Ա-ի վրա («895 թ.»), Գագիկ Ապումրվան Արծրունին այս Վասակի միջոցով թուղթ ուղարկեց Հապիպին և դավաճանեց Սմբատի դեմ.—Սուտ Շապհ. 73, 74.—Վասակայ՝ 74։

— 39. Վասակ, որդի Վահան Բաղացու (Թ դար).—բց. ի Վասակայ՝ Օրբ. ծթ։

— 40. Վասակ Արծրունի, հայր Գրիգոր Ապուհամզայի (Թ դար).—սեռ Վասակայ՝ Արծր. Գ. ի, Դ. գ։

— 41. Վասակ, իշխան Գորոզվայ, իր զորքով օգնական գնաց Սմբատ Ա-ի կողին Ափխազաց Դոտառ թագավորի դեմ, շուրջ 908 թ.—Սուտ Շապհ. 81։

— 42. Վասակ Մոկացի, եղբայր Գրիգորի, ժամանակակից Աշոտ Երկաթի, 921 թ.—Justi 358 բ. ըստ Յհ. կթղ. էջ 294 (թրգմ. S. Martin, Paris 1841)։

— 43. Վասակ Գնթունի, բերդապահ Շամշուլդէի և կառավարիչ Գուգարաց աշխարհի. ներկա էր Տաթևի օծման հանդեսին (906 թ.). եղբորը՝ Աշոտի հետ ապստամբեց Աշոտ Երկաթի դեմ, բայց չարաչար հաղթվեց «922 թ.» երկրորդ անգամ էլ ապստամբեց Վրաց Գուրգէն իշխանի օգնությամբ և հաղթվելով նվաճվեց.—Յհ. կթ. ծէ, կբ. Օրբ. խբ.—սեռ. Վասակայ՝ Յհ. կթ. ծէ, կբ։

— 44. Վասակ, որդի Զագկայ, իշխանին Սիւնեաց. հիշվում է իբր վկա Տաթևի 925 թվի կալվածագրում.—Օրբ. ծ։

— 45. Վասակ Սիւնի, որդի Վասակ Գաբուռի, եղբայր Սահակի և Գրիգորի, իշխան Սիւնեաց. Սմբատ Ա-ի քեռորդին էր. Սևանի նավամարտում հաղթեց Յուսուփին և քշվեց Գարդման ու Արցախ. Աշոտ Բ-ի (+929 թ.) ժամանակ վերադարձավ իր աթոռը. կասկածվելով ապստամբության մեջ՝ բռնվեց ու բանտարկվեց, բայց շուտով արձակվեց.—Յհ. կթ. խ, խէ, ծգ, ծէ, ծթ. Օրբ. լգ, լէ, խբ, ծդ.—սեռ. Վասակայ՝ Յհ. կթ. խէ. Օրբ. լէ։ Այրարատ 289 (Արձ.).—Ջամչ. Բ. 676 բուն անունը դնում է Վասիլ, որ հետո հոր անունով դարձավ Վասակ։

— 46. Վասակ որդի Սմբատի՝ որդւոյ Աշոտի՝ որդւոյ Փիլիպպէի. իշխան Սիւնեաց. հաջորդեց Սմբատին. ժամանակակից էր Աշոտ Երկաթին «915—930 թթ.».—Օրբ. լէ, ծա, ծդ։

— 47. Վասակ Սիւնի, որդի Աշոտի, որդւոյ Փիլիպպէի Ա. եղբայր Սմբատի, Սահակի և Բաբգէնի Սիւնեաց. Սմբատ Ա-ի օրով անձնատուր եղավ Յուսուֆին և բանտարկվեց «910 թ.», բայց պարսպից կախվելով՝ փախավ իր երկիրը «911 թ.». Աշոտ Երկաթը բանտարկեց նրան Կայեան բերդում. Սահակ Սևադայ իշխանը իր ապստամբության ժամանակ ազատ արձակեց նրան. իր դաշնակից վարձկան Թուրքերի մատնությամբ սպանվեց իր եղբայր Սմբատի՝ արաբների դեմ մղած պատերազմում.—Յհ. կթ. խգ, կ. Օրբ. լէ, ծդ.—սեռ. Վասակայ՝ Յհ. կթ. ծէ, կ. Օրբ. լգ, լէ.—իսկ Յհ. կթ. կե «Վասակայ» ուղղել Սահակայ։

— 48. Վասակ իշխանաց իշխան Սիւնեաց, որդի իշխանաց իշխան Սմբատի, տվավ խոստմնագիր հպատակության Անանիա Մոկացի կաթուղիկոսին (958 թ.). տպված է Արրտ. 1897, էջ 143.—Անան. ապար. 142 բ.—սեռ. Վասակայ՝ անդ. 143 ա։

— 49. Վասակ իշխան Սիւնեաց, հիշվում է Աշոտ Գ Ողորմածի կնոջ նվիրագրում «976 թ.».—Սմբատեանց, Երնջակ 419, Արրտ. 1868, 33 ա։

— 50. Վասակ իշխան Սիւնի, որի որդիներն են Սմբատ և Գագիկ. հայտնի չէ, թե նախորդներից ո՛րն է (Ժ դար).—սեռ. Վասակայ՝ Օրբ. ծթ։

— 51. Վասակ Պահլաւունի Հոլում, որդի Գրիգոր Համզայի, եղբայր Վահրամ Պահլաւունու և հայր Գրիգոր Մագիստրոսի, տեր Բջնոյ, շինող Կայենոյ և Կայծոնոյ և սպարապետ Սմբատ Բ արքայի Բագրատունեաց. նահատակվեց Թուրքաց դեմ պատերազմում «1020 թ.».—Մագ. թղ. ժա. Ուռհ. 11—14. Շնորհ. վիպ. 1101. Վրդ. ծդ. Սմբ. պտմ. 29, 30.—սեռ. Վասակայ՝ Լաստ. Ժ, իա. Մագ. մեծ են. յոչ. Մագ. թղ. հ. Մագ. քեր. 223. Մխ. այրիվ. 74. Ուռհ. 11—13, 67, 88, 104, 107, 155, 183, 190, 298, 329. Յայսմ. յուլ. 30. Վրք. Շնորհ. 13. Սամ. անեց. 108. Կիր. 54, Վրդ. ծե. Երզն. Պտճռ. 87. Սմբ. պտմ. 29, 30, 57, 58, 67, Մագ. թղ. յոչ. իէ—իը.—Ջարբ. Հին. դպր. 576. Այրարատ 165, 259, 271։

— 52. Վասակ Ա, Թագավոր Սիւնեաց և Բաղաց, եղբայր Սևվադայի, որդի Սմբատ Ա Թագավորի Սիւնեաց՝ որդւոյ Սահակայ՝ Թոռին Փիլիպպէի Ա. սրա աղջիկն է Կատրամիդէ Թագուհի՝ կին Գագիկ Ա Թագավորի. 1036, 1019 և 1026 Թվերին զանազան հրա-

մանագրերով գյուղեր է նվիրել Տաթևի վանքին.—Օրբ. ծգ—ծզ, ծը.—սեռ. Վասակայ՝ Ասող. Գ. լ. Օրբ. խէ, խթ, ծգ—ծե. (Վրդ. խը կոչում է սրան «Սահակ»)։

— 53. Վասակ Մամիկոնեան, որդի Թոռնիկի՝ իշխանի Սասնոյ. եղբայր Չորտուանէլի. մանուկ էին, երբ մեռավ Թոռնիկը «1075 թ.».—Ուռհ. 210։

— 54. Վասակ Պահլաւունի իշխան, որդի Գրիգոր Մագիստրոսի, եղբայր Վահրամ կաթուղիկոսի, Հունաց կայսեր կողմից կարգվեց դուքս Անտիոքի. նենգությամբ սպանվեց Հունաց ձեռքով «1077 թ.».—Ուռհ. 213. Վրդ. կ.—սեռ. Վասակայ՝ Ուռհ. 213—214։

— 55. Վասակ, որդի Ապիրատ իշխանի, եղբայր Ապլչահապի. երբ Ապիրատն սպանվեց Դուինի Ապուսուար ոստիկանի ձեռքով, Վասակը փախավ Անի՝ Յովհ.-Սմբատ («1020—1042 թթ») թագավորի մոտ. իր որդիքն են Գրիգոր իշխան և Բարսեղ կաթուղիկոս Անեցի, որին տեսավ կաթուլիկոս ձեռնադրված «1081 թ.».—Ուռհ. 221.—սեռ. Վասակայ՝ Սամ. անեց. 117. Ուռհ. 11, 211, 269. Վրդ. ծթ, կգ։

— 56. Վասակ Պահլաւունի, որդի Գրիգոր Մագիստրոսի. Փատլուն ամիրայի հրամանով գնաց նվաճեց Բաղաբերդն ու Կապանը և խաբեությամբ սպանեց Սենեքերիմ հայկազն թագավորին Սիւնեաց (1094 թ).—Վրդ. ծթ. Մխ. այրիվ. 76։

— 57. Վասակ Սիւնի, որդի Սմբատի, հայր Սմբատի և Գագիկի, իշխան Հայոց և Վրաց, ժԱ դարի վերջը.—Justi 358 բ, № 33։

— 58. Վասակ, հիմնադիր Վասակաւան քաղաքի (Հունահայաստանում).—Տարօն. Բ. § 14 (ուրեմն 1101 թվից առաջ)։

— 59. Վասակ Պահլաւունի, եղբայր Լիկոսի, Գրիգորի՝ առաջնորդի եգիպտահայոց և Վահրամի Թաճ-ադ-դաուլա, հայր Լիկոսի և Ապլղարիպի՝ տեառն Պիրի և Թլպաշարի, հորեղբայր Ներսէս Շնորհալու. Գրիգորի շնորհիվ Եգիպտոս կանչվելով՝ եղավ զորավար-իշխան էր Թեբայիդում. սպանվեց Վալախշի բռնակալից՝ 1137 թ.։ Արաբները կոչում են նրան Վասիլ կամ Ալեասալ (الباصال) —Աբուսահլ, էջ 45, 48, 49. Շնորհ. Վիպ. 1276.—սեռ. Վասակայ՝ Ուռհ. 337. Վրդ. կէ.—Ալիշան, Շնորհ. էջ 163—167. Տաթև 1927, էջ 196։

— 60. Վասակ, որդի Վասլի, եղբայր Գրիգոյ Դ տղայի. վախճանվել է երիտասարդ հասակում, նախ քան 1174 թ.—Թորոս աղբ. Ա. 118։

— 61. Վասակ, որդի Վիգէն իշխանի Սասնոյ և եղբայր Չոր-

տուանել Գ-ի՝ +1165 թ.—Հայապ. 395, Թորոս աղբ. 314. իր նկարի մասին տե՛ս Ճանիկեան, Հնութ. Ակնայ 76։

— 62. Վասակ Ա, որդի Կիւրիկէի Գ իշխանի Կիւրիկեանց, եղբայր Աբաս թագավորի (ԺԲ դար), Նոր-Բերդի Կիւրիկեան ճիւղի հիմնադիրն է. երևի մեռել է իր եղբայր Աբասից (+1192 թ.) առաջ. սրա որդին է Դաւիթ և թոռը Վասակ.—Կ. Ղաֆադարեան, Տեղեկ. Արմֆանի, 1940 թ. № 4, էջ 166, 167, 168. Հայապ. 392.

— 63. Վասակ, որդի Սմբատի՝ տեառն Պապեռոնի, եղբայր Բակուրանի, մորեղբայր Լևոն Բ-ի, տէր բերդին Ակուռսոյ (1165 թվից սկսած), Լամոսոյ և կողմանց նոցա. Կոստանդին Գունդստապլի հայրն է և Հեթում Ա թագավորի պապը. ժամանակակից Թորոս Բ-ի («1145—1168 թթ.»). ներկա եղավ Լևոն Բ թագավորի թագադրության հանդեսին «1199 թ.».—Սմբ. պատմ. 100.—սեռ. Վասակայ՝ Սմբ. պատմ. 116.—Սիսուան 71 բ, 115, 471։

— 64. Վասակ, պարոն և տեր Բերդկանն. ներկա եղավ Լևոն Բ-ի թագադրության հանդեսին «1199 թ.».—Սմբ. պատմ. 112։

— 65. Վասակ, տեր Խաւախան բերդի (Գանձասար), հայր Գրիգոր իշխանի, որ իր աղջիկը տվել էր Տաւղան Թուրք իշխանին (ԺԲ դար).—Հայապ. 387։

— 66. Վասակ, որդի Վահրամ իշխանի, եղբայր Սարգսի և Քուրդի. շահապ կամ քաղաքապետն էր Տփղիսի. սրան շատ էր սիրում Վրաց Դաւիթ թագավորը. Վրաց իշխանները նախանձելով, չարախոսեցին Գիորգի թագավորի մոտ. Վասակն իր եղբայրների հետ փախավ Կարին, ուր Սալտուխ ամիրան սիրով ընդունեց, որովհետև ինքն էլ բարերարված էր Վասակից, երբ գերի էր ընկած Վրաց ձեռքը՝ Տփղիս։ Վասակը ստացավ Սալտուխից Կարնոյ բազմաթիվ գյուղերի իշխանությունը, որ մի քանի տարի վարելուց հետո մեռավ (ԺԲ դար).—Հայապ. 389։

— 67. Վասակ, իշխան Խաղբակեան, Խաչենցի, որդի Խաղբակ Բ-ի և եղբայր Հասանի, Ջաջուռ Բ-ի, Գրիգորի (+1222 թ.) և Աբուսի (Աբուսեթ). որդիներն են Պապաք, Մկդէմ, Պռօշ (որ և Հասան). 1191 թվին մի խաչքար է կանգնեցրել իր եղբոր՝ Աբուսի շիրմի վրա։ Դուրս եկավ Խաչենից 1201 թ. և մասնակից եղավ Զաքարէ և Իւանէ եղբայրների պատերազմներին։ Իր գործած քաջությանց համար ստացավ շատ հողեր. այսպես Բջնին (Կեչառուի վանքով), Վայոց Ձորը և այլն։ 1214 թվին արդեն նշանակված էր «կողմնապահ ի Գառնոյ մինչև ի Բարկուշատ», այն է Շահապունեաց և Վայոց Ձորի ժառանգական իրավունքով։ Այս թվին շինեց Կեչա-

*ռոյքի գողտրիկ կաթուղիկէն ու վանքը, որ սպասներով զարդարեց և կալվածներով ապահովեց։ Իր հետ նաև իր կինը՝ Մամա հողեր նվիրեց վանքին։ Պռոշեան իշխանութեան հիմնադիրն է։ Իր կյանքի և իր հաջորդների մասին տե՛ս Յովսէփեան՝ Խաղբակեանք մենագրութիւնը, էջ 32—35 և 67 շար., 86։ Մեռած պիտի լինի 1224—1225 թվերին։ Իրեն հաջորդեց որդին Պռոշ.—Օրբ. կե.—սեռ.* Վասակայ՝ *Օրբ. կգ—կե. Կիր. ժ, ծը. Միխ. աս.՝ իը (=իէ).—Այրարատ 263, 268—269, 339,* Justi *358 բ։*

— *68.* Վասակ *Խաչենցի, որդի Հասանի, եղբայր Վախթանկ Խաչենցու։ Կոչվում է Պատրոնիկ (Մովսէսեան, Լոռի 69). օգնեց Մխիթար Գոշին՝ շինելու Նոր-Գետիկը (1191 թ.). գրավեց Գուրջստանը թուրքերից, որդուն բնակեցրեց այնտեղ և ինքն էլ նահատակվեց այնտեղ 1231 թ. (Բարխուտ. Պատմ. Աղուանից 141).—սեռ.* Վասակայ՝ *Կիր. ժբ,* Justi *358 բ, № 34 (որ դնում է հայր Խոյդանի և Խոշաղի). Արձ. (Սմբատեանց, Գեղարք. 173)։*

— *69.* Վասակ, *որդի Խաւռաս իշխանաց իշխանի՝ որ նրա հիշատակին գրել տվեց Բագնայրի Աւետարանը 1232 թ.—Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 17։*

— *70.* Վասակ *Բ, որդի Դաւթի, թոռնորդի Կիւրիկէ Գ թագավորի, իշխան Նորբերդի, ծագմամբ Բագրատունի։ Իր մոտ ապաստանեց Վարագի Ղուկաս (№ 7) վանահայրը (1231 թ.), որ միանալով Վասակի հետ՝ շինեցին Նոր-Վարագայ վանքը, ուր դրվեց Վարագի Ս. նշանը (տե՛ս Ակինեան, ՀԱ 1229 թ., էջ 445 ծան.)։ Արձանագրությանց մեջ հիշվում է Վասակի անունը 1231—1237 թթ.—Մովսէսեան, Լոռիի Կիւր. թգ. 75 բ, Ղաֆադարյան, Տեղեկ. Արմֆանի 167, 170, 171. Հայապ. 392. Ջամչ. Գ. 186, Կիր. 72, Վրդ. ձե, ղե. Մխ. այրիվ. 80, 81. Շողակաթ Ա. 25։*

— *71.* Վասակ, *որդի Գրիգորի Խաղբակեանց, թոռն Խաղբակ Բ-ի. հիշատակված է երկու արձանագրության մեջ, 1270 թ.—Խաղբակեանք 63, 85։*

— *12.* Վասակ *(1271 թ.). տե՛ս Մոնսոր։*

— *73.* Վասակ, *որդի Հասան (Պռոշ) իշխանի Խաչենոյ, եղբայր Պապաքի, Հասանի և Մկդեմի. մեռել է 1268—1273 թվերի միջև. չպիտի շփոթել Գր. Խաղբակեանի որդի Վասակի հետ, որ կենդանի էր 1270 թ.—սեռ.* Վասակայ՝ *Կիր. ծը, Այրարատ 268—269. Խաղբակեանք 105։*

— *74.* Վասակ, *հայր Հասանի, որ իր եղբայր Ջուրջին Ուքանի*

հիշատակին կանգնեցրեց մի խաչքար Խաչենի Դահրաւ գյուղում, 1276 թ.—Արցախ 156։

— 75. Վասակ «մենամարտ կորովի», որդի Կոստանդին Պայլի և եղբայր Սմբատ սպարապետի. հիշված 1286 թ.—Ձեռ. Վասպ. 109։

— 76. Վասակ պարոն,՝ որդի Պապեռոնի տեր Կոստանդին Գունդստապլ թագավորահոր, եղբայր Հեթում Ա-ի և հորեղբայր Լևոն Գ-ի. տեր Ճանճոյ բերդի։ Կոչվում է արքայեղբայր. գրել է տվել մի Ավետարան (Շողակաթ 205), ուր կա իր նկարը (Երուսաղեմի № 2568 Ավետարան). տե՛ս Վ. Հացունի, Պատմ. տարազի, էջ 255 և Շողակաթ 205։ Պատանդ ուղարկվեց Եգիպտոս (1268 թ.) ազատելու համար Լևոն արքայորդուն գերությունից (Սիսուան 76)։ Մեռել է 1284 կամ 1285 թ. (Սիսուան 556 ա)։—Նույն պիտի լինի այն Վասակը, որ Լևոն թագավորի կողմից դեսպան գնաց Սիկիլիոյ թագավորի մոտ 1279 թ.—Սիսուան 555 բ, 363։

— 77. Վասակ, որդի Սիր Օշինի Պայլենց, որ սպանվեց Եգիպտոսի արշավանքում (ըստ Սիսուան 1299—1301 թթ.) և որի հիշատակին իր ժառանգները գնեցին մի Աւետարան, 1292 թ.—Ձեռ. Միխ. 8 բ. Վասակի եղբայրն է Թորոս (Սիսուան 484 ա)։

— 78. Վասակ իշխան, բերդակալ Բերդիկի. անդամ Սսոյ եկեղեցական ժողովի (1307).—Ազգապ. 1787 թ.։

— 79. Վասակ իշխան, հայր Վահրամի, որ շինեց Հերհերի Ս. Սիոն վանքը 1321 թ.—Սմբատեանց, Երնջակ 494։

— 80. Վասակ, որդի Կոստանդնի (№ 92) և թոռն Կոստանդին Պայլի (№ 57). Եղբայրներն են Պաղտին Նղրցի մարաջախտ և Հեթում ջամբռլայ. մեռել է 1328 թ.—Սիսուան 412 ա։

— 81. Վասակ, որդի Էաչիի, եղբայր Ամիրհասան Բ-ի, թոռնորդի մեծ իշխան Պռօշի. հիշված է իբրև Իշխան Շահապունեաց ձորի 1328, 1332 թվերին.—Խաղբակեանք, 200—202 և ճյուղագրական տախտակը, Այրարատ, 269. Հայապ. 529։

— 82. Վասակ, փեսան է (քրոջ ամուսին) Հայրապետ կրոնավորի, որ գրեց մի Աւետարան 1431 թ.—Նոտարք 98։

* ՎԱՍԱՒՈՒՐՏ,ար. <անշուշտ իրանյան ձևից, իբր Vas-a-vurt, որի վերջին մասի հետ հմմտ. պրս. Niv-sal-a-vurt> Նիւսալաւուրտ (Հիբշ. 507)։

— Վասաւուրտ Կարքային, պատգամավոր ղնաց Վահան Մամիկոնեանի կողմից Նիխորի մոտ «484 թ.».—Փարպ. Ղ. (Ձեռ. և Ա տպ. ունին Կarfային, իսկ Բ և Գ տպ. ուղղում են Հarfային)։

ՎԱՍԳՈՒՇ,ար. ծագումն անհայտ. ունինք միայն մի անգամ՝

— Վասգուշ նախարար Սիմեոն, հայորդ Յովհանի (Զ դար).— Օրբ. ժգ (մի ձեռ. Վասդուշ)։

* ՎԱՍԻԼ, ար. <հուն. Βασιλεύς «թագավոր» բառից. տե՛ս Բարսեղ։ Գավական կամ կրճատ ձևն է Վասօ՝ Առաք. պատմ. 399 (ԺԷ դար)։ Այժմ էլ գործածական է Կովկասում Վասիլ ձևով, որից էլ Վասիլեան ազգանունը. բայց արևմտահայոց մեջ չկա ո՛չ մին, ոչ մյուսը։

— 1. Վասիլ իշխան, որի որդին Ամիր Վասակ շինել է մի եկեղեցի և հանել է Գաւառի (Նոր-Բայազետի) առուն, 842 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 58, 448 (թվականը կասկածելի է թվում ինձ)։

— 2. Վասիլ Ա, կայսր Հունաց (867—886 թթ.)։ Մակեդոնիոյ Ադրիանապոլիս գավառի գաղթական հայերից էր, ծագմամբ Տարոնի Թլայ գյուղից. եղավ բյուզանդական արքունիքի ախոռապետ։ Իր գեղեցիկ հասակով սիրելի դարձավ կայսեր և կայսրուհուն, մինչև եղավ գահակից Միքայէլ Գ Արբշիռ կայսեր։ Հանճարեղ, կրակոտ և փառասեր՝ իր ընկեր Սմբատի հետ միացած՝ սպանեց այդ անառակ կայսեր և խլեց գահը «867 թ.»։ Հայտարարելով իրեն Հայոց Արշակունեաց ցեղից, Նիկիտ անունով ներքինուն ուղարկեց Աշոտ Ա-ի մոտ և նրանից թագ խնդրեց «876 թ.», ըստ որում, Արշակունեաց թագադիրները Բագրատունիներն էին եղած։ Աշոտը կատարեց Վասիլի խնդիրքը և միաժամանակ ուղարկեց մի մեծ գումար իբր ընծա այն նորաշեն տաճարին, որ Վասիլը շինեց, և նրա մեջ հայոց համար էլ մի բաժին հատկացրեց։ Վասիլով է սկսվում Հունաց պատմության մեջ առանձին հարստություն, որ կոչվում է «Հայկական հարստություն» և Հունաց պատմության ամենափառավոր շրջանն է։ Տևում է 2 դար (867—1125 թթ.) և իր գահակալները համարվում են «Տիեզերքի վերահաստատիչ» (restitores orbis)։ Ունի 9 գահակալ, որոնք են. Վասիլ Ա՝ 867—886 թթ., Լևոն Զ իմաստասեր՝ 886—912 թթ., Աղեքսանդր՝ 912—913 թթ., Կոստանդին Է Ծիրանածին՝ 913—959 թթ., Ռոմանոս Ա՝ 920—944 թթ., Ռոմանոս Բ՝ 959—963 թթ., Նիկեփորոս Բ՝ 963—969 թթ., Հովհաննէս Զմշկիկ՝ 969—976 թթ., Վասիլ Բ Բուլգարասպան՝ 976—1025 թթ. և Կոստանդին Ը՝ 1026—1028 թթ. (Գելցեր, Հմռ. Բիւզ. պատմ. էջ 194)։ Ազգապ. 986. Զամչ. Բ. 689—702. Յուշիկք Ա. 421, Տ. Սահակեան՝ Հայ կայսերք, Ա. 199—222։

— 3. Վասիլ Հայկազն, բիւզանդական զորավար, որ արաբներից ետ խլեց Կիպրոս կղզին 958 թ.—Բակուրան, Կիպրոս կղ. 49, 115։

— 4. Վասիլ, *իշխան Վրաց, որդի Ապլղարիպ սպարապետի և մեծ իշխանի Հայոց և Վրաց. հիշված է Հոփիսիմէ արքայադստեր կեղծ կտակագրում, 981 թ.—Սմբատեանց, Երնջակ, 424։*

— 5. Վասիլ, *երկրորդ որդի Գր. Մագիստրոսի, մեռավ ծաղիկ հասակում.—Ազգապ. 1260—1261, Չամչ. Բ. 929։*

— 6. Վասիլակ, *հայ իշխան և զորավար Դիոգինէս կայսեր, որ մեռավ Պարսից դեմ պատերազմում 1071 թ.—Ուռհ. էջ 201։*

— 7. Վասիլ, *որդի Ապուքապայ, պաշտպանեց Մանազկերտը Տուղրիլի դեմ և վանեց նրա արշավանքը (1054 թ.). Ուռհայի իշխանն էր. իրեն հաջորդեց Սմբատը. 1064—1065 թվին հույն բանակի գլուխն անցած Ուզերի դեմ կռվի գնաց Դանուբի եզերքը և գերի ընկավ։ Ապա ազատվեց և գնաց Եդեսիա, ուր իր հայրը կուսակալ էր և հաջորդեց նրան 1077 թ. ուր և մեռավ 1083 թ.—Սմբ. պտմ. 69—71.—բց.* Վասլէ՝ *Սմբ. պտմ. 71.—Ազգապ. 1310. Ալպօյաճեան, Պատմ. Հայ. Կես. Ա. 438։*

— 8. Վասիլ *(իր հանկարծական հարձակումների պատճառով կոչված Գող Վասիլ. ըստ լատին պատմիչների* Covasilius, Corouassilius, *արաբ.* Բասիլ-էլ-էրմէնի). *Կամսարական ցեղից, մեծ իշխան, տիրում էր Քեսունի, Ռապնոյ և Մարաշի կողմերը, ժամանակակից Ռուբէն Ա-ի. շատ անգամ օգնել է լատիններին՝ Թուրքերի դեմ պատերազմներում. պատվով պահեց Գրիգոր Բ Վկայասէր կաթուղիկոսին, որ մեռավ նրա մոտ «1105 թ.» 100 000 դահեկան փրկանք տալով ազատեց Անտիոքի կոմս Բոյեմոնդին՝ Դանիշմանի գերությունից. իշխեց մինչև իր մահը՝ 1112 թ.—Շնորհ. Վիպ. 1313. Յայսմ. յուլ. 30. Կրպտ. սարգ. յոչ. Վրք. Շնորհ. 29. Սամ. անեց. 122. Ուռհ. 293—294, 299, 300, 306—307, 311, 313, 323—324, Գր. եր. 370. Սմբ. պտմ. 91, Վրդ. կե, կզ, հե. Միխ. աս. իա, իթ (=իը). Մխ. այրիվ. 19 (կոչում է Վասիլն Յաջողած). 75, 76. Օրբ. ողբ. 60.—Դրնղ. 303. (կոչում է Վասիլ Ելուզակ).—սեռ* Վասլի՝ *Կրպտ. սարգ. յոչ. Սամ. անեց. 122, Ուռհ. 294, 306—308, 310, 323—325, 336, 338. Լմբ. մատ. 528. Վրդ. կզ.—բց.* ի Վասլէ(ն)՝ *Ուռհ. 310, 323։ Վրք. Շնորհ. 30։—[Լևոն-Մեսրոպ ունի աքանչելի մի պատմական վեպ՝ «Հաշիշին» անունով, տպ. Փարիզ 1939, որի նշանավոր հերոսներից մեկն էլ այս Գող Վասիլն է, որ իբր թե եղել է գերի Նիւշապուրում, գիշերային մի մեծ հարձակում է գործել Հաշիշինների շեյխի Ալամութ բերդի վրա և ազատել Տարօնի իշխանորդի Ներսէսին և նրա սիրուհի՝ Սելճուքեան թագավոր Մելիքշահի վեզիրի առևանգած աղջկան՝ Պելղիսին։ Ինչպես հեղինակը հայտ-*

նել է ինձ անձամբ, այս միջադեպը և Գող Վասիլի մասնակցությունը լոկ վիպասանական երևակայություն է և պատմական որևէ հիմք չունի]։

— 9. Վասիլ Տղայ, քեռորդի Գող Վասիլի, ուստի մոր կողմից Կամսարական, ձեռնասուն Գող Վասիլի. մեծացավ նրա մոտ և եղավ նրա զինակիրը։ Քաջ և իմաստուն մարդ էր. «1108 թ.» Գող Վասիլի հետ ջարդեց թուրքերին. «1112» թվին հաջորդեց Գող Վասիլին և իշխեց մինչև «1115 թ.», երբ Թորոս Ա ննենգությամբ բըռնեց նրան և հանձնեց Ուռհայի կոմս Պաղտինին։ Պաղտինը գրավեց նրա երկիրը։ Վասիլը անցավ Պոլիս և իր իշխանությունը ջընջվեց.—Վրդ. կզ, կէ. Սմբ. պտմ. 91. Ուռհ. 307, 324, 337.—սեռ. Վասլի՝ Ուռհ. 324, 336։

— 10. Վասիլ, «վատշուէր և ննենգաւոր», պատճառ եղավ Պաղտինի մահվան՝ 1146 թ. (հա՞յ է).—սեռ. Վասլի՝ Գր. եր. 392։

— 11. Վասիլ, որդի Զորտուանէլ Գ-ի՝ որդւոյ Վիգէն իշխանի Սասնոյ, ի կնոջէն Վաննի, 1160-ական թ.—Թորոս Աղբ. Բ. 312։

— 12. Վասիլ, իշխան Պահլաւունի, որդի Ապիրատի, եղբայր Գրիգոր Գ և Ներսէս Շնորհալի կաթողիկոսների. ամուսնացած էր Լամբրոնի իշխան Հեթումի աղջկա հետ. հայր Գրիգոր Դ Տղայ («1173 թ.») կաթողիկոսի. զորավար և պետ Կարկառի. 400 կտրիճներով օգնության վազեց Ջոսլինին, ազատելու համար Թլպաշարը, բայց գերի ընկավ Իկոնիոյ Մասուտ սուլթանի զորավար Խորասանի կամ Գարա-Ասլանի ձեռքը «1148 թ.». Մասուտը Իկոնիոյ մեջ ուրիշ տեղեր տվեց նրան և պատվով պահեց՝ մինչև վերջ.—Շնորհ. չփ. էջ 226, 361. Գր. եր. 396—397. Հայապ. 414. Շնորհ. Վիպ. 1351. Պտմ. Լմբ. 226. Յայսմ. սեպ. 25, յունիս 13, օգ. 5.—սեռ. Վասլի՝ Գր. եր. 396. Մխ. Հեր. Ներած. Շնորհ. յս. որդի յիշ. Ալիշան, Շնորհ. էջ 221 (կոչված է Վասակ՝ մի հին հիշատակարանում՝ Թորոս աղբ. Ա. 117)։

— 13. Վասիլ, եղբայր Տիգրանի, տեր Բարձրբերդի. հոռնադավան հայ. Հունաց Անդրոնիկոս զորավարի բանակի մեջ էր. գերի ընկավ Թորոս Բ-ի ձեռքը կամ մեռավ 1151 թ.—Գր. եր. 401. Սմբ. պտմ. 96։

— 14. Վասիլ, որդի Զորտուանէլի Գ, եղբայր Թոռնիկի Բ և Շահինշահի (1160-ական թ.).—Հայապ. 391, 394։ (Սրա նկարը տե՛ս Ճանիկեան, Հնութ. Ակնայ, էջ 77)։

— 15. Վասիլ, պապ Գագիկ մատնչի, որ տե՛ս 1190 թ.։

— 16. Վասիլ մարաջախտ, տեր Վանևրոյ. ներկա եղավ Լևոն

Բ-ի թագադրության հանդեսին «1193 թ.».—Սմբ. պատմ. 112, 137։ Մեռել էր նախքան 1214 թ. (Սիսուան 142)։

— 17. Վասիլ, եղբորորդի Ներսէս Շնորհալու, եղբայր Գրիգորիս կաթողիկոսի և Միխայլ իշխանի, որ գրել տվեց Սողոմոնի գործերը 1201 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 168։

— 18. Վասիլ, հիւրատես Ղազարու վանից (հիշված է. 1204 թ.).— Հայապ. 450։

— 19. Վասիլ, հիւրատես Ղազարու վանից, 1205 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 473։

— 20. Վասիլ, ջանցլեր (ատենադպիր) Հայոց թագավորության 1207 թ.—Սիսուան 485 բ։

— 21. Վասիլ, քահանա Ուռւթիլ գյուղի (Ուռհա). հայթայթեց մի օրինակ Մաշտոց՝ Գրիգոր գրչին՝ 1214 թ.—Տաշեան, Ցուց. 705 ա։

— 22. Վասիլ պարոն, մի մեծ ոսկեղեն խաչ է կանգնեցրել, որ քանդեց Յովհաննէս Մեծաբարոյ կաթողիկոսը («1203 — 1221 թթ.»).—սեռ. Վասլի՝ Սմբ. պատմ. 115։—Թվի, թե նույն է Վասիլ Սևաստիոս, որ Կարմիր վանքի Ս. Յարութեան գմբեթի վրա մի խաչ է կանգնեցրել, ըստ Գր. եր. 398։

— 23. Վասիլ Տարսոնացի, բաց արեց Տարսոնի դուռը և քաղաքը հանձնեց Կոստանդին պայլին, երբ 5000 հույներ՝ պարոն Վահրամի գլխավորությամբ ապաստանել էին այդ քաղաքը և չէին ուզում ճանաչել նրա իշխանությունը Լևոն Բ-ի մահից հետո (1220 թ.).—Սիսուան 270 բ, 526 բ։

— 24. Վասիլ դպրապետ, Մելիտինեցի, որդի Առեստ (=Ովրեստէս) քահանայի, գրել. օրինակեց հոմարեն ընտիր մի Աւետարան, 1226 թ.—Ալպօյաճեան, Պատմ. Հայ. Կես. Ա. 543, Բ. 1840։

— 25. Վասիլ քահանա, որդի Խաչատուր քահանայի. մայրն է Մէլէք. հոգևոր մայրն է Մարգարիտ, որի օգնությամբ օրինակեց Աւետարանը «ընդ հովանեաւ Սբ. Թորոսի, որ և բուն իսկ Կիլիկիայ կոչի» (1231 թ.).—Ձեռ. Հալէպի, Ա. 222։

— 26. Վասիլ, փեսա Յովհաննէս գրչի, որ Դրազարկում օրինակեց Տաղարանը 1241 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1066. իսկ Սիսուան 233 բ դնում է Գանձարան։

— 27. Վասիլ, հայր Քրիստոսատուրի, որ նվիրաբերեց Կապոսի Ս. Լուսավորիչ անապատին, 1255 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 35։

— 28. Վասիլ Թաթար, որ և Վասակ, որդի Սմբատ Գունդըստապլի՝ նրա թաթար կնոջից, որ նվիրել էր Թաթարաց խանը Սըմ-

քատի Թաթարիստան գնացած ժամանակ։ Լևոն Գ-ի հետ բռնվելով գերի տարվեց Եգիպտոս, վերադարձավ «1268 թ.»․ քիչ հետո մեռավ և թաղվեց Մլիճի վանքում, եղբոր՝ Հեթումի կողքին 1270 թ.—Հայապ. 111, Սիսուան 72։

— 29. Վասիլ գրիչ, օրինակել է Դիոնեսիոս Արիսպագացին Յովհաննէս արքայեղբոր համար 1271 թ.—Սիսուան 145։

— 30. Վասիլ, միջնորդ առևտրի Այասում, հիշված 1278 թ.—Սիսուան 369 ա։

— 31. Վասիլ ծաղկող, ծաղկել է Յովհաննէս արքայեղբոր գրած Աւետարանը՝ Գռների վանքում, 1278 թ.—Սիսուան 146, Ձեռ. Մինխ. 8։

— 32. Վասիլ Տարսոնցի, վաճառական. իտալացի (Ջենովացի) Մանուէլ Լերդարէ անուն վաճառականից ստացել է «300 սառակին բիւզանդաց» արժեքով դիպակ՝ վաճառելու համար Տարսոնում. մուրհակը մնում է Ջենովայի դիվանում 1279 թվականից.—Սիսուան 275 ա։

— 33. Կիր Վասիլ, Մելիտինէից գալիս է Երզնկա և մեռնում այնտեղ. իր կինը՝ Մեծտիկին, իր որդի Ապուլքարիմի հետ միասին նույնպես գալիս է Երզնկայի Ս. Լուսավորիչ վանքը ուխտի 1287 թ. և իր ամուսնու հիշատակին նվիրում է վանքին մի Աւետարան, որ գրել էր Թէոդորոս գրիչը.—Գարեգին կթղ., Կեանք և գիր, 1948, էջ Բ։

— 34. Վասիլ գրիչ, Հեթում Բ թագավորի համար օրինակեց Փիլոնը՝ «1296 թ.».—տե՛ս Փիլ. իմաստ. յիշ. էջ 105. Հայապ. 517. Ջարբ. Թրգմ. 738։

— 35. Վասիլ, մորեղբայր Թորոս քահանայի, որ ստացավ մի Աստուածաշունչ (ԺԳ դա՞ր).—Ջարբ. Թրգմ. 153։

— 36. Վասիլ սարկավագ, կազմեց մի Աւետարան, որի գրիչն ու գրության տեղը անհայտ են, 1300 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 84 բ։

— 37. Վասիլ, հայր Աւետիք քահանայի, որ Երզնկայի Ս. Կիրակոս վանքում օրինակեց Աւետարանը 1304 թ.—Թորոս աղբ. Բ. 421։

— 38. Վասիլ երեց, մեծապես օգնեց Գրիգոր գրչին՝ օրինակելու Տօնականը, տալով առատ քանակությամբ Թուղթ, Կաֆա 1305 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 511—512։

— 39. Վասիլ Կիռ Սահակենց, 1307 թ.—Տե՛ս Օշին Վասիլենց։

— 40. Վասիլ երեց, 1307 թ.—Տե՛ս Օշին Վասիլենց։

— 41. Վասիլ, պանդոկապետ կամ խանութպան (tabernarius) էր Այասում, 1307 թ.—Միսուան 367 ա։

— 42. Վասիլ, եղբայր Պետրոս քահանայի, որ Յովհաննէս քահանային գրել տվեց մի Աւետարան, Փոսի վանքում (Կիլիկիա), 1309 թ.—Ձեռ. Հալէպի Ա. 93։

— 43. Վասիլ, որդի Գունդստապլի Հայոց. մայրն է Զապլուն, որ գրել տվեց մի Աւետարան, 1309 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1924, 519)։

— 44. Վասիլ, վանահայր Յովհաննավանքի, առաջնորդ Շիրակայ և ամենայն Անբերդու (1311 թ.).—Այրարատ 155, 172, 175. Չբր. սարկ. Գ. 30։

— 45. Վասիլ, սարկավագ Անաւարզայի Ս. Աստուածածին եկեղեցու, 1314 թ.—REA 2, 283. Գաթըրճեան, Պարգմա. 84։

— 46. Վասիլ, կինն է Աղուոր տիկին, ծնողներն են Կոստանդին (№ 109) Պեհեսնեցի եպիսկոպոսի, որ հիշված է 1311 և 1314 թվերին.—Բակուրան, Կիպրոս կղ. 108. Ձեռ. Վասպ. 60։

— 47. Վասիլ, սարկավագ Անաւարզայի Ս. Աստուածածին եկեղեցու, 1314 թ.—Միսուան 243 ա. Ջարբ. Թրգմ. 265։

— 48. Վասիլ, քեռորդի Յովհաննէս քահանայի, որ Կրակայ գիւղաքաղաքում գրել տվեց մի Աստուածաշունչ, 1317 թ.— Թորոս աղբ. Բ. 301։

— 49. Վասիլ, որդի Յովհաննէս երեցի և եղբայր Յովհաննէս գրչի, որ օրինակեց Աստուածաշունչը՝ 1319 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 20։

— 50. Վասիլ, հորեղբայր Պօղոս քահանայի, որ Փոսի անապատում գրել տվեց մի Աւետարան, 1319 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1924, 516)։

— 51. Վասիլ, եղբայր Յովսէփ քահանայի, որ օրինակել է Սսում մի շարակնոց 1323 թ.—Ձեռ. Սանաս. 3 բ և Միսուան 223։

— 52. Վասիլ, մառանապան Ակների վանից, 1329 թ. հիշված է նաև Թիւրքթի վանքում, 1314 թ.—Միսուան 155 բ։

— 53. Վասիլ սարկավագ, հիշատակագիր ի Կիլիկիա 1330 թ.— Միսուան 5 բ։

— 54. Վասիլ² ջանցլեր (ատենադպիր) Հայոց թագավորութեան, 1331 թ.—Միսուան 485 բ։

— 55. Վասիլ³ ջանցլեր (ատենադպիր) Հայոց թագավորության 1335—1345 թթ.—Միսուան 485 բ։

— 56. Վասիլ պայլ, թագավորահայր Լեւոն Ե-ի. ստորագրում է այն պարգևագրին, որ Լեւոն Ե տվեց Սիկիլիացի վաճառականներին 1331 թ.—Միսուան 365 ա, 484 ա։

— 57. Վասիլ, մորեղբայր Կրակացի Ներսէս աբեղայի, որ Երուսաղէմում օրինակեց Ճառընտիրը, 1335 թ.—Ջեռ. Վեննա. Բ. 348։

— 58. Վասիլ, որդի Ճաւշլին քահանայի, որ ապրում էր Երուսաղէմի Ս. Սիոնում և նոր էր մեռել 1335 թ.—Ջեռ. Վեննա. Բ. 348։

— 59. Վասիլ, որդի Ստեփաննոսի, թղթագիր Լևոն Ե թագավորի Ռուբինեանց, որ գահակալել է «1321—1342 թթ.»։ հիշված է 1321 և 1330 թվերին։ Երբ Պետրոս Խըպտենց իշխանը Հալէպում գնեց գերի ընկած մի Աւետարան և բերավ Կիլիկիա, Վասիլը վճարեց աղատեկչէքը և նույն Ավետարանը ստանալով՝ նվիրեց Ս. Աստուածածին եկեղեցուն։ 1335 թ. Պաղտին մարաջախտի հետ ուղարկուեց Եգիպտոս՝ Նասր սուլթանի հետ բանակցելու համար հաշտության մասին։ Հալէպից անցած ժամանակ Հալէպի Նայիբ Ալթուն Պուղան երկուսին էլ բանտարկեց։ Մարաջախտը մեռավ բանտում, իսկ Վասիլը մի տարուց արձակվելով դարձավ Կիլիկիա (1337 թ.).—Շահաղիզ, Պատմ. պատկ. 116—118, Հայապ. 537, 539. Սիսուան 149, 260 ա, 412 ա։—Սա՛ է, որ հիշվում է այն պարգևագրի մեջ, որ Լևոն Ե շնորհեց Սիկիլիացոց 1330 թ. և որ այժմ էլ պահվում է Մադրիդում, Medinaceli դքսի արխիվում։ Այստեղ Վասիլը հիշված է տարօրինակ տիտղոսով. «ի ջանսլերութեանն Հանեսիրիցանց և արգաճատութեամբ Վասլի ծառայի Աստուծոյ և շնորհողի այսմն վերոյգրեալ պարգևացս» (REA 1, 247), որ մի ուրիշ օրինակում գրված է «արքայհայրութեան» (REA 1, 252)։

— 60. Վասիլ, պատրիարք Երուսաղէմի՝ 1356 թվին (Յ. Մուրատ. Ցայտ. Յովհ. էջ յիէ).—Տե՛ս Բարսեղ։

— 61. Վասիլ, մեծ հայր Աբրահամ քահանայի, որ Հռոմկլայի Ծակաղբիւր գյուղում, իր հորից՝ Հեթում քահանայից ստացավ մի Աւետարան, 1357 թ.—Ջեռ. Վեննա. Ա. 613։

— 62. Վասիլ, արքեպիսկոպոս Ամասիոյ, որդի Մարտիրոս քահանայի (1367 թ.). ստացավ մի Քարոզգիրք.—Տաշեան, Ցուց. 744։

— 63. Վասիլ, որդի Օշին Մարաջախտի, որ էր եղբայր Թորոս ավագ մարաջախտի, 1370 թ.—Սիսուան, 542 ա։

— 64. Վասիլ, զորավար և ավագ մարաջախտ, որդի Թորոս ավագ մարաջախտի և եղբայր քաջն Լիպարիտ զորավարի, որ Սսի կամուրջի վրա սպանվեց Թուրքերի դեմ պատերազմում (1370 թ.). Նշանակվեց զինվորական օգնական Մարիամ խնամակալ թագուհու, երբ սա կարգվեց թագապահ՝ Կոստանդին Ե թագավորի սպանու-

թյունից հետո «1373 թ.». գերի տարվեց Կահիրե Լևոն Զ թագավորի հետ «1375 թ.» և այնտեղ հավատն ուրացավ.—Թլկր. 54. Բասմաջ. Լևոն 41, 45. Ազգապ. 1934։ Սիսուան 542 ա, 560 ա։

— 65. Վասիլ քահանա, 1375 թ. տե՛ս Ֆիմի Այասցի։

— 66. Վասիլ պարոն, որդի պարոն Թորոսի. երեք ուրիշ իշխանների հետ կարգվել էր խնամակալ արքունի գանձի՝ Լևոն Զ-ի կողմից. բայց նրանք գանձը կողոպտել էին. ուստի Լևոնը բանտարկեց Վասիլին.— Դարդել 79, 105—111։ 1374 թ. Վասիլը խոստովանեց հանցանքը և տվեց բոլոր մեղսակիցների անունները. իշխանների խնդրանոք Լևոնը ո՛չ միայն ներեց Վասիլին, այլև պատվո զգեստ նվիրեց։ Ինքն էր, որ դավադրություն կազմեց սպանելու Լևոնին. անդ 130, 135, 136, 137, 138, 140. երբ Լևոնին գերի տարին Կահիրե, խմբի մեջ էր նաև այս Վասիլը, որ ուրացավ իր հավատը, որպեսզի նորանոր շնորհների արժանանա, բայց սուլթանը լսելով, որ նա մատնիչ է, ոչ մի աստիճան չտվեց նրան և հետ ուղարկեց Սիս.—Անդ, 154։

— 67. Վասիլ, եղբայր Գրիգորի և Յովհաննէս վարդապետի, հորեղբորորդի Վարդանէսի, որ Կոճերաց վանքում օրինակեց Լամբրոնացին 1415 թ.—Լմբ. Առակ. 428։

— 68. Վասիլ, հայր Կոստանդին Զ Վահկացի կաթուղիկոսի, որ նստել է «1430 թ.».—Ազգապ. 5528։

— 69. Վասիլ, որդի Մելքիսեդի և եղբայր Զաքարիա գրչի, որ Աշոտաձորի Անկիւնեաց վանքում օրինակեց Աւետարանը, 1477 թ.— Ձեռ. Ագուլ. (Արար. 1911, 220)։

* ՎԱՍԻԼԻԿ, իգ. <հուն. Βασίλισσα անունից, որ բուն նշ. «թագուհի». տե՛ս Բամբիշ անվան տակ. գործածական է Պոլսում, թեև ար. Վասիլ ձևը չկա։

ՎԱՍԿԱՆՈՅՇ, իգ. կազմված է վասակ+անոյշ «դուստր» բառերից. նորակերտ անուն, որ տարածված է այժմ Սերենցի Երկունքի միջոցով, որի հերոսուհիներից մեկն է։

ՎԱՍՈԽՍ, հայր Աստուածատուր Բաքերդցու, որ գրել տվեց մի մեծ Տօնական, 1205 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 470։

ՎԱՍՈՍ, կինն է Թամսեր, ծնողներն են պարոն Նէքնէքի, որ Բերկրիում խաչեր քահանային գրել տվեց մի Աւետարան, 1307 թ.— Ձեռ. Վասպ. 151, 153։

Βατάτζης, Տայոց Թոռնիկեանց տոհմից, ազգակից Թոռնիկ (№ 6) կամ Լևոն-Թոռնիկի. մասնակից եղավ իր ժամանակի քաղա-

*քական դեպքերին, 1047 թ.—Ակինեան, Մատեն. հետազ. Դ. 70 (որ ուզում է սույն անունը կարդալ* Βα(ρασβα)τζης = *Վարազվաչէ)։*

*ՎԱՐԱԳ, ար. <Վարագ լեռան և Վարագայ վանքի անունից. այժմ գործածական է Կովկասում. հնագույն հիշատակությունն ունի Ջամբռ, էջ 274 (1736 թվից. գրված է* Վարագ*)։—*Վարագ *անձնանունը հիշված է նաև Զեռ. Սեբ.=ՀԱ 1926, 245, տեղն ու թիվը անհայտ։*

* *ՎԱՐԱԶ, ար. <իրան.* * Varāz *անունից, որ բուն նշանակում է «վարազ կենդանին». ավանդված է զնդ.* Varāza, *սանս.* Varāhá, *նաև պրս.* Barāz *ձևով (բոլորն էլ հատուկ անուն). նաև* Gurāz. *ինչ.* Gurāz *սահմանապահ Հունաց կողմի (Շահն. հտ. 7, էջ 270),* Warāza *եղբայր Վշտասպի,* Barāz *հրամանատար Մերվի և այլն։ Հայերենից տառադարձված է հուն.* Βαράζης, Οὐαράζης *(Հիւբշ. 81)։ Այս անունից են կազմված նաև բազմաթիվ ձևեր. ինչ.* Վարազ-Գնել, Վարազ-Գրիգոր, Վարազդատ, Վարազդեն, Վարազդուխտ, Վարազ-Խոսրով, Վարազման, Վարազ-Յոհան, Վարազ-Ներսեհ, Վարազ-Շապուհ, Վարազ-Սահակ, Վարազ-Վաղան, Վարազտիրոց, Վարազ-Տրդատ, *նաև պարսից մեջ, ինչ.* Varaz-Vrur, *վրաց.* Varazbakur, *աղուան.* Վարազ-Պերոժ։ *Վարազ կենդանու անունով են նաև բազմաթիվ լատին անուններ, ինչ.* Apra, Aprius, Aprianus, Apricius, Apriculus, Apriclius, Apridius, Aprinus, Aprilla, Apronius, Apronianus, Apronculus, Aprulla, Aprio, Aprucius, Aprofinius, Aprufenios, Apellius, Aprarius (Ernout-Meillet, *էջ 56),* *հոլանդերեն մի խումբ անուններ, ինչ.* Everboldus, Everloga, Everwinus *և այլն* (Mansion BSL *26, էջ 92)։ — Ըստ Խոր. Բ. կգ և Մխ. անեց. խա Բագրատունի անուն է, որ ծագում է հին* Վազարիա *ձևից։*

*— 1.* Վարազ *Կամինական, նիզակակից Վաչէի, որ Խոսրով Բ-ի սպարապետն էր («330—339 թթ.»).—Բուզ. Գ. է։*

*— 2.* Վարազ, *իշխան Ծոփաց Շահունի, ուղեկից եղավ Յուսիկ Ա կաթուղիկոսին՝ Կեսարիա ձեռնադրության գնալու ժամանակ («342 թ.»).—Բուզ. Գ. ժբ։*

*— 3.* Վարազ *իշխան Դիմաքսեան, մին այն չորս նախարարներից, որ Տիրան Բ ուղարկեց հրավիրելու Դանիէլ քորեպիսկոպոսին կաթուղիկոսական աթոռը («347 թ.»).—Բուզ. Գ. ժդ։*

*— 4.* Վարազ *պարսկահայ, զորավար Հռովմայեցոց Իտալիայում և Լազիստանում (Պրոկոպ. Ագաթիաս).*—Justi *349 ա։*

*— 5.* Վարազ, *իշխան Բարձր Հայոց կողմերում. սրա որդոց*

կալվածները խլեց Շմաւոն կուսակալ Բարձր Հայոց, որից զայրացած՝ հարձակվեցին նրանք Շմաւոնի վրա, սպանեցին և փախան Պարսկաստան (534 թ.).—Զամչ. Բ. 241. Տեղեկ. Համալս. № 1, էջ 60, 66 (կոչում է ըստ Պրոկոպոսի՝ Պերոզ)։

— 6. Վարազ, իշխան Գաբեղեան, անդամ Դուինի Բ եկեղեցական ժողովի «554 թ.».—Գիրք թղ. ժէ. Այրարատ 46։

— 7. Վարազ, իշխան Պալունեաց, գործակից Սմբատի (606 թ.)՝ որդւոյն Գայլ Վահանի. սպանեց Պարսից Սուրէն զորավարին և այնպիսի մեծ ջարդ տվեց նրանց, որ վրան երդ հանեցին.—Մամիկ. գ—ե.—սեռ. Վարազայ՝ Մամիկ. անդ։

— 8. Վարազ, որդի Յովհաննէսի, եղբայր Վահանի, աղնվականի Կամբիչան՝ 704 թ.—Justi 349 ա։

— 9. Վարազ իշխան, հայ. Ալեքսիոս Ա Կոմնենոս կայսեր ծառայության մեջ էր, Բակուրան իշխանի զինակիր՝ գնաց նրա հետ պատերազմելու թուրքերի դեմ և մեծ քաջություններ գործելուց հետո՝ երկուսն էլ ընկան (1085 թ.).—Զամչ. Գ. 9։

ՎԱՐԱԶ-ԳՆԷԼ, ար. <բարդված Վարազ և Գնէլ անուններից. տե՛ս Վարազ:

— Վարազ-Գնէլ Գնունի, զորավար Հունաց Հերակլ կայսեր (610—641 թթ.). Դաւիթ Սահառունին հաղթեց նրան և սպանեց «635 թ.».—Սեբ. իթ։

* ՎԱՐԱԶ-ԳՐԻԳՈՐ, ար. կազմված Վարազ+Գրիգոր անուններից։

— Վարազ-Գրիգոր, որդի Վարդի և թոռն Քաջն Վարդանի Ա. հայր Ջուանշէրի, սպարապետ Աղուանից, Միհրանեան տոհմից՝ տերանց Գարդմանի. առաջին իշխան Աղուանից, որ մկրտվեց Վիրոյ կաթուղիկոսից (է դար).—Կղկնտ. Բ. ժէ, ժը. Գ. իգ. հրտր. Սամ. անեց. 286. Մխ. այրիվ. 23.—սեռ. Վարազ-Գրիգորի՝ Կղկնտ. Բ. ժէ, ժը, իե, ծ (հրտր. Շահն. Վարազ-Գրիգորոյ).—բց. ի Վարազ-Գրիգորէ՝ Կղկնտ. Գ. ի։

ՎԱՐԱԶԴ, ար. (ըստ Հիւբշ. 81, ծան. 4՝ ուղղել Վարազ)։

— 1. Վարազդ, տեր Գաբեղենից, իշխան Բագրևանդայ և Արշարունեաց, իր խնդրանոք Յովսիփ գրեց «Պատմութիւն Թաթլոյ, Գիւտի, Թովմասու և Վարոսի».—Զարբ. Հին դպր. 406. Այրարատ 46 համարում է նույն ընդ Վարազ իշխան Գաբեղեան, անդամ Դուինի 551 թվի ժողովի, իսկ էջ 50 կարդում է Վարազտիրոց.—Կոգեան. Կմբկնները, 127։

— 2. Վարազդ, իշխան Ծոփաց Շահունի, Ներսէսի ուղեկից-

ներից, երբ նա գնում էր Կեսարիա կաթուղիկոս օծվելու «353 թ.».— Մեսր. եր. 25։

* ՎԱՐԱԶԴԱՏ, ար. <բարդված Վարազ և դատ անուններից։

— 1. Վարազդատ, թագավոր Հայոց՝ «374—378 թթ». Պապի եղբորորդին էր. մեծացել էր Հունաստանում. քաջ ըմբշական. կայսեր կողմից նշանակվեց թագավոր Հայոց՝ Պապի եղերական մահից հետո, ըստ Բուզանդի՝ Մանուէլ Մամիկոնեանից հաղթվելով վտարվեց Հայաստանից, իսկ ըստ Խորենացու ապստամբելով Թէոդոս կայսեր դեմ՝ բռնվեց և աքսորվեց Թուլիս կղզին։ (Ըստ Ադգապ. 241 վտարվել է Հայաստանից «378 թվին», Վաղէս կայսեր ժամանակ. աքսորը հերյուրանք է).—Բուզ. Ե. լդ, լե, լէ. Սոտ Սեբ. Բ. 17. Խոր. Գ. խ. Եղն. եր. 267. ՅՀ. կթ. ժգ. Արծր. Ա. ժա. Մեսր. եր. 118—122. Ասող. Բ. ա. Մագ. թղ. ժթ. Շնորհ. առ. 112. Սամ. անեց. 67. Մխ. այրիվ. 18. Մխ. անեց. գ, իգ. ՆՀպտք. 90. Կիր. 13. Մին. համդ. 25. Վրդ. իդ. Չքր. սարկ. Ա. 3.—սեռ. Վարազդատայ՝ Բուզ. Ե. լդ, լե, լէ. Սոտ Սեբ. Բ. 17 Խոր. Գ. խ, խա. Ասող. Բ. ա. Արծր. Ա. ժա. Մեսր. եր. 122. Միխ. աս. ժթ (=ժը). Շնորհ. Վիպ. 873.—Վրաց. աղբ. Ա. 75 (կոչում է Վարզդատ). Բ. 95 (կոչում է Վարազա)։

— 2. Վարազդատ պատրիկ էքսարխոս, որ կայսեր երկրորդն էր. Յուստինիանոս Բ նշանակեց իշխան Աղուանից (689 թ.).— Ասող. Բ. բ։

* ՎԱՐԱԶԴԷՆ, ար. կազմված Վարազ+դէն < պհլ. dēn «կրոն» բառերից։

— Վարազդէն Առաւեղեան, Յազկերտ Բ-ի բանտարկած նախարարներից մին «452 թ.».—Եղիշ. 150. Փարպ. խէ (ձեռ. Վարազդեն-դաղ)։

* ՎԱՐԱԶԴՈՒԽՏ, իգ. կազմված Վարազ+դուխտ «դուստր» բառերից։

— 1. Վարազդուխտ՝ դուստր Խոսրով Բ-ի, կին Պապի (+ «349 թ.»)՝ որդւոյ Յուսիկ կաթուղիկոսի.—Բուզ. Գ. ժե։

— 2. Վարազդուխտ, տիկին Սիւնեաց. «յառաջ քան զհայ թուականն» (551 թ.) շինեց Սիւնի վանքի Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցին.—սեռ. Վարազդխտոյ՝ Օրբ. կա. Սիսական 212։

ՎԱՐԱԶ-ԽՈՍՐՈՎ, ար. կազմված Վարազ+Խոսրով անուններից։ Հիշված է իբր օրինակ «Սիւնեաց լեզուի» հատուկ անվան.— Սիւն. քեր. 205։

ՎԱՐԱԶՄԱՆ, ար. ծագումն անհայտ։

— 1. Վարազման, որդի Վարդի Բ և թոռն Քաջն Վարդանի Ա,

Միհրանեան տոհմից. տեր Գարդմանի (է դար).—Կղկնտ. Բ. ժէ. Մխ. այբիվ. 23։

— 2. Վարազման, որդի Վարազ-Գրիգորի, Միհրանեան տոհմից. իշխան Աղուանից (է դար).—Կղկնտ. Բ. ժէ. Գ. իգ.—սեռ. Վարազմանայ՝ Կղկնտ. Գ. ժզ։

— 3. Վարազման, հայր Վարազ-Տրդատայ, Միհրանեան տոհմից, իշխան Աղուանից (Ը դա՞ր).—սեռ. Վարազմանայ՝ Կղկնտ. Գ. ի։

— 4. Վարազման, որդի Վարազ-Տրդատայ և եղբայր Ստեփաննոսի. Միհրանեան տոհմից. նախորդի թոռն է. ջրախեղդ եղավ Կուր գետում (Ը դար).— Կղկնտ. Գ. ի։

* ՎԱՐԱԶ-ՅՈՀԱՆ, ար. կազմված Վարազ+Յոհան անուններից։

— Վարազ-Յոհան ի Յոհանան. տե՛ս Յոհան:

ՎԱՐԱԶՆԵՐՍԵՀ, ար. կազմված Վարազ+Ներսեհ անուններից։

— 1. Վարազներսեհ, սեպուհ Ուրծացի, որդի Կողթեկայ. Վահան Մամիկոնեանի կուսակիցներից. զրժելով ուխտը ավերեց Բոնավէժը և ամրացավ Սագրայ բերդում (Ե դար).—Փարպ. կէ։

— 2. Վարազներսեհ, տեր Դաշտկարանի. ստորագրում է այն թղթին, որ Բաբկէն («490—516 թթ.») կաթուղիկոսը գրեց «ի Պարսս, առ ուղղափառս».—Գիրք թղ. ը։

— 3. Վարազներսեհ, սեպուհ Վահեւնի, մասնակցեց Սամուէլ Վահեւնու ապստամբության ընդդէմ Մօրիկի (582—602 թթ.), բայց բռնվեց և գլխատվեց.—Սեբ. է։

— 4. Վարազներսեհ Դաշտկարին. Գրիգոր Վահեւնու հետ գրավեց գանձերը և միացավ Թէոդորոս Ռշտունու ապստամբության՝ ընդդեմ Կոստանդին կայսեր և անցավ արաբների կողմը «652 թ.».—Սեբ. լե։

* ՎԱՐԱԶՇԱՊՈՒՀ, ար. կազմված Վարազ+Շապուհ անուններից։

— 1. Վարազշապուհ, իշխան Պալունեաց. մասնակցեց Արտաշատի ժողովին «449 թ.». կուսակից էր Վասակին՝ ընդդեմ ուխտապահների։ Ատրորմիզդ մարզպանի հրամանով գնաց Համայեակ Մամիկոնեանի վրա և ջարդեց նրան.—Փարպ. իգ, լզ (ձեռ. Վարշապուհ), խա (ձեռ. Վարաշապուհ). Եղիշ. 71. Օրբ. ժդ։

— 2. Վարազշապուհ, նախարար Ամատունի, մատնիչ։ Վահանի ապստամբության զաղտնիքը մատնեց Ատրվշնասպ մարզպանին «481 թ.».—Փարպ. կէ։

— 3. Վարազշապուհ Արծրունի. Նիշակակից Սմբատ Վրկան

մարզպանի՝ Քուշանաց դեմ պատերազմում «608 թ.».—Սեբ. ժըւ

— 4. Վարազշապուհ Ամատունի. կախաղան հանվեց Կաշմ ոստիկանի հրամանով «707 թ.».—Ղև. ժ. Մխ. անեց. իէւ

— 5. Վարազշապուհ Վարաժնունի. մասնակցեց Գուրգէնի պատերազմին ընդդեմ Բուղայի «852 թ.».—Արծր. Գ. դւ

— 6. Վարազշապուհ, տեր Աբելինից. ապաստանեց Ատոմ Ապուպելճի մոտ շուրջ «894 թ.».—Արծր. Գ. իբւ

ՎԱՐԱԶՈՅ, wr. հմմտ. պրս. Gūrāza անունը. զորավար պարսիկ Համավերանի ճակատամարտում (Շահն. հտ. 2, էջ 22—23)։

— 1. Վարազոյ, անծանոթ ոմն, որին սպանե՞լ է Ենիբայ (տե՛ս այս անունը).—սեռ. Վարազոյի՝ Կղկնտ. Բ. լդ (ըստ Շահն. իսկ հրտր. էմինի ունի Վարազայի, որ ավելի համաձայն է վերի պրս. ձևին)։

— 2. Վարազոյ, նշանավոր ոսկերիչ աղվան (Ը դար).—սեռ. Վարազոյի՝ Կղկնտ. Գ. ժըւ

— 3. Վարազոյ, որդի Վախտանգայ, թոռն Վարազմանի, իշխան աղվան. ամուսնանալով իր թոռնակից Վարդանուհու հետ՝ նզովվեց Աղուանից Միքայէլ կաթուղիկոսից (Ը դար).—Կղկնտ. Գ. ժգ.—սեռ. Վարազոյի՝ Կղկնտ. անդւ

* ՎԱՐԱԶՊԵՐՈԺ, wr. կազմված Վարազ+Պերոժ անուններիցւ

— 1. Վարազպերոժ, իշխան Աղուանից Առանշահիկ տոհմից. նորոգեց Գիսի եկեղեցին, որ Ս. Մեսրոպն էր շինել.—Կղկնտ. Ա. իէ (հրտր. Շահն. Վարազփերոժ)։

— 2. Վարազ-Պերոժ, որդի Վարազ-Գրիգորի, Միհրանեան տոհմից, իշխանաց Աղուանից (է դա՞ր).—Կղկնտ. Բ. ժէ. Գ. իգ.—սեռ. Վարազ-Պերոժի՝ Կղկնտ. Բ. իե, լբ, լզ (հրտր. Շահն. ամեն դեպքում Վարազ-Փերոժ ձևով. էմին միշտ Պ-ով, բացի Բ. ժէ, ուր նույնպես ունի փ)։

* ՎԱՐԱԶ-ՍԱՀԱԿ, wr. կազմված Վարազ+Սահակ անուններիցւ

— Վարազ-Սահակ, ըստ Ջամինեանի՝ որդի Սմբատ Վրկան մարզպանի (Անահիտ 1931, սեպ. 134), հայր Սմբատ Բագրատունու (է դարի կեսին).—սեռ. Վարազ-Սահակայ՝ Սեբ. լըւ

* ՎԱՐԱԶՎԱՂԱՆ, wr. բարդված Վարազ+Վաղան անուններիցւ

— 1. Վարազվաղան, սեպուհ Սիւնի. Վասակ Սիւնու փեսան. կնոջ պատճառով թշնամանալով աներոջ հետ՝ վռնդվեց Սիւնիքից, գնաց Միհրներսեհի մոտ, ուրացավ հավատը և գրգռեց նրան Վասակի դեմ։ Վարդանանց պատերազմից և Վասակի դատապարտությու-

նից հետո՝ եղավ իշխան և տեր Սիւնեաց «451 թ.». 20 տարի կառավարեց երկիրը ամբարշտությամբ. հետո հիվանդացավ լուսնոտությամբ և մեռավ մոտ «470 թ.».—Փարպ. ի, իա, խգ. Օրբ. ժգ, ժզ. Վրդ. իէ, իթ (երկու տեղն էլ հրտր. էմինի՝ Վարազվաղեան). Սիմ. ապար. 38, 43.—սեռ. Վարազվաղանայ՝ Փարպ. ի. Օրբ. ժզ։

— 2. Վարազվաղան, իշխան Գաբեղենից, ուղեկից եղավ Ներսէսին՝ Կեսարիա ձեռնադրութեան գնալու ժամանակ («353 թ.»).—Մեսր. եր. 25։

ՎԱՐԱԶՎԱՉԷ, ար. բարդված Վարազ+Վաչէ անուններից։

— 1. Վարազվաչէ Ա, որդի Ջորտուանէլ Ա-ի և թոռն Թոռնիկ Ա-ի, եղբայր Յովհաննէս Թոռնիկ Բ վանականի, Տայոց Թոռնիկեանց տոհմից, որի որդին է Դաւիթ գրիչ.—Ակինեան, Մատեն. հետազ. Դ. 60, 65.—Հիշատակված է 977 և 981 թվերին արդեն իբրև վանական՝ Յովհաննէս անունով. հավանաբար նստում էր Օշքի (Աշունք) վանքում, ուր էր նաև իր եղբայրը։ Երբ բացվեց Աթոսի վրացական վանքը, ինքն էլ փոխադրվեց այնտեղ։ Թողել է Անիում անթվական արձանագրությամբ մի խաչքար (Շիրակ 80). իր որդիներն են Միքայէլ, Ջորտուանէլ Գ. և Թոռնիկ Գ. ունի և մի աղջիկ։

— 2. Վարազվաչէ Բ, որդի Ջորտուանէլ Գ-ի (+990 թ.) և եղբոր թոռ Թոռնիկ Բ վանականի (+984 թ.).—Ակինեան, Մատեն. հետազ. Դ. էջ 68—69, սրա հետ է միացնում՝

— 3. Վարազ-Վաչէ, իշխան Եդեսիոյ, հոր կողմից հայ, մոր կողմից վրացի (1038 թ.).—Ջամչ. Բ. 918. այլազգիները ուզելով տիրել Եդեսիոյ, խորամանկությամբ՝ 2000 արկղ շինեցին և մեջերը մի-մի սպառազեն մարդ դնելով՝ իբր նվեր Եդեսիա ուղարկեցին 12 իշխանների ընկերակցությամբ, որպեսզի գիշերային հարձակմամբ քաղաքը գրավեին։ Մինչդեռ Վարազվաչէն իշխանների հետ կերուխումի մեջ էր, պատահական մի հայ արկղների մոտից անցնելիս՝ ձայն է լսում, հայտնում Վարազվաչէին, որը զորքով գալիս է և բոլորին կոտորում։ Սկիլիցէս պատմիչը հայտնում է, թե այս Վարազվաչէն այնուհետև դավակից է դարձել Թրակիոյ դուքս Կոստանդին Դիոգենէսի, որ Վասիլ կայսեր դեմ ուզում էր ապստամբել։ Դավը բացվեց, բռնվեցին և Վարազվաչէն մյուսների հետ աքսորվեց։ Այս Վարազվաչէն կոչվում էր նաև Գէորգ և Աթոսի վրացական վանքի հիմնադիր Ս. Յովհ. Աբուլհերիթի կողմից առաջարկված էր իբրև վանքի ապագա վանահայր։ Աբուլհերիթի որդին՝ Ս. Եւթիմիոս կատարում է հոր կտակը և Վարազվաչէին=Գէորգին նշանակում է վանահայր։ Նա կողմնակից էր Հունաց, ուստի մեծ վեճ ծագեց իր

և վրացի միաբանների միջև։ Ի վերջո Գեորգը իր դավադրության պատճառով աքսորվեց մի ուրիշ վանք։

ՎԱՐԱԶՏԻՐՈՑ, ար. կազմված Վարազ+Տիրոց անուններից։

— 1. Վարազտիրոց, որդի Սմբատ Բագրատունու՝ Վրկանաց մարզպանի. մատովակ խոսրով Բ թագավորի Պարսից. կոչվեց Ջավիտեան խոսրով: Հոր մահից հետո եղավ մարզպան Հայոց «628թ.» թշնամանալով Պարսից հետ՝ գնաց Հունաց Հերակլ կայսեր մոտ, եղավ սիրելի պատրիկ։ Ներկա էր ժողովին այն հույն ապստամբների, որոնք ուզում էին սպանել Հերակլին։ Վարազտիրոցը չմասնակցեց, ուստի մահվան վճռից ազատվելով՝ միայն աքսոր ուղարկվեց։ Կոստանս կայսեր 5-րդ տարին (645 թ.) դարձավ Պոլիս, որտեղից փախչելով՝ ամրացավ Տայքում։ Նշանակվեց կյուրապաղատ Հայաստանի, բայց նույն միջոցին մեռավ «645 թ.».—[Ազգապ. 710 դնում է կյուրապաղատ դառնալը 642 թ. Առաքելյան, Արմֆանի Գիտ. ժող. 69 դնում է կյուրապաղատ 646 թ. և քիչ հետո 642 թ., բայց պատմիչն ասում է Կոստանսի 5-րդ տարին].—Սեբ. ժէ, ժը, իը, իթ. ՅՀ. կթ. ժէ, ժթ. Մխ. անեց. իդ. Սիմ. ապար. 97, 111.—սեռ. Վարազտիրոցի՝ Ղև. գ. ՅՀ. կթ. ժէ. Ջուղ. 49.—Հիշված Ասպետ անունով՝ Սեբ. լբ. Վրդ. լգ։—Բագարանի արձանագրության մեջ ասվում է «ի մարզպանութեան Վարազտիրոցի հայոց ասպետի յաւուրսն» (Կոգեան, Կմսրկնները, 137)։

— 2. Վարազտիրոց իշխան Բագրևանդայ և Արշարունեաց. կոչված է սպարապետ (Ե դարի վերջում).—Այրարատ 55, Հայապ. 67, 191. Կոգեան՝ Կմսրկնները, 39, 128։

— 3. Վարազտիրոց, պապ Աշոտի, ինչպես ենթադրելի է Աշոտ Վարազտիրոցեան անունից (Գիրք թղ. տե՛ս Աշոտ). ըստ Կոգեան՝ նույն է նախորդի հետ։

— 4. Վարազտիրոց, որդի՝ Սմբատ ասպետ դրունգարի և թոռն Վարազտիրոց Ջաւիտեան խոսրովի. սպանվել է հույներից նախքան 698 թ.—Այսպես Մարքվարդ, Բագր. էջ 3 տախտակում։

— 5. Վարազտիրոց, մեկն է հունական բանակի այն 4 հայ զորավարներից, որոնք հաղթեցին արաբներին 778 թվի պատերազմներում.—Ազգապ. 896. Ղև. էջ 193 ծան. (հուն. գրված կարիստերոցէս) = Καριστερότζης, ուր Κ պետք է փոխել Β (տե՛ս Գելցեր, Սկզբ. Բիւզ. բանակաթեմերու. Վիեննա 1903, էջ 33—34)։

— 6. Վարազտիրոց, հայր Վիժանի, որ իբրև վկա հիշվում է Տաթևի 844 թվի կալվածագրում.—սեռ. Վարազտիրոցի՝ Օրբ. լը։

ՎԱՐԱԶ-ՏՐԴԱՏ, ար. կազմված Վարազ+Տրդատ անուններից։

Հիշված է իբրև օրինակ «Սինեաց լեզվի» հատուկ անվան. Սիմ. Քեր. 205։

— 1. Վարազ-Տրդատ, որդի Վարազ-Պերոժի, իշխան Աղվանից, հաջորդեց Ջուանշիրին՝ 680-ական թվերին. հարկատու էր Հոնաց. գնաց Հոնաստան, ուր մնաց 5 տարի. վերադառնալով Աղվանք՝ երկիրը հանձնեց արաբներին.—Կղկնտ. Բ. լվ, լէ, խբ, խգ. Գ. ժբ, իգ. Մխ. այրիվ. 23.—սեռ. Վարազ-Տրդատայ՝ Կղկնտ. Բ. լզ—լթ, խե. Գ. գ, ժա. ժբ. Վրդ. լզ (հրտր. Էմինի՝ Վարազ-Գորդատայ)։

— 2. Վարազ-Տրդատ, որդի Վարազմանի, միհրական ցեղից, իշխան Աղուան (Ը դա՞ր).—սեռ. Վարազ-Տրդատայ՝ Կղկնտ. Գ. իւ

— 3. Վարազ-Տրդատ ի Ստեփանոսեան, Միհրական ցեղից, իշխան Աղուանից, «ութերորդ ի Վարազ-Գրիգորէ». սպանվեց Ներսեհ-ի-Փղիպեանի ձեռքով (Թ դար).—Կղկնտ. Գ. ի, իգ. Մխ. այրիվ. 23. Օրբ. լբ (սպանությունը դնում է 727 թվին, բայց սխալվում է. Մարքվարդ, Բացր. 43 դնում է 821—822 թթ.).—սեռ. Վարազ-Տրդատայ՝ Օրբ. լե։

* ՎԱՐԱԶ-ՔՈՒՐԴԱԿ, ար. կազմված Վարազ+Քուրդակ անուններից։

— 1. Վարազ-Քուրդակ, հայր Ջարմիհրի. Աղուանից արքայական ցեղից 704 թ. —Justi 350 ա։

— 2. Վարազ-Քուրդակ Վաչագանեան (ուրեմն որդի Վաչագանի). աղվան. անդամ Պարտաւի եկեղեցական ժողովի «768 թ.».—Ջամչ. Բ. 413. Ազգապ. 882։

ՎԱՐԳԷՆ, ար. ծագումն անհայտ. թվի իրանական՝ -էն փաղաքշական վերջավորության պատճառով. մի անգամ ունենք՝

— Վարգէն Արծրունի, հաջորդ Կիւրոսի (Ն. Ք. Բ դար).—Արծր. Ա. զ։

* ՎԱՐԴ, ար. <ծագում է ո՛չ թե վարդ ծաղկանունից, այլ կրճատ ձևն է զնդ. Varədat—xvarənah «փառքը ավելացած», հպրս. Arta-vardiya «սուրբ կրոնը աճեցնող» և այլ անունների (Հիւբշ. 82)։ Ուշ ժամանակ և հատկապես իգական անունների մեջ Վարդ ծագում է վարդ ծաղկանունից, ինչպես որ պրս. և թրք. ունենք բազմաթիվ անուններ gul «վարդ» բառից. հմմտ. նաև արաբ. ورد vard արական անուն (Կամուս. թրք. թրգմ. Ա. 707), ինչպես նաև ռուսական և եվրոպական Роза իգ. անունը։

— 1. Վարդ Մամիկոնեան, որդի Հմայեակի և եղբայր Վահան Մամիկոնեանի. Պարսկաստանում պատանդ էր. կապանքներից ազատվելով փախավ Հայաստան «482 թ.». Վահանի մահվանից

հետո հաջորդեց նրան իբրև մարզպան «505 թ.», բայց կարճ ժամանակից հետո մեռավ «510 թ.».—Փարպ. կբ, կզ, հբ, հգ. Փարպ. Թղ. էջ 197. Սեբ. ա. Գիրք Թղ. ը. ՑՀ. կթ. ժզ. Ասող. Բ. բ. Սամ. անեց. 74. Մխ. անեց. գ. Կիր. 23. Վրդ. լ. Նհպտք. 93. Սիմ. ապար. 59, 73. Մին. համդ. 27.—սեռ. Վարդայ՝ Փարպ. հգ. Գիրք. Թղ. Թ. Սամ. անեց. 74. Վրդ. լ։

— 2. Վարդ ի Հմայական. իշխան, անդամ Դուինի Բ եկեղեցական ժողովի «554 թ.».—Գիրք Թղ. ժէ։

— 3. Վարդ ի Մամական, իշխան (Զ դար), անդամ Դուինի Բ եկեղեցական ժողովի «554 թ.».—Գիրք Թղ. Ժէ։

— 4. Վարդ Մամիկոնեան, տե՛ս Վարդան Մամիկոնեան։

— 5. Վարդ պատրիկ Արծրունի, իշխանաց իշխան. ժամանակակից Ներսէս Շինողի («641—661 թթ.»). երբ գտնվեց Վարագայ խաչը.—Յայսմ. փետր. 26 և Գնձ. (տե՛ս Ձեռ. Դաշեան, Ա. 24 բ. «Գանձ Վարագայ խաչին»)։—Որ և Վարդան (կամ Վարդ) պատրիկ Ռշտունեաց.—սեռ. Վարդանայ՝ Արծր. Գ. իթ։—Նույն է նաև Վարդպատուրիկ անունով մի կեղծ հիշատակարան 917 թ. (տե՛ս Ձեռ. Վասպ. 318)։

— 6. Վարդ պատրիկ, իշխան Արծրունի. սրա կինը Մարիամ՝ ուխտի գնալով Ս. Կարապետի դամբարանը, մահվամբ պատժվեց (է դար)։ Իր գերեզմանը ցույց են տալիս Մշոյ Ս. Կարապետ վանքում (Տըվըլէ. Ուղև. ի Փ. Ասիա, Վիեննա, 1892, էջ 55)։—Մամիկ. ա.—Թվի նախորդի հետ նույն, ինչպես ընդունում է նաև Չամչ. Բ. 551։—Տե՛ս և Վարդան (№ 13) Արծրունի։

— 7. Վարդ Ա, որդի Արմայէլի, պարսիկ Միհրանեան տոհմից, տեր Գարդմանի (է դար).—Կղկնտ. Բ. ժէ. Գ. իգ. Մխ. այրիվ. 23։

— 8. Վարդ Բ, որդի Քաջն Վարդանի, Միհրանեան տոհմից, տեր Գարդմանի (է դար).—Կղկնտ. Բ. ժէ, Գ. իգ. Մխ. այրիվ. 23։

— 9. Վարդ, զորավար Սմբատ Բագրատունու ընդդեմ Արդուլյահ ոստիկանի՝ Վարդանակերտի ճակատամարտում 694 թ.—Չամչ. Բ. 378։

— 10. Վարդ պատրիկ. գրել է «Պատմութիւն գալստեան Մահմեդի ի Հայս և գնալ ընդդէմ նորա Սահակ («677—703 թթ») ս. եպիսկոպոսն».—Զարբ. Հին դպր. 792։

— 11. Վարդ Ռշտունի, որդի Թէոդորոս Ռշտունու՝ սպարապետի Հայոց. Ներսէս Շինողի հետ հանդիսադիր եղավ Վարագա խաչի նորագյուտ մասունքներին «660 թ.»։ Մասնակցեց Վարդանակերտի ճակատամարտին «703 թ.»։ Ուզեցավ վրեժ առնել հույներից, խաբեու-

Թյամբ միացավ նրանց հետ ընդդեմ արաբների, բայց պատերազմից վերադառնալիս՝ Գայլ գետի կամուրջը ջարդվելով՝ նրանց ջուրը թափեց (Հայապ. 71, 595 և Ջամչ. Բ. 359)։ Այս մեղքը քավելու համար, հետո շինեց Վասպուրականում բազմաթիվ եկեղեցիներ, որոնցից մեկում դրավ Ս. Ստեփաննոսի մասունքը, որ Երուսաղէմից բերել տվեց։ Իր գերեզմանը ցույց են տալիս Հայոց Ձորի Իշխանագոմ գյուղի եկեղեցում (Հնոց և Նորոց 15)։ Այդ գերեզմանը գտել է Աստմ վրդ. ՊԾԳ=1404 թ. տե՛ս Tübingen, էջ 132։ Մի գերեզման էլ ցույց են տալիս Հայոց Ձորի Խորգոմ (արդյոք նո՞ւյն է) գյուղում։ Առաք. պատմ. 376—377 պատմում է, թե ինչպես 1564 թվին երկու հույն եկել են գողանալու նրա ոսկորները, բայց գյուղացիք բռնել են նրանց և ծովը թափել (Ջամչ. Բ. 551 առասպել է համարում այս պատմությունը).—Ղև. դ, ը. Սուտ Շապհ. 29—36, 37. Ասող. Բ. դ. Վրդ. լզ, լէ. Յկ. Կր. 22, 52. Հայապ. 230—232։

— 12. Վարդ Արծրունի, ուզեց խլել Հունաց կայսերական թագը՝ Եռինէ կայսրուհու որդուց (780 թ.), բայց բռնվեց և վտարվեց. իր որդին է Լևոն Ե կայսր (813—820 թթ.).—Ջամչ. Բ. 431, Յուշիկք Բ. 263. Ազգապ. 927։

— 13. Վարդ, վանահայր, անդամ Նիկիոյ 787 թ. ժողովի.—Ջամչ. Բ. 423։

— 14. Վարդ Մամիկոնեան, որդի Մուշեղի. ազատվեց Բագրեվանդի ճակատամարտից («775 թ.»), իր Շապուհ եղբոր հետ ապաստանեց Մերուժան Արծրունու մոտ՝ «789 թ.», որ երկուսին էլ սպանեց.—Ջամչ. Բ. 415. Ազգապ. 890, 908 (Վրդ. խա)։

— 15. Վարդ Կեսար, որդի Մարինոս Մամիկոնեա՞նի, եղբորորդի Մանուէլ զորավարի, եղբայր Թէոդորոս կայսրուհու՝ կնոջ Թէոփիլոսի, խնամակալ Միքայէլ Գ կայսեր, մինչև իր սպանվելը 863 թ.—Ջամչ. Բ. 679, 694։

— 16. Վարդ, որդի Սարգսի, մայրն է Իրենէ՝ քույր Նախորդի.—Justi 351 ա։

— 17. Վարդ, եղբայր Սմբատի՝ փեսային Վարդ Կեսարի, որի հետ միացավ սպանելու համար Վարդին.—Justi 351 ա։

— 18. Վարդ դէհմէթար. հիշված է իբրև վկա Տաթևի 881 թվի կալվածագրում.—Օրբ. լթ։

— 19. Վարդ, կոչված «կրկին Մլեհ», հայր Սահակ Վանանդեցու, որ գրեց Լազարեան ճեմարանի Աւետարանը (887 թ.).—Ձեռ. 229 ա. Այրարատ 75. Բժշկեան, Ճնպրհ. ի Լեհս. 17. Բանաս. 1900, 294։

— 20. Բարդաս Սկլերոս (որ և Վարդ) որդի Նիկետասի, եղբայր Մարիամի՝ առաջին կնոջ Ջմշկիկ կայսեր. պատրիկ և հրամանատար Ասիական բանակի. հայոց և արաբների օգնությամբ ապստամբեց Վասիլ կայսեր դեմ և ջարդելով հունաց կայսերական բանակները, տեր դարձավ Փոքր Ասիոյ. պարտվեց իր մրցակից Բարդաս Փոկասից (979 թ.) և փախավ արաբների մոտ.—Գելցեր, Հմռ. Բիւզ. պատմ. 246. Justi 351 ա։

— 21. Բարդաս Փոկաս (որ և Վարդ), որդի Լևոն Փոկասի, որդւոյ Վարդի, եղբորորդի Նիկեփոր Բ կայսեր, Խաղտեաց գավառի դուքսն էր։ Ջմշկիկ կայսրը աքսորեց նրան Ամասիա։ Աքսորված ապրում էր Քիոսի մի վանքում։ Երբ Բարդաս Սկլերոսը ապստամբեց Վասիլ կայսեր դեմ և սպառնում էր Պոլսին, աքսորից արձակելով՝ նրա դեմ ուղարկեցին։ Սա գնաց, հաղթեց և Սկլերոսին փախցրեց արաբների մոտ (979 թ.) և հայտարարեց իրեն կայսր. +989 թ.։—Հա՞յ է.—Գելցեր, Հմռ. Բիւզ. պատմ. 246. Ջամչ. Բ. 844. Justi 351 բ։

— 22. Վարդ պատրիկ, Փոկաս ազգատոհմի նախահայրն է. սրա որդիներն են Նիկեփոր Բ. կայսր, Լևոն Փոկաս (№ 5) և Կոստանդին (№ 8)։

— 23. Վարդ, կիռ և պարոն, տեր Աղօլի և Կոտրաստոյ. ներկա եղավ Լևոն Բ-ի թագադրության հանդեսին («1199 թ.»).—Սմբ. պտմ. 112 (Սիսուան 471 ա գրում է Կիռ Վարդ տէր Կալանօնօրսոյ, Այժուտապին, Ս. Սոփէ և Նաղլօնին)։

— 24. Կիռ Վարդ, որդի կամ թոռ Սիր Ատանի (հունադավան հայ իշխան). հոր կենդանության ժամանակ ժառանգել էր Կալոնորոս բերդը։ Հեթում Ա-ի թագադրությունից քիչ առաջ, Իկոնիայի սուլթան Ալայ-էդ-դինը հարմար ժամանակ համարեց, բերդը գրավեց Կիռ Վարդի ձեռքից և նրա աղջկան էլ բռնի իրեն կին դարձրեց։ Իսկ աղջիկը քրիստոնյա մնալով՝ չուզեց ապրել նրա հետ։—Սիսուան 313.—բց. Վարդէն՝ Սմբ. պտմ. 119։

— 25. Վարդ կամ Վարդեր քահանա, որ Յակոբ կազմարարին կազմել տվեց մի հին Աւետարան, 1201 թ.— Rapport Arm. էջ 41։

— 26. Վարդ, որդի Վասուսի և եղբայր Աստուածատուր Բաբերդցու, որ գրել տվեց մի մեծ Տօնական, 1205 թ.—Ջեռ. Վենետ. Բ. 470։

— 27. Վարդ, մերձավոր Սահակ քահանայի Անեցւոյ՝ որ ստացավ Գետաշէնի նշանավոր Աւետարանը 1211 թ.—Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 43։

— 28. Վարդ, ռայիս (տանուտեր) Բագարանի. մի այգի է նվիրել Բագարանի Մայր Եկեղեցուն 1224 թ. (ըստ Սարգիսեան, Տեղագր. 203) կամ 1234 թ. (ըստ Ալիշան, Այրարատ 67)։

— 29. Վարդ պարոն, Թուղթ էր կոկում, երբ Գրիգոր գրիչը օրինակում էր Ավետարանը Կարինում 1230 թ. Վարդը դրամապես էլ օգնեց նրան։—Ձեռ. Վենետ. Ա. 573։

— 30. Վարդ, ռայիս Բագարանի. մի այգի նվիրեց Բագարանի կաթողիկէին՝ 1234 թ.—Այրարատ 69։

— 31. Վարդ, հայր Գրիգոր միայնակեացի, որ Իտալիայի Salerno քաղաքում գրել տվեց մի ժողովածու, 1283 թ.—Ձեռ. Մխիթ. 10 բ, 11 բ։

— 32. Վարդ Մրուիշցի. Հեթում պատմիչի հրամանով օրինակեց Բժշկարանը «1294 թ.».—Զարբ. Թրգմ. 761. Ազգապ. 1794. ՀԱ 1924, 113. Բասմաջեան, Անգիտաց անպէտ, էջ Դ ծան. Սիսուան 337 (ուր կա երեք նմուշ նմանատիպ)։

— 33. Վարդ, եղբայր Յովհաննէս գրչի (ԺԴ դար).—Ց. Մուրատ, Յայտ. Յովհ. էջ ՅԻԱ։

— 34. Վարդ (կամ Թերևս Պարոնվարդ), որդի Պարոնշահի, որ գրել տվեց մի Ավետարան 1329 թ.—Ձեռ. Վասպ. 179։

— 35. Վարթ, ազգական Շահնշահի, որ Գողթան գավառի Կոպատոսի անապատում, Թումայ Արճիշեցուն գրել տվեց Ավետարանը՝ 1336 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 387)։

— 36. Վարդ քահանայ, գրիչ. Աբրահամ արքեպիսկոպոսի հրամանով գրեց ընտիր մի Սաղմոս, Թիֆինի վանքում (Մերդին), 1356 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 186։

— 37. Վարդ սարկավագ, եղբայր Հայրապետ գրչի, որ օրինակեց նրա համար Հաւաքածոն (ԺԴ դա՞ր. 1420 թվից առաջ).—Տաշեան, Ցուց. 665։

— 38. Վարդ, որդի Աղէկմանուկի (ԺԴ դա՞ր, 1420 թվից առաջ).—Տաշեան, Ցուց. 666։

— 39. Վարդ, այլ ոմն (ԺԴ դա՞ր. 1420 թվից առաջ).—Տաշեան, Ցուց. 666։

— 40. Վարդ պարոն, սանահայր Ստեփաննոս Ղարիպշահի, որ Լիմ կղզում օրինակել տվեց Յայսմաւուրքը 1457 թ.—Ձեռ. Թաւր. 103 բ։

— 41. Վարդ պարոն, որդի Շատինպէկի. Ամիրտովլաթ բժշկին գրել տվեց Բժշկարանը՝ Պոլսում, 1459 թվին.—Ամիրտ. Օգ. բժշ. էջ իգ։

— 42. Վարդ (պարոն), որդի Յովանէսի և եղբայր Սիրատանի, որ Կեսարիոյ Մանտիսոն գյուղում գրել տվեց Յայսմաւուրքը 1495 թ.—Ալպօյաճեան, Պատմ. Հայ Կես. Բ. 1850։

—43. Վարդ, իգ. ! 1588. Ձեռ. Վասպ. 712։

+ ՎԱՐԴԱԳՈՅՆ, ար. <հյ. վարդ+գոյն բառերից. մի անգամ հիշված է Լազարեան ճեմարանի Աւետարանում (գրված 887 թ.), էջ 2, թիվն անհայտ։

* ՎԱՐԴԱԶԱՏ, ար. իրան. vardāzād անունից, որ նշանակում է «ազատ՝ ազնվական ինչպես վարդը» (Justi 359 բ), որ և պրս. Gulāzād. Հիշված է մի անգամ 1571 թվին (Տաշեան, Ցուց. 1005 բ) և մի անգամ էլ 1629 թ. (Կամենից 183=ՀԱ 1890, 21 ա.) կան և երկու Վարդազատ անուն անձինք, առաջինը 1224 թվից հետո (Ձեռ. Վենետ. Բ. 36) և երկրորդը 1475 թվից հետո (Ձեռ. Մաղն. 34)։

— 1. Վարդազատ, հայր Թումայի, որ Ցիննից գյուղի ռեսն էր 1451 թ.—Նոտարք 168։

— 2. Վարդազատ, թ.?.—Ձեռ. Վասպ. 530։

ՎԱՐԴԱԶԱՐ, ար. գործածական է այժմ, որից նաև Վարդազարեան ազգանունը։ Հնագույն հիշատակությունը 1749 թ. Վարդազար Շահկերտցի, զորավար Պէհնամի՝ վրացի (մահմեդական) խանի Նախիջևանի (Չամչ. Գ. 843)։

ՎԱՐԴԱԶԻԶ, ար. կազմված վարդ+ազիզ բառերից։

— 1. Վարդազիզ, ս.? 1585 թ.—Թորոս աղբ. 368։

— 2. Վարդազիզ, ար., հիշված 1663 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 21 բ)։

* ՎԱՐԴԱՆ, ար. <իրան. Vardān անունից. հմմտ. լատին տառադարձությամբ՝ Vardanes I (Արշակ ԺԹ) թագավոր Պարթևաց՝ 42—45 թթ. և Vardanes II (Արշակ ԻԲ) թագավոր Պարթևաց՝ 55—58 թթ.։ Նաև Վարդան-Վշնասպ՝ զորավար Պարսից (Սեբ. էջ 29)։ Նույնից է փոխառյալ վրաց Վարդան կամ Վարդէն անունը. հմմտ. դարձյալ չերքեզ. Vardan իգական անունը։ Հիշված է իբր օրինակ ազգանվան՝ Վարդանեան Դաւ. քեր. 104, ի Վարդանայ՝ Խոր. քեր. 170։—Շատ սովորական անուն էր հնում և է այժմ էլ։ Կրճատ ձևն է Վարդո։

— 1. Վարդան Մամիկոնեան, որդի Արտաւազդի և թոռն Վաչէի. նահապետ Մամիկոնեան (ըստ Խոր. Ջինակիր Արշակ Բ-ի). Կեսարիայումն էր «349 թ.», իր աղջիկը Սանդուխտ կինն էր Մեծն Ներսէսի. ուղեկից եղավ Մեծն Ներսէսին («364 թ.») Պոլիս դեսպանության գնալու ժամանակ։ Տիրիթի քսությամբ և Արշակի հրամանով

սպանեց Գնէլին և ինքն էլ սպանվեց իր Վասակ եղբորից։—Բուզ. Դ. բ, ժա, ժե, ժզ, ժը. Խոր. Գ. իբ, իգ, իե. Մեսր. եր. 14, 17, 52.— սեռ. Վարդանայ, բց. ի Վարդանայ՝ Բուզ. Դ. ժա, ժզ, ժը, ծ, ծթ. Խոր. Գ. իգ, իե. Արծր. Ա. ժ.—գրծ. Վարդանաւ՝ Խոր. Գ. իբ։—Ազգապ. էջ 178 չի ընդունում, որ Ներսէսի անեբը լինի նաև Գնէլի սպանողը, այլ մի ուրիշ անձ։

— 2. **Վարդան** Մամիկոնեան, որդի նախորդ Վարդանի, ծընվեց հոր սպանման րոպեին և հոր անունով էլ կոչվեց Վարդան.— Բուզ. Դ. ժը։

— 3. **Վարդան** Մամիկոնեան, սխալմամբ հիշված իբր հայր Սամուէլի. տե՛ս Վահան Մամիկոնեան։

— 4. **Վարդան**, Տարոնի Հացեկաց գյուղից, հայր Ս. Մեսրոպի.—Կոր. էջ 6. Փարպ. ժ.—սեռ. Վարդանայ՝ Փ. Կոր. 6.—բց. ի Վարդանայ՝ Սասն. 22։

— 5. **Վարդան**, Աղուանից թագավորական ցեղից. սրան հանձնեցին Վարդանանք Հոնաց պահակի պահպանությունը (450 թ.).— սեռ. Վարդանայ՝ Կղկնտ. Բ. բ։

— 6. **Վարդան** Մամիկոնեան, կոչված **Մեծն, Քաջն և Կարմիրն**. որդի Համազասպ Մամիկոնեանի, թոռն Ս. Սահակի. ծն. «388 թ.»։ Մեսրոպի հետ գնաց Պոլիս («417 թ.») և ստացավ ստրատելատ տիտղոսը։ Ուրիշ նախարարների հետ կանչվեց Յազկերտի Դուռը և առերես ուրանալով հավատքը՝ արձակվեց։ Գլուխ կանգնեց ուխտապահների կուսակցության։ Արշավեց Աղուանք, ուր հաղթեց Պարսից Սեբուխտ զորավարին։ Ավարայրի դաշտում ճակատեց Պարսից դեմ, ուր և քաջաբար կռվելով նահատակվեց 1036 ընկերներով «451 թ.».—Կոր. էջ 14. Փարպ. ժը, իգ, իե, իէ, իը, լա—լէ, լթ, խդ—խզ. Եղիշ. 32, 58, 76, 90—93, 177. Սեբ. յոչ. Խոր. Գ. ծէ, ծը, կդ, կե. Կղկնտ. Բ. բ. Յհ. կթ. ժդ. Արծր. Ա. ժա. Բ. ա, բ, յավել. Պտմ. սահ. 30. Մեսր. եր. 124. Վկ. շուշ. 50. Կանոն 58. Ցղ. մովս. և դաւթի, էջ 58, 59. Մխ. այրիվ. 19. Ասող. Բ. բ. Շնորհ. Վիպ. 977. Մխ. անեց. գ. Սամ. անեց. 70. Կիր. 18, 19, 20. Վրդ. իե—իէ. Վրդն. աշխ. 515, 523. Միխ. աս. իթ (=իէ). Շար. Ղբ. Յայսմ. սեպ. 9, 17, դեկ. 25, յուլ. 31, օգ. 7. Օրբ. ժզ. Տաթև. Յմ. լը, խ. Հարց. 544. Մեծոփ. 81. Թլկր. 52. Ջուղ. 45. Նհպտք. 91. Մին. համդ. 27. Սիմ. ապար. 28, 40, 50, 158.—սեռ. Վարդանայ, բց. ի Վարդանայ՝ Կոր. էջ 25. Փարպ. իզ—իը, լ—խբ, խզ, ծէ, կա—կգ. Վկ. շուշ. 10, 11, 43, 50, 55. Եղիշ. 5, 56, 57, 61, 74, 92, 99. Խոր. Գ. ծը, կէ. Փ. Կոր. 28. Ցղ. Մովս. և Դաւթի էջ 58, 60, 69. Դաւ. անյ. 102. Կղկնտ. Բ. բ.

ՅՀ. կթ. ժե—ժէ. ՅՀ. կթ. Հյր. 274. Արծր. Ա. զ, ժա, Բ. ա, բ. Դ. ժբ. Ասող. Բ. բ. Պտճռ. բրձր. 30, 31. Մեսր. եր. 138. Պտմ. Եղիշ. 39. Մխ. անեց. խդ. Միխ. աս. իթ (=իը). Սամ. անեց. 70. ՔՀնպ. 270. Ճշ. 644. Յայսմ. դեկ. 25. փետ. 27. մրտ. 30. յուլ. 31. Կիր. 3. Վրդ. իէ, լա, խդ. Վրդն. աշխ. 515. ՆՀպտք. 93. ZAPh 1, 207. Օրբ. ժզ, ժը. Սիմ. ապար. 40. Օրբ. ողբ. 35. Տաթև. Ձմ. լը, լթ.—գրծ. **Վարդանաւ**՝ Փ. Կոր. 13.—**Վարդանանք**՝ Կղկնտ. Բ. ա. Դաւ. անյ. էջ 99. ՅՀ. կթ. ժե. Արծր. Ա. գ. Ասող. Ա. ա. Գր. Նար. մատ. 361 Պտմ. Եղիշ. 40. Յիշ. Թաթ. 47. Ողբ Եդես. 307. Սամ. Անեց. 71. Մաղաք. աբ. 43, 44. Ջքր. եպս. 281. Կիր. 17, 68, գ, ը. Վրդ. իէ, խդ. Ճար. ղբ. Պարականոն շար. 165. Մխ. այրիվ. 62. Օրբ. ժմ. 21. Ճշ. 80. Պտրգ. 642. ժմ. 602. Ջարբ. թրգմ. 759 (Հիշատ). Յայսմ. սեպ. 30, նոյ. 1, դեկ. 25, մրտ. 6, օգ. 7. Օրբ. ժը. Տաթև. Ձմ. լէ, լթ, խ. Հարց. 637. Առաք. լծ. ՍաՀմ. 170, 172. Արր. կրետ. 41.—**Վարդանանք**՝ Վրդ. իէ (Հրտր. Էմինի).—**Վինեն Վարդանեան**՝ Մագ. թղ. ժթ.—Տե՛ս և **Վարդկան**: Ընդարձակ խոսում է Բ. վրդ. Կիւլէսէրեան, Եղիշէ, էջ 337—397։ Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Բ. 278—339. Յուշիկք Ա. 239—269. Լ. Մելիքսեթ-Բեկ, Վրաց աղբ. Ա. 11.—Վարդանի նկարը տե՛ս Ձեռ. Դաշեան Բ. 36 բ, 193 և մի ուրիշը՝ 1293 թվից տե՛ս Սիսուան 110.—Հայ Եկեղեցին սրբացրել է Վարդանին և իր անվան է նվիրել Նորահրաշ շարականը, որից մի տուն դնում եմ այստեղ.

«Նորահրաշ պսակաւոր և զօրագլուխ առաքինեաց,
Վառեցար զինու Հոգւոյն արիաբար ընդդէմ մահու.
Վարդան, քաջ նահատակ, որ վանեցեր զթշնամին,
Վարդագոյն արեամբդ քո պսակեցեր զեկեղեցին»։

Ըստ Մառի կա նաև վրացերեն լեզվով «Վկայաբանութիւն Վարդանի, եղբօր նորա Հմայեկի, ՎաՀանի, ՍաՀակի և 137 վկայից», որ վերցրած պիտի լինի Եղիշէից։

— 7. **Վարդան ի Վասակայ**, իշխան, անդամ Դուինի Բ եկեղեցական ժողովի «554 թ.».—Գիրք թղ. ժէ։

— 8. **Վարդան ի Մուշեղեան**, իշխան, անդամ Դուինի Բ եկեղեցական ժողովի «554 թ.».—Գիրք թղ. ժէ։

— 9. **Վարդան ՎաՀեւունի**, իշխան, անդամ Դուինի Բ եկեղեցական ժողովի «554 թ.».—Գիրք թղ. ժէ։

— 10. **Վարդան ի Մուշեղեան**, իշխան, անդամ Դուինի Բ եկե-

ղեցական ժողովի «554 թ.». տարբեր է նախորդից.—Գիրք Թղ. ժէ։

— 11. Վարդան Բ Մամիկոնեան, որդի Վասակի, եղբայր Մանուէլ Մամիկոնեանի. ապստամբեց Պարսից Խոսրով Թագավորի դեմ, սպանեց Սուրէն մարզպանին, որ սպանել էր Մանուէլին, և Հունաց Յուստինոս կայսեր օգնությամբ վտարեց պարսիկներին Հայաստանից («571 թ.»). Հետո գնաց Պոլիս, ուր կայսեր բանակի մեջ զորավար կարգվեց.—Սեբ. ա. ՅՀ. կթ. ժզ. Վրդ. խդ. Օրբ. իդ (գրված Վարդ). Սիմ. ապար. 74. Մխ. այրիվ. 19, 64.—սեռ. Վարդանայ՝ Սեբ. յուշ. ա, բ. ՅՀ. կթ. ժզ. Ասող. Բ. բ. Միխ. աս. իթ (=իը). Վրդ. լբ. Սամ. անեց. 75 (գրված Վարդայ). Ջուղ. 47.—իբր թե իր հորդորով մի խումբ եպիսկոպոսներ և վարդապետներ մասնակցել են Պոլսի կրոնական ժողովին (553 թ.).—Ջամչ. Բ. 521, Տաշեան, Ցուց. 113 բ.—Թէոփ. Բիւզ. դնում է երեք եղբայր. Վարդ, Վարդան և Մանուէլ.—Justi 351 ա.—Վրաց. աղբ. Ա. 42 (մականուն է դնում չոfխ, որ թարգմանվում է «կամակոր»), 43, 79. ըստ Ա. Շալչեանի նկատողութեան՝ մեր մեջ էլ նույն Վարդանը կոչված է ճեռ կամ խեռ Վրդն. պտմ. 1861, էջ 115=Վենետ. էջ 84։

— 12. Վարդան պատրիկ Ռշտունեաց, տե՛ս Վարդ Արծրունի։

— 13. Վարդան Արծրունի, պաշտոնի կանչվեց Պարսից Խոսրով Բ Թագավորի (590—628 թթ.) պալատում.—Սեբ. ժա.—Ազգապ. 585—586 գրում է Վարդ և միացնում է այն Վարդ պատրիկ Արծրունու հետ, որի կինը՝ Մարիամ (№ 7) ուխտի գնաց Ս. Կարապետի դամբարանը։

— 14. Վարդան քաջ, ազգապետ, տեր Գարդմանի. ժամանակակից Վաչագան Գ-ի (Զ դար).—Կանոն 197. Կղկնտ. Ա. իզ։—Տե՛ս Վարդան Ա քաջ։

— 15. Վարդան վարդապետ Բագառիճցի. անդամ Կարնոյ եկեղեցական ժողովի («623 թ.») և համամիտ Եզրի.—Տաշեան, Ցուց. 114 բ. Ջամչ. Բ. 328։

— 16. Վարդան՝ արձակյալ գերի Աբդալլահ-բին-Սադ-բին-աբի-Սարհի (+656 թ).—Justi 352 ա, № 16։

— 17. Վարդան՝ արձակյալ գերի էս-Սաիբի, իր անունով է կոչվել Մեքքէի ջրհորը (Բելազօրի).—Justi 352 ա, № 16։

— 18. Վարդան, Ալիի սպանիչներից մեկը, ինքն էլ սպանվեց նրա մահից հետո 661 թ.—Justi 352 ա, № 17։

— 19. Վարդան Հոռոմ (արաբ. وردان الرومی այն է՝ հունահայ). ուրացյալ, Արաբաց Ամր-իբն-ալ-Ասի իշխանի բարեկամն էր. եղավ հարկապետ Եգիպտոսի. սպանվեց Ալեքսանդրիայում՝ 673 թ.։ Իր

անունով հին Կահիրէի շուկան կոչվում է «Սուք-Վարդան».—Աբուսահլ 50. Justi 352 ա։

— 20. Վարդան Ա քաջ, որդի Վարդի, տեր Գարդմանի, Միհրանեան պարսիկ տոհմից. կտորեց Աղուանից իշխանական տոհմը և տիրեց Աղուանից ու Կովկասի (է դար).—Կղկնտ. Բ. ժէ, Գ. ժ, իգ. Մխ. այբիվ. 23։

— 21. Վարդան Փիլիկ, տե՛ս Փիլիպպիկոս (շուրջ 710 թ.)։

— 22. Վարդան, որդի Սատոնի, իշխան Աղուանից, անդամ Պարտաւի ժողովի «768 թ.».—Ջամչ. Բ. 413. Ազգապ. 882։

— 23. Վարդան-բին-Սինան, տեղակալ Մանսուր (754—775 թթ.) խալիֆայի.—Justi 352 բ, № 22։

— 24. Վարդան եպիսկոպոս, անդամ Նիկիոյ եկեղեցական ժողովի 787 թ.—Ջամչ. Բ. 423։

— 25. Վարդան Բ պատրիկ Աղուանից, որդի Վարազ-Տրդատ իշխանի Աղուանից. պատանդ էր Հունաց մոտ. բանտարկվեց 12 տարի (Ը դար).—Կղկնտ. Գ. ը, ժ, ժբ, իգ. Մխ. այբիվ. 23։

— 26. Վարդան Հայկազն, մականունն է Թուրք, պատրիկ և զորավար Հունաց արևելյան բանակի։ Ժողովուրդը և զորքը զզված չարասիրտ և անգութ Իրենէ կայսրուհուց, որ մինչև իսկ իր որդուն էր կուրացրել («797 թ.»), նրան կայսր հրատարակեցին («802 թ.»)։ Բարին և աստվածավախն Վարդան ակամա 50 օր միայն պահեց այս պատիվը և գահը իր հակառակորդ Նիկեփորոսին հանձնելով՝ ծածուկ փախավ և Իշխանաց կղզիներից Պռոտիի վանքը մտավ՝ Սաբա աբեղա անունով։ Դաժան Նիկեփորոսը կուրացրեց Սաբային էլ։ Սաբան իր կնոջը, աղջկանը և զինվորական որդիներին էլ վանք մտցնելով, ճգնական կյանք վարեց մինչև իր մահը։ Հույն եկեղեցին նրան սրբոց կարգն է դասել.—Ջամչ. Բ. 430. Ազգապ. 918. Յուշիկք Բ. 351—375. Ալպօյաճեան, Պատմ. Հայ Կես. Ա. 402։

— 27. Վարդան Սիւնի՞, հայր Ատրներսեհի (Ը դարի վերջերի).—սեռ. Վարդանայ՝ Օրբ. լը։

— 28. Վարդան Սիւնի, հայր Վահանի, որ հիշվում է Տաթևի 844 թ. կալվածագրում (նո՞ւյն է նախորդի հետ).—սեռ. Վարդանայ՝ Օրբ. լը։

— 29. Վարդան, որդի Ջանադայ. հիշվում է իբր վկա՝ Տաթևի 844 թ. կալվածագրում.—Օրբ. լը։

— 30. Վարդան Գաբայեղէն. մասնակցեց Մուշէի պատերազմին («851 թ.»).— Արծր. Բ. զ։

— 31. Վարդան Գնունի, մասնակցեց Գուրգէնի պատերազմին ընդդեմ Բուղայի («852 թ.»).—Արծր. Գ. դ։

— 32. Վարդան կամ Վարդեան, որդի Ջափրան Գնունու, Գրիգոր-Դերենիկ Բ-ի (№ 71) հրամանով կարգվեց տեր և իշխան Վանի և շրջակայքի (Թ դար).— Սում Շապհ. 48։

— 33. Վարդան Վուղ, վերակացու Բարձր Հայոց. նստում էր Բաբերդում, իրեն հետ միացրեց Տաճատ Բաբերդցի և Ադրիանոս Սպերցի իշխաններին և ապստամբեց կայսեր դեմ. Յովհան Գուրգէնը հասավ իր բանակով և հաղթեց. Վարդանը արգելվեց մի վանքում (935 թ. ըստ Չամչ. Բ. 825, իսկ Justi 351 ա կոչում է Վարդ ստրատիգոս)։

— 34. Վարդան քահանա, անդամ Խաչենի եկեղեցական ժողովի, որ գումարեց Անանիա Մոկացի («946—968 թթ.») կաթուղիկոսը.—Անան. ապար. 134 բ։

— 35. Վարդան դիւանադպիր. եղբայր Գրիգոր Նարեկացու (+ 1003 թ.)։ Չամչեան Բ. 853 համարում է Սենեքերիմ Թագավորի դիվանադպիրը. Նարեկացու եղբայրը լինելու մասին տե՛ս Սարգիսեան, Ուսգր. Ներած. էջ ճկ. հակառակը՝ Զարբ. Հին դպր. 548.—սեռ. Վարդանայ՝ Գր. Նար. Մատ. էջ 483. տե՛ս նաև Տաշեան, Ցուց. 134։

— 36. Վարդան Սանահնեցի, ուղեկից եղավ Պետրոս Գետադարձին՝ Պոլիս ճամփորդության ժամանակ («1047 թ.»).—Ուռհ. 105։

— 37. Վարդան Մեղրիկ, ունի «Խոստովանութիւն» անունով մի գրվածք, «Քրիստոս որդի Աստուծոյ. արարիչ և տէր. դատաւոր կենդանեաց և մեռելոց, որ տարածեցեր զսուրբ և զկենդանարար բազուկս քո ի վերայ կենդանարմատ փայտին...» (տե՛ս Ձեռ. Վենետ. Բ. 959)։ Թեև խորագրում դրված է Վարդանի անունը, բայց ծանոթության մեջ վերագրվում է Գէորգ Մեղրիկ վարդապետին, որին տրվում է նաև հաջորդ «Ճառ ի Թաղումն Տեառն» գրվածքը։ Նույն խոստովանությունը նույն բառերով ունի նաև Տաշեան, Ցուց. 446 բ, որ թեև վերագրված է պարզապես «Մեղրիկ վարդապետ»-ին (առանց անվան), բայց ցանկում, էջ 1071 գ տրվում է Գէորգ Մեղրիկին։ Այս անունով պետք է հասկանալ Գէորգ Մեղրիկ Անալիւրցին, որ տե՛ս վերը Գէորգ № 44 (+1104)։ Պետք չէ սակայն կարծել, թե Վարդանը նույնի երկրորդ անունը լինի, այլ շատ հասարակ շփոթության արդյունք է։ Վեննետիկի նույն ձեռագիրը «Հաւաքեալ է ի ձեռագրաց Վիեննական հարց» (էջ 958) և Վիեննայի այդ ձեռագիրն էլ (№ 144) կոչվում է «Աղերսք Վարդանայ և խրատք»։

— 38. Վարդան Հայկազն, ունի «Տաղ գերեզմանական վասն փոխման Գրիգորի Վկայասէրի» («+1105 թ.»)։ Այս տաղը ունի 900-ի չափ տող, ռամկական հայերենով. հրտր. Բազմ. 1873, էջ 264—271։ Զարբ. Հին. դպր. 316, 700—702. Կնիք հաւ. յօջ. 113. Ձեռ. Վենետ. Բ. 1216 թ. Յովնանեան, միջն. ազգ. տաղչ. Վիեննա 1911, էջ 7։

— 39. Վարդան Վարդապետ. միջնորդ եղավ Հունաց և Հայոց կրոնական միության խնդրում՝ Շնորհալու (1166 թ.) և Գրիգոր Տղայի (1173 թ.) ժամանակ.—բղր. ի Վարդանայ՝ Շնորհ. Թղ. 314. Գր. տղ. 57։

— 40. Վարդան գրիչ, օգնական Գրիգոր գրչի, որ Գրիգոր Տղայ կաթուղիկոսի համար օրինակեց Աւետարանը՝ Հռոմկլայում, 1174 թ.—Թորոս աղբ. Ա. 118, Բ. 443։

— 41. Վարդան գրիչ. բնակվում էր Նդուտանի մեջ, Թեղենիի վանքը, 1178 թ.—Տաթև 1927, 184։

— 42. Վարդան, երեց եղբայր և ուսուցիչ Յովհաննէս (№ 179) գրչի, որ Հոռոմոսի վանքում օրինակեց մի գեղեցիկ ձեռագիր Աւետարան, 1181 թ.—Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 15. Ձեռ. Վենետ. Ա. 395։

— 43. Վարդան Հաղբատացի, նշանավոր վարդապետ Հաղբատի վանքի. իր ծնված տեղն ու թվականը հայտնի չեն։ Իր եղբայրն է Գրիգոր Վարդապետ ոմն, միաբան Հաղբատի։ Վարդանը գնաց Կիլիկիա և Ասորիք, մնաց երկար տարիներ, ուսումնասիրելով ժամանակակից գիտությունները, հատկապես Ներսէս Շնորհալու («1166—1173 թթ.») մոտ։ Այդ միջոցին մասնակցեց հայ և հույն եկեղեցիների միության խնդրին և բանակցություններ վարեց Թէորիանէ հույն իմաստասերի հետ, որ կայսեր կողմից ուղարկված էր խորհրդակցելու համար կրոնական միության առթիվ։ Խնդրեց Շնորհալուց գրել «Պատճառ և մեկնութիւն բարձրացուցէքի», Գրիգոր Նիւսացու գործերի և Գրիգոր Աստուածաբանի «Քրիստոս ծնեալ» ճառի։ Շնորհալու մահից հետո («1173 թ.») Վարդանը վերադարձավ Հաղբատ, ուր պարապեց գրելով և ուսուցանելով։ Մին է այն հյուսիսայիններից, որոնք գրեցին Գրիգոր Տղային «1178 թ.» և հակառակ կանգնեցին միության խնդրին։ Իր աշակերտներից նշանավոր է Դավիթ Քոբայրեցին։ Մահվան թվականը հաստատ չէ. հավանաբար մեռավ 1191 թ. և թաղվեց Հաղբատում, ուր մնում է իր գերեզմանը։ Ըստ այլ աղբյուրների արդեն մեռած էր 1195 թ. (Ցիշատ. Զարբ. Թրգմ. 448 և Հայապ. 383)։ Ուրիշ տեղ մահը դրվում

է 1207 թ. (Զամչ. Գ. 85), ուստի ճիշտ չէ այն տեղեկությունը, որով ներկա է դրվում Լոռիի եկեղեցական ժողովին (Կիր. գ) 1208 թ. (Աշգապ. 1577), կամ 1207 թիվը պետք է դարձնել 1208 և կամ դնել երկու տարբեր Վարդան։ Ունի գրած մի խումբ լուծմունք, որոնք Շնորհալու վերոհիշյալ գործերի ամփոփումն ու ընդարձակումն են։ Հեղինակ է Պատճառաց գրքի (Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 68)։ Իր գրածներից շատերը շփոթվում են ուրիշ համանուն վարդապետների գործերի հետ։ Իր մասին ընդարձակ խոսում է Ակինեան, Մատեն. հետազ. Ա. 68—77։ Հիշատակելի աղբյուրներ են Տաշեան, Ցուց. 756, Զարբ. Հին դպր. 632, Շնորհ. Թղ. 308, Կնիք. հաւ. յուշ. 115, Ալիշան՝ Շնորհ. և պրգ. 262—264. Ձեռ. Դաղեան Ա. 91 բ, որ տալիս է նրան բազմաթիվ երկասիրություններ։

— 44. Վարդան, ժանահայր Նոր Գետիկ վանքի, 1191 թ. այս թվին Մխիթար վրդ. Գօշ ավարտեց իր նորակերտ եկեղեցու շինությունը.—Սմբատեանց, Գեղարք. 173 (Արձ.)։

— 45. Վարդան, վանահայր Գետիկ վանից 1191—1198 թթ., երբ Մխիթար Գօշը վերանորոգեց Վախտանկ իշխանի ձեռնտվությամբ.—Ոսկեան, Մատ. քնն. 131 (Արձ.)։

— 46. Վարդան կրոնավոր, Կիլիկիոյ Ջահան գավառումն էր. գործակցեց Ներսես եպիսկոպոսին՝ գտնելու համար Լամբրոնացու Մեկն. պատարագի ձեռագիրը, որ Թուրքերը հափշտակել էին։ Գտան 1192 թվին.—սեռ. Վարդանայ՝ Լմբ. Մատ. 557։

— 47. Վարդան կրոնավոր, գրիչ. օրինակեց Ճաշոցը, Կիլիկիոյ Մաշկևոր վանքում, 1192 թվին.—Ֆ. Մուրատ, Յայտ. Յովհ. էջ մըը։

— 48. Վարդան, օգնական կամ մերձավոր Կոստանդին գրչի, որ Սկևռայ վանքում օրինակեց ամենագեղեցիկ մի Աւետարան, 1193 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 558։

— 49. Վարդան ոմն, որին հիշում է Կոստանդ նկարիչ ծաղկող Աւետարանի՝ Սկևռայ վանքում 1193 թ.—Սիսուան 98։

— 50. Վարդան գրիչ ի Թեղենիս. օրինակեց Մեկն. Յովհաննու 1198 թ.—Այրարատ 257. Հայապ. 371 բ։

— 51. Վարդան, եպիսկոպոս Եւդոկիոյ. հիշված է 1198 թ.—Justi 352 բ։

— 52. Վարդան, եպիսկոպոս Անւոյ. հիշված է 1198 թ.—Justi 352 բ։

— 53. Վարդան, արքեպիսկոպոս Լամբրոնի և առաջնորդ

Սկևռայ. Ներկա եղավ Լևոն Բ-ի թագադրության հանդեսին («1199 թ.»).—Սմբ. պատ. 110։

— 54. Վարդան վրդ. հակառակ էր Սրբոց տոներին և Ցայսմաւուրքի (ԺԲ դա՞ր).—Հայապ. 552։

— 55. Վարդան վարդապետ Աղուանեցի կամ վարդապետ Աղուանից. ունի «Պատասխանի ընդդէմ Հռովմայ պապուն», որից մի օրինակ հասել է մեզ 1305 թվից և մի ուրիշ օրինակ էլ 1292 թվից (տե՛ս Ջեռ. Հալէպի, Ա. 344). ուրեմն և հեղինակին պետք է դնել գոնե ԺԲ դար.—Տաշեան, Ցուց. 769։

— 56. Վարդան վարդապետ Անեցի. ունի «Երգելիկ վասն կառաց աստուածութեան» (28 տուն)։ Այս հեղինակի մասին եղած միակ վկայությունն է իր ներբողը, որի նախատառերը հօղում են իր անունը։ Ալիշան, Շնորհ. էջ 128—130 տալիս է մի հատված այս Երգելիկից. հեղինակին էլ համարում է ԺԲ դարից. կա նաև այս Երգելիկի լուծմունքը, որի միայն սկզբնավորությունը հասած է մեր ձեռքը (Ալիշան, անդ)։ Ամբողջ Երգելիկը հրատարակեց Հ. Բ. Սարգիսեան (Վենետ. 1919), որ խորհրդապաշտ ոճից դատելով՝ հեղինակին դնում է ժամանակակից Նարեկացուն (Ժ կամ ԺԱ դար)։

— 57. Վարդան, վանահայր Ս. Սիօն եկեղեցու Օշականի, 1200 թ.—Այրարատ 194 ա։

— 58. Վարդան գրիչ. Երզնկայի Աւագ վանքում օրինակել է մի հիանալի Աւետարան 1200 թ.—Յովսէփեան, Նիւթեր և ուս. Բ. 25։

— 59. Վարդան վարդապետ, միաբան Ս. Գրիգոր վանից Դարանաղեաց գավառի, 1201 թ.—Ջեռ. Սեբ. (ՀԱ 1924, 247)։

— 60. Վարդան քահանա Կարնեցի, մասնագետ գրիչ. Բաբերդի ռայիս Աստուածատուրի առաջարկով երեք տարվա մեջ օրինակեց մի մեծ Տօնական, 1204 թ.—Ջեռ. Վենետ. Բ. 469, 471։

— 61. Վարդան քահանա Կարնեցի. գրիչ. Աստուածատուր Բաբերդցու պատվերով օրինակեց Տօնականը 1204 թ.—Հայապ. 448։

— 62. Վարդան, եղբայր Ստեփաննոսի. նվիրատու ձեռագրի ի Տարօն, 1204 թ.—Հայապ. 450։

— 63. Վարդան, նվիրատու ձեռագրի 1205 թ.—Ջեռ. Վենետ. Բ. 473։

— 64. Վարդան, բարեկամ Աստուածատուր Բաբերդցու, որ գրել տվեց մի մեծ Տօնական, 1205 թ.—Ջեռ. Վենետ. Բ. 470։

— 65. Վարդան, միաբան Աստուածընկալ ուխտին 1207 թ.—Այրարատ 255։

— 66. Վարդան, առաջնորդ Ծոփաց Աստրիմայր անապատի 1208 թ.—ՏաԹև 1927, 183։

— 67. Վարդան, կազմել է «Գիրք հաստատութեան և Արմատ հաւատոյ» հավաքածուն, ի Պարվաւան, 1209 թ.—Կնիք. հաւ. էջ 110—116 յջ. և հատկապես 117—119։

— 68. Վարդան, առաջնորդ Սանահնի վանքի 1211 թ.—Ակինեան, Մատեն. հետազ. Ա. 9։

— 69. Վարդան, վանահայր Բագարանի մայր եկեղեցու 1211 թ.—Արձ. Այրարատ 67։

— 70. Վարդան Տլուքցի (Կիլիկ երկրից), Եգիպտացոց արշավանքի պատճառով հալածական եղավ հայրենի երկրից, երկու տարի թափառելուց հետո՝ եկավ Այգեկ։ Այստեղ բարորություն գտնելով, կիսատ թողած ուսմունքը ձեռք առավ և Այգեկի անապատում, Կարապետ եպիսկոպոսի (№ 41) առաջնորդության ժամանակ, արտագրեց մի ժողովածո՞ւ, 1212 թ.—Տաշեան, Ժղվ. առ. Վարդ. էջ 57—58 (Ազգ. մատ. ԼՁ), որից Ազգ. մատ. ԽԵ, էջ 47—48։

— 71. Վարդան Դադեան, տէր Կայենի և Օրբեթի. Վրաց Թամար թագուհու (1184—1213) քաջ զորավարներից էր. հաջող պատերազմներ ունեցավ թուրքմենների դեմ։ Իր որդիներն են Իւանէ և Զաքարիա։—Վրաց. աղբ. Բ. 12, 13։

— 72. Վարդան, հայր Ալէքս պատրոնի, որ նորոգել տվեց մի հին Աւետարան, 1220 թ.—Rapport Arm. 53։

— 73. Վարդան արքեպիսկոպոս Լոմբրոնի՝ Ներսէս Լամբրոնացուց հետո. Վարդանին էլ հաջորդել է Թերևս Գրիգոր (№ 249) Սկևռացին շուրջ 1220 թ.— Սիսուան 101։

— 74. Վարդան գրիչ. օրինակել է Բարսեղ եպիսկոպոսի համար մի հավաքածոյ (Վենետ. № 345), 1220 թ.—Աթան. յուց. ձր. Ձեռ. Վենետ. Բ. 1136—1137։

— 75. Վարդան կրոնավոր, յիշատակագիր, 1221 թ.—Manus. Bibl. nat. էջ 71։

— 76. Վարդան համբակ, այն է աշակերտ, որ Կապոսի Ս. Լուսավորիչ վանքում ծառայում էր Թադէոս գրչին, 1224 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 34։

— 77. Վարդան քահանա Կապոսցի, միաբան Կապոսոյ վանից, ծաղկարար. ծաղկեց այն մեծ Ճառընտիրը, որ գրեց Թադէոս գրիչը հայր Կոստանդինի համար, 1224 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 33, 34. Ջարբ. Թրգմ. 729։

— 78. Վարդան Այգեկցի, ծնվել է Ասորիքի Մարաթա գյուղում

(Հալէպի մոտ), ուստի կոչվում է նաև Մարաթացի. սովորել է Արքայակաղնում. իբր քահանա պաշտոնավարել է Ամիթ (որի համար կոչվում է նաև Ամթեցի), հետո Տլուք, և ապա պանդխտել է զանազան տեղեր. ճգնել է Սև լեռում. վայելել է Պաղտին իշխանի շնորհը. այնուհետև հաստատվել է Այգեկի անապատում և Դրազարկում. ունի 22 խրատական ճառեր՝ գրված Պաղտին իշխանի խնդրանոք (1212 թ.), Թուղթ առ Միքայէլ եպիսկոպոս Անտիոքի (1229 թ.), Ճառ պատկերակցութեան Աստուծոյ որ առ մարդս է. բայց իր լավագույն գործն է առակները, որով գրեթե հիմք է դնում մեր մեջ մի առանձին գրական սեռի։ Այս առակները սկսել է գրել Դրազարկում, իբր 1220 թ. թվով 485 հատ են. թարգմանված են նաև արաբերենի և վրացերենի. երկուսն էլ ըստ Միաբանի Հյկկնք. Վղրշպտ. 1903, էջ 41 թրգմ. են 1660 թվից հետո.—Վրդ. առ. 197.— տե՛ս և Տաշեան, Ցուց. 1155 գ, և Մատեն. մանր. ուս. Բ. Զարբ. Հին դպր. 745—746, 752. Մառ. Сборн. притч Вардана 3 հատ. 1894, որի ամփոփումն ունի Տաշեան, Ժղվ. առ. վրդ. Վիեննա 1900, հատկապես էջ 43—75։ Իր գործերից մի լավ ժողովածու տե՛ս Ջեռ. Հալէպի, Բ. էջ 85, Ճանիկեան, Հնութ. Ակնայ. 81։ (Տե՛ս և Վարդան Տլուքցի)։

Վարդան Այգեկցին խոսել է քարոզներ Տարսոնում. այս քարոզների մի մասը ինքն էլ գրի է առել. նրանցից մեկն է «Պատմութիւնք և բանք վասն դժոխոցն, թէ ստոյգ է և կայ դժոխք... և ոչ լոկ և սուտ սպառնալիք միայն» (Լ. Խաչիկեան, Ն. Մառի աշխատութ. № 2, էջ 197)։

— 79. Վարդան վարդապետ, միաբան Տուրուբերանի Խարձի անապատի, ուր գրիչ Յովհաննէս քահանային գրել տվեց մի մեծ Տօնական, 1229 թ.—Խաղբակեանք 92։

— 80. Վարդան քահանա, Եկեղեաց գավառի Իշախա գյուղից. իր ընկեր Սարգիս քահանայի հետ միասին, Մխիթար գրչին գրել տվեց մի Ճաշոց, Կապոսի անապատում, 1230 թ.—Ուգեր. Լիակ. վրք. սրբ. ԺԱ, էջ ղ։

— 81. Վարդան քահանա, որդի Սոսթանէսի, Եկեղեաց գավառի Իշոխա գյուղից. իր եղբայր Սարգսի հետ Կապոսի վանքում գրել տվեց Տօնականը 1230 թ.—Ջեռ. Վենետ. Բ. 1214։

— 82. Վարդան, եղբայրներով միասին մի խաչ են կանգնեցրել իրենց մոր հիշատակին խաչենի Խանձք գյուղում, 1236 թ.— Արցախ 159։

— 83. Վարդան, առաջնորդ Երզնկայի Կապոսի վանքի 1230 թ.—Տաթև 1927, 185։

— 84. Վարդան, առաջնորդ ուխտին Բագարանի 1234 թ.—Այրարատ 69։

— 85. Վարդան աբեղա, մի քանի էջ գրեց և կազմեց այն Ավետարանը, որ օրինակեց X դրիչը 1236 թ.—Ձեռ. Վեննետ. Ա. 443։

— 86. Վարդան քահանա, որդի Գերգի, միաբան Գանձասարի վանքի, իր եղբայր Գրիգոր քահանայի հետ միասին դնել են մի Ավետարան՝ 1237 թ.—Յովսէփեան, Նիւթեր և ուս. Բ. 52—53։

— 87. Վարդան Խաչենցի, գրիչ. Հռոմում օրինակեց Ավետարանը 1239 թ.—Տաշեան, Ակնարկ, 23 (Ձեռ. Բրիտ. Թանգ.)։

— 88. Վարդան, առաջնորդ և վանահայր Գանձասարի վանքի 1240 թ.—Արծ. Շահխաթ. Բ. 371—372. Արցախ 173, Justi 352։

— 89. Վարդան, քահանա Հռոմի Հայոց Ս. Աստուածածին հանգստյան տան 1242 թ.—Թորոս աղբ. Բ. 441։

— 90. Վարդան վարդապետ Հոռոմսարեցի, կալվածներ է նվիրել Գանձասարի վանքին, 1243 թ.—Արցախ 168։

— 91. Վարդան վարդապետ, միաբան Կեչառուքի 1248 թ.—Տե՛ս Այրարատ 262 մի արձ. և Գեղարքունի երկու՛ արձ.։

— 92. Վարդան (կամ Վահրամ) վարդապետ ի Սեաւ լեռին, կոչված է հակառակասէր՝ 1248 թ.—Ջամչ. Գ. 231 (Վահրամ Սկևռացի՞ն է)։

— 93. Վարդան վարդապետ, կոչված «Յօժար որդիք», Դադի վանքում, Գրիգորիս եպիսկոպոսի հետ նզովեցին և զսպեցին Դաւիթ մոլորիչին՝ «1249 թ.».—Կիր. խզ։

— 94. Վարդան, կուսակրօն քահանա, փակակալ Հռոմկլայի հայրապետական տաճարի, գրել տվեց մի Ավետարան՝ 1251 թ.—Սեդրակեան, Հնութ. Երնջակու 31։

— 95. Վարդան, վանահայր Մեծարանց վանից 1252 թ.—Բանաս. 1901, 136։

— 96. Վարդան քահանա, գրիչ. Յովհաննէս եպիսկոպոսի խնդրանօք Հռոմում արտագրել է Ագաթանգեղոսը՝ 1254 թվին։ Ձեռագիրը այժմ գտնվում է Փարիզի Ազգ. մատ. ըստ Տէր-Միքէլեանի, Սամ. անեց. 266. Ջարբ. Հին դպր. 231։—Ըստ Ոսկուրեան, Պատմ. գաղթ. ի Լիվոռն. 229՝ Վարդան քահանան Իտալիոյ Ռիմինի քաղաքումն է օրինակել այդ գիրքը Հայոց հոգետան մեջ՝ 1254 թ. Հրատ. Ագաթ. 1909 թ., էջ թ, լդ։

Նույն է՝

— 97. Վարդան գրիչ՝ օրինակել է մի ժողոված Ռիմ քաղաքում, Յովհաննէս եպիսկոպոսի և Դանիէլ ու Սիմէոն քահանաների համար, 1254 թ.—Manus. Bibl. nat. էջ 55։

— 98. Վարդան, կուսակրօն քահանա, փակակալ Հռոմկլայի տաճարի, կազմարար. կազմել է Կոստանդին Ա Բարձրբերդցի կաթուղիկոսի շքնաղագեղ Աւետարանը, որ գրել և նկարազարդել էր նշանավոր մանրանկարիչ Թորոս Ռօսլինը, 1256 թ.—Ձեռ. Հալէպի, թ. 140 բ։

— 99. Վարդան երէց, գրիչ. Վարագա վանքում Արղութ խաթունի և Ղատիշայի համար օրինակեց Աւետարանը, 1260 թ.—Ձեռ. Դաղեան, թ. 47 ա։

— 100. Վարդան Տաշրացի, գրել է Հռոմի պապի գլխավորության և Պոլսի հույն պատրիարքների դեմ վիճաբանական մի գրվածք՝ ուժեղ գրչով, շուրջ 1260-ական թթ.—Սիսուան 102 ա։

— 101. Վարդան վարդապետ, միաբան Կիլիկիոյ Ակների վանից 1261 թ.—Հրատ. Ազաթ. 1909 թ. յոբ. էջ ԼԲ։

— 102. Վարդան, արքեպիսկոպոս և վանահայր Մեծարանց վանից 1241, 1250, 1251 և 1265 թ.—Բանասէր 1901, 138, 140, 143, 144, 145։

— 103. Վարդան Կոզեռն, ամուսին Շարմաղի, հիշված 1266 թ.—Սիսուան 253 բ (բայց տե՛ս Շարմաղ)։

— 104. Վարդան եպիսկոպոս, ապրում էր Հռոմկլայում, «մեծարեալ և սիրեցեալ ի սրբոյ հայրապետէն Տ. Կոստանդեայ կաթուղիկոսի, որով և ի մեծապատիւ եպիսկոպոսութեանն աստիճանի կոչեցեալ եղև ի նմանէ»։ Գտնվում էր կաթուղիկոսի ծառայության մեջ։ Սսում Աւետիք քահանային գրել տվեց մի Մաշտոց, որ նկարազարդել տվեց Թորոս Ռօսլինին, Հռոմկլայում, 1266 թ.—Յովսէփեան, Նիւթեր և ուս. Բ. 38։

— 105. Վարդան վարդապետ, ուսուցանում էր Հաղբատում, ուղղել է Ս. Գրքերի թեկադրությունները, հատկապես Սաղմոսի. կազմել է տօնապատճառը, որ արտագրել է իր աշակերտ Տիրացուն. մեռել է 1267 թ. կամ քիչ առաջ.—Կնիք. հաւ. յոբ. 112 շար.։

— 106. Վարդան քահանայ, եղբայր Գրիգոր քահանայի, երկուսն էլ հոգևոր որդիք Գրիգոր արքեպիսկոպոսի Բջնոյ, սրանց մոտ սովորեց Գէորգ Սկևռացին, 1267 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 312։

— 107. Վարդան կրոնավոր Բջնեցի, համապատիւ Գրիգորի՝ առաջնորդի Բջնիի 1246 թ. (Այրարատ 276)։ Սրա հետ նույն պիտի

լինի Վարդան վարդապետ, որդի Գրիգոր եպիսկոպոսի Բջնոյ, որի մոտ սովորեց Գէորգ Սկևռացին (№ 86) 1267 թ.—Սիսուան 102։

— 108. Վարդան վարդապետ, առաջնորդ Խոռակերտի վանքի 1268 թ.—Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 13։

— 109. Վարդան վարդապետ. վախճանված է եղել 1268 թվին և թաղվել Խոր-Վիրապում. 1669 թվին, նորոգության ժամանակ բացվել է տապանը և դուրս է եկել «լիակատար պատմութիւնը կոնդակում» (Զքր. ագուլ. 81)։

— 110. Վարդան վարդապետ Հաղբատի. Bodleian 165 սրան է վերագրում Մեկնութիւն Դանիէլի, որ գրել է Գրիգոր վարդապետի և իր եղբայր Սարկավագ վարդապետի առաջարկով, սկսելով 1268 թ. Խոր-Վիրապում և վերջացնելով 1269 թ. Աղջոց վանքում։ Այլք դնեն Վարդան պատմիչ Հաղբատացին, որ մեռած էր 1207 թ. ուստի կարելի չէ։

— 111. Վարդան, երգեցող Արքակաղնի ուխտի, 1269 թ.—Ձեռ. Կես. Ածած. 46 բ։

— 112. Վարդան սարկավագ, բազմաչարչար կրոնավոր, միաբան Խորին անապատի (Կիլիկիա), 1270 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 235։

— 113. Վարդան վարդապետ, պատմիչ, կոչված Արևելցի, Գանձակեցի, և հաճախ Մեծն Վարդան՝ զանազանելու համար համանուններից և հատկապես Վարդան Բարձրբերդցուց։ Թվի, թե ունէր նաև քահանա մի եղբայր՝ Գրիգոր անունով, երկուսն էլ հոգևուոր որդիք Բջնոյ Գրիգոր արքեպիսկոպոսի (Գ. Տ. Մկրտչեան, Անան. Շիր. էջ 31—32)։ Աշակերտել է նաև Յովհաննէս Վանական վարդապետին (Նօտարք 29), դասընկեր ունենալով Կիրակոս, Առաքել և Յովսէփ վարդապետներին։ Ուխտի գնաց Երուսաղէմ և ի դարձին անցավ Կիլիկիա («1241 թ.»), ուր տեսնվեց Կոստանդին Ա Բարձրբերդցի կաթողիկոսի հետ։ Հինգ տարի նրա մոտ մնալուց հետո, վերցրեց Սսի եկեղեցական ժողովի («1243 թ.») կանոնները (որին ինքն էլ էր մասնակցել) և կաթողիկոսի շրջաբերական կոնդակի հետ միասին տարավ Հայաստան «1246 թ.»։ Նորից գնաց Կիլիկիա և Կոստանդին կաթողիկոսի հրամանով և ասորի Իշոխ քահանայի աջակցությամբ թարգմանեց Միխայէլ Ասորու Ժամանակագրութիւնը, Ճառ յաղագս քահանայութեան և դաւանութիւն հաւատոյ, ավելացնելով նաև Ժամանակագրութեան շարահարութիւնը (1248 թ.)։—Միխայէլ Ասորին, Յակոբիկ դավանանքից, ծն. 1126 թ., Ասորոց պատրիարքն էր և գահակալել էր 1166—1199 թթ.։ Շատ հայասեր անձ էր և Ն. Շնորհալու հետ մտերիմ հարաբերու-

թյան մեջ էր։ Իր Ժամանակագրութեան Թարգմանությունը ունի 2 տարբերակ. առաջինը ընդարձակ, տպ. Երուսաղէմ 1870 Թ., երկրորդը մի քիչ համառոտ, տպ. Երուսաղէմ 1871 Թ.։—Վարդանի հրամանով նույն Իշոխ քահանան Թարգմանել է նաև Յակոբ Սրճեցու Ճառ ի Ս. Թադէոս և Աբգար (1246, իմա՛ 1248 Թ. տե՛ս Միխ. ատ. Բ. տպ. յուշ. էջ ԺԲ)։ Ըստ Հայապ. 108 այս միջոցին է, որ Վարդանը գրել է Ծղլանճ, ուր ռամկական լեզվով տալիս է քերականության դասեր Հեթում Ա Թագավորի կնոջ՝ Զապէլ Թագուհուն (Յուշիկք Ա. 146—148)։ Հեթում Թագավորի համար էլ գրում է Թրակացու քերականութեան մեկնութիւնը և հարց ու պատասխանի ձևով մի աշխատություն, ուր տալիս է տեղեկություններ տիեզերագիտության, երկրի կառուցվածքի, գրի և հայ գրերի գյուտի, երաժշտության և ուրիշ խնդիրների մասին (Լ. Խաչիկեան, Տեղեկ. Արմֆանի 1943 Թ. № 2, էջ 82)։ Կոստանդին կաԹուղիկոսի եղբորորդի Թորոս քահանայի խնդիրքով էլ գրել է «Վասն բանին մասանց», որ տպված է անդ, էջ 86—88.—Վերադառնալով Հայաստան, Վարդանը առանձնացավ Կայենոյ ձորի Անդրէի վանքը, ապա Խոր-Վիրապ, Սաղմոսավանք, Թեղենիս (Ձեռ. Վենետ. Բ. 314) և, հատկապես Գլաձորի վանքը, որոնց մեջ ուսուցանում էր։ Իր աշակերտն է Ներսէս (№ 70) Գլաձորեցին (կոչված նաև Մշեցի կամ Տարօնեցի, +1284 Թ.), որ ապա հաջորդեց Վարդանին՝ իբրև ուսուցիչ նույն Գլաձորի վանքում և աշակերտ ունեցավ Եսայի Նչեցուն (Նօտարք 29)։ Վարդանի աշակերտներից է նաև Գէորգ (№ 86) Սկևռացին (+ «1301 Թ.»)։—Այս միջոցին է, որ ԹաԹարաց Հուլաղու խանը հրավիրեց Վարդանին իր մոտ։ Վարդանը իր Պատմութեան մեջ ընդարձակ նկարագրում է իր ճամփորդությունը դեպի Թաթարիստան («1264 Թ.»), ուր գնացին նաև Հայոց Հեթում Ա և Վրաց Դաւիթ Թագավորները, Անտիոքի բրինձը, պարսիկ իշխաններ և այլն։ Այս առԹիվ Դրնղ. 5 գրում է, Թե «Շահապատինն տարաւ զՎարդան վարդապետն ի մօտն Հուլաւուն խանին, բազում բան իմաստութեան հարցումն արար և մեծաւ պատուով պատուեաց զվարդապետն»։—Թաթարիստանից վերադառնալուց հետո, 1270 Թ. գումարեց Ջագարավանից ժողովը (Շողակաթ Ա. էջ 30—33, 41, 45)։ Մեռել է «1271 Թ.» (Սամ. անեցւոր. 16 դնում է 1269 Թ.)։ Գերեզմանը գտնվում է Խոր-Վիրապում, ըստ Վրդն. աշխ. 508։ Սրանից եմ հետևցնում այն, որ նույնն է նաև Վարդան մեծ Վարդապետը, որ նստում էր Խոր-Վիրապում և ուսուցանում էր 1267 Թ.։ Թերևս նույն են նաև Վարդան մեկնիչ, որ գրել է Ազգահամարի մասին (Մ. Մաշտ. 228 ա, ՏաԹև. հարց. 611),

Վարդան վարդապետ, որ ունի մի գրվածք հոգիների կազմության վրա (Տաթև. հարց. 271, 686), և Ս. Վարդան, որ գրել է 12 առաքյալների վրա (տես. Վարդանայ՝ Տաթև ամ. 465)։ Վերջինիս մասին մի կեղծիք տե՛ս Ջեռ. Թաւր. էջ 23. իբր թե Վարդան վարդապետը շատ է փափագել ձեռք բերել Ս. Մեսրոպի «Մեկն. Ծննդոց» գիրքը, բայց չի կարողացել, ուստի ինքը Սեսրդեաց... (անունը չկա) իշխանի թախանձանքով գրել է Մեկն. Ծննդոց, Ելից, Ղևտացոց, Թուոց և Երկրորդ օրինաց՝ քաղելով հին հայրերի գործերից, յամի... (թիվը չի դրված)։ Այս ձեռագիրը հետո մնացել է Ալփասլանի ձեռքով կործանված Տիգրանակերտ քաղաքի փլատակների տակ։ Ապա ավերակների տակից դուրս է եկել ձեռագիրը և անցել ոմն Գարեգին վարդապետի ձեռքը։ Նույնից արտագրել է Գրիգոր վարդապետ Անձևացին և նվիրել Հոգեաց վանքին։ (Այս ամբողջ պատմությունը դրված է Աւետիս վարժապետ Պէրպէրեանի 1835 թ. գրած «Պատմ. ժԲ առաքելոց» գրքի վերջում)։—Վարդանը շփոթվում է շատ համանունների հետ. օր. Կիր. գ (էջ 84) հիշված է Վարդան Հաղբատացի, անդամ Լոռիի ժողովի (1208 թ.). հրատարակիչը՝ էջ 264 համարում է Վարդան պատմիչը, որ սխալ է (այս մասին տե՛ս և Վարդան (№ 43) Հաղբատացի)։—Վարդան պատմիչը բազմարդյուն մատենագիր է. իր գործերն են 1) Պատմագրութիւն, հրտ. Վենետ. 1862.—2) Մեկնութիւն Հին Կտակարանի գրոց (Ծննդոց, Ելից և այլն մինչև Մնացորդաց).— 3) Մեկնութիւն Երգոց Երգոյն. գրել է 1265 թ. «ի խնդրոյ Կիրակոս Գանձակեցոյ» (Հայապ. 471 և Bodleian 183).— 4) Մեկնութիւն Դանիելի մարգարէի, գրված 1267—1268 թթ. (Այրարատ 354, Tübingen, էջ 11).— 5) Մեկնութիւն Սաղմոսաց (տպ. Աժտերխան 1797).— 6) Ճառ Ներբողենի պատմագրաբար վարուց Գր. Լուսաւորչի.— 7) Ներբողեան ի Յովհ. Օձնեցի.— 8) Ներբողեան ի Յովհ. Մկրտիչ.— 9) Շարականներ.— 10) Յաղագս Նաւակատեաց եկեղեցւոյ (Ջեռ. Վենետ. Բ. 306).— 11) Տեսութիւն անթառամ ծաղկին, որ գրել է Սարգիս անուն մեկի խնդրանոք (տպ. Երուսաղէմ 1834).— 12) Հարիւրաւորք Եւագրեայ.— 13) Տօնապատճառ (Շողակաթ 202).— 14) Խրատ կամ քարոզ ի վերայ Երրորդութեան.— 15) Ուղիղ դաւանութիւն հաւատոյ, ի խնդրոյ Կոստանդեայ Ա կաթուղիկոսի (Թորոս աղբ. Բ. 395).— 16) Խոստովանութիւն ճշմարիտ հաւատոյ.— 17) Յաղագս քահանայութեան (որ է խրատ քահանայից), գրված Խոր-Վիրապում, տպ. Մաշտ. էջ 342—343.— 18) Թուղթ հակաճառութեան.— 19) Ս. Վարդապետս Հայոց Վարդան յարևելից առաքեաց ի Հռոմկլայն զայս գիր։ Վասն սուրբ և

փրկական տնօրինական սրբութեանցն Քրիստոսի Աստուծոյ մերոյ. այս գտաւ ի գրոց... օրինակս թարգմանեցաւ ի Հռոմ գրոց ի հայ գիր ի թվին ՈՀ (=1221) (տե՛ս ՀԱ 1929, էջ 14).— 20) Լուծմունք վեցօրեայ արարչութեան (Ջեռ. Վեննտ. Բ. 865).— 21) Թուղթ... առ թագաւորն Հեթում (15 գլուխ Հռոմի պապի դեմ՝ կրոնական վեճերի առթիվ, ռամկական լեզվով. տե՛ս Ջեռ. Վեննտ. Բ. 865).— 22) Ութ մասունք բանիների մասին՝ գրված Կոստանդին կաթուղիկոսի եղբորորդի Թորոս քահանայի խնդրանքով (Ջեռ. Վեննտ. Բ. 866).— 23) Աղօթք տղայոց առ Ս. Երրորդութիւնն՝ առաւօտուն, Լոյս համատարած և անճառ ճառագայթ (յոյժ ընտիր և գեղեցիկ է ըստ Ջեռ. Վեննտ. Բ. 866).— 24) Բազմաթիվ խրատներ, գրված 1243 թ. ըստ հիշ. Ջեռ. Վեննտ. Բ. 1046.— 25) Քարոզներ, որոնց մի մասը իրենն են, մյուսները ուրիշ համանուն անձերի (տե՛ս Տաշեան, Ցուց. 1155)։—Այս գրվածքներից № 5 Սաղմոսաց մեկնութեան համար ասվում է, թե «Համառօտ և խորին տեսութիւն, որ անյայտ մնայր միշտ», քաղելով վերամշակել է Գր. Տաթևացին 1405 թ. (Նօտարք 24)։ Այլուր ասվում է, թե նրա հեղինակն է Վարդան Բարձրբերդցին, որ գրել է այն՝ Հաղբատի առաջնորդ Յովհաննէս (№ 280) եպիսկոպոսի առաջարկով 1251 թ. (տե՛ս անդ)։—Վրդն. աղ. ԺԺԸ (էջ 420). ԺԾ. Վրդն. լս. 36. Կիր. գ, (լթ), խ, խա, ծբ. Անանուն ժմ. 23, 24. Մխ. աա. յաւել. Մաղաք. աբ. 12, 52. Կանոն. 180, 186. Մ. Մաշտ. 336 բ, 342 բ, 243 բ. Տաթև հարց. 637—638. Օրբ. ժմ. 25, 27. Մխ. այրիվ. 37. Շար. (հիշված սկիզբը՝ հեղինակների շարքում). Պարականոն շար. 58. Ջուղ. 17. Առաք. պտմ. 339, 482. Դրնղ. 516. Եա. կթղ. էջ Թ և 5.—սեռ. Վարդանայ՝ Վրդն. դան. ա. էջ 242. Վրդն. Երգ. էջ 88. Վրդն. աղ. (Վերնագրում). Վրդն. լս. 41. Վրդն. յանթ. 3. Վրդ. աշխ. 497. Կիր. խա. Պտրգ. 695. Յայսմ. փետ. 6. Եա. կթղ. 3. Զարբ. Հին դպր. 718, 736—746. Զարբ. Թրգմ. 545, 556, 565, 567. Յովնանեան՝ Հետազօտ. նախն. ռմկ. Ա. 233—239. Գիտ. նյութերի ժող. № 1, էջ 155։

— 114. Վարդան, փակակալ Ականց անապատի՝ 1271 թ. (տե՛ս յիշատ. Մաղաք. աբ. հրտր. Եմ. էջ 71.—սեռ. Վարդանայ ձեռվ)։— Նույնը հիշված է նաև 1273 թ. (Սիսուան 154 ա) և թերևս Թիւրքթի վանքի՞ 1314 թ.—Անդ 156 բ։

— 115. Վարդան, նշանավոր վարդապետ, որի աշակերտն է Յովհ. Երզնկացին (ԺԳ դար).—սեռ. Վարդանայ՝ Երզն. Երկն. յուշ. (պատմի՞չն է)։—Համարվում է Վարդան պատմիչը։

— 116. Վարդան, փակակալ Ականց կամ Ակներ անապատի

(Կիլիկիա). հիշված է 1273 թ.—Միխ. աս. Բ. ապ. էջ 45. Սիսուան 154 ա։

— 117. Վարդան վարդապետ, իր ընկեր Մխիթարիչի հետ միասին նվերներ են արել Յովհաննավանքին, 1279 թ.—Այրարատ 170։

— 118. Վարդան գրիչ, որդի Սարգսի, օրինակել է Վախտանկ իշխանի համար մի Աւետարան և մի Թուղթք 1279—1280 թվերին (Ձեռ. էջմ. № 215/155 և № 980). Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 6։

— 119. Վարդան, միաբան Սինեաց Քարադնիս վանքի. օգնեց X գրչին (անունը քերված) գրելու Աւետարանը Յովհաննէս քահանայի համար, 1280 թ.—Ձեռ. Վասպ. 104։

— 120. Վարդան քահանա, «սուրբ եղև», որ Ստեփաննոս քահանան ստանար մի Աւետարան, 1283 թ.—Ձեռ. Վասպ. 106։

— 121. Վարդան վարդապետ, սնվել և սովորել էր Արատէսի վանքում, Հայրապետ րաբունու մոտ, ապա անցել էր Գնդեվանքը, ուր գրել էր տվել մի Աւետարան՝ Յովհաննէս գրչին, Թանատի վանքից, 1284 թ.—Խաչըկեանք 137—139։

— 122. Վարդան կրոնավոր, գրիչ. օրինակեց Խազգիրքը 1285 թ.—Սմբատեանց, Երնջակ 241։

— 123. Վարդան վարդապետ, գրեց մի Ժամագիրք՝ ստացող Սարգիս շալվէ վարդապետի համար, 1288 թ.—Ձեռ. Մինխ. 20 ա։

— 124. Վարդան քահանա, սպասաւորում էր Յակոբ աբեղային, երբ սա օրինակում էր Աւետարանը՝ Կարսի Գողիս գյուղում, 1297 թ.—Ձեռ. Ազգ. (Արար. 1911, 463)։

— 125. Վարդան, միաբան Երզնկայի Ս. Կիրակոս վանքի, յիշատակագիր 1298 թ.—Թորոս աղբ. Բ. 298։

— 126. Վարդան գրիչ, օրինակեց Կեսարիայում՝ Գէորգ վարդապետ Սկեռացու Մեկնութիւն մարգարէին Եսայեայ, Կեսարիոյ առաջնորդ Կոստանդին (ապա կաթուղիկոս) արքեպիսկոպոսի համար, 1299 թ.—Ալպօյաճեան, Պատմ. Հայ. Կես. Բ. 1845։

— 127. Վարդան, անհայտ ոմն, որ Անանիա Շիրակացու «Վեցհազարեակ» կոչված թվաբանական գրվածքը վերածել է Ախտարքի՝ ԺԳ դար.—Ըստ Աշ. Աբրահամեանի, Շիրակացու մատենագրութիւնը, Երևան, 1941, էջ 64։

— 128. Վարդան եպիսկոպոս, հիշվում է իբր Պատարագամատոյցի հեղինակներից մեկը.—տես. Վարդանայ՝ Պարգ. 146։

— 129. Վարդան վարդապետ, ունի Աշխարհագրութիւն (պետք չէ միացնել Վարդան պատմիչի հետ, ըստ որում, Աշխարհագրու-

թեանս մեջ ասված է, թե «Վարդան մեծահռչակ տիեզերալույս վարդապետ»-ի գերեզմանը գտնվում է Խոր-Վիրապում (Վրդ. Աշխ. 508)։

— 130. Վարդան քահանա, ճգնավոր կրոնավոր, որ ճգնում էր Հռոմի Հայոց մենաստանում. մեռավ 1305 թ. իր տապանաքարի նկարը՝ հայերեն արձանագրությամբ տե՛ս Պալճեան, 56։

— 131. Վարդան կրոնավոր, հիշված Կաֆա 1305 թ. (տե՛ս Աւետիք № 29).—Ձեռ. Վեննետ. Բ. 511։

— 132. Վարդան գրիչ, օրինակեց Ներսէս Շնորհալու Ընդհանրականը և այլ թղթեր Գրիգոր Անաւարզեցի կաթուղիկոսի համար, որ և նվեր ուղարկեց Գլաձորի նշանավոր ուսուցիչ Եսայի Նչեցուն, 1305 թ.—Շողակաթ 209։

— 133. Վարդան ճգնավոր, ճգնել և մեռել է Հռոմի Ս. Անաստաս վանքում, ուր 1869 թ. գտնվեց իր հիշատակին կանգնեցրած մի խաչքար 1305 թվից.—Ալիշան, Շնորհ. էջ 179։

— 134. Վարդան եպիսկոպոս Մրենու, որի ձեռքով Կեսարիոյ առաջնորդ Կոստանդին արքեպիսկոպոսը նվեր ուղարկեց Եսայի վարդապետին՝ իր սեփական Գէորգ Սկևռացու «Մեկնութիւն Եսայեայ» (1300—1306 թվերի միջև).—Ալպօյաճեան, Պատ. Հայ Կես. Բ. 1845։

— 135. Վարդան եպիսկոպոս Անւոյ. անդամ Սսոյ Զ ժողովի («1307 թ.»).—տե՛ս Վրդ. անեց. յուշ. էջ 5, Չամչ. Գ. 309, Ազգապ. 1785։

— 136. Վարդան եպիսկոպոս Եւդոկիոյ, անդամ Սսոյ ժողովի («1307 թ.»).—Ազգապ. 1785. Չամչ. Գ. 309։

— 137. Վարդան վարդապետ Անաւարզայի, անդամ Սսոյ ժողովի «1307 թ.».—Ազգապ. 1786։

— 138. Վարդան եպիսկոպոս Սասնոյ, անդամ Սսոյ ժողովի «1307 թ.».—Չամչ. Գ. 309, Ազգապ. 1786։

— 139. Վարդան եպիսկոպոս Մաղարդու վանքի. անդամ Սսոյ ժողովի «1307 թ.».—Չամչ. Գ. 310, Ազգապ. 1785, Սիսուան 65։

— 140. Վարդան Բարձրբերդցի, աշակերտ Յովհաննէս արքայեղբոր. հաճախ շփոթված է Վարդան պատմիչի հետ. զանազանելու համար կոչվում է Վարդան Փոքր։ Հիշված է 1286 թ., մինչդեռ Մեծն Վարդան մեռել է 1271 թ.։ Մատենագիր. գրել է Լուծմունք ի Ս. Գրոց ի խնդրոյ Թագաւորին Հեթմոյ (Բ, 1288—1307 թթ.) և ծաղիկք Աւետարանի, մի քանի պարականոն շարականներ, որոնց

մասին տե՛ս Ամատունի, Պարականոն շար. էջ 57, 96, 130 և հատ-կապես էջ 198 դրված ցանկը։ Ունի և լատինաց 15 մոլորութեանց վրա մի գրվածք առ Հեթում. Թերևս իրենն է Մեկնութիւն Քերակա-նին (Դիոնեսիոսի).—Տաշեան, Ցուց. 1155 գ.—սեռ. Վարդանայ՝ Գիրք Թղ. ղգ, ղե, ղէ։

— 141. Վարդան գրիչ. օրինակել է Ն. Լամբրոնացու մեկնու-թիւն Սաղմոսաց Դաւթի, ՉԾԹ=1310 թ.—Ձեռ. Կարին 149 (տպ. 22 բ, =1310, որ ոչ մի կերպով չի համարվում)։

— 142. Վարդան քահանա, հայր Կիւրիոնի, որ օրինակեց Շնոր-հալու «Մեկնութիւն Բարձրացուցէք»-ը, 1311 թ.—Ակինեան, Կիւրիոն կթղ. 265—266։

— 143. Վարդան Սկեռնցի, ունի լատինների դեմ հակաճա-ռութիւն, ժամանակակից Հեթում Ա-ի.—Սիսուան 243 ծան.։

— 144. Վարդան Սկեռնցի, սարկավագ Անաւարզայի Ս. Աս-տուածածին եկեղեցու, 1314 թ.—Սիսուան 243 ա։ Այլ է Հեթում Ա-ի ժամանակակից Վարդան Սկեռնցուց. REA 2, 283, Գաթըրճեան, Պատմ. 84։

— 145. Վարդան վարդապետ ստացող. Արտազի Թադէոս առաքյալի վանքում Ռստակէս գրչին գրել տվեց Լամբրոնացու, Շնորհալու և Գրիգոր Սկևռացու գործերը, 1315 թ.—Ձեռ. Սևան, 20 ա, Սմբատեանց, Գեղարքունի 405։

— 146. Վարդան, որդի Աւետիք քահանայի, որ Հարք գավառի Դանեվանք գյուղում, Հովհաննես քահանային գրել տվեց մի Աւե-տարան, 1316 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 464։

— 147. Վարդան քահանա, որդի Գրիգոր քահանայի. գրիչ. օրինակեց Աւետարանը՝ Խոռինանց գյուղի Ս. Աստուածածին եկե-ղեցում, 1317 թ.—Թորոս աղբ. Ա. 218։

— 148. Վարդան վարդապետ, գրիչ. օրինակեց Նարեկը 1319 թ.—Սմբատեանց, Երնջակ 117։

— 149. Վարդան քահանա, աշակերտ Յովհան (№ 483) Երզըն-կացու (1250—1326 թթ.). օրինակեց Փիլոնի գործերը. տե՛ս յիշ. Փիլոնի. հտ. Բ. էջ 622 և հտ. Գ. 177. Զարբ. Թրգմ. 745։

— 150. Վարդան Սկեռնցի, սարկավագ Անաւարզայի, 1314 թ.—Զարբ. Թրգմ. 265։

— 151. Վարդան վարդապետ, որի խնդրանոք Յովհաննէս Երզնկացին գրեց «Մեկնութիւն Դանիէլի», Արտազ գավառի Սործո-րու Ս. Աստուածածին վանքում 1316 թ.—Զարբ. Հին դպր. 765։

— 152. Վարդան, ծերունի քահանա, որդի Թորոսի. ստացող.

գրել տվեց մի Աւետարան Թորոս վանական քահանային, սրբագրութեամբ Ստեփաննոսի Գոյներիցանց (1280—1320 թթ.).—Ձեռ. Թաւր. 27 բ։

— 153. Վարդան քահանա, քեռի նախորդ Վարդան քահանայի, որ Թորոս գրչին օրինակել է տվել մի Աւետարան՝ 1280—1320 թթ.։— Ձեռ. Թաւր. 27 բ։

— 154. Վարդան վարդապետ. առաջնորդ Հայոց Երուսաղեմի. մատենագիր. Երուսաղեմում հեղինակել է «Մաղթանք ի բոլոր ամենայն Սուրբ տնօրինականքն Քրիստոսի Աստուծոյ որ է յԵրուսաղէմ» (1321 թ.).—Ձեռ. Սեւան 37 բ։

— 155. Վարդան գրիչ. Ակների վանքում օրինակեց Աւետարանը 1324 թ.—Սմբատեանց, Երնջակ 314։

— 156. Վարդան վարդապետ, միաբան Ակների վանքի. անդամ Սսի եկեղեցական ժողովի «1307 թ.» (Ազգապ. 1786.—Նույն պիտի լինի նաև Վարդան վարդապետ, որ Ակներ անապատում Յովհաննէս քահանայի համար օրինակեց Աւետարանը 1323 թ.— Տաշեան, Ցուց. 790)։—Նույն եմ կարծում դարձյալ ծերունի Վարդան վարդապետ՝ առաջնորդ Ակներոյ 1325 թ. (Սիսուան 155 ա),— վերջին անգամ հիշված 1329 թ. (Սիսուան 155 բ)։

— 157. Վարդան քահանա, գրիչ. երեք ձեռագրի համեմատութեամբ կազմել էր Ոսկեբերանի Մեկնութիւն Մատթէի, որից էլ արտագրեց Ակների վանքի միաբան Գրիգոր գրիչը՝ 1329 թ.—Սիսուան 155 բ։

— 158. Վարդան, վարդապետ Ակներոյ վանից (Կիլիկիա), 1325 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 572։

— 159. Վարդան քահանայ, գրիչ. օրինակել է Սանդուղք աստուածային ելից (Թուականն անհայտ), որից էլ օրինակեց Հայրապետ գրիչը՝ Կիլիկիոյ Փոսի անապատում, 1329 թ.—Ձեռ. Դաղեան, Ա. 86 բ։

— 160. Վարդան քահանա, որդի Սիմէոն քահանայի, մայրն է Դեթա, որդիներն են Իգնատիոս, Առաքեալ, Մելէք-տիկին։ Առաջին որդու՝ Իգնատիոսի համար, որ սարկավագ էր (ծն. 1316 թ.), գրեց մի Աւետարան, որի համար ասում է. «Արարի զսա ինձ դրախտ անուշահոտ ի միջի նորա տնկեալ ծառն կենաց. որ ուտէ ի սմանէ, կեցցէ յաւիտեան... զայս եդեալ ի մտի, լաւ է փծուն գրել, քան ունայն շրջել. և լցի զփափաքումն անձին իմոյ»։ Աւետարանը գրել է Պասենի դաշտի Ազպինար գյուղում, 1331 թ.—Ձեռ. Վասպ. 174։

— 161. Վարդան արքեպիսկոպոս, որդի Յակոբի, առաջնորդ

Արգելանի վանից. Յովհաննէս գրչին օրինակել տվեց մի Մաշտոց, 1331 թ.—Manus. Brit. mus. 58—59։

— 162. Վարդան արքեպիսկոպոս, նոր օծվեց 1331 թ. Արգելանի վանքում և Յովհաննէս գրչին գրել տվեց Գիրք ձեռնադրութեան։—Ըստ Brit. mus. ցուցակի Կոնիբերի, էջ 59, հիշում է Ակինեան՝ Գաւազանագիրք 56։

— 163. Վարդան Արեեցի, պատրիարք Երուսաղէմի, հաջորդեց Պօղոսին և նստավ 1323—1332 թթ. (Աղանոսնի)։

— 164. Վարդան Խանակահցի, ազգական Ներսէս վարդապետ Սասնեցու, նվիրատու ձեռագրի 1332 թ.—Հայապ. 546։

— 165. Վարդան, հայր Աղութ խաթունի՝ կնոջ Սարգսի, որ Թումայ գրչին գրել տվեց մի Աւետարան 1336 թ.—Ձեռ. Վասպ. 196։

— 166. Վարդան քահանա, կինն է Խալխաթուն. մերձավորներն են Բարսեղ գրչի, որ Բասենի Մժնկերտ գյուղում օրինակեց Աւետարանը 1336 թ.—Ձեռ. Վասպ. 191։

— 167. Վարդան, հայրապետ Բասենի, հիշված 1336 թ.—Ձեռ. Վասպ. 191։

— 168. Վարդան, եպիսկոպոս Տարոնի, անդամ Սսի եկեղեցական ժողովի «1343 թ.».—Ազգապ. 1869.—Նույնը հիշում է Չամչ. Գ. 341, կոչելով Վարդան արքեպիսկոպոս Տարոնի, իբր անդամ Սսոյ ժողովի՝ 1342 թ.—Սիսուան 271 բ։

— 169. Վարդան, հայր Խաչատուրի, «ասպնջականի» Յոհան վարդապետի, որ Սուրխաթում, Ստեփաննոս գրչին գրել տվեց Եսայի և Թուղթք Պօղոսի, 1356 թ.—Ձեռ. Բեռլինի, 4 ա։

— 170. Վարդան, գնել է մի Աւետարան Յովհաննէս երեց Պետանցից, 1356 թ.—Արցախ 261։

— 171. Վարդան, գրիչ. օրինակեց Շարականը իր եղբոր՝ Պարոնակի համար, 1359 թ.—Rapport Belgique 107։

— 172. Վարդան, կուսակրօն քահանա, որդի Սահակ քահանայի և եղբայր Ստեփաննոսի, որ ստացաւ մի ժողովածու, 1360 թ.—Քօսեան, Հայք ի Ղրիմիա, Բ. 83։

— 173. Վարդան, մերձավոր Ներսէս վանահոր, որ Երուսաղեմում գրել տվեց Աստուածաշունչը 1363 թ.—Ձեռ. Վասպ. 18։

— 174. Վարդան քահանա. հայր Ատոմ կրոնավորի, որ Աղթամարում օրինակեց Լուծմունք Վարդանի, 1366 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 846։

— 175. Վարդան, օգնեց Սիմէոն վարդապետին՝ արտագրելու

Լուծմունք Ճառից Գր. Աստուածաբանի՝ 1370 թ.—Տաշեան, Ցուց. 757։

— 176. Վարդան աբեղա, Բաբերդի Երմնի գյուղից, որդի Կիրակոսի, մայրն է Թաճեր. եղբայրներն են Յակոբ, Աւետիք և Աւետարեր։ Փոքր էր դեռ, դուրս եկավ իր հայրենիքից և գնաց Խրիմ, Աւետիք Խոտաճարակ վարդապետի մոտ, աշակերտեց Պետրոս Հայրապետին և Ղըզըլտաշ վանքում տիրացու եղավ։ Ձեռնադրվելով աբեղա, մնաց 10 տարի. շինեցին մի նոր վանք «յանուն Երաշխաւոր Ս. Աստուածածնի», որ կոչվում է Պետրոսի և խոճայ աշչի? Գնաց Հռոմ ուխտի, ապա իջավ Նավահանգիստը՝ երթալու համար Երուսաղէմ. բայց նավ չգտնելով, նույն ճամփով տուն դարձավ։ Ուզում էր մի նվեր պատրաստել Երուսաղէմի համար։ Մագաղաթ ճարեց և գրեց Աւետարանը «ի յոտն կալով՝ բազում ճգնութեամբ և աշխատասիրութեամբ, ոսկի ծաղկով և արծաթապատ բառերաւք»։ Աւետարանը տարավ Երուսաղէմ և ուխտը կատարելուց հետո՝ տուն դարձավ։ Երկրորդ անգամ գնաց Երուսաղէմ, մնաց Ս. Յակոբի վանքում 10 տարի։ Այդ միջոցին գրեց մի Ճաշոց Փրկչի վանքի համար և մի Ճաշոց էլ Գողգոթային։ Արդեն «ծերացա և բթեցաւ ամենայն կարողութիւն մարմնոյս»։ Տեսնելով, որ Ս. Ծնունդի վանքում Աւետարան չկա, սկսեց այդ «ծեր ալեաւք և ցաւատ կենաւք» նորից գրել մի Աւետարան և նվիրելով Բեթղեհեմի այրին, հանձնեց իբրև «ամանաթ» իր հոգևոր եղբայր Անդրէասին, որ Փրկչի վանքի եկեղեցպանն էր։ Վերջին Աւետարանը գրել է 1371 թ., որի սրտառուչ հիշատակարանը տպված է Ձեռ. Վասպ. 217—222 (կոչում է իրեն Վարդան Խրիմեցի, «Ծեր ալեաւք և տոսատ կենաւք». Նախավերջին բառը Լալայեանը հայերեն չիմանալու պատճառով սրբագրում է լուսատ, մինչ պետք է կարդալ տոկատ «վատուժ, տկար»)։

— 177. Վարդան կրոնավոր, ստացող. Կոստանդ գրչին օրինակել տվեց Գիրք ձեռնադրութեան, նախքան 1372 թ.—Manus. Brit. mus. 89 ա։

— 178. Վարդան, գրիչ. Ագուլիսում օրինակեց Նարեկը՝ 1375 թ.—Ձեռ. Կարին. 173, Սմբատեանց, Երնջակ 179։

— 179. Վարդան վարդապետ, Բաբերդի Երմնու գյուղից. օրինակեց Ճաշոցը՝ 1369 թ. Երուսաղէմում՝ Գողգոթայի վանքի համար.—Յ. Մուրատ, Ցայտ. Յովհ. էջ մըը։—Նույն է Վարդան եպիսկոպոս Բաբերդցի, գրեց 1377-ին Ճաշոց 2 հտ. Երուսաղէմի Գողգոթա և Ս. Փրկիչ եկեղեցիների համար.—Տաթև 1925, էջ 292։

— 180. Վարդան, կինն է Ոսկի. գնեց 1304 թվին գրված մի

Աւետարան, որ և Սարգիս կազմարարին կազմել տվեց, 1374 թ.— Ձեռ. Վասպ. 143—144։

— 181. Վարդան, որդի՛ Զաքարիայի, ազգական Կարապետ կրոնավորի, որ արտագրել տվեց Հին Կտակարանը՝ Սղկայու վանքում, 1381 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 850)։

— 182. Վարդան, օգնեց Ստեփաննոս կրոնավորին, օրինակելու համար Հին Կտակարանը՝ Սղկայու վանքում, 1381 թ.— Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 848)։

— 183. Վարդան քահանա, բնակության տեղ տվեց Յովհաննէս գրչին, արտագրելու համար Կիւրղի, Եփրեմի և Վարդանի գործերը, Ոստանում, 1382 թ.—Bodleian 166։

— 184. Վարդան, որդի Մովսէս քահանայի, որ նորոգեց Գետաշէնի Աւետարանը 1383 թ.—Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 44։

— 185. Վարդան վարդապետ Բաղիշեցի, ստացող Եւագր գրոց, որ օրինակեց Պօղոս երեցը 1384 թ.—Սարգիսեան, Եւագր. ներած. ԾՀԹ։

— 186. Վարդան վարդապետ, ստացո՛ղ Պատարագամատոյցի՝ 1388 թ.—Զարբ. Թրգմ. 267։

— 187. Վարդան երեց, Թէոդորոս կաթուղիկոսի կողմից նվիրակ ուղարկվեց Իլվով 1388 թ.—Ալիշան, Կամենից, էջ 11։

— 188. Վարդան սարկաւագ, գրիչ. «ի մայրաքաղաքն Յունաց Սուլխար, ի մենաստանն հայր Յովհաննէս» օրինակեց Նարեկը՝ 1390 թ.—Ձեռ. Կարին. 172։

— 189. Վարդան քահանա, մայրենի պապն է Գէորգ քահանայի, որ Երզնկայում օրինակեց մի Ճաշոց 1391 թ. երեցակինն է Քուրխաթ։ Վարդան և Քուրխաթ մեծ նվերներ են արել Երզնկայի Ս. Նշան եկեղեցուն և գրել են տվել մի Ճառընտիր.—Ձեռ. Սեբ.= ՀԱ 1926, 241։

— 190. Վարդան քահանա, որդի Խոսրովի, Երզնկայում գրել տվեց մի Աւետարան և վաճառեց մի ուրիշ Վարդան քահանայի՝ որդւոյ Լուսերիցո՛ւ, 1397 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 45, 46։

— 191. Վարդան, որդի Լուսերիցո՛ւ. Երզնկայում մի ուրիշ Վարդան քահանայից (որդի Խոսրովի) գնեց մի Աւետարան, 1397 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 46։

— 192. Վարդան երեց, մերձավոր Լուսերիցո՛ւ, որդի Վարդան քահանայի, որ Երզնկայում, Խոսրովի որդի Վարդան քահանայից գնեց մի Աւետարան, 1397 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 46։

— 193. Վարդան վարդապետ Հոգոցեցի (Հոգեաց վանքից

էր), աշակերտ Յովհան Որոտնեցու. հաջորդեց Սարգիս վարդապետ Ապրակունեցուն՝ Սուխարայ վանքում (Խառաբաստայ), երբ սա մեռավ «1401 թ.»։ Մեծոփեցին հետևյալ գովասանական տողերն է նվիրում նրան. «Երջանիկ և աստուածամերձ այրն ցանկալի հրեշտակաց և մարդկան՝ պատկառելի քաջ վարդապետն Վարդան, գոլով ի սուրբ ուխտէն Հոգւոց վանաց, գեր ի վերոյ գոլով իմաստութեամբ և խրատուք և առաքինութեամբ քան զամենայն վարդապետս Հայոց. մինչ զի ասէին մարդիկ թե հարկ է զի մեռեալքն յառնեն և թողութիւն մեղաց ի սմանէ գտանեն, ի սեպհական աշակերտաց իւրոց»։ Չորս տարի ամբողջ վարդապետեց Սուխարայ վանքում և լուսավորեց Քաջբերունեաց երկիրը։ Լենկթիմուրի արշավանքի ժամանակ փախավ ապաստանեց Սալնապատի վանքը («1405 թ.»), ուր քիչ հետո մեռավ և թաղվեց «1406 թ.»։ Եղբայրն է Եղիա նշանավոր ճգնավորը (№ 18)։ Իր 60 աշակերտներից մեկն է Թովմա Մեծոփեցին.—Մեծոփ. 41, 49, Տաշեան, Ցուց. 418, Ազգապ. 1984, 2000։

— 194. **Վարդան** աբեղա Երուսաղէմացի. ունի խրատք (ԺԴ դար).—Հացունի, Ճաշեր 492։

— 195. **Վարդան**, հավաքել է Վարդան վարդապետի և Վարդան Այգեկցու առակները «ի ձորս միանձանց»։ Սրանից էլ ընդօրինակված է 1473 թվին, Երուսաղէմ.—Տաշեան, Ցուց. 448։—(ԺԴ դա՞ր)։

— 196. **Վարդան** վարդապետ, Հոգեաց վանքից էր. հաջորդեց իր ուսուցիչ Սարգիս Սորբեցուն և նստավ Խառաբաստայ վանքում, ուր 4 տարի լուսավորեց Արճէշը և Քաջբերունեաց երկիրը։ Իր եղբայրն էր Եղիա ճգնավորը։ Իր աշակերտներից է Կիրակոս Վիրապեցին։ Անօրենների հալածանքից ստիպված՝ իր աշակերտներով միասին քաշվեց Տոսպ, ուր և մեռավ Սալնապատի վանքում, 1406 թ.—Մեծոփ. 40, 41, 70, 71 > Նոտարք 25, 28, 86։

— 197. **Վարդան** վարդապետ, Սուխարայ (կամ Խառաբաստայ) Ս. Աստուածածին վանքի րաբունին, աշակերտ մեծն Սարգիս վարդապետի։ Մեռել է 1408 թ.—տես. **Վարդանայ**՝ Մեծոփ. 71։

— 198. **Վարդան**, «դեռաբոյս զաւակ» Յովանէսի՝ եղբոր Ղազար և Անտոն քահանաների, որոնք Մոկաց Ս. Խաչ վանքում գրել տվին մի Աւետարան 1410 թ.—Ջեռ. Վասպ. 297—298։

— 199. **Վարդան** սարկավագ, թուղթ էր կոկում Արծրունեաց գավառի Կոճերաց վանքում, ուր Վարդանէս աբեղան օրինակեց Գանձարանը, 1412 թ.—Manus. Brit. mus. 121 ա։

— 200. Վարդան, հայր Թադէոս (№ 56) քահանայի, որ Մոկաց Կաղթանց գյուղում մի Աւետարան գրել տվեց 1409 թ. և Ծպատայ վանքումն էլ մի Ճառընտիր՝ 1413 թ.—Ձեռ. Վասպ. 293. Ձեռ. Հալէպի Ա. 269, 272 բ: Դեռ 1409 թվին իր Աստուածատուր որդին «տարաժամ հասակաւ» վախճանվել էր, որի համար Վարդանը «տրրտմութեամբ ի յաշխարհիս կայ». 1413 թ.:

— 201. Վարդանէս կամ Վարդան, գրիչ. օրինակեց Յովհաննէս վարդապետի համար, Կոճերաց վանքում, Ն. Լամբրոնացու և Վանական վարդապետի գործերը՝ 1415 թ. (Ձեռ. Վենետ. № 1627). տե՛ս Լմբ. առակ. IX 428, 154:

— 202. Վարդան կրոնավոր. թուղթ կոկելով օգնում էր Թումայ գրչին, որ օրինակում էր Աւետարանը՝ Աղթամար 1418 թ.—Ձեռ. Վասպ. 311:

— 203. Վարդան վարդապետ, հին օրինակագիր հավաքածոյի, որ արտագրված է 1420-ից առաջ.—Տաշեան, Ցուց. 665:

— 204. Վարդան կրոնավոր, որդի Յովհաննէսի, մայրն է Ամենտիկին. Աղթամարում, Թումայ աբեղային գրել տվեց մի Աւետարան և նվիրեց Ոստանի Պատրկայ վանքին, 1420 թ.—Ձեռ. Վասպ. 322:

— 205. Վարդան, միաբան Բերկրիի «Տէր Յուսկան որդի» վանքի, հիշված է 1420 թ.—Նոտարք 61:

— 206. Վարդան Բաղիշեցի, բնիկ Դատուանցի. ըստ Նոր վկայ. համարձակությամբ գնաց վիճելու Բաղէշի հայատեաց քրդամիրա Շամշատինի հետ՝ կրոնի մասին և նահատակվեց «1421 թ. յունվ. 4-ին».—Յայսմ. մայ. 16. Նոտարք 64. Նոր վկ. 232—243:

— 207. Վարդան աբեղա, միաբան Ծպատ անապատի. օրինակեց Աւետարանը այրի Թումայ քահանայի (№ 96) համար, 1421 թ.—Ձեռ. Վասպ. 330—332:

— 208. Վարդան, հայր Թումայ կրոնավորի, որ Ծպատի անապատում Վարդան աբեղային գրել տվեց մի Աւետարան, 1421 թ.—Ձեռ. Վասպ. 331:

— 209. Վարդան, հայր Դավիթ (№ 180) քահանա գրչի, որ օրինակեց Մաշտոցը՝ Գառնիում և նվիրեց Հաւուց թառի վանքին, 1423 թ.—Այրարատ 357, Թորոս աղբ. Բ. 339, Նոտարք 73:

— 210. Տէր Վարդան, քահանա Վերին Ս. Աստուածածին եկեղեցու (Տրապիզո՞ն), 1425 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 485:

— 211. Վարդան, եպիսկոպոս Խիզանի Գամաղիէլ վանքի. հիշված 1427 թ.—Նոտարք 83:

— 212. Վարդան աբեղա, իր ընկեր Տիրատուր աբեղայի հետ օրինակել է Մեկնութիւն Կաթուղիկեայց՝ Մկրտիչ աբեղայի համար, Երուսաղէմ 1427 թ.—Նոտարք 82։

— 213. Վարդան, միաբան Պատրկայ վանքի 1428 թ.—Նոտարք 88։

— 214. Վարդան, միայնակեաց Պատրկայ վանքում, 1428 թ.—Նոտարք 88։

— 215. Վարդան, հօրեղբայր Թովմա (№ 165) Մինասենց պատմագրի. հիշված է 1428 թ.—Նոտարք 89։

— 216. Վարդան աբեղա, որդի Սամուէլ քահանայի. մայրն է Մինա. հոգևոր հայրն է Տիրանց. Ստեփաննոս կրոնավորի պատվերով գրեց մի Աւետարան Խօսրովայ վանքում, 1430 թ.—Նոտարք 94։

— 217. Վարդան աբեղա, որդի Սամուէլ քահանայի. մայրն է Մինայ. հոգևոր ծնողներն են Թումայ և Տերանց. Խոսրովայ վանքում, Ստեփաննոս կրոնավորի համար օրինակեց Աւետարանը 1430 թ.—Ձեռ. Վասպ. 358—559։

— 218. Վարդան փիլիսոփա, մեռել է 1430 թ. իր հաղթահասակ խաչքարե շիրիմը գտնվում է Լիմ կղզու ծովափին.—Նոտարք 94։

— 219. Վարդան քահանա, որդի Յովհաննէս քահանայի՝ եղբոր Կարապետ գրչի, որ Արճէշում օրինակեց Յայսմաւուրքը 1437 թ.—Նոտարք 111։ (Ասում է, թէ Վարդանը գրել է ուրիշ շատ ձեռագրեր)։

— 220. Վարդան, կազմեց 1332 թվին գրված և հնացած մի Աւետարան 1438 թ.—Ձեռ. Վասպ. 182։

— 221. Վարդան քահանայ, գրել տվեց «ոսկեշար և գեղեցիկ նկարներով» մի Աւետարան, 1438 թ.—Ձեռ. Դադեան, Բ. 45 ա։

— 222. Վարդան չքահանա. մատնեց Մշու Առաքելոց վանքը քրդերին, որոնք եկան ու կողոպտեցին վանքի թանկագին սպասները և մեծ նեղութիւն հասցրին միաբաններին՝ առաջնորդ Պօղոս եպիսկոպոսի օրով, 1439 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 128, Հայապ. 549։

— 223. Վարդան, միաբան Այրիվանից. հիշված է արդեն ծեր՝ 1441 թ.—Այրարատ 346։

— 224. Վարդան քահանա, գրիչ. Վանում օրինակել է մի ընտիր Յայսմաւուրք «ի խնդրոյ Հայրապետ կրօնաւորի», 1441 թ.— (Ձեռ. Վենետ.).—Աւգեր. Լիակ. վրք. սրբ. ԺԱ, էջ հէ։

— 225. Վարդան, կինն է Դիլշատ (№ 4). ծնողներն են Յով-

Հաննէս վարդապետի, որ Գամաղիէլի վանքում օրինակեց Ճաշոցը 1442 թ.—Նոտարք 128։

— 226. Վարդան, հայր Դաւիթ գրչի, որ օրինակել է Խորենացու Աշխարհացոյցը՝ 1443 թ.—Աբրահամեան, Խորենացու Աշխարհացոյցը, էջ 11, 92։

— 227. Տէր Վարդան, որդի Ջալալի. հող է նվիրել Գանձասարի վանքին, Աղբաստի իշխանության և Եղիայի առաջնորդության ժամանակ, 1443 թ.—Շահխաթ. Բ. 376. Ջալալ. Ա. 188> Նոտարք 130։

— 228. Վարդան քահանա, «ձեռնասնունդ աշակերտ» Սարգիս արեղայի, որ ստացավ և նորոգեց մի հին Աւետարան 1444 թ.—Ջեռ. Վասպ. 112 (Լալայեանը երկու հիշատակարան իրար է խառնել)։

— 229. Վարդան, երկու համանուն միաբաններ Գաւաշից Ս. Վարդան զորավար վերաշինված վանքի 1444 թ.—Ջեռ. Վասպ. 389, Նոտարք 46։

— 230. Վարդան քահանա, գրիչ. Վանում օրինակել է մի Յայսմաւուրք 1441 թ. (Նոտարք 126) և մի ուրիշը 1446 թ. (անդ 153)։

(Նոտ. 222 ծան. դնում է A գրչի. սակայն ծնողաց անուն չկա որ հավատանք)։

— 231. Վարդան վարդապետ, հորեղբայր Աբրահամ կրոնավորի, որ Արճէշում Խալիֆայ գրչին գրել տվեց մի Յայսմաւուրք 1446 թ.—Նոտարք 153։

— 232. Վարդան կրոնավոր, Վանում, Վարդան երեցին գրել տվեց մի Յայսմաւուրք 1446 թ.—Նոտարք 153։

— 233. Վարդան վարպետ, կազմարար. կազմեց այն Աւետարանը, որ գրեց Թումայ Մեծոփեցի գրիչը՝ Քաջբերունեաց Արջոնի՞ց (թե Սրջոնից) վանքում 1449 թ.—Նոտարք 163։ Նույն ա՞նձն է Վարդան գրակապ, որ Արծկէում Միքայէլ գրչին գրել է տվել մի Աւետարան 1451 թ.—Նոտարք 167։

— 234. Վարդան, եղբոր կամ քրոջ որդի Կարապետ միայնակեացի, որ Ցիպնայ դաստակ վանքում Յովհաննէս գրչին գրել տվեց մի Աւետարան 1450 թ.—Ջեռ. Վասպ. 405։

— 235. Վարդան, որդի Ծերունի և եղբայր Սուլտան մէլէքի, որ Աղթամարում Գրիգոր գրչին գրել տվեց մի Աւետարան 1452 թ.—Ջեռ. Վասպ. 413—414։

— 236. Վարդան քահանա, որդի Յովհաննէս քահանայի.

աշակերտել է իր երեց եղբայր նահատակ Կարապետ քահանային. գրիչ. օրինակել է Վանում մի քանի ձեռագրեր. այսպես մի Աւետարան՝ Աւագուհի տիկնոջ համար՝ 1452 թ., մի ուրիշը խաթուն Մելեքի համար՝ նոյն թվին, մի երրորդը՝ Շահփաշայի համար 1453 թ., մի չորրորդը Մելիքխաթունի համար 1453 թ.—Նոտարք 169—173։

— 237. **Վարդան** վարպետ, կազմարար. կազմեց այն Աւետարանը, որ Յովաննէս տանուտերը գրել տվեց Վանում 1452 թ. (Նոտարք 169)։ Կարծեմ նոյն Վարդանն է նաև այն, որ նոյն Յովհաննէս տանուտերի համար կազմեց մի Ճառընտիր՝ Սղքառ վանքում, 1453 թ.—Հրտր. Ազաթ. 1909 թ. յուշ. էջ ԾԱ։

— 238. **Վարդան** քահանա, որդի Յովհաննէս քահանայի. մայրն է Զմրութ. որդիներն են Նիկողայոս, Յովհաննէս և Գրիգոր. Վանում, մահտեսի Շահփաշայի պատվերով գրեց մի Աւետարան 1453 թ.—Ձեռ. Վասպ. 137—138. Նոտարք 171։

— 239. **Վարդան** երեց, հայրն է Յովհաննէս քահանա, մայրը՝ Զմրութ, եղբայրը՝ Կարապետ քահանա՝ զոր նահատակեցին յԱրճէշ, որ իր ուսուցիչը և երախտաւորն էր. որդիներն են Նիկողայոս քահանա, Յովհաննէս և Գրիգոր. գրեց մի Յայսմաւուրք Վանում 1465 թ. (Նոտարք 222)։

Աւետարան Վան 1452 թ. Նոտարք 169։
» » 1453 թ. » 171։
» »՝ 1453 թ՞. » 171։

— 240. **Վարդան**, մերձավոր տանուտեր Մանկտաւագի, որ Մցի գյուղում գնեց մի Աւետարան, 1455 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 582։

— 241. **Վարդան** կրոնավոր, հայրապետ հայտնի չէ որ վանքի, որդի Ղազարի. գրել տվեց Յովհաննէս Մանկասարենց գրչին մի Աւետարան՝ 1456 թ.—Ձեռ. Վասպ. 425։

— 242. **Վարդան** կրոնավոր, Խիզանում Մկրտիչ քահանային գրել տվեց մի Աւետարան 1456 թ.—Նոտարք 184։

— 243. Տէր **Վարդան**, որի անունով մի խաչքար է կանգնեցրած Շողագայ վանքում 1457 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 510։

— 244. **Վարդան** երեց, գրիչ. Ներսես վարդապետի համար Վանում օրինակել է-մի Ճաշոց 1458 թ.—Նոտարք 190։ (Ըստ Նոտարքի նշանավոր գրիչ է, որ արտագրել է նաև երեք ուրիշ ձեռագիր. բայց տրված համարները չեն ճշտվում)։

— 245. Վարդան աբեղա, Աղջոց վանքում Ստեփաննոս անուն անձի պատվերով գրեց մի Ավետարան, որ և ընծայվեց Գառնիի եկեղեցուն 1460 թ.—Նոտարք 195։

— 246. Վարդան քահանա, գրիչ. Վանում, Աղութ խաթունի և Շահգիշայի համար գրեց Ավետարանը 1460 թ.։ Հաջորդ տարին էլ մի ուրիշ Ավետարան Մուղալ խաթունի և Շամշիդամարի համար՝ 1461 թ.—Արցախ 139։

— 247. Վարդան աբեղա, որդի Ստեփաննոսի. մայրն է Մելիք. Կողուց վանքում Սիոն միայնակեցի խնդրանոք օրինակեց Ավետարանը 1461 թ.—Նոտարք 198։

— 248. Վարդան աբեղա, գրիչ. Կողուց վանքում օրինակեց Ավետարանը 1461 թ. Սիոն միայնակեցի խնդրանոք։—Թորոս աղբ. Բ. 265։

— 249. Վարդան քահանա, իր Ավետարանը տվեց Մարգարե գրչին՝ օրինակելու համար Ուշտունեաց Բերդաձորի վանքում 1463 թ.—Ձեռ. Վասպ. 446։

— 250. Վարդան, որդի Անդրեասի և եղբայր Աստուածատուրի, որ Ուշտունեաց Բերդաձորի վանքում գրել տվեց մի Ավետարան 1463 թ.—Ձեռ. Վասպ. 443։

— 251. Վարդան կրոնավոր, վանահայր Մեծոփայ վանից. Արգելանի վանքում գրել տվեց մի Շարական՝ Ղազարոս կրոնավորին 1464 թ.—Ձեռ. Սևան. 47 բ. Սմբատեանց, Գեղարքունի 408։

— 252. Վարդան, մեծ վարժապետ, որի մոտ աշակերտեց Կիրակոս կաթուղիկոս Վիրապեցին, Քաջբերունիքո՞ւմ (ԺԵ դար).—տես. Վարդանայ՝ Մեծոփ. յիշ. ա։

— 253. Վարդան, գրակալ վարպետ, որդի Ավետիսի. Արճէշում, Յովհաննէս քահանային գրել տվեց մի Ավետարան 1450 թ.—Ձեռ. Թաւր. 66 բ։

— 254. Վարդան քահանա, որդի Առաքելի, ստացավ մի օրինակ Մաշտոց և Ավետարան՝ 1455 թ.—Տաշեան, Ցուց. 425։

— 255. Վարդան դպիր, աշակերտ Հայրապետ եպիսկոպոսի, որ Անաւարզայի Ս. Աստուածածին վանքում օրինակեց Ճաշոցը Մատթէոս քահանայի համար 1466 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 236 բ։

— 256. Տէր Վարդան Էլթանենց, մահտեսի, մականուն Մաքի. հիշված է երեք անգամ Մարգարէ վարդապետի հետ միասին իբրև վարպետ (ուսուցիչ) 1447, 1455 և 1466 թվերին (Նոտարք 156, 177 և 226=Ձեռ. Վասպ. 400). տե՛ս և Իսրայէլ № 13։

— 257. Վարդան քահանա, հորեղբայր Ջօշկանց Կիրակոս երեցի, որ Աղթամարում օրինակեց Ճառընտիրը 1467 թ.—Նոտարք 230։

— 258. Տէր Վարդան քահանա Բիւրականի, 1469 թ.—Ձեռ. Վեննա. Բ. 1114։

— 259. Վարդան եպիսկոպոս, Աղչոց վանքում օրինակեց Աւետարանը՝ 1471 թ.—Սմբատեանց, Երնջակ 313։

— 260. Վարդան եպիսկոպոս, գրիչ. օրինակեց Աւետարանը Աղչոց վանքում 1471 թ.—Այրարատ 354։

— 261. Վարդան, հայր Էդլշահի, որ ստացավ մի Աւետարան 1475 թ.—Ձեռ. Վասպ. 473։

— 262. Վարդան աբեղա, որդի Յովհաննէսի. «չեկեղեցոյ գլուխն սուաղեաց և զարտն ի Շատուան Երար ոսֆ եկեղեցոյն». Կտուց անապատում, խաչատուր գրչին գրել տվեց մի Աւետարան, 1481 թ.—Ձեռ. Վասպ. 489։

— 263. Վարդան, կինն է Թագուհի, ծնողներն են Յոհանի, որ մի Աւետարան գրել տվեց Խիզանում, Մկրտիչ քահանային, 1482 թ.—Ձեռ. Վասպ. 492։

— 264. Վարդան կազմարար, կազմեց այն Աւետարանը, որ Մարգար գրիչն օրինակեց Աղբակի Բարթուղիմէոս վանքում 1487 թ.—Ճանիկեան, Հնութ. Ակնայ 84։

— 265. Վարդան քահանա, որդի Գուրջիբէկի և եղբայր Ատոմ քահանայի (№ 59 և 66), հորեղբայր Կիրակոս (№ 141 և 150) քահանայի Հաբջօջենց, որ հիշված է 1467 և 1487 թվերին.—Նոտարք 230. Վասպ. 116։

— 266. Վարդան, եղբորորդի Զաքարայ աբեղայի, որ Յակոբ քահանայից գնեց մի Շարակնոց, Երզնկայո՞ւմ, 1487 թ.—Ձեռ. Հալէպի Ա. 27 ա։

— 267. Վարդան երեց, գրիչ Սաղմոսարանի (ԺԵ դար).— Տաշեան, Ցուց. 844։

— 268. Վարդան քահանա, գնող Աւետարանի (ԺԵ դա՞ր).— Տաշեան, Ցուց. 417։

— 269. Վարդան Լմնեցի, հեղինակ հանելուկների (ԺԶ դա՞ր).—Տաշեան, Ցուց. 480 ա։

— 270. Վարդան, որդի Թումայի և եղբայր Տանուտեր Պետրոսի, որ Վանում, Ազարիա քահանային գրել տվեց մի Աւետարան, 1495 թ.—Ձեռ. Վասպ. 476 (թիվը սխալ է դրել 1475)։

— 271. Վարդան, ազգական Յովհաննէս (№ 1229) քահա-

նայի, որ Բերկրիի Առնջս գյուղում գրել տվեց Ավետարանը, 1488 թ.—Ձեռ. Վասպ. 508։

— 272. Վարդան կազմարար. կազմեց Ավետարանը, որ Մարգարայ գրիչը օրինակել էր Աղբակի Երնկանի գյուղում 1490 թ.—Ձեռ. Վասպ. 512։

— 273. Վարդան, որդի Գրիգորի, մայրն է Թուրվանդա. Իսրայէլ գրչին գրել տվեց մի Ավետարան Շատախում 1491 թ.—Ձեռ. Վասպ. 518։

— 274. Վարդան, հայրապետ Ավխուս վանքի (Բաղէշի մոտ) 1496 թ.—Թորոս աղբ. Բ. 426։

— 275. Վարդան վարդապետ, ուսումնակից Ավագտէրի, որ Սարգիս վարդապետի աշակերտն էր, ապա առաջնորդ Սրկղունից Սպիտակաւոր վանքի. Վարդանը հիշված է 1498 թ.—Խաղբակեանք 232, 237։

— 276. Վարդան, հորեղբայր Ատոմի, որ Աղբակի Երնկանի գյուղում գրել տվեց մի Ավետարան 1498 թ.—Ձեռ. Վասպ. 527 (տե՛ս և Հաբիբ № 4)։

— 277. Վարդան, կազմեց այն Ավետարանը, որ Մարգարայ գրիչը օրինակեց Աղբակի Երնկանի գյուղում 1498 թ.—Ձեռ. Վասպ. 528։

— 278. Վարդան, կինն է Մլքան խաթուն, ծնողներն են Շատախցի տանուտեր Հայրապետի (№ 108), որ քրդերի ձեռքից փրկեց մի Ավետարան 1499 թ.—Ձեռ. Վասպ. 318։

— 279. Վարդան վարդապետ Բաղիշեցի. պատմիչ ԺԵ դարից կամ ավելի ուշ. հիշում է նաև Նոտարք 127։ Եղել է ուսուցիչ Գրիգոր Շղթայակիր և Յովհաննէս Կոլոտ (+1741 թ.) պատրիարքների (Նոտարք 170)։

— 280. Վարդան վարդապետ Բաղիշեցի. օրինակել տվեց Կիւրղի գանձերը և ներմուծեց Լամբրոնացու 1175 թ. օրինակած Պարապմանց գրոց մեջ (հայտնի չէ ո՞ր թվին).—Աթան. յուշ. ԺԵ։

— 281. Վարդան քահանա, սույն Վարդան վարդապետ Բաղիշեցու հրամանով օրինակեց Կիւրղի գանձերը.—Աթան. յուշ. ԺԵ։

— 282. Վարդան, որդի Ումեկ քահանայի և եղբայր Ավետիք քահանայի, որ գնեց մի Ավետարան 1500 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 68։

— 283. Վարդան փիլիսոփա, վարդապետ, գրչագրող, պատկերահան և նկարիչ. անապատում բնակելուց հետո, քաշվեց Երզընկայի մի վանք, ուր մինչև մահը մունջ մնաց։ Թվականը անհայտ։

Վարքը տե՛ս Ձեռ. էջմ. № 1711 (գրված 1601 թվից առաջ). ըստ Տաշեան, Ժղվծ. առ. Վարդանայ 187։

— 284. Վարդան տաղասաց (ԺԷ դա՞ր). տաղերից մի նմուշ ունի Կոստանեանց՝ Նոր ժող. Գ. էջ 11 (1682 թվին օրինակված)։

— 285. Վարդան Բաղիշեցի †1704. Ձեռ. Դաշեան Բ. 58 բ։

— 286. Վարդան վարդապետ Բաղիշեցի, պատմիչ կամ տարեգիր. սրանից հատվածներ մեջ է բերում Նոտարք, էջ 123 (1441 թ.), էջ 127 (1442 թ.), էջ 170 (1456 թ.)։ Վերջինիս տակ կա ծանոթություն, թե սա Գրիգոր Շղթայակրի և Յովհաննէս Կոլոտի ուսուցիչն էր. մեռել է Բաղէշի Ամրտօլի վանքում 1704 թ.։

— 287. Վարդան Բաղիշեցի, նշանավոր վարդապետ Ամլորդու վանքի, գրել է մի Շարակնոց 1662 թ. (Ձեռ. Մինխ. 33 բ, ուր և կա տեղեկություն նրա մասին)։ Գրել տվեց մի օրինակ Պատմութիւն Սամուէլ Անեցւոյ՝ 1676 թվին (տե՛ս Հրտր. Սամ. անեց. էջ Ժ հիշատ. ձեռագրի)։ Գրել է իր ժամանակի դեպքերը և Երուսաղէմի Հայոց ու Հունաց կռիվների պատմությունը (Հայապ. 129)։ Վերաշինեց վանքը 1695 թ., բանալով այստեղ նաև նշանավոր դպրոց։ Իր աշակերտներից են Յովհաննէս Թ Կոլոտ և Գրիգոր Զ Շղթայակիր պատրիարքները։ Մեռել է «1705 թ.».—Աբր. Կրետ. 2. Ազգապ. 2790։

— 288. Վարդան վարդապետ Մարաթացի կամ Բաղիշեցի. ուսուցիչ Գրիգոր պատրիարքի Երուսաղէմի և Յովհաննէս պատրիարքի Պօլսոյ. ունի Գիրք աղօթից, որ տպ. Պօլիս ՌՃՁԳ=1734 թվին՝ Մարաթացու անունով և երկրորդ անգամ 1841 թ.՝ Բաղիշեցու անունով.—Ընդարձակ տե՛ս Տաշեան, Ցուց. 1155 և 1156 ա։ Հմմտ. վերը Վարդան Մարաթացի, որի հետ շփոթված է։

— 289. Վարդան վարդապետ, ունի աղոթքներ «Ի խորոց սրտէ» վերնագրով, տերունական վայրերի շուրջ. թվում է, թե Վարդան Մեծից տարբեր անձ է և հատկապես Երուսաղեմացի ոմն՝ ԺԷ դարից.—Ձեռ. Հալէպի Բ. 61։

— 290. Վարդան Յունանեան, Եւդոկիացի, եպիսկոպոս Լէոպոլսոյ, Քոզորեան. աշակերտ էր Կղեմէս Կալանոսի. հետո սովորած Հռոմում («1670—1672 թթ.»)։ Պրոպագանդայի կողմից ուղարկվեց Հայաստան՝ կաթոլիկություն քարոզելու։ Ժողովրդի մեջ գրգռություն գցած լինելով՝ կանչվեց էջմիածին (1682 թ.) և հենց որ լսեց Նիկոլի մահը, գնաց Իլվով և եղավ արքեպիսկոպոս լեհահայոց. 1689 թ. գումարեց եկեղեցական ժողով և լեհահայերին վերջնականապես Հռոմին միացած հայտարարեց † 1715 թ.։ Ունի Թուղթ քաջալերական առ Եւդոկիացիս, Ձեռածութիւն յերկինս

(թրգմ.) և բառգիրք իր.—Տաշեան, Ցուց. 1156 ա. Աղգապ. 2651. Կամենից 143։

— 291. Վարդան, տաղասաց (ԺԸ դար). անշուշտ կան մի քանիսը. տաղերի հիշատակությունը տե՛ս Տաշեան, Ցուց. 1156 ա։

ՎԱՐԴԱՆԱՆ, ար. հիշված է 1576 թ. (Ջեռ. Նոր-Բայազ. 9 ա), 1663 թ. (անդ, էջ 21 բ)։

ՎԱՐԴՕ, ար. 1601 թ. Ջեռ. Վասպ. 798։

* ՎԱՐԴԱՆԴՈՒԽՏ, իգ. կազմված Վարդան անունից+դուխտ «դուստր» բառից։

— Վարդանդուխտ, դուստր Մանուէլ Մամիկոնեանի և կին Արշակ Գ («379—386 թթ.») թագավորի.—Բուզ. Ե. խդ։

* ՎԱՐԴԱՆՇԱՀ, ար. <պրս. Vardānšāh անունից (Justi 353 ա), որ կազմված է Վարդան անունից + պրս. šāh «թագավոր» բառից։

— 1. Վարդանշան, նորոգել է Նորագյուղի (Նոր-Բայազետ) Ս. Լուսավորիչ վանքը, 1286 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 520։

— 2. Վարդանշան, մերձավոր Ռստակէս երեց Կոնիտապատցու, որ ստացավ մի Աւետարան 1435 թ.—Ջեռ. Թաւր. 13 բ։

* ՎԱՐԴԱՆՈՅՇ, իգ. կազմված Վարդան անունից+անոյշ. փխ. Վարդանանոյշ (Հիւբշ. 83)։ Շատ գործածական անուն է այժմ։

— 1. Վարդանոյշ, կին Մանուէլ Մամիկոնեանի, որ էր սպարապետ Արշակ Գ («379—386») թագավորի.—Բուզ. Ե. խզ։

— 2. Վարդանոյշ (ծն. «410—411 թթ.»), դուստր քաջն Վարդան Մամիկոնեանի, քույր Շուշանիկի, կին Արշաւիր Կամսարականի.—Տե՛ս Բ. վրդ. Կիւլէսէրեան, Եղիշէ, էջ 378, 384. Ջամչ. Ա. 518. Աղգապ. 445. Ցուցիկք Ա. 319։

* ՎԱՐԴԱՆՈՒՀԻ, իգ. կազմված Վարդան անունից՝ -ուհի մասնիկով։ Իբր օրինակ իգական անվան հիշված է Խոր. քեր. 170։

—1. Վարդանուհի կամ Վարդուհի, դուստր Քաջն Վարդան Մամիկոնեանի. գգվական անունն էր Շուշանիկ. նահատակվեց Վրաստանում, իր ամուսին Վազգէնի ձեռքով «470 թ.».—Վարդուհի՝ Յայսմ. դեկտ. 25, մրտ. 30.—Վարդանուհի՝ Յայսմ. դեկտ. 25.—Տե՛ս և Շուշան № 3 և Վարդենի։

— 2. Վարդանուհի, թոռն Վարազմանի, չհաս կին Վարազոյ իշխանի Աղուանից. նզովվեց Միքայէլ կաթուղիկոսից (707—742 թթ.).—Կղկնտ. Գ. ժգ.—սեռ. Վարդանուհւոյ՝ Կղկնտ. Գ. ի (հրտր. Շահն. Վարդանուհեաց)։

ՎԱՐԴԱՇԱՀ, ա՞ր. <կազմված է Վարդ անունից կամ վարդ

բառից+պրս. شاه šāh «թագավոր»։ Հիշված է Ձեռ. Վենետ. Ա. 424 առանց թվականի։

— 1. Վարդաշահ, իր ծնողների հիշատակին մի մեծ խաչքար է կանգնեցրել Վարդանի բերդ (Օրթաքյանդ) կոչված տեղում, 1311 թ.—Յովսէփեան, Խաղբակեանք 40։

— 2. Վարդաշահ, ար. հիշված է 1317 թվից հետո գրված անթվական մի հիշատակարանում.—Manus. Brit. mus. 21 բ։

— 3. Վարդաշախ, որդի Յովհաննէս տանուտերի, որ Մոկաց Փառավանք գյուղում գրել տվեց մի Աւետարան 1455 թ.—Ձեռ. Վասպ. 422։

— 4. Վարդաշահ, կինն է Դալաթ. ծնողներն են Մխիթար կրոնավորի, որ Արճէշում օրինակել տվեց մի Ճաշոց 1457 թ.—Նոտարք 185։

— 5. Վարդաշահ, փեսա Խոսրովի, որ Բոնաշէն գյուղում, Մխիթար քահանային գրել տվեց մի Աւետարան 1478 թ.—Ձեռ. Վասպ. 485։

— 6. Վարդաշահ Աշնակեցի, մի այգի է նվիրել Բագնայրին (թվականն անհայտ).—Արձ. Շիրակ 121 ա։

+ ՎԱՐԴԱՊԵՏ, ար. <հյ. վարդապետ բառից. հմմտ. Տէրտէր, Հայրապետ, Տիրացու, Սարկավագ անունները, որոնք նմանապես եկեղեցական աստիճաններ են։

— 1. Վարդապետ, քահանա Դանչան գյուղի (Խլաթ). նվիրատու ձեռագրի (1204 թ.).—Հայապ. 448։

— 2. Վարդապետ, քահանա Դանչան գյուղի (Խլաթ), 1205 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 471։

— 3. Վարդապետ, հայր Յովհաննէս երեցի, որ Կարնոյ Կան գյուղում գրեց մի չքնաղ Աւետարան 1283 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 644։

— 4. Վարդապետ, եղբայր Խաչատուր վանահայր Վարդանանց ուխտի, 1303 թ.—Ձեռ. Վասպ. 64։

— 5. Վարդապետ, որդի Նազարշահի, երախտավոր Հայրապետ գրչի (նախքան 1420).—Տաշեան, Ցուց. 666։

— 6. Վարդապետ, եղբայր Առաքել աբեղայի (նախքան 1420 թ.).—Տաշեան, Ցուց. 665։

— 7. Վարդապետ, կինն է Հոփփսիմէ. ծնողներն են Յովհաննէս քահանայի, որ Մանուէլ երեցին գրել տվեց մի Աւետարան, Երզնկա 1473 թ.—Թորոս աղբ. Բ. 420։

+ ՎԱՐԴԱՎԱՌ, ար. <նույն տոնի անունից կազմված նորակերտ անուն, որ հիշում են Ալպօյաճեան, Պատմ. Հայ. Կես. Ա.

1155, Սովետ. Հյաս. 1945 հոկտ. 7, էջ գ, վերջին սյունակ, Գալուստեան՝ Մարաշ (ստեպ)։ Գործածական է նաև Զեյթունում Վարդեվառ ձևով (տե՛ս Անդրէասեան, Զէյթունի տարագր. 1935, էջ 31)։

+ ՎԱՐԴԱՐԱՆ, ար. <հյ. վարդարան «վարդանոց կամ համբիչ» բառից. իբրև անձնանուն հիշված եմ գտնում 1651 թ. Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, էջ 575։

— ՎԱՐԴԳԷԿ, ար. հիշված է 1475 թվից հետո գրված անթվական մի յիշատակարանում (Ձեռ. Մաղն. 35)։

+ ՎԱՐԴԳԷՍ, ար. <հյ. վարդ+գէս բառերից, իբր «վարդագույն մազեր ունեցող, ոսկեհեր»։ Սովորական է այժմ, թեև հնում շատ անսովոր անուն էր։

— Վարդգէս մանուկ, քեռայր Երուանդ Ա (ըստ Զամչ. Ա. 101՝ Ն. Ք. 569 թ.) թագավորի. շինեց Վարդգէսի ավանը, որ է Վաղարշապատ.—Խոր. Բ. կե. Ասող. Ա. ե. Վրդ. ժէ։—սեռ. Վարդգէսի՝ Խոր. Բ. ժդ, կե. Ասող. Ա. ե. Սիմ. ապար. 128։—Վարդէսի աւան՝ Ուխտ. Ա. խգ.—բց. ի Վարդգէսէ՝ Սիմ. ապար. 8.—Վարդգէսի առասպելի մասին ընդարձակ տե՛ս Աբեղեան, Հայ. ժղ. առասպ. էջ 550—568։

+ ՎԱՐԴԵԳՈՅՆ, ար. <հյ. վարդագոյն բառն է. հիշատակված է այս անունով մի սարկավագ, գրիչ հետին դարերի.—Անկ. Գիրք Նոր. Կտ. ժգ. Ձեռ. Վեննա. Բ. 702 (անթվ.)։

+ ՎԱՐԴԵԹՈՒՓ, իգ. <հյ. վարդ+թուփ բառերից, որով ըստացվում է Վարդենի անվան համազորը։ Հիշատակված է ԺԴ դարից։

— 1. Վարդեթուփ, դուստր Իշխանի և քույր Մկրտիչ կուսակրոն քահանայի, որ Կաֆայում գրել տվեց մի Աւետարան 1344 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 237։

— 2. Վարդէթուփ, դուստր կոշկակար Մարտիրոսի, որ ստացավ մի Աւետարան 1471 թ.—Այրարատ 52։

— Ունենք նաև գրված Վարդթուփ (թվականն անհայտ).—Ձեռ. Վեննա. Ա. 216։

— 3. Վարթեթուփ, դուստր Գրիգորի և քույր կոշկակար Մարտիրոսի, որ Աշոտաց երկրի Անկինաց վանքում գրել տվեց մի Աւետարան, 1470 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 588։

— 4. Վարդեթուփ ս? հիշված 1653 թ.—Թորոս աղբ. Բ. 341։

ՎԱՐԴԵՄԱՂԻԿ, իգ. անթվական մի հիշատակարանում. REA 10, 59։

+ ՎԱՐԴԵՀԱՏ, իգ. <հյ. վարդ և հատ բառերից, իբր «վարդի հատը, ճիշտ նմանը» (ինչպես Արևհատ)։ Հիշված է 1582 թ. (Ալպօ-

յաճեան, Պատմ. Հայ. Կես. Բ. 1858), 1709 թ. (Ջեռ. Սեբ.=ՀԱ 1928, էջ 493)։

— 1. Վարդենատ, կին էլպաշի էմին պեկի, որ Կեսարիայում գրել տվեց մի Ճաշոց 1481 թ.—Ալպօյաճեան, Պատմ. Հայ Կես. Բ. 1481։

— 2. Վարդէնատ, իգ. հիշված 1596 թ.—Ջեռ. Սեբ.=ՀԱ 1926, 456 և Վարդինատ ձևով հիշված ԺԷ դարում.—Ջեռ. Կես. սարգ. 13։

+ ՎԱՐԴԵՆԻ, իգ. <հյ. վարդենի «վարդի թուփ» բառից (Հիրշ. 82). հմմտ. պհլ. Vartak «վարդ-իկ» իբր իգ. հտ. անուն. իբրև իգական անուն հիշում են Թր. քեր. 14. Անան. քեր. 140։

— 1. Վարդենի, բուն անունն էր Ս. Շուշանիկի՝ դստեր Քաջն Վարդանի.—Վկ. Շուշ. 11.—որ և Վարդանի՝ անդ 55 («որ Վարդանի անուանեալ ի հօրէն իւրմէ սրբոյն Վարդանայ).—ըստ Վրաց մատենագիր Յակոբ երեցի կոչվում է Վարդանե! (տե՛ս Մէլիքսէթ-Բեկ, Վրաց աղբ. Ա. 11).—Տե՛ս և Վարդանուհի։

— 2. Վարդենի (գրված Վարդնի), կին Իվանէ Տփղիսեցու, հիշված է Արձ. Հաղբատի 1261—1281 թթ.—Justi 353 բ։

— 3. Վարդենի, կույս կրոնավորուհի. ստացյն գործելով ապրում էր և շահածը աղքատներին բաժանում։ Մի երիտասարդ տրփացավ նրան. կույսը կանչեց իր մոտ այդ երիտասարդին և իմանալով, որ իր աչքերն են հրապուրել նրան, կկոցը աչքերը խրեց և կուրացավ։ Երիտասարդը զղջաց, քաշվեց անապատ, իսկ կույր Վարդենին ճգնական կյանքով վերջացրեց իր կյանքը։—Թեև չկա ազգության ոչ մի նշան, բայց կարծվում է, թե օտար է (Ազգապ. 2060)։—Ուղ. Վարդենի, սեռ. Վարդենայ, Վարդենկայ՝ Յայսմ. մայ. 9. իսկ Աւգեր. Լիակ. վրք. սրբ. ԺԲ. 362 հայ է համարում և թվականը դնում է նախքան ԺԳ դար, որովհետև գտնվում է նաև Տէր Իսրայէլի Յայսմաւուրքում և հիշատակված է Վարդոց անունով՝ Երզնկացու Մատթէի մեկնութեան մեջ, էջ 118։ Հայ լինելու ապացույցն այն է, որ կա միայն Հայոց Յայսմաւուրքում. հույնն ու լատինը չգիտեն։—Ջամչ. Գ. 443 նույնպես դնում է հայ, բայց ԺԵ դարի սկիզբը (Վարդենի կամ Վարդենիկ ձևով)։

— 4. Վարդենի, կին Վարդան քահանայի, որ ստացավ մի Մաշտոց և Գանձարան, ի Պառուագրակ (1455 թ.).—Տաշեան, Ցուց. 425։

— 5. Վարդենի, ապաշխարող, կին գրիչ. օրինակել է Սանդուխք գիրքը, 1657 թ.—Ջեռ. Կարին. 202։

— 6. Վարդենի անունը հիշատակված է նաև 1540 թ. (Ձեռ. Մաղն. 29՝ Վարդինէ ձևով), 1622 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 292 բ), 1631 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 74 բ), 1681 թ. (Վարդինէ ձևով՝ Ալպօյաճեան Պատմ. Հայ Կես. Բ. 1879)։

+ ՎԱՐԴԵՐ, ար. և իգ. <կարող ենք դնել վարդ բառի հոգնակիից, բայց թերևս նաև արականում Վարդերես անունից կրճատված և իգականում Վարդիթեր անունից կրճատված։ Արական Վարդեր ձևը գտնում եմ 1643 թ. «Յիսուս Որդու» տպագիր մի օրինակում (տե՛ս Նորայր). «Եղբօրցն Վարդանին, Ածատուրին»։ Նաև երկու անթվական հիշատակարաններում.—Ձեռ. Սանաս. 13 բ և Ձեռ. Հալէպի 71։—Իսկ իգականը գտնում եմ Վարդեր 1650 թ. (Ձեռ. Հալէպի 92),—1701 թ. Bodleian 207,—1744 թ. (Սմբատեանց, Երնջակ 249),—Վարբեր 1749 թ. (Ձեռ. Դադեան Բ. 14 բ)։—Վարդէր իգ. ? 1773 թ. (Քօսեան, Հայք ի Զմիւռ. Բ. 138),—Վարբեր իգ. 1783 թ. (շիրմի տապանագրում, Քօսեան, Հայք ի Զմիւռ. Բ. 89)։

— 1. Վարբեր, մերձավոր Թերան Անեցու, որ գնեց մի պատմագիրք և նրա հիշատակին նվիրեց Ս. Գրիգոր եկեղեցուն, 1246 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 512։

— 2. Վարդեր, իգ. 1735.—Ձեռ. Վասպ. 546։

+ ՎԱՐԴԵՐԵՍ, ար. <վարդ+երես բառերից, իբր «վարդագույն, վարդանման երեսներ ունեցող»։ Հմմտ. պրս. گل‌چهره Gulčahra անունը, որ բուն նշ. է «վարդադէմ» (տե՛ս Justi)։ Մեր մեջ ավանդված է ԺԴ—ԺԵ դարերից. գործածական է նաև այժմ և նրանից ունենք Վարդերեսեան ազգանունը։

— 1. Վարդերես, որդի Պապ Գրիգորի (նախքան 1320 թ.).—Տաշեան, Ցուց. 665—666։

— 2. Վարդերես, մերձավոր Ասլեր տիկնոջ, որ Երուսաղէմում Կարապետ երեցին գրել տվեց մի Ճաշոց 1333 թ.—REA 10, 56։

— 3. Վարդերես, ումն. Ձեռ. էջմ. № 672 Գև. (ԺԵ դա՞ր) (Հրատ. Ազաթ. 1909 թ. յուլ. էջ խէ)։

+ ՎԱՐԴԵՒԱՆ (որ և Վարդեվան), ար. <վարդ բառից. բայց ի՞նչ է -ւան: Գործածական է այժմ էլ. ավելի սովորական է Վարդևանեան ազգանունը։ Երկու անգամ գտնում եմ գործածված ԺԴ և ԺԶ դարերում։

— 1. Վարդէվան, հայր Սահակի. որ ստացավ մի Շարակնոց 1343 թ.—Տաշեան, Ցուց. 489 բ։

— 2. Վարդէվան ս? 1585 թ.—Թորոս աղբ. Բ. 368։

+ ՎԱՐԴԷԾՈՑ, իգ. <հյ. վարդ+ծոց բառերից, իբր թե ծոցը

լցված է վարդով. հիշատակված է մի անգամ, անհայտ թվականով.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, էջ 44։

+ ՎԱՐԴԷՄԱՅՐ, իգ. <վարդ+մայր բառերից. մի անգամ հիշատակված եմ գտնում ԺԴ/ԺԵ դարից։

— Վարդէմայր, մայր Առաքե՞լ գրչի (նախքան 1420 թ.).—Տաշեան, Ցուց. 665 բ։

+ ՎԱՐԴԷՍԱՆԱՄ, իգ. <հյ. վարդ+արաբ. صنم şanam «կուռք, արձան» (տիպար գեղեցկության) բառերից, իբր «վարդից շինված արձան»։

— Վարդէսանամ, կին Մկրտիչ քահանայի (նախքան 1420 թ.).—Տաշեան, Ցուց. 666 բ։

ՎԱՐԴԵԽՈՐ, ար. 1596 թ.—Ձեռ. Վասպ. 749։

ՎԱՐԴԷ, իգ. հիշված 1728 թ.—Ձեռ. Հալէպի Բ. 59 բ, 60 ա։

— Վարդէ, իգ. հիշված է +1768 թ. (Սիւրմէեան, Պատմ. Հալէպի ազգ. գերեզմ. 42 բ)։

ՎԱՐԴԸՄԲԵԼ, Երեանցի, գնեց Մելիտոնի այգու չարեքը և նվիրեց Կեչառուի Ս. Գրիգոր եկեղեցուն 1163 թ.—Ղահազիզ, Հին Երեվանը, 75։

— Վարդըմբել (տպ. Վարդ ըմքել?), Երեանցի. մի այգի է նվիրել Կեչառուի վանքին 1234 թ.—Երևի նույն անձն է, որ մի ուրիշ արձանագրության մեջ էլ կոչվում է պարզապես Վարդ.—Այրարատ 262։

ՎԱՐԴԻ (սեռ. Վարդէ) քահանա Սեբաստիոյ, որի որդիքն են Յովհաննէս և Պապէր. հայրն է Խաչատուր։ Ինքը Վարդին կամ որդին Պապէր արտագրել են Աւետարանը 1193 թ.—Ձեռ. Վասպ. 80։

+ ՎԱՐԴԻԳՈՒԼ, իգ. <հյ. Վարդ+պրս. گل gul բառերից. գործածական է Ջանգեզուրում. հմմտ. Գուլվարդ: Երկուսն էլ նշանակում են «վարդ ծաղիկը», ըստ որում պրս. گل gul նշանակում է ո՛չ թե «վարդ», այլ ընդհանրապէս «ծաղիկ»։

+ ՎԱՐԴԻԹԵՐ, իգ. <վարդ+ժղ. թեր «թերթ» բառերից և նշանակում է «վարդի թերթ»։ Հիշված է 1595 թ. (Ձեռ. Վեննետ. Ա. 696), 1641 թ. (Bodleian 212)։ Հայտնի է այս անունով Պռօշեանի «Սօս և Վարդիթեր» գեղեցիկ վեպը։ Այժմ սովորական անուն է։

* ՎԱՐԴԻԿ, ար. <Վարդ անվան փաղաքշականն է և իբր այն՝ պրս. փոխառություն. հմմտ. պհլ. vartak «վարդ-իկ» իբր իգ. անձնանուն (Հիւբշ. 82)։ Իբր անձնանվան օրինակ հիշված է Սիւն. քեր. 206։ Այժմ անգործածական. խափանված է անշուշտ վարտիf

քառի հետ շփոթման պատճառով։ Բայց կա Վարդիկեան ազգանունը.—Տե՛ս և Վարդուկ:

— 1. Վարդիկ, իշխան Մոկաց, կոչված Ակնիկ. դավաճան. առաջնորդ էր արաբների առաջին արշավանքին՝ Դուինի վրա («640 թ.»).—Սեբ. լ։

— 2. Վարդիկ, որդի Թադոսի, հիշվում է Տաթևի 881 թվի կալվածագրում.—Օրբ. լթ։

— 3. Վարդիկ, վանահայր Ցաղացքարի. շինեց այնտեղ երկու եկեղեցի.—Օրբ. կա (դնում է 406 թվին՝ Գագիկի թագավորության ժամանակ. պետք է հասկանալ անշուշտ Գագիկ Ա, որ նստավ «990—1020 թթ.» և ըստ այսմ ուղղել թվականը)։

— 4. Վարդիկ, վանահայր Վանգոց վանքի. խստամբեր ճգնավոր և հրաշագործ։ Սպերից եկավ Վանանդի Գագիկ թագավորի մոտ և շինեց Վանկոյ վանքը։ Թաղվել է նույն վանքում (ժ դար). —Մխ. այրիվ. 74. Ասող. Գ. է.—սեռ. Վարդկայ՝ անդ։ Նաև Յայս մ. 10 յնս.՝ ըստ Այրարատ 51 ծան. (Ջամչ. Բ 824 գրում է Վարդուկ)։

— 5. Վարդիկ, վանահայր Թաթլոյ վանուց (թվականը անհայտ).—Վրդն. աշխ. 504։ Թերևս և նույն է նախորդի հետ. տե՛ս Այրարատ 51 բ։

— 6. Վարդիկ Խլաթցի, նվիրատու ձեռագրի (1204 թ.).—Հայապ. 450 թ.։

— 7. Վարդիկ, ծերունի կրոնավոր, միաբան Հաւուց թառի, 1214 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 593։

— 8. Վարդիկ, հորեղբայր Վարդան կրոնավորի, որ Աղթամարում, Թումայ աբեղային գրել տվեց մի Աւետարան 1420 թ.—Ձեռ. Վասպ. 322։

— 9. Վարդիկ, ոմն Սերաթցի (հիշված է 1504 թ.).—Տաշեան, Յուց. 55 ա։

— 10. Վարդիկ, 1629 թ.—Ձեռ. Վասպ. 876։

— 11. Վարդիկ, Սուչավացի հարուստ հայ. հիշված է Ստեփան մեծ իշխանի (1457—1504 թթ.) ժամանակ.—Տան, Արևել. հայք. 15։

— Ավելի ուշ հիշված են Վարդիկ 1633 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 36), 1656 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 604), 1708 թ. (Ջամբռ 286). բոլորն էլ իգական։—Տե՛ս և Վարդ խաթուն:

ՎԱՐԴԻՇ, ար. աղվանական անուն է. ծագումը մեզ անհայտ. մի անգամ ունենք՝

— Վարդիշ ի Թամդիկան. հյուպատոս աղուան (է դար).— Հրտր. Սամ. անեց. 286։

— Վարդիշան, կին ումն հիշված 1653 թ. (Թորոս աղբ. Ա. 121)։

+ ՎԱՐԴԻՇԱՂ, իգ. <հյ. վարդ+շաղ բառերից, իբր «վարդի թերթից կաթած ցող».—(Սովետ. Հայաստ. 1945 թ. նոյ. 28, էջ բ. սյուն. 2-րդ)։

+ ՎԱՐԴԻՇԽԱՆ, ար. <հյ. վարդ+իշխան բառերից, իբր թե «վարդերի իշխանը»։ Երկու անգամ հիշատակված է ԺԴ դարից։

— 1. Վարդիշխան քահանա, Երուսաղէմում, Ստեփան Երկայն գրչին օրինակել տվեց Աւետարանը և նվիրեց Հրեշտակապետաց վանքին 1321 թ.—Թորոս. աղբ. Բ. 344—345։

— 2. Վարդիշխան, հրախտավոր Առաքել գրչի (նախքան 1420 թ.).—Տաշեան, Ցուց. 666 ա։

+ ՎԱՐԴ-ԽԱԹՈՒՆ, իգ. կազմված վարդ և խաթուն բառերից։ Նույնի փաղաքշականն է Վարդիկ խաթուն: Կա և Վարդայ խաթուն ԺԷ դար (Զքր. սարկ. Ա. 69)։ Վարդխաթուն անվան հին հիշատակությունները են՝ 1570 թ. (Այրարատ 39 և Ձեռ. Վեննետ. Ա. 672), 1575 թ. (Ձեռ. Վասպ. 688), 1588 թ. (Ձեռ. Հալէպի Ա. 233 ա), 1589 թ. (անդ 167), 1594 թ. (Ձեռ. Վասպ. 737), 1613 թ. (Ձեռ. Թաւր. 99 բ), 1632 թ. (Ձեռ. Հալէպի Ա. 3 բ), 1645 թ. (Ձեռ. Վասպ. 295), 1650 թ. (Ձեռ. Հալէպի Ա. 92 բ, 327 ա), 1651 թ. (Տաշեան, Ցուց. 363 բ), 1660 թ. (Ձեռ. Հալէպի Ա. 178 բ), 1661 թ. (Սմբատեանց, Երնջակ 267), 1672 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 62), 1696 թ. (Տաշեան, Ցուց. 591 բ), անթվական են Ձեռ. Վասպ. 128 և 158, իսկ Վարդիկ խաթուն հիշված է 1683 թ. (Տաշեան, Ցուց. 493)։

— 1. Վարդխաթուն, դուստր Խաչիկի և քույր Հայրապետ աբեղայի, որ գրեց մի Աւետարան՝ Աղթամար 1444 թ.—Ձեռ. Վասպ. 388։

— 2. Վարդխաթուն, հորեղբոր դուստր տանուտեր Մանկասարգի, որ Մցի գյուղում գնեց մի Աւետարան 1455 թ.—Ձեռ. Վեննետ. Ա. 582։

— 3. Վարդխաթուն, 1552 թ.—Ձեռ. Վասպ. 656։

— 4. Վարդխաթուն, հիշված է 1616 թ. (Manus. Brit. mus. 40 բ), այլ ումն Վարդխաթուն, հիշված 1632 թ.—Ձեռ. Կես. Ածած. 63 ա։

— 5. Վարդխաթուն, 1708 թ.—Ձեռ. Վասպ. 563։

+ ՎԱՐԴԿԱՆ, ար. <հյ. Վարդիկ ձևի հին սեռականն է։ Մի անգամ ունենք՝

— Վարդկան, այլ անուն Վարդան Մամիկոնեանի (Կարմիրն).—Կոր. էջ 14։

+ ՎԱՐԴՄԱՆՈՒԿ, ա՞ր. <հյ. վարդ և մանուկ բառերից. գըտնում եմ հիշված անհայտ թվականով Ձեռ. Սեր.=ՀԱ 1926 թ., էջ 237 և Ձեռ. Վասպ. 117։

— 1. Վարթմանուկ, պարտիզպան խորին անապատի (Կիլիկիա), 1270 թ.—Ձեռ. Վեննա. Բ. 235. Սիսուան 152։

— 2. Վարդմանուկ, որդի Քուքի, հանգուցյալ եղբայր Մկրտիչ կրոնավորի, որ Բաղէշում գրել տվեց մի Յայսմաւուրք 1446 թ.—Նոտարք 151։

— 3. Վարդմանուկ, հիշված 1475 թվից հետո գրված անթվական մի հիշատակարանում.—Ձեռ. Մաղն. 35։

— 4. Վարդմանուկ, 1693 թ.—Ձեռ. Վասպ. 980։

ՎԱՐԴՕ, ար. 1678 թ.—Ձեռ. Վասպ. 1023։

+ ՎԱՐԴՈՍԿԻ, իգ. <հյ. վարդ+ոսկի բառերից։ Մի անգամ գտնում եմ հիշված Յիսուս Որդու 1643 թվի տպագիր օրինակում (տե՛ս Նորայր). «զվերցս Հայպատին և Վարդոսկին»։

+ ՎԱՐԴՈՑ, իգ. <հյ. վարդոց, իմա՝ վարդանոց «վարդերի ծաղկանոց» բառից. հմմտ. Գուլիստան: Իբր իգ. անվան օրինակ հիշված է Թր. քեր. 14 և Անան. քեր. 140։

— Այս անունով է հիշված սրբուհի Վարդենին (Սրզն. Մոթ. 118), որի վարքը տե՛ս վերը։

+ ՎԱՐԴՈՒԿ, ար.! <հյ. վարդ բառի գգվականից (սրանով վերանում է վարտիք բառի հետ շփոթելու կասկածը). մի անգամ գտնում եմ հիշված 1636 թ. (Ձեռ. Վեննա. Ա. 752)։

+ ՎԱՐԴՈՒՐԱԽ, ար. <հյ. վարդ+ուրախ բառերից. հմմտ. նույնի պարսկերեն ձևը՝ Գուլշադ:

— Վարդուրախ, աներն է Սահակի՝ որ ստացավ մի Շարակնոց (1643 թ.).—Տաշեան, Ցուց. 489 բ։

+ ՎԱՐԴՈՒՀԻ, իգ. <հյ. վարդ բառից՝ -ուհի իգականակերտ մասնիկով, իբր համապատասխան եվրոպական Rosa, ռուս. Роза անվան։ Իսկ Մամիկ. էջ 50, 51 հիշված Վարդուհի պարսիկ զորավարի անունը անստույգ կամ կեղծ է (Հիբշ. 82)։ Շատ սովորական է այժմ մեր մեջ. կրճատ ձևն է Վարդուշ. հին հիշատակությունները են՝ Վարդուհի 1609 թ. (Ձեռ. Սեր.=ՀԱ 1925, էջ 473), 1783 թ. (Մէնէվիշեան, Ազգապ. Տիւզեանց 17), 1796 թ. (էֆիմ. 448). տե՛ս նաև Վարդանուհի կամ Վարդուհի (Ե դար)։—Տե՛ս նաև Վարդույշ՝ Գոնցա անվան տակ 1260 թ.!։

ՎԱՐԴՈՒՄ, ար. հիշված է՝
1674 թ. (Ձեռ. Դադեան Բ. 46 բ).
1702 թ. (Manus. Brit. mus. 167 բ).
1678 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 2 ա).
1638 թ. ( » » » 15 բ)։

Վարդում իգական է 1418 թվից հետո գրված անթվական մի հիշատակության մեջ՝ Ձեռ. Նոր-Բայազ. 33ա։

+ ՎԱՐԴՊԱՊ, ար. <հյ. վարդ և պապ բառերից. հիշված է մի անգամ ԺԳ/ԺԴ դարում։

— Վարդպապ (հետո կրոնավոր), հորեղբորորդի Մխիթար գրչի, որ 1315 թվին Գլաձորում օրինակեց Գիրք Լուծմանց.—Հայապ. 526։

ՎԱՐԴՊԱՐՈՆ, ար. հիշված է 1475 թվից հետո գրված անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Մաղն. 35)։

+ ՎԱՐԴ-ՏԻԿԻՆ, իգ. <հյ. վարդ և տիկին բառերից, իբր համազոր Վարդ-խաթուն անվան։

— 1. Վարդ-տիկին, կին Յովհաննէս քահանա գրչի ի Շիկ-քար, 1313 թ.—Հիշատ. ИАИ 1911, էջ 1301։

— 2. Վարբտիկին, քույր Սիմէոն երեցի, որին օգնում էր արտագրելու Աւետարանը՝ Սուրխաթում (Խրիմ) 1343 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 755։

— 3. Վարդէ տիկին, կին Մխիթար քահանայի (1375 թ.).—Տաշեան, Ցուց. 277։

— 4. Վարդտիկին (գրված է սեռ. Վարդիկնայ). կին Ամիրի և մայր Յովհաննէս տանուտերի, որ Սեբաստիայում Մինաս գրչին գրել տվեց մի Յայսմաւուրք 1469 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1929, էջ 11։

— 5. Վարդտիկին, կին Շնոֆոր պարոնի և մայր Գրիգոր քահանայի, որ Սեբաստիայում Փիլիպպոս եպիսկոպոսին գրել տվեց մի Աւետարան 1485 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 598։

— 6. Վարդատիկին, կին X-ի, երեց եղբոր Մանուէլ քահանայի, որ Գեղարքունեաց Կած գյուղում Յովհաննէս Արծկեցուն գրել տվեց մի Ճաշոց (ԺԵ դար).—Ձեռ. Սևան 18։

— 7. Վարդ-տիկին, հիշված կա նաև 1618 թ. (Karst, Դատաստ. էջ III)։

ՎԱՐՁԷՆ, ար. հայր Մելիք Յովասափի, որ գերությունից ազատել է մի Աւետարան (թվականն անհայտ, բայց 1334-ից հետո).—Թորոս աղբ. Բ. 273—274։

ՎԱՐԺ, ար. ծագումն անհայտ (անշուշտ շինված Վարաժնունի անվան վրայից)։

— Վարժ, որդի Դատի, ընտիր որսորդ, Գեղամի Գառնիկ Թոռան ցեղից։ Արտաշէս Ա (Ն. Ք. 114—89 թթ.) նրան արքունի որսերի վերակացու և իր որդի Տիգրանի մարտուսույց կարգեց, և Հրազդանի կողմերը նրան պարգևեց։ Սրանից է առաջացել Վարժարնունի ցեղը.—Խոր. Ա. ժբ. Բ. է. Առաղ. Ա. ե,—որ և Վարաժ՝ Խոր. Բ. ժա. Ուխտ. Ա. ժգ. Սամ. անեց. 43, 48. Մին. համդ. 5։

ՎԱՐԻ-ԽԱՆ, իգ. 1602 թ.—Ձեռ. Վասպ. 802։

ՎԱՐԻԿ, ա՞ր. թե իգ. հիշված է 1548 թ.—Manus. Brit. mus. 108 բ։

ՎԱՐՁ, ար. <եթե հյ. վարձ բառից չէ, ծագումն անհայտ. մի անգամ ունենք հիշատակված՝

— Վարձ Կամսարական, Ցազկերտ Բ-ի բանտարկած նախարարներից մին «452 թ.».—Եղիշ. 150, որ և հիշում է Փարպ. խէ «Վարձայ Կամսարական» ձևով։

ՎԱՐՁԱՒՈՐ, ար. ծագումն անհայտ. բայց ավելի ընդարձակ տե՛ս Վարոս:

— Վարձատր, Առոմեան նահատակներից մին.—Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Բ. 75. Տաշեան, Ցուց. 27, 564, 577 ըստ Ցայսմ.—Վկ. ատ. 81.—սեռ. Վարձատրի՝ Վկ. ատ. 69. Արծրունեաց տոհմից էր՝ ըստ Ջամչ. Բ. 20։

ՎԱՐՁԻԳՈՒՂ, ար. հիշված է 1477 թվից հետո գրված անթվական մի հիշատակարանում. Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 218). վրիպակով տպված է ազավարձիղուլ, որ ըստ իս ուղղելի է աղա Վարձիգուլ:

ՎԱՐՃԻԿ, իգ. ծագումն անհայտ, մի անգամ հիշատակված ունենք՝

— Վարճիկ, կի՞ն կամ մերձավոր Դաւիթ (№ 106) իշխանի Շոթռականց. հիշված 1222 թ.—Ցովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 32, 34։

ՎԱՐՇԻՐ, որդի Ապլվարդի և հայր Արտաշիրի, որ իր մի այգին նվիրեց Եղվարդի վանքին, 1911 թ.—Այրարատ 199։

ՎԱՐՈՃ, ար. թ.?.—Ձեռ. Վենետ. Ա. 428։

* ՎԱՐՈՍ, ար. <լտ. Varus անունից, որ բուն նշանակում է «ծռած, կորացած». հայտնի են այս անունով զանազան անձեր, որոնցից նշանավոր է Varus փիլիսոփան, բարեկամ Կեսարի. իրեն է նվիրված Վիրգիլիոսի 6-րդ երգը. Հայոց մեջ քրիստոնեական շըր-

ջանից հայտնի է Վարոս նահատակված Եգիպտոսում (Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Ը. 41)։

— 1. Վարոս (որ և Գիւտ), աշակերտ Սահակի և Մեսրոպի. Վարդանանց պատերազմից հետո, իր եղբայր Անտոնի կամ Թաթուլի հետ միասին քաշվեցին Վիշապաձոր ճգնելու. այնուհետև Վարոսը գնաց Դիցմայրի անձավը, ուր շինեց Գիւտի վանքը և ճգնությամբ վերջացրեց իր կյանքը (տե՛ս և Անտոն), ըստ Սամ. անեց.՝ + 494 թվին.—Յիշ. Թաթ. 47, 48, 51. Աստղ. Բ. բ. Յայսմ. սեպ. 30, մրտ. 6. Մխ. այրիվ. 62.—Սեռ. Վարոսի՝ Ճշ. 664. Յայսմ. սեպ. 30, մրտ. 6. Յիշ. Թաթ. 47. Վրդն. աշխ. 504.—Գրծ. Վարոսիւ՝ Սամ. անեց. 72. Կիր. 21. Վրդ. իր։

— 2. Վարս, որդի Ատոմ Գնունու, Ոստանեան տնից, հոր և Ատոմեան վկաների հետ միասին նահատակվեց Պարսից Հազկերտ թագավորի հրամանով.—Յայսմ. օգ. 19 (գրված է Վարս՝ Ջամչ. Բ. 20. Ազգապ. 347. Տաշեան, Ցուց. 77, 564 և այլն)։—Վարս՝ Վկ. ար. 81.—սեռ. Վարսայ՝ Վկ. Ար. 69.—Justi 357 ա ընդունելով Վարս ձևը, հանում է հյ. վարս «մազ» բառից. իսկ Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Բ. 75 տարբեր անձեր է դնում (Վարոս և Վարս).—Դարձել է Վարսաւոր՝ Ջեռ. Վենետ. Բ. 243, և Վարձաւոր՝ Թորոս աղբ. Բ. 394 (ուր ավելանում են նաև Վարսակ և Ներսեհ)։ Ստացել է Վարոց ձևը՝ անշուշտ անմտադրությամբ և ո՛չ թե անախորժ բառախաղով՝ Ջեռ. Վասպ. 430 (թվականն անհայտ, բայց 1458 թվից ուշ).—Տե՛ս և Վարձաւոր։

— 3. Վարս, որդի տանուտեր Տողանի, որ Արճէշի Սոսկան գյուղում գրել տվեց մի Աւետարան 1489 թ.—Թորոս աղբ. Բ. 437։

— 4. Վարոց, ազգական Ատոմի, որ Աղբակի Երնկանի գյուղում գրել տվեց մի Աւետարան 1498 թ.—Ջեռ. Վասպ. 527 (տե՛ս և Հաբիբ № 4)։

— 5. Վարոց, քր. 1581. Ջեռ. Վասպ. 722, 1592. Ջեռ. Վասպ. 730։

+ ՎԱՐՍԵՆԻԿ, իգ. <անշուշտ վարս բառից, իբր «լավ մազերով». հնից չէ ավանդված. կրճատ ձևերն են Վարսիկ, Վարսօ: Կազմությունը ճիշտ այնպես է, ինչպես Արփենիկ, Սաթենիկ, Նազենիկ, կրճատ ձևերն էլ Արփիկ, Սաթիկ, Նազիկ։ Բոլորն էլ շատ գործածական անուններ են այժմ։

ՎԱՐՍԷ, իգ. հիշված 1823 թ.—Ջեռ. Նոր-Բայազ. 9 ա։

ՎԱՐՏՈՄ Անեցի, տաղաչափ.—Տեղ. ակադ. 1946 № 2, էջ 79։

ՎԱՐՏԷՆ (որի վերջածայնը համարելով որոշիչ հոդ՝ կունենանք

ուղ. Վարազ? սեռն անհայտ). հիշված է 1681 թ. (Ձեռ. Հալէպի. Ա. 186)։

ՎԵԼԻ, որդի Նուրիճանի, որ Գրիգոր աբեղային գրել տվեց մի Յայսմաւուրք՝ Ագուլիս 1481 թ.—Սմբատեանց, Երնջակ 299։

* ՎԵԼԻՋԱՆ, ար.<արաբ. ولی veli «տեր, պաշտպան, տեր» + պրս. جان jān բառերից. հիշատակված է մեր մեջ 1480 թ. (Բարխուտ. Գառմ. Աղվ. Բ. 34), Վելիջան 1661 թ. (Արցախ. 259), Վելիճան՝ 1671 թ. (Խաղբակեանք 253)։

— 1. Վէլիջան պարոն, տիրող Խաչենաձորի գավառի, 1493 թ.—Արցախ 247։

— 2. Վէլիջան, 1627 թ.—Ձեռ. Վասպ. 873։

ՎԵԼՍՈՄ, ա՞ր. ծագումն անհայտ. հիշված է 1651 թ.—Ձեռ. Վեննետ. Ա. 734։

+ ՎԵՀԱՆՈՅՇ, իգ. <հյ. վեհ և անոյշ բառերից. նորակերտ անուն. հիշված է ԺԹ դարից. կրճատ ձևն է Վեհիկ, որ սակայն կապ չունի տակի Վեհիկ անվան հետ։ Հմմտ. նաև Վահանոյշ։

* ՎԵՀԻԿ, ար. <իրան. Vehik ձևից, որ Վեհշապուհ, Վեհ-ճամ, Վեհվեհնամ և նման անունների փաղաքշականն է (Հիւբշ. 83)։ Բոլորն էլ ծագում են պհլ. vēh, պրս. بهٔ bih, զնդ. հպրս. vahya «լավ» բառից։

Վեհիկ երե՞ց, որ տեսիլքով գտավ Կաղսետի սրբոց մասունք-ները (560 թ.).—Կղկնտ. Բ. զ.—սեռ. Վեհկի՝ Կղկնտ. Բ. զ։

ՎԵՄէՆ Մամիկոնեան, իշխան Տարօնի, Զորտուանէլ իշխանի (1104 թ.) նախնիներից.—(Հայապ. 391, 397 համարում է Վիգէն անվան հետ նույն).—Ձեռ. Վեննետ. Բ. 474։

* ՎԵՍՏ, իշխանական տիտղոս էր հին Հայոց մեջ. իբրև անձ-նանուն ունենք՝

— Վեստ, Թոռն Արծրունյաց Սենեքերիմ Թագավորի, որ գաղ-թեց Սեբաստիա 1021 թ.—Առաք. պատմ. 479. Չամչ. Բ. 902. Անանուն ժմ. 16, Դրնղ. էջ 4 (ոմանք համարում են որդի)։

* ՎԵՐԳԻՆԷ, իգ. (կրճատ Վերգին, եվրոպական ձևով Վերգինէ, որ և ֆրանսիական ձևով Վերժին, փաղաքշաբար Վերգուշ, Վերժիկ <լտ. Virginia (որ և Verginia), ֆր. Virginie անունից՝ նոր փո-խառություն. բուն նշանակում է «կույս»։

* ՎԵՐԴԻ, ար. <թրք. ویردی verdi «տվեց» բառից, որ Ալլահ-վերդի, Թարվերդի, Խուդավերդի «աստուածատուր» կամ նման մի անվան կրճատ ձևն է։ Հիշված ունենք Վերտի 1658 թ. (Արցախ 74). սրանից Վերդեան (Կովկաս), Վերտեան (Տաճկաստան) ազգանունը։

— Վերժին, Վերժիկ տե՛ս Վերգինէ:

* ՎԵՐՄԻՇ, ար. <Թրք. ویرمش vermiš «տված» բառից, իբրև «Աստուծոյ տված» կամ նման մի կրճատ ձև. համտ. Վերդի: Հիշված կա 1619 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 722). սրանից է Վերմիշեանւոս. Վերմիշև ազգանունը (Կովկաս)։

* ՎԵՐՈՆԻԿ, իգ. (կրճատ Վերոն) <Ֆր. Veronique. այս անունով է կոչվում Յիսուսի բժշկած տեռատես կինը (Անկ. Գիրք Նոր Կտ. 326՝ Վերոնիս կամ Վերոնիկայ ձևով). իտալացի մի սրբուհի (1445—1497 թթ.), հրեուհի, որ սրբել է Յիսուսի երեսը՝ երբ Գողգոթա էր բարձրանում։ Գործածական էր անցյալ դարում Պոլսի Հայոց մեջ ։

+ ՎԵՐՋԱԼՈՅՍ, իգ. <Արշալոյս անվան նմանությամբ. հյ. վերջալոյս բառից կազմված նորակերտ անուն. հիշված է օր. Սովետ. Հյաստ. 1945 թ. ապր. 3, էջ բ։

ՎԵՑԻԿ, ար. ծագումն անհայտ. (վեց բառի՞ց է). մի անգամ հիշատակված ունենք՝

— Վեցիկ վարդապետ (իմա «վարպետ»), քարագործ և ճարտարապետ, շինեց Կեչառոյքի գեղեցիկ կաթուղիկէն կամ մոտակա Ս. Նշանը՝ 1231 թ. և նույն թվին էլ ինքը մեռավ վաղամեռիկ։ Եղբայրները (որոնցից մեկն է Յովհաննէս (№ 262) եպիսկոպոս), վրան մի մահարձան կանգնեցրին, որ մնում է մինչև այժմ.—Ակինեան, ՀԱ 1929, 445 ծան.։ Նույն է նաև արձ. Այրարատ 264 հիշված Վեցիկ վարդապետը, որի մահարձանի նկարը տե՛ս էջ 266 բ. իսկ նույն արձանագրության լրիվ ընթերցումը Սմբատեանց՝ Գեղարք. 355 և Խաղբակեանք 75։

* ՎԶՐՈՒԿ, ար. <պրս. بزرگ buzurg, պհլ. vazarg, vazurg, հպրս. vazarka «մեծ» բառից, որ իբր անձնանուն էլ գործածական էր Պարսից մեջ. համտ. Վզրկ խաքան, որին նվաճեց Պերոզմատը (Խոր.), Իբն Բուզուրջ՝ գրող, Միրզա Բուզուրգ բանաստեղծ (ԺԹ դարի սկիզբը), Վզուրկմիհր՝ եպարքոս կամ վեզիր Խոսրով Ա Նուշիրվան թագավորի Պարսից և այլն (Justi 359 բ)։ Մեր մեջ մի անգամ հիշված է՝

— Վզրուկ, նահապետ Բասենի, մին այն նախարարներից, որոնք ուղեկից եղան Ներսէս կաթուղիկոսին՝ Վաղէս կայսեր մոտ դեսպանության գնալու ժամանակ «364 թ.».—Մեսր. եր. 53։

ՎԷԶԻՐ, ար. <արաբ. وزير vazīr (Թրք. հնչմամբ vezir), նշ. «եպարքոս»։ Բուն ծագումը պհլ. vazarg «մեծ» բառից, որ է պրս.

buzurg, *իբրև անձնանուն հիշատակված է մեր մեջ 1723 թ. (Ջամբռ 286)։*

* *ՎԻԳԷՆ, ար. <լտ.* Vincentius *անունից, որ բուն նշանակում է «հաղթական»* (vinco *«հաղթել» բայից)։ Նույնից ֆրանս.* Vincent, *իտալ.* Vincenzo, *որ Վիշէն ձևով տարածված է կաթոլիկ Հայոց մեջ, սկսյալ ԺԹ դարից։ Սրանից ունենք Վիշէնեան ազգանունը, օր. Սերովբէ Վիշէնեան, որ համառոտությամբ եղավ Սերվիչէն, նշանավոր ազգային գործիչ 1850-ական թվերին (Ազգապ. 3886)։* (Justi *368 բ* վէգ, վեճ *բառերին է ուզում կապել, իբր «կռվող»)։*

— Վիգէն *Մամիկոնեան, որդի Զորտուանէլի Բ և թոռն Թոռնիկի. տեր Սասնոյ. կոչված է «պատուելեսիմոս». կինն է Մելեքսեթի (Հնութ. Ակնայ 77). որդիներն են Զորտուանէլ Գ, Վասակ և դուստրը՝ Կատա։ Գերի բռնեց Շահի-Արմէնին 1132 թ., բայց հաշտվելով արձակեց։ Կյանքի մնացեալ մասը անորոշ է. ոմանք գրում են, թե Պարսից էլտկուզ աթաբեկը արշավեց Շահի-Արմէնի վրա, որին օգնական հասավ Վիգէնը և երկուսով վռնդեցին էլտկուզին (Չամչ. Գ. 47—48), իսկ ուրիշներ՝ թե Վիգէնը հաղթվեց և հպատակվեց Շահի-Արմէնին (Տոմաշէկ, Սասուն, էջ 46) կամ էլտկուզ աթաբեկին՝ 1151 թ. (Մխ. այրիվ. 79)։ Մեռել է 1176 թ. ըստ Օրբ. ԺՄ. 19.—Վրդ. հբ։—սեռ.* Վիգենայ՝ *Վրդ. հբ, հր.—բց.* ի Վիրգենայ՝ *Մխ. այրիվ. 79.—Թորոս աղբ. Բ. 309—318. Հայապ. 391—396։— Իր նկարի մասին տե՛ս Ճանիկեան, Հնութ. Ակնայ 77։*

*Վիգէնի կինն է Մելեքսեթի. երկուսն էլ հիշատակված են իրենց բարեպաշտությամբ, ժողովրդասիրությամբ և շինարարությամբ։ Իր շինած վանքերի մեջ նշանավոր է ինը խորանով Վանդիր վանքը.—Թորոս աղբ. Բ. 309—318։*

*ՎԵԳԵՆԱՑ, սիրելին էր Բախշայիշի (տե՛ս այս անունը № 1), որ ապրում էր սրիկայությամբ. Վեգենան խրատում էր նրան, որից զայրացած՝ Բախշայիշը սրով սպանեց նրան (1395—1438 թվերի միջև).—Մեծոփ. 113։*

*ՎԵԳԻՆ, տանուտեր Արծկէի. գրել տվեց Ոսկեփորիկ Տօնական՝ Արծկէ 1465 թ.—Սարգիսեան, Քննադ. Մանդ. 56։*

*ՎԵԳԷՆ ստացող. Արծկէում գրել տվեց Ճառընտիրը՝ Ղազար քահանային, 1465 թ.—* Tübingen, *էջ 4։*

* *ՎԻԺԱՆ, ար. <պհլ.* vēžan *անունից, որ է պրս.* Bīžan, *արաբ.* Vījan, *թրք.* Bijen, *վրաց.* Bežan, *հմմտ.* Wēžan, *որդի Գիվի, իրանցի քաջ, հայր Արտաշիրի, ամուսին* Manēža-*ի (Շահն. հտ. 3, էջ 231).* — Bīžan *որդի Գոդարզի, թագավոր Պարթևաց։—*

Bēžan *խաքան Թուրքերի և Չինու.*—Բեճան բէկ՝ *կառավարիչ Թաւրիզի (Ջքր. սարկ. Բ. 43)։* Bījan *անունով երկու գրող կամ քանդակող* (Justi *68ա).*— *Վրաց մեջ՝* Բեժան *որդի Վախտանգ Ե-ի,* Bežan *իշխան Մինգրելիոյ և այլն* (Justi *367)։ Հայերենի մեջ հնագույն ձևն է* Վիժան, *որ ծագել է պահլավականից. ավելի նոր է* Բեջան *(փոխառյալ Թուրքականից), որից ունենք* Բեջանեան *ազգանունը. ամենանորն է* Բեժան *(վրացականից), որ գտնում ենք* Բեժանեան *ազգանվան մեջ.* Justi *էջ 367 բառիս ծագումը չի տալիս, իսկ 68 ա մեկնում է «քաջ», որ չգիտե ԳԴ։*

— Վիժան, *որդի Վարազտիրոցի, հիշվում է իբր վկա Տաթևի 844 թ. կալվածագրում.—սեռ.* Վիժանայ՝ *Օրբ. լը։*

— Բէժան, *հիշված է 1661 թ. (Սմբատեանց, Երնջակ 287),* Բեջան *1741 թ.։*

*ՎԻԾ կամ ՏԱՄԱ ՎԻԾԻ, Ներսէս Լամբրոնացու եղբոր՝ Հեթումի աղջիկն էր, քույր Կոստանդին Լամբրոնացու և առաջին կին Կոստանդինի (+1263) թագավորահոր, մայր Հեթում Ա թագավորի և Սմբատ Գունդստապլի.—Սիսուան 72 բ, 76 ա։—Կոչվում է նաև Ալիծ (№ 3) որ տե՛ս վերը։*

* *ՎԻԿՏՈՐ, ար. <լտ.* Victor, *որ և ֆրանս. անգլ. գերմ.* Victor, *ռուս.* Виктор. *բուն նշանակում է «յաղթական»։ Նորամուտ անուն։*

* *ՎԻԿՏՈՐԻԱ, իգ. <լտ.* Victoria, *որ և գերմ. անգլ.* Victoria, *ֆրանս.* victoire, *ռուս.* Виктория. *բուն նշանակում է «յաղթութիւն»։ Նորամուտ անուն։ Պլ.* Վիքթօրիա, *որի գգվականն է* Վիքթօրիցա *(Հաճեան, Բերայի գիշերներ, Պոլիս 1885, էջ 14)։*

* *ՎԻՋԷՆ, տե՛ս* Վիգէն:

*ՎԻՍԷՆ, տե՛ս* Վիգէն:

+ *ՎԻՇԱՊ, ար. <հյ.* վիշապ *բառից. անսովոր անուն, որ պետք չէ շփոթել* Վիրապ *անվան հետ։*

— Վիշապ, *հայր Յակոբ Երևանցու, որ ստացավ մի Աւետարան և նվիրեց Երևանի եկեղեցուն, Լենկթիմուրի արշավանքի ժամանակ։ Այս Աւետարանը կոչվում էր* Վիշապենց. *բայց պետք է հասկանալ* Վիշապենց, *հանուն վերոհիշյալ* Վիշապի, *որ ձեռագրում հիշված է թե՛ Վիշապ և թե՛ Ուշապ ձևով (Ձեռ. Երևանի Ձեռագրատուն. № 4060).—Շահազիզ, Հին Երևանը, 73, 203։*

*ՎԻՇԵԼ պարոն, վերակացու Նորագեղոյ (Արարատեան գավառ), 1465 թ.—Նոտարք 221։*

+ *ՎԻՐԱՊ, ար. <հյ.* վիրապ *բառից, այն է Խոր-Վիրապի վանքը, ուր բանտարկվել է Գրիգոր Լուսաւորիչը։ Գործածական է*

Կովկասում և սրանից էլ կա Վիրապեան ազգանունը։ Հնագույն հիշատակություններն են՝ Վիրապիկ (ԺԵ դար) Ձեռ. էջմ. № 945 և Վիրապ 1733 թ. (Ջամբռ 287)։

— Վիրապար, հանգուցյալ որդի Խերադինի, որոնց հիշատակին Աղիզ տիկինը (կին Խերադինի), Եղիվարդի վանքում մի Աւետարան գրել տվեց 1465 թ.—Նոտարք 221։

— Վիրապիկ, տանուտեր Սերկևիլ գյուղի (Արարատեան գավառ), 1441 թ.—Հրտ. Ազգթ. 1909 թ. յուշ. էջ խԹ։

+ ՎԻՐԱՊՇԱՀ, ար. կազմված է նույն Վիրապ անունից + պրս. šāh «թագավոր». տե՛ս Ջիրապշահ, որ պետք է համարել նույնի սխալ գրությունը։

— 1. Վիրապշահ, նվիրատու Կեչառու վանքի 1272 թ.—Այրարատ, 262 բ (Արձ.)։

— 2. Վիրապշահ, հայր Թումա քահանայի, որ Սյունիքում արտագրեց Աւետարանը 1315 թ.—Շողակաթ 210։

+ ՎԻՐԱՊՏՈՒՐ, ար. <հյ. Վիրապ վանքի անունից + տուր, իբր «Վիրապ վանքի տվածը», «Խոր-Վիրապի ուխտական զավակ». հմմտ. Աստուածատուր, Քրիստոսատուր, Խաչատուր, Տիրատուր և մանավանդ Գրիգորատուր, որ նույնի համազորն է։

— Վիրապտուր, որդի Բայրամի՝ ամուսնոյ Ջահվիլի, որ Մուղնիում գրել տվեց մի Ճաշոց Մկրտիչ երեցին 1484 թ.—Ձեռ. Սանաս. 25 ա։

* ՎԻՐՈՅ, ար. <պրս. Vīrōi անունից (Հիւբշ. 509). հմմտ. Wīrō պալատական Մովսես արքայի, Wīrō եղբայր Վիսի. կրճատված է Vīrāspa անունից, որ բուն նշանակում է «քաջաձի» (Justi 371 ա)։ Հմմտ. նաև Բերոյ, որ նույն անվան ավելի նոր ձևն է։

— 1. Վիրոյ կամ Վրոյ, որդի Արտաշէս Բ-ի, թագավոր Վրաց.—Պատմ. վր. գ. տե՛ս և Մխ. այրիվ. 22։

— 2. Վիրոյ, կաթողիկոս Աղուանից՝ 596—629 թթ. հաջորդեց Աբասին. 25 տարի բանտարկված մնաց Պարսկաստանում. Կաւատի գահակալության ժամանակ արձակվելով՝ դարձավ աթոռը, Խազրաց արշավանքի ժամանակ ներկայացավ Շաթ արքայորդուն և հանեցրեց նրան՝ դադարեցնել ասպատակությունը.—Կղկնտ. Բ. ժդ, ժե, Գ. իդ. Կիր. 30, ը. Մխ. այրիվ. 24, 65. Հայապ. 384.—սեռ. Վիրոյի՝ Կղկնտ. Բ. ժգ.—Վերոյի՝ Հրար. Սամ. անեց. 286.—բց. ի Վիրոյէ՝ Կղկնտ. Բ. ժէ։

* ՎԼԱՍԻՈՍ, ար. <լտ. Blasius անունից, ֆրանս. Blaise (Աւ-

գեր. Լիակ. վրք. սրբ. Ա. 403 այս անունը մեկնում է հուն. Βλασ-τός «բողբոջ» բառից)։ Անսովոր անուն է մեր մեջ. ունենք միայն՝

— Վլասիոս (ֆրանս. St. Blaise), Սեբաստացի հայ բժիշկ. եղավ եպիսկոպոս Կապադովկիոյ. Լիկիանոս կայսեր օրով Կապադովկիոյ կառավարիչ Ագրիկոլան նահատակեց նրան 316 թ. փետր. 3. Հռովմեական եկեղեցին իր սրբերի կարգն է անցկացրել նրան և տոնում է նույն օրը. մտել է և Յայսմաւուրքի մեջ. գերեզմանը գտնվում է Սեբաստիա. ընդարձակ վկայաբանությունը տե՛ս Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Ա. 386—410. Կոչնակ 1932, էջ 817, 958 և 1054—1055։

— Վիլաս, ար. 1634.—Ձեռ. Վաստ. 886։

— Վլաս, եպիսկոպոս, առաջնորդ Շամախու և Շիրվանի. կոչված է վարդապետաց վարդապետ. հիշված է 1671 թ. (Բարխուդ. Պատմ. Աղուանից, էջ 220). Այրարատից բերել տվեց մեծ ծախսով Յայսմաւուրքը և Ղազար սարկավագին արտագրել տվեց Գանձակի Քարահատ գյուղում 1691 թ. (Աթան. յուշ. ժը)։

— Վլաս, վարդապետ ոմն, ստացող. հիշված է 1688 թ.— Tübingen, էջ 77։

— Հիշատակված կան մեր մեջ Վլաս ոմն 1568 թ. (Ձեռ. Վաստ. 668), 1651 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 734), 1668 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 296)։

* ՎՆԴՈՅ, ար. <պրս. Bindōi անունից, որ փաղաքշականն է հպրս. Vindafarnah- կամ նման մի ուրիշ անվան։ Վերջին անունով հայտնի են Դարեհ Ա-ի ազգականներից մեկը, մի մար զորավար Դարեհ Ա-ի. տառադարձված է հուն... αμέρνης, բուն նշանակում է «փառք...» (Bartholomae 1442)։ Պրս. Bindōi (Հիւբշ. 85) ձևով էլ հայտնի է, որ. մի իշխան պարսիկ, որ կուրացրեց Որմիզդ թագավորին (Շահն. հտ. 6, էջ 565). տես և վերը Բուն...ք անունը և հմմտ. Justi 369 բ։

— Վնդոյ, պարսիկ, ավագ նախարար Դուինեցի, որ ուրացյալ Շաւասպի հետ շինեց ատրուշան Դուինում և իր Շերոյ որդուն քրմապետ կարգեց. Քաջն Վարդան Մամիկոնեան այրեց Վնդոյին նույն ատրուշանում, իսկ Շերոյին կախեց «450 թ.».—Յհ. կթ. ժե. Վրդ. իէ. Զուղ. 45.—Վճռոյ՝ Նհպտք. 92.—սեռ. Վնդոյի՝ Վրդ. իէ։ (Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Բ. 302 համարում է հայ. բայց այդ ճիշտ չէ. պարսիկ մարզպան լինելու մասին ավելի մանրամասն տե՛ս Արծր. Բ. ա)։

ՎՆՈՒՆ, տե՛ս ՎՐՈՅՐ։

* ՎՇՆԱՍՊ, ար. <պհլ. Višnasp, պրս. Gušnasp, Gušasp անունն է. բուն նշ. «արու ձի, յովատակ». հմմտ. սանս. vršanagva- (Justi 354)։ Հայերը այս անունով հասկանում էին Պարսից սրբազան կրակներից մեկը։ Սրանով են կազմված մի խումբ իրանական անուններ. ինչպես Ատրվշնասպ, Միհրվշնասպ, Յզդատվշնասպ, Նիխոր Վշնասպդատ, Վարդան-Վշնասպ, Վշնասպ-Վահրամ, Bahrāmgušnasp, Māhgušnasp, Aspaδ-Gušnasp: Հայերի մեջ այս անունը չէ գործածված. ունենք միայն Գադ-Վշնասպ աղուան, որ տես (Հիւբշ. 85), իսկ հայերից՝

—Վշնասպ, հրամանատար Բողբերդի ի Բասեն, 483 թ.—Ջամչ. Բ. 189։

\+ ՎՇՏՈՒՀԻ, իգ. <հյ. վիշտ բառից՝ -ուհի մասնիկով, փաղաքշական ձևով Վշտիկ. նորակերտ անուն, ջարդերի ու կոտորածների ժամանակ շինված ու գործածված։

* ՎՈՆՈՆ, ար. <իրան. անուն. հմմտ. Vonones թագավոր Մարաց (Justi 376 ա). տառադարձված է Ουωνης՝ Պարթևաց Վոնոն թագավորի դրամի վրա։ Այս անունը Justi 368 բ կցում է պրս. Vin անվան. հմմտ. Վին, զորավար Շապուհ Բ-ի (Բուզ.)։

— Վոնոն, թագավոր Հայոց. Պարթևաց Հրահատ թագավորի որդին էր. գնացել էր Հռոմ պատանդ. նշանակվեց Պարթևաց թագավոր, բայց իբրև հռոմեասեր վտարվելով իր գահից, փախավ Հայաստան և Հայոց գահը բարձրացավ («14 թ.»). սակայն այստեղ էլ չկարողանալով մնալ, փախավ Ասորիք («16 թ.»). արգելվեց Կիլիկիայում, որտեղից փախուստ տվեց՝ նորից Հայաստանում թագավորելու համար։ Սակայն փախչելու ժամանակ սպանվեց («19 թ.»)։ Իրեն հաջորդեց Զենոն.—Գրգշ. Քնն. պտմ. Բ. 193, Լէօ, Հայոց պատմ. Ա. 452, Justi 376 ա։

ՎՈՐՈԹ, ար. (Justi 133 բ կցում է Orodes անվան և համարում է զնդ. hu-raoδa «լավ աճած»)։ Մեր մեջ մի անգամ հիշված ունենք՝

— Վորոթ, իշխան Վանանդ գավառի, ուղեկից եղավ Յուսիկ Ա կաթողիկոսին՝ Կեսարիա օծման գնալու ժամանակ «341 թ.».—Բուզ. Գ. ժբ։

ՎՈՒՇ, ար. կասկածելի ընթերցվածով. եթե ուղիղ է, կարող է լինել հյ. վուշ բառանունը։

— Վուշ, հիշված է իր կանգնեցրած անթվական մի խաչքարի վրա, Ծլլուչայ գյուղատեղում.—Սմբատեանց, Գեղարք. 293։

* ՎՌԱՄ, *ար.* <*իր.* Bahrām *անունն է (տես* Վահագն*). այնպես որ ինչ որ Պարսից մեջ* Bahrām *է, Հայոց մեջ կոչվում է* Վռամ. *օր. Վռամ Կրման=պրս.* Bahrām Kermān–Šāh *թագավոր Պարսից,* Վռամ=Bahrām Gōr *որդի Յազկերտի, որդւոյ Շապուհի. այսպես նաև* Վռամական *կրակ=պհլ.* ātaš-i Vahrāmān, ātaš-i-Vahrām *(Հիւբշ. 78)։*

*— 1.* Վռամ *մեծ իշխան. այսպես է կոչում Զամչ. Ա. 518 Վասակ Արծրունուն, որ հայրն էր Աղան Արծրունու, Ջուփկի և Անուշվռամի։*

*— 2.* Վռամ, *նախարար Սիւնեաց, հաջորդեց Գդիհոնին.—Օրբ. ժգ (487—494 թթ. ըստ* Justi *362 բ)։*

*— 3.* Վռամ, *տեր Գողթնեաց, ժամանակցեց Սմբատ Վրկան մարզպանի պատերազմին՝ ընդդեմ Քուշանաց «608 թ.».—Սեբ. ժը։*

* ՎՌԱՄՇԱՊՈՒՀ, *ար.* <*իրան.* Վռամ+Շապուհ *անուններից։ Այժմ քիչ գործածական. կրճատ ձևն է* Վռամ:

— Վռամշապուհ, *թագավոր Հայոց, եղբայր և հաջորդ Խոսրով Գ-ի. նստեց «389—414 թթ.». խաղաղությամբ կառավարեց երկիրը. իր ժամանակ եղավ հայ գրականության սկիզբն ու փայլուն դարը՝ ձեռամբ Մեսրոպ Մաշտոցի և Սահակ կաթուղիկոսի, որոնց ձեռնըտու էր նաև Վռամշապուհը.—Կոր. էջ 8. Փարպ. թ—ժա. Սուտ Սեբ. Բ. 18. Սեբ. յոչ. Խոր. Գ. ծ, ծա. Փ. Կոր. 11. Շիր. քրոն. 57. Եղն. երեց 267. Կղկնտ. Բ. գ. ՅՀ. կթ. ժդ. Ասող. Բ. ա. Մխ. այրիվ. 19. Մխ. անեց. գ, իդ. Շնորհ. Վիպ. 946. Սամ. անեց. 68, 70. Յայսմ. նոյ. 25. Կիր. 14, 17. ՆՀպտք. 91. Մին. համդ. 26. Վրդ. իդ, իզ. Ջուղ. 43, 44.—սեռ.* Վռամշապհոյ՝ *Կոր. 9, 11. Փարպ. ժ—ժբ. Խոր. Գ. ծ—ծբ, ծդ, ծե, ծը. Փ. Կոր. 9. Եղն. եր. 267. Պտմ. սահ. 7, 29, 31. ՅՀ. կթ. ժդ. Կղկնտ. Ա. գ. Միխ. աս. իթ (=իը). Պտճռ. Բրձր. 29, 30 (նաև* -պհոյ*). Ասող. Բ. ա. Սասն. 52. ՆՀպտք. 91. Սիմ. ապար. 34. Վրդ. իզ. Մին. համդ. 27.—*Վռամշապուհոյ՝ *Կիր. 15.—Կոչված է նաև* Ստահրաշապուհ *(տե՛ս անդ),* Վաղարշ՝ *Արծր. Ա. ժա (անշուշտ սխալմամբ. իսկ Ազգապ. 263 ասում է, թե նախապես կոչվում էր* Վաղարշ. *և երբ Վռամ Դ թագավորեցրեց նրան, իր և իր հոր անունը միացնելով տվեց նրան, փոխելով բուն անունը).—Յայսմ. սեպտ. 9 շփոթված է* Վեհմիհրշապուհի *հետ, որին անվանում է «Վռամշապուհ թագավոր»։*

*ՎՌԱՆԴ, ար. գործածված է մեկ անգամ՝*

— Վռանդ, *եղբայր Վարդ սարկավագի, որ ստացավ մի Հաւաքածու (նախքան 1420 թ.).—Տաշեան, Ցուց. 666 բ։*

ՎՌԻԹԱՅ, *ար. ծագումն անհայտ. հիշված է այս անուն ումն անհայտ թվականով. հավանորեն ԺԳ/ԺԴ դար, Շողակաթ 214։*

* ՎՍՏԱՄ, *ար.* <*պհլ.* Vistahm *կամ* Vistaxm (ZDMG *19, 482) անունից, որ է պրս.* Bistahm=Gustahm, *մորեղբայր Խոսրով Փարվիզ թագավորի (Շահն. հտ. 7, էջ 78). երկուսն էլ ենթադրում են հպրս.* *vistaxma *(Հիւբշ. 85), տառադարձված լտ.* Bostam *(Շահն. հտ. 7, էջ* IX*),* ʽYστaιxμας *զորավար պարսիկ,* Gustaham *իշխան՝ Յազկերտ Ա-ի օրով. արաբ.* Bistām *(Տաբարի), բուն նշ. «մեծ զորություն ունեցող, մեծազոր»* (Justi *372 ա):*

— *1.* Վստամ, *տեր Ապահունեաց. ժամանակակից Բաբկէն («490—516 թթ.») կաթողիկոսի.—Ստորագրում է այն թղթին, որ գրեց Բաբկէնը Պարսկաստանի ուղղափառներին.—Գիրք թղ. ը։*

— *2.* Վստամ *սեպուհ Վահեունի. մասնակցեց Սամուէլ Վահեւնու ապստամբության Մօրիկ կայսեր (582—602 թթ.) դեմ, բայց պատերազմի ժամանակ սպանվեց.—Սեբ. է։*

— *3.* Վստամ *Ապահունի, մասնակցեց Սմբատ Վրկան մարզպանի պատերազմին Քուշանների դեմ «608 թ.».—Սեբ. ժը։*

ՎՍՏԱՄԿԱՐ, *ար. սխալմամբ առաջացած անուն է, իբր նահապետ Հայկազն, հաջորդ Նորայրի.—Խոր. Ա. ժթ։—Խորենացու ձեռագրերը ունին այսպես. իսկ ՑՀ. կթ. Բ, Մագ. թղ. ժթ, Մխ. անեց. Գ. Կղկնտ. Ա. ժե, Սամ. անեց. 45, Շիր. քրոն. 31, Մխ. այրիվ. 18, 50, Մին. համդ. 9, Վրաց աղբ. Ե. 74 դնում են առանձին-առանձին* Վստամ *և* Կար *(իբր երկու անուն). Մագ. թղ. ժթ ստուգաբանությամբ հանդերձ գրում է «Ո՛ւր* Վստամ. *սա մեծարու զօրացն Վեհստամ կոչեցաւ. ո՛ւր* Կար՝ *իբրու կարող բոլորին»։—Իսկ Վրդ. է գրում է* Վստամ, Կարգռակ, *որ հաստատում է բաժանյալ ձևը։ Բայց որովհետև Խորենացին իր ժամանակագրական ցանկերում՝ մեկ երբայեցի իշխողի դեմ դնում է մեկ քաղդեացի և մեկ հայկազն նահապետ, և այստեղ էլ միայն մեկ մեկ անուն կա, ուստի պետք էր կարծել, թե* Վստամկար *էլ մեկ անուն է։ Նորայր, Հյկ. բառաք. էջ 11 ուղիղը համարում է* Վստամ *և* Կար, *որոնք և ստուգաբանելի են։ Այսպես նաև Չամչ. Ա. 84, որ դնում է* Վստամ *Ն. Ք. 1302 թ.* Կար՝ *1289 թ.։*

ՎՐԱՑՏԻԿԻՆ, *կին Հայրապետ քահանայի և մայր Գրիգորիս գրչի, որ Մարմանց գյուղում օրինակեց Աւետարանը, 1336 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 25 բ։*

ՎՐԴՈՅ, *տե՛ս* ՋՐՈՆ։

* ՎՐԷՆ, ար. <իրան. —ēn մասնիկով կազմված փաղաքշական անուն, որի համապատասխանն է Վրիկ (Հիւբշ. 90)։ Արմատը պիտի լինի vir, «այր, մարդ». հմմտ. հյ. Այրուկ անունը։

— 1. Վրէն, իշխան Գողթան, Մեծն Ներսէսի ուղեկիցներից էր, երբ նա գնում էր Կեսարիա կաթողիկոս ձեռնադրվելու «353 թ.».—Մեսր. եր. 25։

— 2. Վրէն Ջիւնական, մասնակցեց Արտաշատի ժողովին՝ պատասխանելու համար Միհրներսեհի նամակին «449 թ.».—Փարպ. իգ։

— 3. Վրէն Տաշրացի. մասնակցեց Վարդանանց պատերազմին (451 թ.). այլ նախարարների հետ բանտարկվեց Պարսկաստանում և 12 տարի հետո արձակվելով՝ վերադարձավ Հայաստան.—Փարպ. խբ, խէ. Եղիշ. 77, 150. Յայսմ. օգ. 7։

— 4. Վրէն, սեպուհ Վանանդացի. կուսակից Վահան Մամիկոնեանի. մասնակցեց Ներսեհապատի պատերազմին («482 թ.»). ուղարկվեց Պարսկաստան՝ Զարեհի ապստամբությունը ճնշելու համար «484 թ.».—Փարպ. հա, ղդ.—սեռ. Վրենայ՝ Փարպ. ղդ.—գրծ. Վրենաւ՝ Փարպ. հա։

ՎՐԹԱՆԷՍ, ար. այս անվան հետ հմմտ. վրաց Ort'ane (նախաձայնի համար հմմտ. Վախճան >վրաց. oxčan), տե՛ս Լ. Մելիքսեթ-Բէկ[եան], Բանբեր 1921—1922 թթ. էջ 96 ծան.։

— 1. Վրթանէս կաթողիկոս Հայոց. Լուսաւորչի անդրանիկ որդին էր, ծնվել է Կեսարիայում՝ «262 թ.». Հայաստան եկավ «310 թ.». իր կրտսեր եղբոր՝ Արիստակէսի մահից հետո ընտրվեց կաթողիկոս և նստավ «333—341 թթ.». ժամանակակից և գործակից Խոսրով Բ-ին՝ նրա քաղաքական գործերում։ 339 թ. երբ Խոսրովը մեռավ և պարսիկները արշավեցին Հայաստան, Վրթանէսը առավ նրա որդի Տիրանին և տանելով Պոլիս՝ թագավորեցրեց Հայոց։ Աշտիշատում իր վրա մահափորձ կատարվեց, բայց անվնաս մնաց։ Մեռավ Տիրանի ժամանակ և թաղվեց Թորդանում.—Ագաթ. § 859, 861. Արաբ. Ագաթ. 73, 74. Բուզ. Գ գ—ե, է, ժա. Զեն. 22. Խոր. Բ. ղա. Գ. բ, դ, ե. Կղկնտ. Ա. ժդ. Յհ. կթ. ժ, ժա. Արծր. Ա. ժ. Ասող. Բ. ա. Մեսր. եր. 11. Միխ. աս. իթ (=իը). Մխ. անեց. դ. Շար. կէ, էջ 467. Կիր. 9, 10. Վրդ. ժէ, ի, իբ. Վրդն. լս. 47. Ներբ. յորդ. 4, 9, 16, 32, 40. Մխ. այրիվ. 20. Օրբ. հա. Յհ. կթ. հյր. 273. Սամ. անեց. 65, 66. Եզն. երեց. 266, 268. Քհնպ. 270. Տաթև. Յմ. ղզ. Մեծոփ. յիշ. գ. Մ. Մաշտ. 331 ա. Յայսմ. նոյ. 18, դեկ. 1, 15.—սեռ. Վրթանեսի՝ Բուզ. Գ. ե, Խոր. Գ. ե, ժ, խթ. Եզն.

եր. 266. Կղկնտ. Ա. ժդ. 3Հ. կթ. Հյր. 273. ՔՀնպ. 270. Մեսր. եր. 11, 14, 19. Պտմ. Ներս. 5. Պտմ. յյտ. Ներս. 46. Ասող. Բ. ա. Արծր. Դ. ժբ. Շնորհ. Վիպ. 731. Ներբ. յորդ. 19. Սամ. անեց. 66. Լմբ. մատ. 218. Թղթ. դաշ. 29. Մ. Մաշտ. 336 ա. Ճշ. 572. Պարգ. 547, 564, 690. Վրդն. լս. 44. Ագաթ. 398. Կիր. 10. Տաթև. 3մ. ծ.— Վրթանայ, ի Վրթանայ՝ Բուզ. յոչ. Գ. գ, ե, զ, ժա, ժբ. Դ. գ. Խոր. Գ. գ, է, ժա, ի. Ասող. Բ. ա. Վկ. շուշ. 49. Արծր. Գ. ժ. Սամ. անեց. 65. Շնորհ. վիպ. 755, 761. Կիր. ը. 3այսմ. սեպ. 9, 30. նոյ. 19, դեկ. 1, մրտ. 6, յուլ. 30.—Վրթանեայ՝ Արծր. Ա. ժ.—Վարդանայ՝ Օրբ. կթ.—Ի Վրթանիսէ՝ Խոր. Գ. ժա. Անան. Խոստ. 5.—գրծ. Վրթանաւ՝ Բուզ. Գ. ը. Խոր. Գ. ժա։—Գրված է նաև Վրդանէս, Վրդանիսի.—Վրաց աղբ. Ա. 75 (գրում է Որթան), 77. Ուգեր. Լիակ. վրք. սրբ. Գ. 481։

— 2. Վրթանէս եպիսկոպոս, առաջնորդ Արտազի, հաջորդ Դանիէլի. նստավ 345—351? ըստ Զքր. եպս. 280, Արրտ. 1863 դեկտ. էջ 103 բ։

— 3. Վրթանէս եպիսկոպոսապետ Հայոց, թղթակցել և եկեղեցական կանոններ է ստացել Երուսաղէմի Մակար Ա պատրիարքից («314—334 թթ.»)։ Համարվում է Վրթանէս կաթողիկոսը, բայց թուղթը անվավեր է։—Գիրք թղ. ձթ։ Սեդրակեան, Հայ. եկ. պտկրյրգ. 310—320։—Ակինեան, Կիւրիոն կթղ. էջ 98. ծան. ասում է, թե այս թուղթը գրողն է Մակար Բ. պատրիարք Երուսաղէմի (565—572) առ Վրթանէս եպիսկոպոս Սիւնեաց (558—580 թթ.)։ Այս առթիվ մի ամբողջական ուսումնասիրություն ունի նույն Ակինեանը՝ Թուղթ Մակարայ Բ. Երուսաղէմի հայրապետի առ Վրթանէս եպիսկոպոսապետ Սիւնեաց յաղագս կարգաց եկեղեցւոյ, Վիեննա 1930, հատկապես էջ 45. Նույն թղթի թարգմանիչ է դնում Թովմաս (№ 8) վանական Պանտավանաց, էջ 48։ Թուղթը գրված է 563/4 թ. գրքի վերջում, էջ 111—126 դրված է թղթի քննական հրատարակությունը, ուր Վրթանէս անունը հիշված է էջ 115։

— 4. Վրթանէս եպիսկոպոս Սիւնեաց. աշակերտ Պետրոս Սիւնեաց եպիսկոպոսի։ Որովհետև Սիւնիք բաժանված էին հայերից, ուստի օծումն ստացավ Աղուանից Զաքարիա Բ (629—644 թթ.) կաթողիկոսից.—Կղկնտ. Բ. խը. Գ. իդ. Օրբ. իա, իգ, հա.—սեռ. Վրթանիսի՝ Օրբ. իա, իբ, իդ.—Օրբ. իդ ասում է, թե Վրթանէս եպիսկոպոս Սիւնեաց՝ 23 տարի նստավ ու մեռավ. հետո պատմում է Գրիգորի ու Քրիստափորի մասին և ապա ասում է, թէ Վրթանէս Քերթողը եղավ տեղապահ կաթողիկոսության։ Սրանից հետևում

է, թե երկու տարբեր անձեր են։ Ակինեան, Թուղթ Մակարայ, էջ 49 միացնում է վերինին և գահակալած է դնում 562—584 թթ.։

— 5. Վրթանէս վարդապետ. գնացել է Պոլիս՝ Գրիգորի հետ, քննելու Քաղկեդոնական խնդիրը, Մորիկ կայսեր (582—602 թթ.) ժամանակ. նզովելով վերադարձան.—Կիր. 28. Մխ. այրիվ. 64. Սամ. անեց. 76 (դնում է 589 թվին)։—Տե՛ս նաև Գրիգոր (№ 20) վարդապետ (Փափազեանց, Պատ. եկեղ. 307 նույն է դնում Վրթանէս Քերթողի հետ, որ տե՛ս վարը)։

— 6. Վրթանէս եպիսկոպոս Սիւնեաց (Զ դար).—սեռ. Վրթանէսի՝ Գիրք Թղ. ժը (թերևս հաջորդն է կամ Վրթանէս Քերթող)։

— 7. Վրթանէս Քերթող, վարդապետ, տեղանց նվիրակ և շարսաղար, որդի Քչկան. Մովսէս Բ Եղիվարդեցու մահից հետո եղավ տեղապահ կաթուղիկոսության և նստավ «604—607 թթ.».— Ունի թղթեր և Յաղագս պատկերամարտից գրվածքը (տպ. Դուրեան, Ուսումն. 299—308). Գիրք Թղ. իբ (իդ), իե, լա, լբ, լգ. Ուխտ. Բ. ը, ժ, ժա, ժէ, ժթ, ի, իդ, իե, լ, լդ, լե, լթ, խգ, խթ, ծբ. Կիր. 26. Անանուն ժմ. 13. Օրբ. իդ.—սեռ. Վրթանէսի՝ Վրթ. Քերթ. Պտկ. 299. Ուխտ. բ, ե, ժզ, ժէ, ժթ, իբ, խգ, լդ (ցանկը).—Վրթանիսի՝ Գիրք Թղ. իա, լ, լա, լզ, ծե. Ուխտ. Բ. ժզ, իբ (ցանկը). իդ—իե, իէ—իթ, լդ, լէ, լը, կ, կա. Կիր. 26. Անանուն ժմ. 13. ժմ. 946. Օրբ. իե.—բց. ի Վրթանիսէ՝ Գիրք Թղ. իզ, լդ, լե, լէ, խթ. Ուխտ. Բ. ժբ, ժզ, իա—իդ, իզ, իէ, խ, խբ, խգ, խզ, խթ, ծԲ, կա, կէ.— Ի Վրթանէսէ՝ Գիրք Թղ. խբ.—Ի Վրթանիսայ՝ Գիրք Թղ. լ, լդ, լե.— գրծ. Վրթանիսիւ՝ Ուխտ. Բ. լգ.—Պարզապես Շարսաղար՝ Գիրք Թղ. լԹ, խ, խզ, խէ. Ուխտ. բ, լգ, ծե, ծզ։ Ջարբ. Հին դպր. 465—469.— Վրաց աղբ. Ա. 79 (կոչում է Վորտանէս եպիսկոպոս Ստոլo)։— Ըստ ՆՀԲ (գրոց ցանկում, Ա. 19 բ) այս Վրթանէս Քերթողն ունի նաև «Համառօտ պատմութիւն ընտիր ոճով վասն շինութեան վկայարանի Հռիփսիմեանց ի Կոմիտասայ կաթողիկոսէ»։ Այս գրությունը, որ ծանոթ էր ՆՀԲ-ի հեղինակներին, դեռ չէ հայտնված։ Միաբանը գտել էր Էջմիածնի ձեռագրերի մեջ «Գիտ նշխարաց Հռիփսիմեանց», որ շուտով պիտի հրատարակեր (Շողակաթ 1913 թ., էջ 172), բայց լույս չէ տեսած (Ակինեան՝ ՀԱ 1937 թ., էջ 523)։

— 8. Վրթանէս վարդապետ, մասնակցեց հայ-հունական կրոնական վեճերին Շնորհալու ժամանակ 1170 թ.—Աղգապ. 1423. Ջամչ. Գ. 106։

— 9. Վրդանէս վարդապետ, գրիչ Աւետարանի, ուր թողել է նաև իր նկարը 1182 թ.—Արցախ 101։

— 10. Վրանէս եպիսկոպոս Ամարասի. Սարգիս եպիսկոպոսի հետ միասին ուխտի նկան Կեչառու վանքը և նվիրեցին 200 դահեկան, Մխիթար վանահօր ժամանակ, որ է 1188 թ.—Արձ. Այրարատ 261։

— 11. Վրանէս եպիսկոպոս Բջնոյ և Դունայ. 1195 թվականին օծեց Աղուանից Յովհաննէս կաթուղիկոսին (Կիր. գ, դ). մասնակցեց Զաքարէ սպասալարի կրոնական ժողովին, ի Լոռի՝ «1208 թ.»։

— 12. Վրանէս եպիսկոպոս Բջնիի Ս. Աստուածածին եկեղեցու, 1209 թ.—Արձ. Այրարատ 272։

— 13. Վրանէս (Տէր), շինել է Բջնիի առաջնորդարանը? 1211 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 324։

— 14. Վրանէս արքեպիսկոպոս, գրել տվեց մի օրինակ Դատաստանագիրք Մխիթար Գօշի՝ 1240 թ.—Ոսկեան, Մատ. քնն. էջ 156։

— 15. Վրդանէս եպիսկոպոս, շինող Գոշի վանուց 1241 թ. տե՛ս Սարգիս եպիսկոպոս։

— 16. Վրդանէս եպիսկոպոս, Սարգիս եպիսկոպոսի հետ միասին շինեցին Գոշայ վանքը, որ և պահովեցին ընդարձակ կալվածներ նվիրելով նրան՝ իրենց հայրենի սեփականութիւնից, 1241 թ.—Բարխուդ. Պատմ. Աղուանից Ա. 131։

— 17. Վրանէս Գառնեցի, հայր վաճառական սարկավագի (hierodiakonus) 1261 թ.—Justi 366 ա։

— 18. Վրանէս, գրիչ. օրինակել է Կանոնագիրքը 1285 թ. ձեռագիրը այժմ գտնվում է Վենետիկ, № 274 (տե՛ս Տաշեան, Վարդապ. Առաք. էջ 70)։

— 19. Վր(անէս), իր կնոջ Աղութի հետ 100 դեկան է նվիրել Հաղարծինի վանքին 1291 թ.—Խաղբակեանք 60։

— 20. Վրանէս, որդի Իշխանի, եղբայր Մկրտիչ կուսակրոն քահանայի, որ Կաֆայում գրել տվեց մի Աւետարան, 1344 թ.— Ջեռ. Սեբ.=ՀԱ 1926, 237։

— 21. Վարդանէս աբեղայ, որդի Համազասպի. Արծրունեաց գավառի Կոճերաց վանքում գրեց մի Ճանձարան, 1412 թ.—Manus. Brit. Mus. 120 բ։

— 22. Վարդանէս, երախտավոր Հայրապետ գրչի (նախքան 1420 թ.).—Տաշեան, Ցուց. 666 ա։

— 23. Վարդանէս, եղբորորդի տանուտէր Յովհաննէսի, որ Աղթամարում գրել տվեց մի Աւետարան 1436 թ.—Ջեռ. Վասպ. 373։

— 24. Վարդանէս, որդի Կարապետ ք...նայի և եղբայր Աստուածատուր քահանայի, որ Խլաթում օրինակեց Աւետարանը, 1443 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 19 ա։

— 25. Վրթանէս քահանայ, որդի Մուրատի, գրել տվեց մի Աւետարան Թովմա աբեղային, 1456 թ.—Ձեռ. Դաշեան Բ. 31 ա։

— 26. Վրթանէս, հորեղբայր Կիրակոս կրոնավորի, որ Եկեղեաց գավառի Կայիփոսի վանքում գրել տվեց մի Սաղմոս, 1470 թ.—Թորոս աղբ. Բ. 305։

— 27. Վարդանիս, որդի Փաշայի, որ Թովմա առաքյալի վանքում գրել տվեց մի Աւետարան, 1471 թ.—Ձեռ. Վասպ. 463—464։

— 28. Վրդանէս աբեղա, գրեց Զաքարայ աբեղայի Շարականի գնման հիշատակարանը, Երզնկա՞, 1487 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 27 բ։

— 29. Վրթանէս կրոնավոր, աշակերտ Ուրծեցի Խաչատուր քահանայի. միաբան անապատին Ուրծայ (Այրարատեան գավառ). գրիչ. ազգական Ադիլշահի, որ գրել տվեց նրան մի Յայսմաւուրք և նվիրեց Սակռաբերդի եկեղեցուն 1491 թ.—Այրարատ 443։ Նույն Վրթանէս գրիչը 1481 թվին գրել է մի Շարական.—Այրիվ. 16 բ. Աւգեր. Լիակ. վրք. սրբ. ԺԱ, էջ ՀԹ։

— 30. Վրթանէս եպիսկոպոս Օձոպեցի. Նախիջևան գավառի Օձոպի գյուղի Ս. Աստուածածին վանքի միաբան էր. խորագետ մարդ. էջմիածնի Յովհաննէս է և Սարգիս Գ կաթուղիկոսների խորհրդով՝ գողացավ Լուսավորչի Աջը Աղթամարից և բերավ էջմիածին (1477 թ.) այսպիսի հնարքով։ Նախ ծպտվեց իբր կաղ և տգետ մահտեսի, գնաց Աղթամար և վանքում ծառայության մտավ։ Իր աշալրջության պատճառով կարգվեց լուսարար և 7 տարի մնաց այդ պաշտոնում։ Մի անգամ հայ փերեզակներ իրեն ապրանք ծախելու համար Աղթամար եկան. Վրթանեսը Աջը կարեց մի չուղայեցի փերեզակի էշի համետի մեջ և ուղարկեց շտապ Ջուղա. որից հետո ինքն էլ փախչելով Ջուղա՝ Աջը տարավ էջմիածին։ Միաբանությունը կարգեց նրան մշտական աթոռակալ Կաթուղիկոսության։ Ծերության օրերին քաշվեց Օձոպի վանքը, ուր և մեռավ ու թաղվեց «1493 թ.».—Առաք. պատմ. 329—332, 337. Այրարատ 231. Աղգապ. 2191.—Ճյուղագրությունը և տապանագիրը տե՛ս Խաղբակեանք 248։

— 31. Վրթանէս սարկավագ, եղբա՞յր թե եղբորորդի Ազարիա

աբեղայի, որ Վայոց ձորի Եղեգիս քաղաքում գրել տվեց մի Ավետարան, 1495 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 586։

— 32. Վարդանէս աբեղա, եղբորորդի Աբրահամ վարդապետի, որ Վայոց Ձորի Եղեգիս ավանի Վերին Նորավանք ուխտում գրել տվեց մի Ավետարան, 1495 թ.—Ձեռ. Վասպ. 522։

— 33. Վրդանէս, եղբորորդի Աբրահամ աբեղայի, «դեռաբույս և կուսակրօն աբեղա», միաբան Բոլորաբերդի Սպիտակաւոր վանից 1495 թ.—Խաղբակեանք 238։

— 34. Վրթանէս տաղասաց, Երուսաղէմում ականատես լինելով Աստուածատուր Տիւրիկեցի քահանայի նահատակության (1496 թ.) ապրիլ 9 շաբաթ, գրեց նրա վրա մի տաղ, որ տպված է Ձեռ. Հալէպի Ա. 146 և 207։

— 35. Վարդանէս, որդի Մատթէոս քահանայի, որ Եղեգեաց անապատում Աստուածատուր գրչին գրել տուեց մի Աւետարան, 1496 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 7 բ։

— 36. Վրթանէս աբեղա Արևելցի, Արարատեան գաւառից. ծնողներն են Մկրտիչ և Նուպար, Երուսաղէմում, Տէր Աւագ քահանայի պատվերով օրինակեց Գանձարանը 1497 թ.։ (Սա կարծեմ նույն անձն է, որ հեղինակել է Աստուածատուր Տիւրիկցի Նահատակի տաղը և մուծել իր Գանձարանի մեջ).—Ձեռ. Հալէպի Ա. 150, 207։

— 37. Վրթանէս սարկավագ, Երզնկայի Մարտիրոս եպիսկոպոսի հետ միասին ճամփորդեցին Եւրոպա 1491—1497 թթ.—Ալիշան, Հայ-Վենետ. 195. ավելին տե՛ս Մարտիրոս № 151։

— 38. Վարդանիսին, 1552 թ.—Ձեռ. Վասպ. 654։

— 39. Վրթանէս Սոնկեցի, եպիսկոպոս Կաֆայի. տաղասաց. Այրարատեան գավառի Գիլան գյուղից էր. գաղթեց Սուչավա, ուր եղավ Հայոց եկեղեցու քահանա 1557 թ. այստեղից անցավ Կաֆա, ուր ականատես եղավ Պարոն Լույս Նահատակի վկայության (1567 թ.) և գրեց նրա վկայաբանությունը և երկու տաղ նրա մասին։ Կաֆայում նա վարդապետ և ապա եպիսկոպոս է ձեռնադրվել։ Իր աշակերտն է նաև Թումայ Կաֆացի տաղասացը։ Մեռած պիտի լինի 1570-ական թվերին։ Բացի վերոհիշյալ վկայաբանությունից, թողել է նաև 8 տաղ, որոնց բոլորի հավաքածուն, հեղինակի կենսագրությամբ հանդերձ, հրատարակեց Ակինեան, «Հինգ պանդուխտ տաղասացներ», Վիեննա 1921, էջ 3—53, Նոր վկ. 386—408։

— Ավելի ուշ հիշատակված է Վարդանէս 1575 թ. (Rapport Belgique 24)։

— 40. Վրթանէս Առնչեցի. 1570 թ.։

— 41. Վրթանէս տիրացու Պրուսացի. տաղասաց (ԺԸ դար).— Իր տաղերից տե՛ս Տաշեան, Ցուց. 1157 գ։

ՎՐԻԿ, ար. -իկ մասնիկով կազմված փաղաքշական անուն, որ համապատասխանում է Վրէն ձևին։

— Վրիկ, հարճորդի Պապի՝ որդւոյ Յուսիկ կաթուղիկոսի.— Բուզ. Գ. ժթ։

ՎՐԻՒ, ար. ծագումն անհայտ. հավանաբար իրանական. այժմ անգործածական. հնից հայտնի են միայն՝

— 1. Վրիւ մաղխազ Խոռխոռունի (խաղաղապետ). անդամ Շահապիվանի ժողովի («444 թ.») և Արտաշատի ժողովի («449 թ.»).—Փարպ. իգ.—Վրվայր՝ Այրարատ 519.—սեռ. Վրվայ՝ Կանոն. 59. Տաշեան, Ցուց. 653 ա։

— 2. Վրիւ ոմն, «անանուն ըստ ազգի», ասորու որդի (տե՛ս և Ասորի), որ Պարսից կողմից նշանակված էր գործակից Վահան Մամիկոնեանի՝ Ոսկեհատի վրա. ամբաստանեց Վահանին իբրև ապստամբ.—Փարպ. կե.—սեռ. Վրուայ՝ անդ.—Այս բառն է, որ աղավաղվելով դարձել է զՎըրշայ՝ Սիմ. ապար. 57։

— 3. Վրիւ յԱրտաշրան, իշխան. անդամ Դուինի Բ. ժողովի «554 թ.».—Գիրք Թղ. ժէ։

* ՎՐԿԷՆ, ար. <իրան *Vurken անունից, որի ավելի նոր վիճակն է ներկայացնում Գուրգէն=պրս. Gurgīn։ Երկուսն էլ փաղաքշական ձևեր են (Հիւբշ. 86, 90)։ Ավելին տե՛ս Գուրգէն։

— Վրկէն, նահապետ Հաբուժենից. ուղեկցեց Մեծն Ներսէսին դեսպանությամբ Վաղէս կայսեր մոտ գնալու ժամանակ «364 թ.».— Բուզ. Գ. ժա։

ՎՐՈՅՐ, ար. ծագումն անհայտ։ Այս անունով ունենք միայն՝

— Վրոյր, որդի Արտաշէս Բ (88—129 թթ.) թագավորի. հազարապետ պալատան. «այր իմաստուն և բանաստեղծ».—Խոր. Բ. ծգ. Զարբ. Հին դպր. 174.—Այս անունը գրված է զանազան ձևերով՝ Վրդոյն, Ջրոն, Վնոյն Վկ. ոսկ. 62։—Մինչեւսկ Արտաշէսին վերագրվում է երկու որդի. Վրոյն (իմա՛ Վրոյր) և Վնոյն (Ալիշան. Արշալ. քրիստ. 61. նույնպես և Ագեր. Լիակ. վրք. սրբ. 93 և 126)։ Նույն է նաև Վնուն՝ թագավոր Հայոց, շինել է Վարդանակերտը (ըստ «Այս են քաղաքք և շինողք նոցին» $ZAPh_1$, էջ 190).—Տե՛ս և Վիրոյ։

ՎՐՈՒԺ, *ար. ծագումն անհայտ, բայց անշուշտ իրանական. հնուց հայտնի է միայն՝*

— Վրուժ *Մամիկոնեան, որդի Արտաւազդի և Թոռն Վաչէ զօրավարի. Արշակ Բ-ի («350—368 թթ.») կողմից նշանակվեց հազարապետ Վասակ սպարապետի.—Մեսր. եր. 17։*

ՎՐՎԵՌ, *ար. ծագումն անհայտ։*

— Վրվեռ, *իշխան բարեպաշտ և աղքատասեր. իր կալվածների մեջ շինեց ճգնավորների մի մենաստան, ուր ինքն էլ շատ ժամանակ ճգնում էր. հետո դառնալով Թոնդրակեցի, հիմնեց Թոնդրակեցոց վանքը, որ կործանեց Սամուէլ եպիսկոպոս Եկեղեաց «1011 թ.».—Լաստ. իգ.—սեռ.* Վրվեռայ՝ *անդ.—Տե՛ս նաև Տաշեան, Ցուց. 358. Սարգիսեան, Ուս. Թոնդրակեց. աղանդին, էջ 77։ (Լաստ. ցանկում գրված է* Վռվէռ*)։*

# Տ

ՏԱԹԱԼԷ, *ար. 1578 թ. մի անգամ հիշված Կարապետ եպս.՝ Դոփեանք 188, որի դեմ Ձեռ. Վասպ. 11 ունի* Դաթալէ:

ՏԱԹԵՒԻԿ, *իգ. <Տաթև վանքի անունից. նորահնար, անսովոր անուն։*

* ՏԱԹԼՈՒ-ԲԱԲ, *ար. <Թրք.* طاتلو datlu *«քաղցր, անուշ»+* + بابا baba *«հայր» բառերից, իբր «հօր քաղցրիկ զավակը». հիշված է 1635 թ. (Այրարատ 179, Զքր. սարկ. Բ. 9)։*

* ՏԱԹԼՈՒ-ԲԷԳ, *ար. <Թրք.* datlu *«քաղցր»+*բէգ *բառերից. հիշված կա 1578 թ. (Սմբատեանց, Գեղարք. 610)։*

* ՏԱԼԱՍԻՈՍ, *ար.։ Այս անունով ունենք՝*

— Տալասիոս *երեց, Հռոմի Հայոց* Վերածնեալ *(լտ.* renati*) միաբանության վանքի վանահայրն էր. իր աբեղաների հետ ներկայացավ Լատերանեան ժողովին և ընդունեց նրա կանոնները (649 թ.).—Պալճեան 54, Ուղուրլեան՝ Պատմ. գաղթ. ի Լիվոռն. 221։*

* ՏԱԼԻԹԱ, *իգ. <արամ.* صليثا ṭalīθā *«աղջիկ» բառի հուն.* ταλιθὰ *տառադարձությունից, որ անցած է մեզ Մրկ. Ե. 41 «Տալի՛թա, կո՛ւմի, որ թարգմանի՝ Աղջիկ դու, քեզ ասեմ, արի» հատվածից։ Իբրև անձնանուն գործածվել է* XII—XV *դարերում. այժմ էլ սակավ գործածական է։*

— 1. Տալիթա, *դուստր Օշին Բ Սեբաստոսի և Շահանդխտոյ, քույր Հեթում Բ Սեբաստոսի և Ներսէս Լամբրոնացու. ծնվել է*

1153 թվից հետո. եղավ կրոնավորուհի.—գրծ. Տալիթային՝ Պատմ. կմբ. 234.—Տե՛ս և Տաշեան, Ցուց. 339, 638. Հայապ. 418։

— 2. Տալիթա, դուստր Ստեփանէի և քույր Լևոն Բ-ի (+1219 թ.). ամուսնացավ Bertrand de Gibelet-ի հետ.—Բասմաջեան, Լևոն Ե. 11, Սիսուան 45։

— 3. Տալիթա, կին Թորոս քահանայի Հռոմկլայու՝ եղբորորդւոյ Կոստանդին Ա կաթուղիկոսի. հիշված է 1256 թ. իսկ 1262 թվին արդեն վախճանված էր.—Նաթանեան, Տեղ. Սեբ. 84. Թորոս աղբ. Ա. 185, 188. Ջեռ. Հալէպի Բ. 140 ա. Ջեռ. Սեբ. (ՀԱ 1924, 330, 333)։

— 4. Տալիթա, բարեպաշտ կին. սատարող գրության Աւետարանի (1280—1320 թվերին).—Ջեռ. Թաւր. 27։

— 5. Տալիթայ, կին Կիրակոսի (№ 56), որ օգնեց Յովհաննէս գրչին օրինակելու համար Աւետարանը 1327 թ.—Ջեռ. Հալէպի Ա. 397։

— 6. Տալիթ, երեցկին Մկրտիչ քահանայի և մայր Գրիգորիս քահանայի, որ Երզնկայում օրինակեց մի մեծ Ճառընտիր՝ 1343 թ.—Ջեռ. Վեննա. Բ. 174։

— 7. Տալիթա, որ և Եղիսաբեթ, կին Աւետիսի և մայր Վարդան գրակապի, որ Արճէշում գրել տվեց Յովհաննէս քահանային մի Աւետարան 1450 թ.—Ջեռ. Թաւր. 66 բ։

ՏԱԼԻՓ, հորեղբայր Մխիթար քահանայի, որ Որոտանի Աղիտու վանքում գրեց մի Աւետարան, 1296 թ.—Սմբատեանց, Երնջակ 201։

ՏԱՂՏԱՆ, ար. ծագումն անորոշ. (թրք. داغدان daɣdan «սարից, ի լեռնէ» ձևից), մի անգամ հիշված է Արցախ 123, անհայտ թվականով։

ՏԱՃԱՏ, ար. ծագումն անհայտ. պատահական նմանություն ունի պրս. داشاد dāšād, որ և داشان dāšan «պարգև, նվեր»։

— 1. Տաճատ, Աշոցան ցեղից, ի զաւակէ Գուշարայ հայկազնոյ. Արտաշրի կոտորածից փախցրեց Արտաւազդ Մանդակունու քրոջը Կեսարիա և հետը ամուսնացավ։ Տրդատը կարգեց նրան իշխան Աշոցայ գավառի։ Ուղարկվեց Կեսարիա՝ Հայաստան բերելու Լուսավորչի երկու որդիներին՝ Արիստակէսին և Վրթանէսին (310 թ.).—Ագաթ. § 860. Արաբ. Ագաթ. 74 (հունաձև Տասատէս= ασάτης), Խոր. Բ. ձբ. Ուխտ. Ա. կ, կբ. Վրդ. խե. Վրդն. լս. 48.—սեռ. Տաճատայ՝ Խոր. Բ. հը։

— 2. Տաճատ, փեսա Արտաւանի, որ սպարապետն էր Տրդատ Թագավորի.—Ագաթ. § 121։

— 3. Տաճատ, *որդի Մեհենդակ Ռշտունու. մանկիկ էր, երբ ազատվեց Տիրան Բ-ի (339—358 թթ.) կոտորածից և Մամիկոնեանների մոտ մեծանալով՝ փեսայացավ նրանց.—Բուզ. Գ. ժը։*

— 4. Տաճատ, *եպիսկոպոս Աղձնեաց. մին այն երեք եպիսկոպոսներից, որոնք օծեցին Զունակին կաթուղիկոս՝ Ներսէսի փոխարեն, «359 թ.».—Մեսր. եր. 66։*

— 5. Տաճատ, *եպիսկոպոս Ամատունեաց. ժամանակակից Մեծն Ներսէսի «353—373 թթ.».—Այրարատ 196։*

— 6. Տաճատ *Անձևացի, ներկա էր Մեծն Ներսէսի մահվան «373 թ.».—Տաշեան, Ցուց. 802։*

— 7. Տաճատ, *եպիսկոպոս Տայոց. անդամ Արտաշատի ժողովի («449 թ.»).—Փարպ. իգ. Եղիշ. 22.—Նո՞ւյն է նաև Տաճատ եպիսկոպոս, անդամ Շահապիվանի ժողովի («444 թ.»).—Այրարատ 519. Հայապ. 159։*

— 8. Տաճատ *Ռշտունի, օգնական Քաջն Վարդանի. ձերբակալեցին Պարսից Վնդոյ մարզպանին՝ որին այրեցին և նրա որդի Շերոյին՝ որին կախեցին Դուինում «450 թ.».—Արծր. Բ. ա։*

— 9. Տաճատ *Գնթունի, մասնակցեց Վարդանանց պատերազմին՝ իբր օգնական Թաթուլ Վանանդեցու և նահատակվեց իր 19 զինվորներով «451 թ.».—Փարպ. լթ. Եղիշ. 77, 90, 93. Շար. ղբ. Յայսմ. օգ. 7։*

— 10. Տաճատ *Արծրունի, եղբայր Վասակ Արծրունու. Յազկերտ Բ-ի բանտարկած նախարարներից մին «452 թ.»։ Եղբորը՝ Վասակի հետ գնաց կայսեր ծառայության.—Փարպ. խէ. Եղիշ. 150. Արծր. Բ. բ.—սեռ.* Տաճատայ՝ *Փարպ. դ։*

— 11. Տաճատ, *եպիսկոպոս Արշամունեաց, ժամանակակից Բաբկեն կաթուղիկոսի («490—516 թթ.»). ստորագրում է այն թղթին, որ գրեցին Հայերը Պարսկաստանի ուղղափառներին.—Գիրք Թղ. ը (բց.* ի Տաճատայ*)։*

— 12. Տաճատ, *նախարար, պատերազմական արվեստին հմուտ մարդ, մեծամեծ քաջություններ գործեց Յուստինիանոս կայսեր ծառայության մեջ, որի վրա կայսրը փեսայացրեց իրեն՝ ամուսնացնելով նրան Թէոդորա թագուհու քրոջ՝ Կոմետոնէի հետ և նշանակեց Հունահայաստանի կուսակալ (533 թ.).—Ջամչ. Բ. 240։*

— 13. Տաճատ, *առաջնորդ Վարագայ վանքի, հաջորդեց Եղեմիային՝ շուրջ 740—760 թթ.—Հայապ. 232.—Նո՞ւյն է Տաճատ վանահայր Վարագայ վանքի, որ գրել է նույն վանքի 10 առաջնորդ-*

ների պատմությունը (Զեռ. Վենետ. Բ. 392, ուր հրատարակիչը՝ Հ. Բ. Սարգիսեան ուզում է միացնել Տաճատ Վարագացու հետ. սխալ է. առաջինը Ը դարից է, երկրորդը՝ Ժ դարից)։

— 14. Տաճատ Անձևացի, որդի Գրիգորի. մտավ Հունաց Կոստանդին կայսեր ծառայության. Բուլղարների դեմ պատերազմներում մեծամեծ քաջություններ գործեց. ուղարկվեց արաբների դեմ, որոնց շարաշար հաղթեց Կիլիկիայում («778 Թ.»). 22 տարի զորավարություն անելուց հետո՝ գժտվելով Իրինէ կայսրուհու հետ՝ անցավ արաբների կողմը (780 Թ.), որոնք ուրախությամբ ընդունեցին. իր առաջնորդությամբ արաբները մինչև Պոլիս հասան. հույները ծանր պայմաններով հաշտություն խնդրեցին («782 Թ.»). արաբները Տաճատին նշանակեցին պատրիկ Հայոց։ Մասնակցեց Դարբանդի պատերազմին, ուր խորշակահար եղավ («784 Թ.»).—Ղև. լէ, լԹ.—սեռ. Տաճատայ՝ Ղև. լԹ։ Գրված է հույն ձևով Τατζάτης (Justi 320 ա), որի վրայից արաբները կոչում են Տասսիտա, Տաթիտա, և մի կետի սխալով Նակիտա (տե՛ս Ղև. էջ 193 ծան.)։

— 15. Տաճատ Անձևացի. քաջ և անվանի մարդ էր, սիրելի Բաղդադի ամիրապետին. սրա մի որդին զորքով եկավ Անձևացեաց գավառի Շահաստան դաշտը և որս էր անում. Տաճատը գնաց նրա մոտ. Տաճատի զինվորներից մեկը սպանեց ամիրապետի որդուն, որի վրա զորքը ամեն ինչ թողեց ու փախավ Բաղդադ։ Այս լսելով Տաճատը վախեցավ և գնաց Հունաց կայսեր ծառայության։ Կայսրը նշանակեց նրան Տարսոնի կառավարիչ։ Հինգ տարի հետո պատերազմ ծագեց Արաբների և Հունաց միջև։ Բաղդադի ամիրայի մյուս որդին բանակի հրամանատարն էր, իսկ Հունաց զորքի զորավարն էր Տաճատը։ Արաբները հաղթվեցին ու փախան։ Տաճատը պատահեց ամիրապետի որդուն. վերցրեց իր հետ ու տարավ Անձևացեաց երկիրը։ Հետո ծպտեալ գնաց Բաղդադ՝ ամիրապետի մոտ, որ լսած լինելով, թե իր որդին պատերազմում մեռել է, մեծ սուգի մեջ էր։ Տաճատը հայտնեց գաղտնիքը և որդուն ներկայացրեց իր հորը։ Ամիրապետը շատ ուրախացավ և կարգեց Տաճատին Հայաստանի հարկահավաք։ Այս պաշտոնում մնաց 6 տարի։ Երբ սասունցիք սպանեցին Ապումեթին («851 Թ.»), ամիրապետը զորք ուղարկեց Սասուն, որպեսզի ապստամբներին պատժի։ Զորքի առաջնորդն եղավ Տաճատը, որի վրա զայրացած՝ Աշոտ Բագրատունին, Աշոտ Արծրունին և Սմբատ Տարօնեցին՝ սպանեցին Տաճատին։—Սոփ. Շապհ. 51—57.—սեռ. Տաճատայ՝ անդ 50—52, 54, 57։

— 16. Տաճատ, որդի Գուրգէն Արծրունու՝ տեառն Անձևացեաց. եղբայր Աշոտի (873 թ.).—Զարբ. Հին դպր. 531, ՀԱ 1937, 129։

— 17. Տաճատ, իշխան Բաբերդցի. միացավ Վարդան Վուղի հետ և ապստամբեց կայսեր դեմ. բայց հաղթվեց և անձնատուր եղավ. տարվեց Պոլիս և կուրացվեց (935 թ.).—Չամչ. Բ. 825։

— 18. Տաճատ վարդապետ Վարագացի, հայր Վարագայ վանքի. գրել է Աստուծոյ վկայաբանությունը և Պատասխանիք հարցմանց Թովմայի (Ժ դար).—Զարբ. Հին դպր. 569. Հայապ. 73. Ձեռ. Կարին. 79. Ձեռ. Վեննա. Բ. 199, 287—289 և 505։

— 19. Տաճատ, որդի Գանձի իշխանի. հաջորդեց հորը՝ 1036 թվին.—Ուռհ. 75։

— 20. Տաճատ Մամիկոնեան, իշխան Տարոնի. սրա որդին է Զորտուանէլ՝ հիշված 1104 թ.—Հայապ. 391, 396—7 (թվում է նույն նախորդի հետ)։ Ձեռ. Վեննա. Բ. 474։

— 21. Տաճատ, իշխան Տարոնի, որի որդին Ապլասաթ՝ էր Գող Վասլի զինակիցը (հիշված է «1108» թվին).—Տարօն. Բ. § 14.—սեռ. Տաճատայ՝ Ուռհ. 310։

ՏԱՃԱՏՈՒՐՀԻ, իգ. <Տաճատ անունից՝ -ուրհի (-ուհի) իգական մասնիկով։

— Տաճատուրհի՝ քույր Մերուժան Արծրունու և կին Վահան Մամիկոնեանի. ուրացության համար սպանվեց իր որդի Սամուէլի ձեռքով (370 թ.).—Խոր. Գ. խբ։—Տաճատուհի՝ Արծր. Ա. ժ, ժա։

ՏԱՄԱԼԱՅԺ, դուստր Բարսեղ երեցորդու, որ Հալէպում գնեց մի հին Ավետարան, 1323 թ.—Ձեռ. Կես. ածած. 64 բ։

* ՏԱՅՈՒՍ, իգ. <Թրք. طاوس tavus «սիրամարգ» բառից, որ փոխառյալ է արաբերենից։ Քիչ է գործածվել և շուտ է ջնջվել, որովհետև շփոթվում է թրք. deyus «կավատ» բառի հետ։

— 1. Տայուս խաթուն, կին Սրապի, Սեբաստացի (1350 թ.).—Տաշեան, Ցուց. 107 բ։

— 2. Տայուս, հիշված 1585 թ. (Ձեռ. Վասպ. 704)։

— 3. Տայուս խաթուն, դուստր Պօղոսի և քույր Վարդան կրոնավորի, որ ստացավ մի Շարակնոց (ԺԶ—ԺԷ դար).—Տաշեան, Ցուց. 530 բ։

ՏԱՅՐՈՆ, վանքեց Տեկորի, Յովհաննէս կաթողիկոսի ժամանակ. անթվ. Արձ.—Շողակաթ 171։

ՏԱՅԻՐ, տե՛ս ՀԱՍԱՆ։

* ՏԱՆԿՐԻ, ար. <ֆրանս. Tancrède անունից. այս անունով

հայտնի է սիկիլիացի մի իշխան, առաջին խաչակրության հերոսներից մեկը, որ մեռավ Անտիոքում՝ 1112 թ.։

— Տանկրի, պարոն և տեր Կապանի. ներկա եղավ Լևոն Բ-ի թագադրության հանդեսին («1199 թ.»).—Սմբ. պատմ. 111։

ՏԱՇՈՒՐԱԿ իշխան, իր կնոջ՝ Խորիշահի և իր եղբայր՝ Մոթիկանի հետ, բաշխել են Պասկոյդաստ գյուղի հարկերը՝ 1288 թ.—Սմբատեանց, Գեղարքունի (Արճ. Աղգիբիր գյուղում) 310։

ՏԱՍՈՒԽ (արդյոք սեռ. հոլո՞վ է). հիշված է 1511 թ.—Ջեռ. վենետ. Բ. 622։

ՏԱՏ? որից Տատեան ազգանունը (ամիրայական նշանավոր տոհմ Պոլսում). նույն ազգանունը Կովկասում գրվում է Դադեան ձևով. ուստի հայտնի չէ, թե ի՛նչ է բուն արմատը։ Կարող է լինել հյ. տատ «տատիկ, մեծ մայր» բառից, բայց և պրս. داد dād «արդարություն, իրավունք, դատ» բառից։

— Տատիկ, իգ. հիշված երկիցս 1683 թ.—Manus. Brit. mus. 36 ա։

* ՏԱՏԼԱՂԱՆ, իգ. <Թրք. طاتلو tatlu «քաղցր» + قان qan «արյուն» բառերից և նշ. «քաղցրարյուն». մի անգամ հիշված է 1549 թ. Կրպտ. եպս. Դոփեանք 99։

— Տատլուղան, իգ. հիշված 1549 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 499։

ՏԱՏԿՈՒՄ, իգ. հիշված 1689 թ.—Bodleian 163։

+ ՏԱՏՈՒՐ, ար. <հյ. Աստուածատուր անունից ձևափոխված։

— 1. Տատուր. անունը հիշված է 1350 թ. բայց հասկանալ Տիրատո՞ւր, թե Աստուր<Աստուածատուր.—Ջեռ. Վենետ. Բ. 348։

— 2. Տատուր, որդի Ոսկեհերի և եղբայր Գէորգ կրոնավորի, որ ստացավ Իգնատիոսի Մեկնութիւն Ղուկասու՝ 1363 թ.—Սմբատեանց, Երնջակ 228։

— 3. Դատուր, հորեղբայր Անդրէասի, որ գնեց մի հին Աւետարան, 1442 թ.—Ջեռ. Նոր-Բայազ. 17 բ։

— 4. Տատուր, 1619 թ.—Ջեռ. Սեբ.=ՀԱ 1925, 475։

— 5. Տատուր, 1619 թ.—Ջեռ. Հալէպի, Ա. 122։

— 6. Տատուր, գիներգու տաղասաց (ԺԷ դարի՞ց).—Ցուցիկք Բ. 126։

* ՏԱՐԱԳՈՍ, ար. <հուն. Ταραγός անունից. այս անունով հայտնի է Տարագոս վկա (Յայսմաւուրքում). այժմ կա Տարագրոս ձևով (շատ հազվագյուտ)։

ՏԱՐԱՅԽԱՆ, ար. հիշված 1638 թ.—Ջեռ. Նոր-Բայազ. 14 բ։

ՏԱՐԻԷԼ, ար. հիշված 1551 թ.—Матер. Арх. Кавк. *III*, *94*։

ՏԱՐՁԸՎՈՒՇ, անծանոթ անուն, որ հիշված է 1517 թ.—Ձեռ. Վեննա. Բ. 482։

ՏԱՐՈՒՆ կույս, դուստր խլաթի Սարուանդ կամ Յուստինոս պատրիկի. բնակվում էր Մարաղի լեռան վրա, որ իր անունով կոչվեց Ջարալ Տարոն. ունէր երկու փեսացու՝ Բակուր տեր Արզն ամրոցի և Մուշ իշխան Սասնոյ. ընտրեց երկրորդին (640 թ.).—Տոմաշէկ՝ Սասուն, էջ 23 ըստ Վակիդի արաբ պատմիչի.—Խալաթ. Արար. մատ. 5։

ՏԱՐՍԱՅԻՃ, ար. ծագումն ինձ անհայտ. բայց հայերեն չի հընչում։ Գործածական է XIII—XV դարերում և այժմ էլ դեռ կենդանի է Արցախում և Սյունիքում։

— 1. Տարսայիճ, իշխանաց իշխան, աթաբեկ Հայոց և Վրաց աշխարհի, որդի Լիպարիտ Օրբելեանց՝ իշխանի Սիւնեաց, եղբայր Սմբատի՝ որի հետ նորոգեց Տաթեւի վանքը. եղբոր մահից հետո ժառանգեց իշխանական աթոռը՝ «1273 թ.». կինն է Մինա խաթուն. ծնողներն են Ստեփաննոս Օրբելեան պատմագրի. մեռել է «1290 թ.».—Օրբ. կբ, կե, հ. Ձեռ. Սանաս. շար. (ՀԱ 1921, 180).—Ձեռ. Դաղեան Ա. 89 ա, Բ. 47 բ. Օրբ. ժմ. 28, 31.—տես. Տարսայիճի՝ Օրբ. ա, կդ, կե, կբ—հ.—Իր արձանագրությունը Քեթիվանքի հարավային սյան վրա 1274 թվից՝ տե՛ս Manus. Brit. mus. 294—295։

— 2. Տարսայիճ Օրբելեան, Սիսական գավառի իշխանական ընտանիքից, որդի Ջալալի. եղբայրներն են Աղբուղա, Շահնշահ և էլիկում. երկար ժամանակ սովորեց Եսայի Նչեցու մոտ, ստացավ քահանայական աստիճան և կոչվեց Ստեփաննոս. ապա եղավ արքեպիսկոպոս Սիւնեաց. ազգականն է Ստեփաննոս մետրոպոլիտի Օրբելեան պատմաբանի. Պօղոս վարդապետ Կիլիկեցի գրչին գրել տվեց մի գեղեցիկ Աւետարան, 1314 թ.—Ձեռ. Դաղեան, Բ. 29—30.—Հիշված է նաև 1331 թ.—Սմբատեանց, Երնջակ 151։

— 3. Տարսայիճ, իշխան Վայոց Ձորի (հիշված է 1315 թ.).—Հայապ. 526։

— 4. Տարսայիճ, իշխան Եղեգեաց, հավատը ուրացել էր, հետո դարձավ՝ Բուռթէլի, Սուրղաթմիշի, Սմբատի և այլոց հետ (շուրջ 1405 թ.).—Մեծոփ. 73։

— 5. Տարսայիճ, մեծ իշխան, որի որդին է Սմբատ իշխանաց իշխան և թոռն է Եղիշե արքեպիսկոպոս Վայոց Ձորի, 1495 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 585։

— 6. Տարսայիճ իշխան, որդի Գորգոնի, տեր Եղեգեաց (Սիւնեաց գավառի Եղեգնաձորոյ). բռնադատությամբ Թաւրիզի կուսակալ՝ Լէնկթիմուրի Թոռ Օմարի, ստիպվեց հավատափոխ լինել. բայց հետո դարձավ (ԺԵ դարի սկիզբը).—Մեծոփ. 68. Ջամչ. Գ. 443. Այրարատ 323. Ազգապ. 2035։

ՏԱԻՈՒՍԻՆ, գավա՞ռ թե իշխան Աղուանից, որին Բաբան պարսիկը «եհար» 829 թ.—Կղկնտ. Գ. ի։

ՏԱԻՏԱՐ, որդի Ջանասի, կանգնեցրել է մի խաչքար Հին Ղարաբուլաղ գյուղի Վերի վանքում, 1271 թ.—Արցախ 254։

Ταυτούκας, որդի Մանուէլ պրոտոսպաթարի, եղբայր Բագրատուկի (Կոստ. Պերփ.),— Justi 323 ա։ Ըստ իս՝ հասկանալ Դաւթուկ, կազմված -ուկ մասնիկով, ինչպես և Բագրատուկ.— Տե՛ս և Դաւթուկ:

Ταξίλς, զորավար Հայոց բանակի յալսկոյս Եփրատի. հմմտ. Ταείλης զորավար մեծն Միհրդատի.— Justi 321, որ մեկնում է բառս իբր Taksā ցեղից։

+ ՏԵԱՌՆԹԱԳ, ար. <հյ. տէր, սեռ. տեառն+թագ բառերից (հմմտ. Լուսնթագ). մի անգամ միայն ունենք՝

— Տեառնթագ՝ Արշարունեաց Կալոց գյուղից. Վահան Մամիկոնեանի և Յովհան Մանդակունու ժամանակ, Ջարմիհր Հազարաւուխտի ձեռքով նահատակվեց հավատքի համար «482—483 թթ.» և իր նշխարները հանգուցին Շիրակի Բեռնօնս գյուղում, այն եկեղեցում, որ այժմ կոչվում է իր անունով։

— Տեառնթագ.—Ասող. Բ. բ, Վրդ. ԻԹ (հրատ. Էմինի՝ Տանթայ).—Մխ. այրիվ. 63։

+ ՏԵԱՌՆՈՐԴԻ, ար. <հյ. տէր, սեռ. տեառն+որդի բառերից։ Մի անգամ ունենք՝

—Տեառնորդի, որդի Բաւրինայ՝ քրոջ Ջալալի (սեռ. Տեռնորդե— ե հանգով) ձեռք հիշված է Խորանաշատի մի արձանագրության մեջ 1246 թ.—Տեղեկ. Արմֆանի 1940, № 4, էջ 177։

+ ՏԵԱՌՆՏՈՒՐ, ար. <հյ. տէր, սեռ. տեառն+տուր բառերից։ Հմմտ. Տիրատուր, նաև Տէրտուր, որոնք սրա ճիշտ համազորներն են. հմմտ. նաև Աստուածատուր և իր համազորները.

— Տեառնտուր, եպիսկոպոս Հայքայ. ժամանակակից Բաբկէն կաթուղիկոսի («490—516 թթ.»). ստորագրում է այն թղթին, որ գրեցին հայերը Պարսկաստանի ուղղափառներին. անդամ Դուինի եկեղեցական ժողովի «506 թ.».— բց. ի Տեառնտուրոյ՝ Գիրք թղ. ը.— Ազգապ. 503 գրում է Տիրատուր:

* ՏԵԼԵՄԱՔ, ար. <հուն. Τηλέμαχος անունից, որ բուն նշ. «հեռամարտիկ, հեռվից կռվող» (այն է մականով, նետ ու աղեղով)։ Այս անունով հայտնի է Հունաց մեջ Տելեմաք՝ որդի Ուլիսի. մանուկ էր, երբ հայրը մեկնեց Տրովադա. որդին գնաց հորը որոնելու Մենտորի առաջնորդությամբ։ Գործածական է արևմտահայոց մոտ։ Այս անվան մեր մեջ մուտք գործելու դրդիչ է եղել Ֆենելոնի Aventures de Télémaque վեպը, որ թարգմանված է հայերենի։

— Տելիկ, դերձակ ոմն, հիշված անթվական մի հիշատակարանում (ժԵ դարից հետո).—Bodleian 29։

— Տեսիխաքուն, իգ. հիշված 1693 թ. (Труды Вост. комм. ИМАО, հտ. II, էջ 75)։

* ՏԵՏԱ, իգ. <ծագում է վրաց դեդա «մայր» բառից արևմտահայ տառադարձությամբ)։

— Տէտա խաթուն, բարեպաշտ կին, որ կերակրել է Յովհաննէս գրչին, երբ սա Սաղմոսավանքում արտագրում էր Աւետարանը 1496 թ.—Ձեռ. Թաւր. 22 բ։

* ՏԵՐԵՆՏԻՈՍ, ար. <հուն. Τερέντιος անունից, որ փոխառյալ է լտ. Terentius անունից, որ շատ սովորական էր լատինների մոտ և կազմված է Մարսեան դաշտի Terentius կոչված վայրից։

— Տերենտիոս, հազարապետ Սանատրուկ (38—68 թթ.) թագավորի. ուղարկվեց սպանելու Բարթուղիմէոս առաքյալին, բայց նրա քարոզությունից քրիստոնյա դարձավ և նրա հետ նահատակվեց Ուրբանոս քաղաքում.—Վրք. և վկ. ա. 209. Անկ. Գիրք առաք. 354 (այլ ձ. Տերանտիոս, Տերենտէոս), 363, 364. Յայսմ. դեկտ. 8 (տպ. Տերենտիոս). Վկ. Բարթ. 26։

ՏԵՐԻՆ, ար. ծագումն ինձ անհայտ. անշուշտ հունական է. մի անգամ ունենք՝

— Տերին, պարոն. Անդրոնիկոսի բանակումն էր. պատերազմեց Թորոսի դեմ Մսիսի առաջ և սպանվեց (1151 թ.).—Սմբ. պատմ. 96։

ՏԵԻԴԱՏ, տե՛ս ԴԵԻԴԱՏ։

+ ՏԷՐ, ար. <հյ. տէր բառից. հմմտ. Մար անունը, որ է ասորերեն «տեր»։

— 1. Տէր Խորձենացի, աշակերտ Մեսրոպի (+439 թ.), որ թողեց նրան՝ Վրաց վրա լուսավորությունը տարածելու համար.—Փարպ. Ժ. Խոր. Գ. ծզ։

— 2. Տէր, եպիսկոպոս Կամենական, որ ընկերացավ Մեսրո-

պին (+439 թ.)՝ Գողթնի քարոզության ժամանակ.—Կոր. էջ 14 (տպված է «տէր եպիսկոպոս ի Կայենականսն»)։

— 3. Տէր, այլ ոմն? Տե՛ս նույն (Զարբ. Պատմ. Հայ. դպր. 3 էջ 291 կարդալով Տէր. համարում է Խորձենացին)։ Իսկ Աղգապ. 488 դնում է Տիրայր։

+ ՏԷՐԱՒԱԳ, առանձին անուն է տէր+աւագ բառերից բարդված. ըստ այսմ ավելի ճիշտ պիտի լիներ Տիրաւագ ձևը։ Այս բանը երևում է հայտնապես Ձեռ. Վասպ. 373, 30-րդ տողից, ուր հիշատակելով երեխաների անունները, ասված է. «տղայոցն տէր Աւագի և Վարդանիսի»։ Երեխան քահանա չի լինի. ուստի պետք է ուղղել Տէրաւագ։ Հրատարակիչները, թերևս և ձեռագիրները, ուշադիր չլինելով այս կետին, հաճախ գրում են «Տէր աւագ»։ Խաբվելով նրանցից, ես էլ տեղ-տեղ դրել եմ «տէր Աւագ կամ Աւագ քահանա», որ պետք է փոխել։ Այս մասին տե՛ս նաև Յովհաննէս № 887։

— 1. Տէրաւագ, հայր Յովհաննէս տանուտերի, որ Աղթամարում գրել տվեց մի Աւետարան 1436 թ.—Ձեռ. Վասպ. 373—374։

— 2. Տէրաւագ, որդի կամ եղբորորդի նույն Յովհաննէս տանուտերի. Նախորդի թոռն է։

ՏԵՐԵՐ, իբրև վկա հիշվում է Քանաքեռում մի այգու վաճառման առթիվ, 1306 թ.—Արձ. Այրարատ 298. Բանաս. 1903, 32։

+ ՏԷՐԻԿ, ար. <հյ. տէր բառից՝ գգվական -իկ մասնիկով. մի անգամ գտնում եմ հիշատակված 1609 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, էջ 473)։ Նույնը -ուկ մասնիկով՝ ՏԷՐՈՒԿ, ար. հիշված է Ձեռ. Վենետ. Ա. 418 (թվականն անհայտ)։

ՏԷՐԻԻՆ, հայր Սահակ երեցի, որ Կեսարիայի Մոնտիսոն գյուղում օգնեց Յովհաննէս աբեղային գրելու Յայսմաւուրքը 1495 թ.— Ալպօյաճեան, Պատմ. Հայ Կես. Բ. 1850։

— 1. Տէրուն, ար. 1511 թ.—Ձեռ. Վասպ. 645։

— 2. Տէրուն, տաղասաց. ժամանակն անհայտ. ունի «Գանձ յարութեան», որի ծայրանունն է Տէրուն.—Ձեռ. Կես. սարգ. 29 բ։

+ ՏԷՐՈՒՆԱԿԱՆ, ար. <հյ. տէրունական ածականից. համապատասխանում է հունական Կիրակոս անվան (տե՛ս նաև Տէրունի)։ Հիշված է 1513 թ. (Ձեռ. Վասպ. 135) և 1515 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 390)։

— Տէրունական, արքեպիսկոպոս Գողթան գավառի. սրա հաջորդն է իր քրոջ որդի Ստեփաննոս արքեպիսկոպոսը, որ Ագուլիսում, Մատթէոս երեցին գրել տվեց մի մեծ Տօնական 1447 թ.— Ձեռ. Թաւր. 120—123, Հացունի, Կարևոր խնդ. 270։

+ ՏԷՐՈՒՆԻ,ար. <հյ. տէրունի բառից, ճիշտ ինչպես Տէրունական՝ համազոր է հունական Կիրակոս անվան։ Այս ամբողջական ձևով գտնում եմ գործածված մի անգամ անթվական մի հիշատակարանում (Սմբատեանց, Գեղարք. 608)։ Սրա կրճատ ձևն է Տէրուն (ինչպես ունենք Սերունի բառից Սէրուն կամ Սերոն անունը). հիշված է Տերուն ձևով 1576 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 9 ա), Տէրուն 1662 թ. (Սիւրմէեան, Պատմ. Հալէպի ազգ. գերեզմ. 28 ա), Տերոն՝ ծաղկող Աւետարանի 1670 թ. (Ձեռ. Բեռլինի 12 բ), Տէրոն սարկավագ գրիչ ում 1671 թ. (Ձեռ. Թեհր. էջ 1—2=ՀԱ 1935, 309), Տէրուն 1741 թվին տպված Տաթև. ամ. հիշատակարանում («զպապս մեր զՏէրունն»)։

+ ՏԷՐՊԱՊ, ար. <հյ. տէր+պապ բառերից (Պոլսահայ բարբառով տէրպապա նշ. «քահանա». նույնը նաև Նոր-Նախիջևանի բարբառով)։ Իբրև անձնանուն հիշված է 1605 թ. (Դրնդ. 67)։

— Տէրպապ, մորեղբայր Ներսէս Կրակցի աբեղայի, որ Երուսաղէմում օրինակեց Ճառընտիրը, 1335 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 149, Բ. 348։

ՏԷՐՊԱՐՈՆ, ար. <հյ. տէր+պարոն բառերից, հակադիր շարքն ունի Պարոնտէր, որ ավելի սովորական է. հիշված է 1623 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, էջ 46). հիշված է նաև անթվական մի հիշատակարանում (1463 թվից ուշ)՝ Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 133։

— 1. Տէրպարոն, հայր Սահակ երեցի, որ Կիւրղի վանքում, Ստեփաննոս գրչին գրել տվեց մի Աւետարան 1467 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 257։

— 2. Տէրպարոն, հայր Յովհաննէս վարդապետի, որ Սանահինում գրել տվեց մի գեղեցիկ Շարակնոց 1497 թ. այս թվին Տէրպարոնը մեռած էր.—ՀԱ 1887, 56 ա։

+ՏԷՐՏԷՐ, ար. <հյ. տէրտէր «քահանայ» բառից. հմմտ. Վարդապետ, Տիրացու, Սարկաւագ անունները, որոնք նույնպես եկեղեցական աստիճաններ են ներկայացնում։

— 1. Տէրտէր, ավագերեց Տփղիսի. «1264 թվին» ուղեկից եղավ Վարդան պատմիչին՝ Հուլաղու խանի մոտ գնալու ժամանակ.—Վրդ. ըղ. տպված է իբր հասարակ անուն. «Ընդ մեզ էին վարդապետք եղբայրք մեր Սարգիս և Գրիգոր, և աւագ երէցն Տփխեց տէրտէրն»։

— 2. Տէրտէր, մերձավոր Թումայ և Հայրապետ քահանաների, որոնք մի Աւետարան գրել տվեցին 1304 թ.—Ձեռ. Վասպ. 143։

— 3. Տէրտէր կամ Տիրացու քահանա Երևանցի, որդի Սարգիս

քահանայի, Երևանից գաղթեց Աղախ (Աղով) քաղաքը, ուր գրեց մի ճառընտիր և Վարդան Այգեկցի, 1341 թ.—Շահազիզ, Հին Երևանը, էջ 72։

— 4. Տէրտէր քահանա Երևանցի, գրիչ. արտագրել է երկու ձեռագիր (մեր Մատենադարանի № 8029 և 8030), որոնք գրված են 1341 և 1376 թթ.—Աշ. Աբրահամեան, Շիրակացու մատեն. 163։

— 5. Տէրտէր, հայր Աբրահամ աբեղայի, գրիչ և ծաղկող Բոլորաբերդում 1475—1502 թթ.—Խաղբակեանք 238։

— 6. Տէրտէր, հիշված 1521 թ. Manus. Brit. mus. 139 բ։

— 7. Տէրտէր Երևանցի, բանաստեղծ 1330—1345 թթ., ըստ Ձեռ. Սով. Հյաստ. 1946, № 86, էջ գ։

— 8. Ավելի ուշ ժամանակ հիշված են Տէրտէր 1576 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 8 բ), ԺԶ—ԺԷ դար (Ձեռ. Սանաս. 7 բ)։

— 9. Տէրտէր Երևանցի, բանաստեղծ.—Տեղեկ. Ակադ. 1946, № 2, էջ 79։

+ ՏԷՐՏՈՒՐ, ար. <հյ. տէր+տուր բառերից, իբր «տիրոջ տվածը». հմմ. Տիրատուր։ Հիշված է 1552 թվից առաջ (Տաշեան, Ցուց. 877 բ) և անթվական մի հիշատակարանում (Manus. Brit. mus. 56 բ)։

— Տէրտուր, մորեղբայր Կիրակոս կրոնավորի, որ Եկեղեաց գավառի Կայիփոսի վանքում գրել տվեց մի Սաղմոս, 1470 թ.—Թորոս աղբ. Բ. 305։

ՏԷՐՕ, ա՞ր. թ? Ձեռ. Վասպ. 767։

ՏԻԱՐ, ար. հիշված է 1603 թ.—Դրնղ. 40։

ՏԻԱՐԻԱՆԴ, անստույգ անուն. հիշված է Բագարանի 628 թվի արձանագրության մեջ.—Կոգեան, Կմարկնները 137։

* ՏԻԳՐԱՆ, ար. <իրանական անուն է, իբր հպրս. * Tigrāna. հմմ. Τιγράνης Աքեմենեան, առաջնորդ Մարաց (Հերոդ. 7, 62).— Տիգրան Պարսիկ, Սորութառ ծովակալի փեսան (Քսենոփոն, Պատմ. Հունաց, գիրք Դ. գլ. ը. Ն. Ք. 390 թ.)։

— 1. Տիգրան, պարսիկ զորավար, որ ուղարկվեց Գայլ Վահանի որդի Սմբատի դեմ (Մամիկ. Դ).—Հիւբշ. 87. Իբրև օրինակ անձնանվան հիշված է Տիգրան՝ Անան. քեր. 139, 144. Դաւ. անյ. էջ 198.—սեռ. Տիգրանայ, բց. ի Տիգրանայ.—Դաւ. քեր. 105, Անան. քեր. 140. Տիգրանեան՝ Անան. քեր. 140։ Իբրև օրինակ հայրանվանց՝ Տիգրան և Տիգրանունի հիշված է էլ. արիստ. 53 (երկու անգամ). հմն. 'Ελευος καὶ 'Ελένη անունների դեմ։ Սովորական գործածություն ունի այժմ էլ. կրճատ ձեն է. Տիգօ։— Մագ. թղ. ժթ. ստու-

գարանելով այս անունը՝ գրում է. «որ ըստ Պարթևին մեծ և ծանր»։ Ճիշտ մեկնությունը հայտնի չէ։ Ըստ իս ծագում է հպրս. *tigra-rāna «նետերով մարտնչող» բառից՝ արագաբանությամբ. կազմված է tigra «նետ» և rāna «կռվող» բառերից։ Հմմտ. Τιγραπάτης (իբր նետերի պետ) լազ իշխան (170 թ.)։ Ինչպես կա զնդ. vīra-rāz ձևից vīrāz անունը (Barth. Altir. Wört 1454)։

— 2. Տիգրան, երեց որդի արքային Հայոց, որսի ընկեր Կիւրոսի. մասնակցեց իր զորքով Կիւրոսի արշավանքին՝ ասորեստանցոց դեմ.—Քսենոփոն, Կիւրոպեդ. Գ. 1, 2, 3 (§ 1—5), Դ. 2 (§§ 9, 18, 43), 5 (§§ 4, 35). Ե. 1 (§ 27), 3 (§ 42), Զ. 1 (§ 21), Ը. 3 (§ 25), 4 (§§ 1, 24)։ Պատմության ամփոփումը տես Ալիշան, Հյուսն. 246—247։ Հիանալի է Տիգրանի կնոջ հետ պատահած դեպքը իբրև օրինակ ամուսինների փոխադարձ սիրո և հավատարմության։

— 3. Տիգրան Ա, որդի Երուանդի, թագավոր հայկազն. նստեց 565 թ. (Չամչ. Ա. 102). համապատասխանում է նախորդին. պատերազմեց Աժդահակի հետ. սպանեց, և կործանեց Մարաց պետությունը։ Կոչված է Երուանդեան Տիգրան, Մեծն Տիգրան.—Խոր. Ա. իբ—իե, իթ—լա. Կղկնտ. Ա. գ, ժե. Ուխտ. Ա. ժթ. իգ, իե. Անան. քեր. 144. ՅՀ. կթ. գ. Արծր. Ա. ա, ե, զ. Մագ. թղ. ժթ. Սասն. 19. Շնորհ. Վիպ. 143. Մխ. անեց. գ. Մխ. այրիվ. 18, 52—53, 55. Սամ. անեց. 31, 46. Ուռհ. 335. Վրդ. է, ժզ. Մին. համդ. 11, 13. Վրդ. Աշխ. 517. Ջուղ. 31. Վրաց աղբ. Ա. 74 (գրում է Տիգրին).—սեռ. Տիգրանայ՝ Խոր. Ա. իդ—իզ, իը, իթ, լա. Գ. իը. Անան. քեր. 129. Ուխտ. Ա. ժդ, իգ, իե. ՅՀ. կթ. գ. Արծր. Ա. ե—է. Սամ. անեց. 31, 46։ Մին. համդ. 12. Ջուղ. 19։ Տիգրանի և Տիգրանուհու վեպի մասին տե՛ս Դաւիթ (№ 10) Անյաղթ:

— 4. Տիգրան, իշխան Արծրունի, հաջորդ Արշէզի (Ն. Ք. Ե դար).—Արծր. Ա. զ։

— 5. Տիգրան, հայր Մեծին Տիգրանայ ըստ Ապպիանոսի, այն է Արտաւազդ ըստ Յուստինոսի.— Գրգշ. Քնն. պատմ. Բ. 131, Գ. 232, 242. Լէօ, Հայ. պատմ. Ա. 391։

— 6. Տիգրան Ա Մեծ (ըստ արտաքին պատմության), Արտաքսիասի ցեղից, որդի Տիգրանի, ծն. մոտ Ն. Ք. 140 թվին. Հայոց մեծագույն աշխարհակալ թագավորը, նստեց Ն. Ք. 95—55 թթ.։ Պատանդ էր Պարթևաց մոտ. տվեց նրանց 70 հովիտ և ազատ արձակվեց։ Հայաստան դառնալով հարձակվեց Փոքր Հայոց Արտանէս թագավորի վրա, սպանեց և Փոքր Հայքը միացնելով իր երկրին՝

կազմեց մի մեծ Հայաստան։ Հաղթելով Պարթևաց, գրավեց մինչև Նինուէ և Արբելա, նվաճեց Ատրպատականը, Կորդուքը, Միջագետքը և Արաբական ցեղերը, Ասորիքը (85 թ.), Փյունիկէն (70 թ.) և Հրէաստանը։ Շինեց Տիգրանակերտը, իբրև երկրորդ մայրաքաղաք Հայաստանի և այդ քաղաքը շենացնելու համար Կապադովկիայում 12 հունական քաղաք ավերեց և նրանց բնակիչներին այնտեղ փոխադրեց։ Դաշնակցելով Պոնտացոց Միհրդատ թագավորի հետ, դեմ դուրս եկավ Հռովմայեցոց. հաղթվեց Լուկուլլոսից, ապա Պոմպէոսից և հրաժարվեց իր նորանվաճ երկրներից.—Ստրաբոն Հայոց մասին, էջ 59, 61, 65, 67, 71, 81, 89, 91, 95. Գարագաշեան Քնն. պատմ. Բ. 104—158. Լէօ Հայոց պատմ. Ա. 391—424. Justi 324։ Ընդարձակ մենագրություն իր մասին Մանանդեան, Տիգրան Բ և Հռոմը, Երևան, 1940 թ.—Կան այս թագավորի դրամները գեղեցիկ դիմանկարով՝ այսպիսի հույն վերտառությամբ. Βασιλεως Βασιλεων Τιγρανου «Թագաւորաց թագաւորի Տիգրանայ» (տե՛ս Petrowiez, Arsaciden Münzen, էջ 190—191). և հյ. Տաշեան, Արշակունի դրամներ, Վիեննա 1919, էջ 180—189։ Ըստ Խորենացու կոչվում է Տիգրան Բ կամ Տիգրան Միջին, որդի Արտաշէս Ա-ի (նստել է Ն. Ք. 89—35, ըստ Չամչ. Ա. 220—260)։ Բուզ. Դ. ծե. Խոր. Բ. ժա, ժդ, ժզ, ժթ, կե. Ուխտ. Ա. իթ, ծդ. ՅՀ. կթ. դ, ե. Ասող. Ա. ե. Մագ. թղ. ժթ (Իգնատ. ղկ. 15). Շնորհ. Վիպ. 213. Սամ. անեց. 50. Վրդ. ժե. Նհպտք. 89. Ուռհ. էջ 1 (իբր հիմնադիր Ուռհայի). Մխ. այրիվ. 18, 57. Մխ. անեց. գ, ժ, ժա. Մին. համդ. 17. Ջքր. սարկ. Ա. 2. Աբր. Կրետ. 101 (գրված է Տիրան)։—Տիգրան Արտաշեսեան՝ Անան. քեր. 144.—սեռ. Տիգրանայ, բց. ի Տիգրանայ՝ Բուզ. Գ. ծե. Խոր. Բ. ժդ—ժթ, իա—իդ, խդ. Գ. լե. Ուխտ. Ա. լ. ՅՀ. կթղ. Ե. Արծր. Ա. զ, ժ. Ասող. Ա. ե. Մագ. թղ. լբ, Սամ. անեց. 50. Պտմ. Ամաս. 56. Մին. համդ. 17. Նհպտք. 89. Մխ. անեց. գ, ը, ժա. Վրդ. ժե. Յայսմ. մայ. 27.— Տիգրանին՝ Գր. տղ. եէմ. 301։—Ըստ Սուտ Սեբ. Ա. 10 Տիգրան է եղբայր և հաջորդ Տիրան Ա-ի, հայր Արշամի։—Տիգրան Մեծը վեպի մեջ՝ տե՛ս Աբեղեան, Հայ ժողով. առասպ. 319 և այլն. շատ մանրամասն և գեղեցիկ է այստեղ էջ 426—510, ուր հեղինակը համոզիչ կերպով ցույց է տալիս, որ Տիգրան Ա-ի պատմությունը, որ տալիս է Խորենացին, Տիգրան Բ-ի պատմությունն է, բանահյուսական մի գրվածքից քաղված։—Տիգրանի կյանքը պիեսայի է վերածել Խաչիկ Դաշտենց, հրտ. Երևան 1947։

— 7. Տիգրան Փոքր, կրտսեր որդի Մեծն Տիգրանի. կարգվեց գահակից իր հորը՝ Ծոփաց աշխարհում։ Միանալով իր աներոջ հետ

ապստամբեց հոր դեմ և պաշարեց Արտաշատը։ Տիգրան Մեծը հաղթեց և որդին դիմելով Պոմպէոսին՝ առաջնորդեց նրան հոր դեմ։ Պոմպէոսը Տիգրան Մեծին հաղթելուց հետո, իբր վարձ մատնության, Տիգրան Փոքրին կարգեց Ծոփաց իշխան։ Սա դժգոհ մնալով, ուզեց ապստամբել Պոմպէոսի դեմ, ուստի իր ընտանիքով աքսորվեց Հռոմ, ուր և սպանվեց (Ն. Ք. 66 թ.?).—Գրգշ. Քնն. պատմ. Բ. 125, 153. Լէօ, Հայ. պատմ. Ա, 417—422։ Justi 324 բ. Մանանդեան, Տիգրան Բ, էջ 173, 187.—Ջամչ. Ա. 241 կոչում է Տիրան և կարծում է, թե Հռովմայեցիք այս անունով կոչել են Տիգրան:

— 8. Տիգրան Բ, կրտսեր որդի Արտաւազդ Ա-ի և եղբայր Արտաշէսի. գերի էր Ալեքսանդրիայում. փախավ Հռոմ. Արտաշէսի մահից հետո՝ Օգոստոս կայսեր ձեռքով դրվեց թագավոր Հայաստանի և նստավ Ն. Ք. 20—6?.—Գրգշ. Քնն. պատմ. Բ. 185—187, Լէօ, Հայոց պատմ. Ա. 437—439. Justi 324 բ։

— 9. Տիգրան Գ կամ Տիգրան Կրտսեր. իր քույր և իր կին Երատոյի հետ հաջորդեց Տիգրան Բ-ին, բայց գահազուրկ եղավ և իր տեղ դրվեց Արտաւազդը (Ն. Ք. 6 թ.)։ Սրա դեմ ապստամբություն ծագելով՝ Արտաւազդը տապալվեց և Տիգրանը Պարթևաց Հրահատակ թագավորի բանակով գահին նորից տիրեց, սակայն սպանվեց Հռովմայեցոց ձեռքով (1 թ. Յ. Ք.).—Գրգշ. Քնն. պատմ. Բ. 187—189, Լէօ, Հայ. պատմ. Ա. 439—440։ Justi 324 բ.—կա դրամ Տիգրանի և Երատոյի անունով։

— 10. Տիգրան Դ, Արշակունի հրեա, Արտաշիասի ցեղից. թագավոր Հայոց՝ 11—13 թթ. հաջորդեց Արտաւազդին՝ հրամանով Օգոստոսի. հայերը վռնդեցին նրան. տեղը նստեց Երատոյ.—Գրգշ. Քնն. պատմ. Բ. 190. Լէօ, Հայոց պատմ. Ա. 450. Justi 324 բ։

— 11. Տիգրան Ե, թոռն Արքեղայոս արքայի կապադովկացոց. (ըստ Լէօի՝ հրեա էր). պատանդ էր գտնվում Հռոմում. Հռովմայեցոց Ներոն կայսեր կողմից նշանակվեց ժամանակավոր թագավոր Հայոց, Կորբուլոն զորավարի ձեռքով. Տրդատ-Արտաշէսի արշավանքների ժամանակ (58 թ.) արշավեց Ադիաբէնի վրա. Տիգրանակերտում դեմ դրավ Պարթևաց պաշարման. ըստ Լէօի՝ նստել է 60—61 թթ.—Գրգշ. Քնն. պատմ. Բ. 206, 220—222, Լէօ, Հայոց պատմ. Ա. 462. Justi 324—325. Ջամչ. Ա. 313. Գաթըրճ. Տիեզ. պատմ. Բ. 115. Շուր՝ Ներոն կայսեր արևել. քղքկն. Վիեննա 1930, էջ 35 շար.։

— 12. Տիգրան Գ Փոքր (ըստ Խորենացու), 152—193 թթ., Ջամչ. որդի Արտաշէս Բ-ի և հաջորդ Տիրան Ա-ի։ Պարթևաց Պերող

թագավորի հետ միացած արշավեց Հռոմայեցոց վրա, սպանեց Կապադովկիոյ Սեներիանոս իշխանին, մտավ Փոքր Ասիա, բայց մի հույն իշխանուհու ծուղակն ընկավ և բանտարկվեց։ Լուկիոս Վերոս կայսրը գալով Արևելք, նվաճեց Հայաստանը, Տիգրանին հաստատեց իր գահի վրա և իր Ռոփի անուն ազգականին նրան կնության ավեց.—Սուտ Սեբ. Ա. 10. Խոր. Բ. կդ. Ուխտ. Ա. խե. ծդ. Արծր. Ա. ը. Ասող. Ա. ե. Մագ. Թղ. ժԹ. Սամ. անեց. 58. Նհպտք. 90. Շնորհ. վիպ. 354. Մխ. այրիվ. 18. Մին. համդ. 21. Մխ. անեց. գ. Թ, ժ. Չբր. սարկ. Ա. 2.—սեռ. Տիգրանայ՝ Սուտ Սեբ. Ա. 10. Խոր. Բ. կդ—կզ. Ուխտ. Ա. խե, խզ. Արծր. Ա. ը. Վրդն. լա. 45. Մին. համդ. 21. Նհպտք. 90.—գրծ. Տիգրանաւ՝ Պտմ. Վր. Ե.—Վրաց աղբ. Ա. 159։

— 13. Տիգրան Դ, իբրև հաջորդ Տիրան Բ-ի (գահազուրկ «350 Թ.») դնում է Մագ. Թղ. ժԹ (սխալմա՞մբ)։

— 14. Տիգրան, իշխան Վարաժնունեաց, ուղեկցեց Ներսեսին երբ նա Կեսարիա էր գնում օծվելու «353 Թ.».—Մեսր. եր. 25։

— 15. Տիգրան, որդի Խոսրով Գ-ի, եղբայր Արշակի. Արևելեան Հայաստանը թողեց պարսիկներին 416 Թ.—(Պրոկոպ).—Justi 325 ա։

— 16. Տիգրան, որդի Ջեանշէրի՝ որդւոյ Սահակայ. իշխան Սիւնի. հիշված է իբրև վկա Տաթևի 871 թվի կալվածագրում.—Օրբ. լԹ. Justi 325 ա։

— 17. Տիգրան, մեծ նահապետ Սիսական. Սոտք գավառի Վաղաւեր գյուղը նվիրեց Տաթևին.—Ուղ. Տիգրան և սեռ. Տիգրանայ՝ Օրբ. ծ.—ասում է «վաղ ժամանակօք», ուստի կարող է լինել Թ դար։

— 18. Տիգրան մարզպան, զորավար Աշոտ Արծրունի թագավորի. սրա հրամանով Աբլխարիբ սպարապետի հետ գնաց Գողթան Աբուսլուփ ամիրայի դեմ, բայց բռնվեց և փրկանքով արձակվեց («383 Թ.»).—Ասող. Գ. ժգ.—գրծ. Տիգրանաւ՝ անդ։

— 19. Տիգրան Պահլաւունի, որ և կոչվում է Ապլղարիպ, որդի Գրիգոր Համզայի, եղբայր Վահրամ Պահլավունու և հորեղբայր Գրիգոր Մագիստրոսի, Յովհաննէս-Սմբատ թագավորի արքունիքում հարկերի վերատեսուչ և գանձային պաշտոնյա էր։ Նվիրեց Արծուբոյնը Հաղբատի վանքին 1030 Թ. (Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 64). շինեց Անիի Ամենափրկիչ եկեղեցին և կալվածներով էլ ապահովեց (1036 Թ.).—այդ եկեղեցին փուլ եկավ 1131 Թ. (Սամ. անեց. 129)։—Նույն է Ապլղարիպ № 3—4, որ տե՛ս և որոնք պետք է միաց-

նել.—սեռ. **Տիգրանայ**՝ *Մագ. Թղ. ժա.*— **Ասլղարիպ** *մարզպան*՝ *Սամ. անեց.* 129։

— 20. **Տիգրան** *Անձևացի, որի դուստրը՝ Սոփի (+1015 թ.) կինն էր Վահրամ սպարապետ Պահլավունու («1045 թ.»).—Ալիշան, Շնորհ. էջ 12 (տախտակը)։*

— 21. **Տիգրան**, *ոմն, գտնվում էր Պոլսում, ընդունեց Նեղոսի նոր հերձվածը (1082 թ.).—Զամչ. Գ. 7։*

— 22. **Տիգրան**, *անծանոթ պատմիչ Արշակունեաց սկզբնավորության թե՞ Տիգրան Բ կամ Գ. անորոշաբար հիշում է Մագ. Թղ. ժԹ. «Ու զմերոյն Վաղարշակայ ի Մովսիսէ (=Խորենացին) և Տիգրանայ իսկ գրեալս քո գլխաճան ծանոյց ինձ»։ Անշուշտ այս է, որ Զարբ. Հին դպր. 591 հիշում է իբրև Տիգրան Պահլավունի պատմիչ (ԺԱ դար). տե՛ս և տակը։*

— 23. **Տիգրան** *իշխան, Գող Վասիլի հետ ջարդեց թուրքերին՝ «1108 թ.». սպանվեց նրանցից՝ 1112 թ.—Ուռհ. 307 (այլ ձեռ.* **Տիրան**). *325.—սեռ.* **Տիգրանայ**՝ *Գր. եր. 401?։— Տե՛ս և Աբլասադ № 2։*

— 24. **Տիգրան**, *պարոն, Հունաց Մանուէլ կայսեր կողմից նշանակվել էր Պռականա բերդի իշխան. Անդրոնիկոսի բանակում զորավար էր Հունաց. կռվեց Թորոսի դեմ Մսիսի առաջ, ուր և սպանվեց (1151 թ.).— Սմբ. պատ. 96. (Թվի թե սա է նաև Գր. եր. 401 հիշվածը. տե՛ս նախորդը).—Սիսուան 330 ա ասում է, թե Մսիսի առաջ պատերազմում գերի է ընկել Թորոսի ձեռքը, ապա փրկանքով ազատվել.—Տե՛ս հաջորդ երկուսը։*

— 25. **Տիգրան**, *ոմն, նախորդի թոռն է համարվում (բայց դա ստուգելի է). մասնակցել է Լամբրոնացու, Գրիգոր Դ Տղայի (+1193 թ.), Լևոն Բ-ի և Հաղբատացոց կրոնական վեճերին.—գրծ.* **Տիգրանու**՝ *Լմբ. 228։*

— 26. **Տիգրան**, *պարոն, տեր Պռականոյ. ներկա եղավ Լևոն Բ-ի թագադրության հանդեսին («1199 թ.»).—Սմբ. պատ. 112.— Կարող է լինել նախորդը. այդ դեպքում, ճիշտ է ուրեմն, որ ըստ Սիսուանի ազատվել է փրկանքով և բավական երկարակյաց է եղել։*

— 27. **Տիգրան** *Հոնենց, քաղկեդոնիկ հայ. մերձավորն էր Երկայնաբազուկ իշխանների, շինեց Անիում Ս. Գրիգորի տաճարը 1215 թ. նաև մի վանք Անիի ձորի զառիվայրի վրա.—Օրբելի, Անւոյ աւերակները, էջ 32. Խաղբակեանք 16։*

— 28. **Տիգրան**, *պաշտոնյա Զաքարիա սպասալարի. մի գյուղ*

է նվիրել Լուսաւորչի վանքին 1215 թ.—Այրարատ 90։—Համտ. Նախորդը։

— 29. Տիգրան, հայր Վահրամ պատմիչի.—սեռ. Տիգրանայ՝ Վրդ. ծգ։

— Տիգրանաշատ արքա, շինել է Կաքաւենիս, Երիքով և Տրիպոլիս քաղաքները. իսկ Տիգրան արքա շինել է Շարադմուշ, Մարաշ, Սլուք և Ռաալաւ (ըստ Այս են քաղաքք և շինողք նոցին ZAPh 1, 190)։ Պետք է ենթադրել Տիգրան Ա, որովհետև սրանից հետո դնում է Վանանդ (իմա Վանագն)։

* ՏԻԳՐԱՆՈՒՀԻ, իգ. <կազմված Տիգրան անունից՝ -ուհի մասնիկով. իբր իգ. անվան օրինակ հիշված է Դաւ. քեր. 105. Անան. քեր. 139. իբրև օրինակ հայրանվան՝ տե՛ս Տիգրան։—Հնից հիշված է մի անգամ. բայց այժմ վերակենդանացած և բավական գործածական է։

— Տիգրանուհի, քույր Տիգրան Ա-ի և կին Մարաց Աժդահակ թագավորի.—Խոր. Ա. իդ, իե—լ. Անան. քեր. 129. Ուխտ. Ա. իե. Վրդն. աշխ. 517.—սեռ. Տիգրանուհեայ՝ Խոր. Ա. իը, իթ. Ուխտ. Ա. իե. Արծր. Ա. ե. Հայապ. 42։

ՏԻԳՐԻՍ, ար. <համանուն գետի անունից. նոր և անսովոր անուն. հիշված է Սովետ. Հյաստ., 1944, սեպտ. 29, վերջին սյուն։

ՏԻԹՈՐՈՍ? դրամ է նվիրել Գեղարդայ վանքին.—Արձ. անթվ (Այրարատ 340)։

ՏԻԹՎԱՍԱՆ, որդի Աբաս Թագավորի Կիւրիկեանց. կինն է Ռուսուդան (996 թ.).—Մովսէսեան, Լոռիի պատմ. 48.—Ուղղել Ծիթվասան, որ տե՛ս։

ՏԻԿԵՄԱՄ, դուստր Դուլիկի և Գոհարշահ Կողբացու, որոնք նրա հոգուն մի այգի են նվիրել Բագարանի Մայր եկեղեցուն, 1235 թ.—Արձ. Այրարատ 68։

+ ՏԻԿԻՆ, իգ. <հյ. տիկին բառից. համտ. Խաթուն, Խանում անունները։

— 1. Տիկին (կամ Մարիամ), բարեգործ այրի կին. երբ Սաղմոսավանքի միաբանները բանտարկվեցին Դուինում, օգնում էր նրանց դրամով (1187 թ.)։ Միաբան, Գոր. և շմ. էջ 55։

— 2. Տիկին, կին Յովհաննէս քահանայի և մայր Վահանադրէի, որ օգնեց Պետրոս երեցին՝ արտագրելու Աւետարանը, Նիկոպոլսի Խամ քաղաքում, 1223 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 422։

— 3. Տիկին, մայր Մովսէս քահանայի՝ որ 1383 թվին նորոգեց Գետաշէնի Աւետարանը.—Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 44։

— 4. Տիկին, *ոմն, թվականն անհայտ (Ձեռ. Վեննա. Ա. 657)։*

— 5. Տիկին տիկնաց, *թվականն անհայտ.—Ձեռ. Հալէպի Ա. 94 (1309 թվից ուշ)։*

6. Տիկին խարուն, *կին Յովհաննէս քահանայի, որ Խիզանում Յովհաննէս գրչին գրել տվեց մի Աւետարան, որին ժառանգորդ նշանակեց իր քեռորդի Սուքիաս քահանային 1402 թ.—Ձեռ. Վասպ. 289։*

— 7. Տիկին, *հիշված է 1657 թ.—Ձեռ. Դաղեան Ա. 48 բ («և զմայր զՏիկին»)։*

— 8. Տիկինմայր, *կին Յովհաննէսի, մայր Աստուածատուր գրչի, որ օրինակեց Աւետարանը՝ 1317 թ.—*Manus. Brit. mus. *20 բ։*

— 9. Տիկինմայր, *կին Յովհաննէսի և մայր Աստուածատուր երեցի, որ օրինակեց Աւետարանը 1327 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 460).—Գրում է «և զմայրն իմ զՏիկինմայր»։*

— 10. Տիկինմելէք, *կին Ազերի և մայր Ստեփաննոսի՝ ամուսնու Փաշամելէքի. +1458 թ. տե՛ս Փաշամելէք.—Ձեռ. Վասպ. 428։*

+ *ՏԻԿՆԱԿԱՑ, իգ. Թերևս ուղղելի ըստ հաջորդին։*

— Տիկնակաց, *կին Ստեփաննոս իշխանի (1262 թ.).—Նաթանեան, Տեղ. Սեբաստ. 84։*

— Տիկնակոկոր, *թվի կին Մխիթարիչի, որ մի այգի նվիրեց Կեչառու վանքին, 1213 թ.—Արձ. Այրարատ 263 բ։*

+ *ՏԻԿՆԱՑ, իգ.* <անշուշտ տիկնաց տիկին *ձևից՝ կրճատմամբ։*

— 1. Տիկնաց, *դուստր Սոսթենէսի, կին Իգնատիոսի, քույր Վարդան և Սարգիս քահանաների, որոնք Երզնկայի Կապոսի վանքում գրել տվին Տօնամակը 1230 թ.—Ձեռ. Վեննա. Բ. 1214։*

— 2. Տիկնաց, *կին Յովհաննէսի. երկուսն էլ դրամական օժանդակություն են արել այն Աւետարանի համար, որ Կարնոյ Կան գյուղում գրել տվեց Երեմիաս քահանան, 1283 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 644։*

— 3. Տիկնաց, *կին Պետրոս քահանայի և Մայր Ստեփաննոս քահանայի, որ Սեբաստիայում օրինակեց Աստուածաշունչը, 1313 թ.—Ձեռ. Սեբ. (=ՀԱ 1923, 70)։*

— 4. Տիկնաց, *դուստր Պապանի (1313 թ.)։—Հիշ.* ИАН *1911, էջ 1301։*

— 5. Տիկնաց *տիկին, մերձավոր Կրակացի Ներսէս աբեղայի, որ Երուսաղէմում օրինակեց Ճառընտիրը 1335 թ.—Ձեռ. Վեննա. Բ. 348։*

— 6. Տիկնաց, դուստր Գանձիի և քույր Գրիգոր կրոնավորի, որ Երուսաղէմում օրինակել տվեց Աւետարանը և Ճաշոցը 1358 թ.— Ձեռ. Հալէպի Ա. 118։

— 7. Տիկնաց, կին Հայրապետի և մայր Արիստակէս երեցի՝ որ ստացավ մի Աւետարան 1435 թ.—Ձեռ. Թաւր. 13 ա։

— 8. Տիկնացտիկին, դուստր Կոստանդին քահանայի՝ Սսոյ Ս. Նշան եկեղեցու, մեռավ 1323 թ.—Սիսուան 223 ա։

— 1. Տիկներես, քույր Յովհաննէս ճգնավորի. ինքն էլ կրոնավորուհի էր և եղբոր հետ բնակվում էր Երուսաղէմի Ս. Աստուածածին տաճարում, որ շինել էր Տիկներեսի հորեղբայրը՝ Գէորգ քահանան 1215 թվից քիչ առաջ.—Ձեռ. Վենետ. Բ. 144։

— 2. Տիկներես, մորաքույր Աստուածատուր երեցի, որ օրինակեց Աւետարանը 1327 թ.—Ձեռ. Ադուլ. (Արրտ. 1911, 460)։

* ՏԻՄՈԹԷՈՍ, ար. <հուն. Τιμόθεος անունից, որ բուն նշ. «աստուածայարգ, աստուածապատիւ»։ Գործածական էր հունաց մեջ նախաքրիստոնեական շրջանում. հմմտ. Տիմոթէոս զորավար Աթենացոց (Քսենոփոն, Պլուտարքոս)։ Քրիստոնեական շրջանում ավելի կարևորություն ստացավ, ըստ որում անունն էր Պօղոս առաքյալի աշակերտներից մեկի, որին գրել է երկու թուղթ (Պօղոս առաքեալ... Տիմոթեայ որդւոյ սիրելւոյ, Թուղթ Ա և Բ)։ Այժմ սակավ է գործածական։ Հունից է նաև լտ. գերմ. Timotheus, անգ. Timothy, Tim, ֆր. Timothée, ռուս. Тимофей։

— 1. Տիմոթէոս, եպիսկոպոս Բաղասականի (Զ դար).—սեռ. Տիմոթէի՝ Գիրք Թղ. ժԹ. Կղկնտ. Բ. է։

— 2. Տիմոթէոս, վարդապետ Վարծիոյ. խաչով բժշկեց Վրաց Դեմետրէ Թագավորի կնոջը (Է դարից հետո, ճիշտ ժամանակը անհայտ).—Վրդ. լզ։

— 3. Տիմոթէոս վարդապետ, գրել է Մեկնութիւն արարածոց (1001 թ.), որ այժմ կորած է, բայց որից օգտվել է Վարդանը իր համանուն գրվածքի մեջ.—Զարբ. Հին դպր. 550, 793.—Տիմոթ՝ Մխ. այրիվ. 72։

— 4. Տիմոթէոս, նշանավոր վարդապետ (ԺԱ դար).—Ուռհ. 179։

— 5. Տիմոթէոս ճգնավոր (ի Վարա՞գ). համախոհ Ն. Լամբրոնացու.—Լմբ. 229։

— 6. Տիմոթէոս, հայ քահանա Իտալիոյ Պերուճիա քաղաքում, 1302 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1216։

— 7. Տիմոթէոս, որդի Սերովբէ քահանայի, որ կազմեց այն

Աստուածաշունչը, որ օրինակեց Ստեփաննոս քահանան Սեբաստիայում, 1313 թ.—Ձեռ. Սեբ. (=ՀԱ 1923, 71)։

— 8. Տիմոք, որդի պարոն Ստեփաննոսի, որ թուղթ հայթայթեց Ստեփաննոս քահանային՝ օրինակելու Աստուածաշունչը Քրիստոսատուր կրոնավորի համար, Սուրխաթ 1352 թ.—Ձեռ. Վասպ. 13։

+ ՏԻՐԱԶԳ, ար. <հյ. տէր+ազգ բառերից. իբր «Տիրոջից ազդված կամ ներշնչված»։—Տաշեան, Ցուց. 1158 գրում է Տիրազգ, իբր «Տիրոջ ազգից», որ անհարմար է։

— Տիրազդ, ազգապետ Աղուանից, ժամանակակից Վաչագան Գ-ի.—Կղկնտ. Ա. իզ. Կանոն. 197։

+ ՏԻՐԱԽՈՍՐՈՎ, իբր բարդ բառ հիշում է Սիւն. քեր. 206. անշուշտ արական անձնանուն է, բայց չէ հիշատակված։

— ՏԻՐԱՄԱՅՐ, կին Թադէոսի և մայր Մկրտիչ քահանայի, որ Կարբիում օրինակեց Խոսրով Անձևացու Մեկնութիւն ժամակարգութեան, Պատարագամատոյց, Մեսրոպ երեց, Ջեննոր Գլակ և Յովհան Մամիկոնեան, 1278 թ.—Պատմ. Տարօնոյ, Երևան, 1941, էջ XIII։

+ ՏԻՐԱՅՐ, ար. <հյ. տէր+այր բառերից, իբր «Տիրոջ մարդ»։

— 1. Տիրայր Խորձենացի, օգնական Մեսրոպի՝ Գողթան քարոզության ժամանակ. հմմտ. Տէր Խորձենացի.—Կոր. էջ 14։

— 2. Տիրայր, ըստ Ազգապ. 488. տե՛ս վերը Տէր=նույն։

* ՏԻՐԱՆ, ար. <իրան. Tīrān անունից, որ կազմված է Tīr «Տիւր» աստծու անունից. հմմտ. Τειράνης թագավոր Վոսփորի (276—279 թթ.), Tīrān կրոնավոր Փարսի (Justi 325—326), Τειράνιος հայր Արիարաթի. որից ծագել են նաև Տրդատ, Տիրիբազ, Tīrōl, Tīrē անունները (Հիւբշ. 88)։

— 1. Տիրան, երկրորդ որդի Տիգրան Ա Հայկազնի, եղբայր Վահագնի.—Խոր. Ա. լա. 3հ. կթ. գ (տե՛ս և Բար.). Մխ. անեց. գ. Մագ. թղ. ժթ. Սամ. անեց. 46. Վրդ. է։ Մին համդ. 12. Մխ. այրիվ. 18 և 55 (սխալմամբ դրել է թագավորների շարքում)։

— 2. Տիրան Հայկազն. Պոնտոսի Ամիսոս քաղաքից էր. բուն անունը Թէոփրաստ. իր բնավորության խստության պատճառով կոչվեց Տիրանիոն, որ է բռնակալ. Հռոդոսում աշակերտեց Դիոնիսիոս Թրակացուն. Լուկուլլոսը երբ հաղթեց Միհրդատին, Տիրանին էլ գերի տարավ Հռոմ, ուր նա շատ առաջադիմեց. շինեց առաջին գրադարանը 30 000 գրքով. փրկեց Արիստոտէլի գործերը. կարգավորեց Կիկերոնի գրադարանը, և նրա տանը քերականության և

ճարտասանության դաս էր տալիս։ (Ռօլէնի Հնախօս. Զ. էջ 12—14, ուր հայտնի կերպով ասված է, թե Պոնտացի էր. իսկ Հ. Գ. Ն. Բազմ. 1927, 170 բռնակալը դարձնում է Տիրան և շինում է Տիրան Հայկազն)։

— 3. Տիրան Ա, թագավոր Հայոց (131—152՝ Զամչ.). որդի Արտաշէս Բ-ի և հաջորդ Արտաւազդ Բ-ի. կյանքը անցկացրեց որսով ու զբոսանքով. ձյան հյուսի տակ մնալով մեռավ.—Խոր. Բ. ծդ, ծե, կա—կդ. Ուխտ. Ա. խդ, ծդ. Արծր. Ա. ը. Ասող. Ա. ե. Նհպտք. 90. Մագ. Թղ. ժթ. Շնորհ. Վիպ. 347. Սամ. անեց. 57. Մխ. անեց. գ, թ. Մխ. այրիվ. 18. Մին. համդ. 20. Վրդ. ժէ. Զքր. սարկ. Ա. 2—սեռ. Տիրանայ՝ Խոր. Բ. ծգ, ծե, կբ, կգ. Ուխտ. Ա. խգ—խե. Նհպտք. 90։—Ըստ Սուտ Սեբ. Ա. 10 Տիրան Ա որդի և հաջորդ Արտաշէսի՝ ավելի առաջ է քան Տիգրան Բ։

— 4. Տիրան Բ, Արշակունի, թագավոր Հայոց՝ «339—350 թթ.», որդի և հաջորդ Խոսրով Բ-ի. թոռն Տրդատի։ Խոսրովի մահից հետո, երբ պարսիկները արշավեցին Հայաստան, Տիրանը՝ Վրթանէս կաթուղիկոսի հետ Պոլիս գնաց, ուր օգնություն և թագ ստանալով եկավ Հայաստան («339 թ.»). Փիսակի մատնությամբ բռնվեց Շապուհից, կուրացվեց և դահավիրկ եղավ («350 թ.»)։ Հունաց օգնությամբ վտարելով պարսիկներին՝ գահ նստավ Տիրանի որդին՝ Արշակ Բ, որ գժտվելով իր հոր հետ՝ խեղդել տվեց նրան («358 թ.»).—Բուզ. Գ. ե, ժբ, ժդ, ժը, ի, իա. Դ. ժե. Սուտ Սեբ. Ա. 10. Բ. 15—16. Փարպ. (ա), ժե. Խոր. Գ. ժ—ժե, ժէ, իբ. Կղկնտ. Ա. ժգ. ՅՀ. կթղ. ժա. Եղն. եր. 266. Արծր. Ա. ժ. Մեսր. եր. 48. Ասող. Բ. ա. Մագ. Թղ. ժթ. Շնորհ. Վիպ. 757. Մխ. այրիվ. 18. Շնորհ. սրգ. 19. Նհպտք. 90. Սամ. անեց. 65, 66. Մխ. անեց. գ, ժ, իբ. Կիր. 10, 11. Վրդ. իբ. Յայսմ. դեկ. 1, յնվ. 31, փետ. 3. Տաթե. ձմ. իգ. Մին. համդ. 23, 24. Հաւաք. 11, 12. Վրք. և վկ. Բ. 284. Ջուղ. 42. Զքր. սարկ. Ա. 3. Վրաց աղբ. Ա. 75.—սեռ. Տիրանայ՝ բց. ի Տիրանայ՝ Բուզ. Գ. ժբ, ժդ, ի, իա, Դ. ա—գ. ժդ. ե, դ, է, Զ. է. Սուտ Սեբ. Ա. 10, Բ. 15, 16. Եղիշ. 7. Խոր. Գ. ժ, ժա, ժգ—ժը. իբ, իդ. Եզն. եր. 266. Կղկնտ. Ա. ժգ. ՅՀ. կթ. ժա, ժբ. Արծր. Ա. ժ. Մեսր. եր. 13—15, 17. Պտմ. Ներս. 5. Ներբ. հորդ. 41. Ասող. Բ. ա. Շնորհ. Վիպ. 767, 774. Մխ. անեց. իբ. Միխ. աս. իթ (=իը). Վրդ. իբ. Հաւաք. 11. Մին. համդ. 24. Նհպտք. 90. Յայսմ. դեկ. 1, յնվ. 31, փետ. 3. Ջուղ. 42.—գրծ. Տիրանաւ՝ Բուզ. Գ. ժգ, ի, Դ. ա.—Վրաց. աղբ. Բ. 95 (գրված Տերան)։

— 5. Տիրան իշխան, որդի Խոսրով Ա-ի, եղբայր Տրդատի. աղջիկը Յուսիկի կինն էր.—Justi 325 բ, ըստ Բուզ. Գ. 5։

— 6. Տիրան Մամիկոնեան, եղբայր Վահանի, որդի Սմբատի և Թոռ Գայլ Վահանի. կառավարեց Տարօնը՝ հետ մղելով Պարսից արշավանքները. 8000 զորքով դիմադրեց արաբների 18 000 զորքին և մեռավ քաջությամբ («639 թ.»).—Մամիկ. դ, ե և էջ 56—58.—տես. Տիրանայ՝ Մամիկ. ե և էջ 56, 58։

— 7. Տիրան, վարդապետ կաթողիկոսարանի (Ժ դա՞ր).—Լաստ. Բ. (տե՛ս վարը Տիրանուն)։

— 8. Տիրան Կապանեցի, նշանավոր վարդապետ (ԺԱ դար).—Ուռհ. 179։ (Ըստ Աղգապ. 1272. Տիրանունն է, որ տե՛ս)։

— 9. Տիրան վարդապետ, ունի անծանոթ մի գրություն «Առ բարեպաշտ իշխան մի հայոց» (ԺԳ դար). հիշում է Վարդան Այգեկցին.—Տաշեան, Ժղվծ. առակաց Վարդանայ, 65։

— 10. Տիրան, ումն «Հայոց վարդապետ» հիշված է նաև հետևյալ աշխատության մեջ. «Հարցմունք Կոմիտասայ և Տիրանայ Հայոց վարդապետի», ժամանակն անհայտ (տե՛ս Ջեռ. Վեննետ. Բ. 716)։ Հրապարակիչը՝ Հ. Բ. Սարգիսեան՝ փոխանակ ամբողջական տեղեկություն տալու այս կարևոր գործի մասին, հիշում է անցողակի մի ծանոթության մեջ՝ ասելով. «Հաւաքողն է Գր. Տաթևացի իր խառնափնդոր ոճով»։ Փիլիսոփայական հմտությամբ օժտված այս մեծ հեղինակի՝ Գր. Տաթևացու մասին պապամոլ Վեննետիկցիների դատապարտելի արհամարհական վերաբերմունքն ամենքիս հայտնի է, բայց պապամոլությունը հասցնել այն աստիճանի, որ հեղինակների գործերի պարզ թվումն էլ ուրանալ ու անտեսել... դա արդեն չափազանց պապական է։

— 11. Տիրան անունը հիշված է նաև 1745 թ. (Ջամբռ 179)։

ՏԻՐԱՆԱՄ, ար. մեկնությունը տե՛ս Տիրան (Հիւբշ. 88)։

— Տիրանամ սարկավագ. աքսորվեց Մեծն Ներսէսի հետ՝ Վաղէս կայսեր հրամանով.— Բուզ. Դ. ը։

Տիրանամ=Տիրանո՞մ. թե՞ անուն չէ։

+ ՏԻՐԱՆՈՒՆ, ար. <հյ. տէր+անուն բառերից։

— 1. Տիրանուն, դրան քահանա, անդամ Խաչենի եկեղեցական ժողովի, որ գումարեց Անանիա Մոկացի («946—968 թթ.») կաթողիկոսը.—Անան. ապար. 134 բ։

— 2. Տիրանուն երեց, որի հետ միասին Սիմէոն վանահայրը շինել է Հաղբատի տաճարը 991 թ.—Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 63. Մովսէսեան, Լոռիի Կիւր. թգ. 30։

— 3. **Տիրանուն**, *կազմարար. 999 թվին կազմել է Սիմէոն Աղբակեցու գրած Մեկնութիւն թղթոցն Պօղոսի, Եփրեմի և Ոսկեբերանի.—Զարբ. Թրգմ. 452 (տպ. հասարակ անվան ձևով), Հայապ. 309։*

— 4. **Տիրանուն**, *իմաստասեր Կապանեցի (այլ ձեռ. Տէր Անան). ուղեկից եղավ Պետրոս Գետադարձ կաթուղիկոսին՝ Պոլիս ուղևորության ժամանակ («1047 թ.»).— Ուռհ. 105.—Հմմտ.* **Տիրան Կապանեցի**։

— 5. **Տիրանուն** *վարդապետ, մատենագիր. ունի «Պտմ. հարցմանց թագաւորացն Աղուանից (Ատրներսեհի և Փիլիպէի)» (Գ. Տ. Մկրտչեան, Հայկականք 21—26)։ Նույնը* **Տիրան** *վարդապետ անունով՝ Ձեռ. Կարին. 31, Արէլ Մխիթարեանց, Արրտ. 1876 Դ. էջ 63—65 և մի հատված՝ էջ 65—66, Զարբ. Հին դպր. 793—794։ Վերջինս նրան է տալիս նաև Թուղթ առ Սեննքերիմ թագաւոր վասն հաւատոյ, որից մի հատված* REA *հտ. 2 (1922), էջ 248 Տիրան վարդապետի անունով։ Նույնը տե՛ս և Ձեռ. Դաշեան, Ա. 87 ա և Ձեռ. Վեննետ. Բ. 862՝ Տիրանի անունով։ Ըստ Մխ. այրիվ. 64 Տիրանուն է կաթուղիկոս Աղուանից, որ գրել է «Լուծմունք 500 դժար բանից», բայց էջ 24 կաթուղիկոսների ցանկում չի հիշում Տիրանունը։ Ըստ Շահխաթ. այս Տիրանունը Աղուանից Վիրոյ կաթուղիկոսի տեղակալն է, որ այլուր կոչվում է Զաքարիա (Բարխուտ. Պատմ. Աղուանից Ա. 93)։*

— 6. **Տիրանուն**, *եղբայր Պետրոսի՝ ստացավ մի Յայսմաւուրք (ԺԵ դար կամ ավելի ուշ).—Տաշեան, Ցուց. 889 ա։*

\+ *ՏԻՐԱՆՑ, իգ. անշուշտ* **տէր** *բառից։*

— 1. **Տիրանց**, *դուստր Բարսեղ երեցի և քույր Նորաւգէս քահանայի, որ էր գրիչ ի Սեբաստիա 1222 թ.—Տաշեան, Ցուց. 558։*

— 2. **Տիրանց**, *երկրորդ կին Տիրատուրի և խորթ մայր Երեմիաս քահանայի, որին մեծացրեց մինչև չափահաս դառնալը և ապա գնաց հեռու երկիր՝ ճգնական կյանքով ապրելու։ Այս Երեմիան է, որ Կարնոյ Կան գյուղում գրել տվեց մի չքնաղ Աւետարան, 1283 թ.—Ձեռ. Վեննետ. Ա. 644։*

— 3. **Տիրանձն**, *կին Գրիգոր քահանայի, որ Հաղարծինի վանքում, Աստուածատուր քահանային գրել տվեց մի Աւետարան, 1284 թ.—Թորոս աղբ. Բ. 339։*

— 4. **Տիրանց**, *կին Պօղոսի, մայր Մխիթար գրչի, որ օրինակեց Գայլիձորում Գիրք լուծմանցը 1315 թ.—Հայապ. 526։*

— 5. Տիրանց ոմն, իգ. հիշված է անթվական մի հիշատակարանում.—Ջեռ. Վասպ. 259։

— 6. Տիրանց, կին Պողոսի և մայր Մխիթար գրչի, որ Եկեղեաց գավառի Երկայնի վանքում օրինակեց Հին Կտակարանը՝ 1327 թ.— Ջեռ. Վենետ. Ա. 160։

— 7. Տերանց, կին Մարգ քահանայի և մայր Յոհան գրչի, որ օրինակեց Աւետարանը՝ 1355 թ.—Ջեռ. Վասպ. 209։

— 8. Տիրանց, կին Սահակ քահանայի և մայր Ստեփաննոսի, որ ստացավ մի ժողովածու, 1360 թ.—Քոսեան, Հայք ի Ջմիւռնիա Բ. 83։

— 9. Տէրանձն, մերձավոր Ստեփաննոս գրչի, որ Մոկաց Ծպատի վանքում օրինակեց Մայր Մաշտոցը 1369 թ.—Թորոս աղբ. Բ. 427։

— 10. Տիրանց, երեցկին Մելիքսեթ քահանայի և մայր Ստեփաննոս քահանա գրչի, որ Խիզանում օրինակեց Աւետարանը 1404 թ.—Նոտարք 23։

— 11. Տիրանց, տատիկը (կամ նանիկն է) Յովհաննէս քահանայի, որ գրեց մի Աւետարան՝ Մոկաց Կաղթանց գյուղում 1409 թ. և մի Աւետարան էլ Ջերմաձորի Ակոռոյ վանքում, 1417 թ. վերջինիս գրության առթիվ հատկապես ասում է, թէ նանիկն էլ «բազում աշխատեցաւ ի սպասաւորութեան մեզ». 1417 թ.—Ջեռ. Վասպ. 303։

— 12. Տիրանց, դուստր Ստեփաննոսի՝ եղբոր Թումայ կրոնավորի, որ Ծպատ անապատում գրել տվեց մի Աւետարան 1421 թ.—Ջեռ. Վասպ. 332։

— 13. Տիրանց, հոգևոր մայր Վարդան աբեղայի, որ Խոսրովայ վանքում, Ստեփանոս կրոնավորի համար օրինակեց Աւետարանը 1430 թ.—Ջեռ. Վասպ. 359։

— 14. Տիրանց, Թումայի հետ հիշված են իբրև «հոգևոր ծնողք» Վարդան աբեղայի, որ Խոսրովայ վանքում օրինակեց Աւետարանը 1430 թ.—Նոտարք 94։

+ՏԻՐԱՊԵՏ, ար. <հյ. տէր և պետ բառերից. մի անգամ հիշված ունենք ԺԴ դարից՝

— Տիրապետ, որդի Հազարշահի, հրախտավոր գրչի նախքան 1420 թիվը.—Տաշեան, Ցուց. 666 ա։

ՏԻՐԱՏԷՐ քահանա, որի հիշատակին իր որդիքը՝ Ղուկաս և Եղիա կանգնեցրել են մի խաչքար՝ Վերին Ախտա գյուղում,

1266 թ.—Խաղբակեանք 134, Սիսական 175 (վերջինս կարդում է Տիրայ ծեր քահանայի)։

ՏԻՐԱՏԻԿԻՆ, դուստր Առաքել քահանայի (№ 40) և կին Գէորգ քահանայի (№ 100). պապի Գէորգ երեցի (№ 101), որ Երզնկայում օրինակեց մի ճաշոց 1391 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 241։

+ ՏԻՐԱՏՈՒՐ, ար. <հյ. տէր+տուր բառերից. իբր «Տիրոջ տվածը». համազորները տե՛ս Աստուածատուր. նույնը նաև Տեառնատուր, Տէրտուր: Գործածական է այժմ էլ. կրճատ ձևը՝ Տատուր, որից Տատրյան ազգանունը (եթե չէ Աստուածատուր>Ծատուր անունից)։ Հնից կա Տուտուր և Տուրտուր՝ ԺԶ դա՞ր (տե՛ս Ձեռ. Սանաս. 2 ա).—Իբր բարդ բառ հիշում է Սիմ. քեր. 206։

— 1. Տիրատուր արքեպիսկոպոս Արտազի, անդամ Կարնոյ ժողովի («633 թ.»).—Տաշեան, Ցուց. 114 բ. Չամչ. Բ. 328, 538։

— 2. Տիրատուր երեց, նվիրատու ձեռագրի (1204 թ.).—Հայապ. 450։

— 3. Տիրատուր, առաջնորդ Սաղմոսավանից. Մկրտիչ քահանային գրել տվեց Խոսրով Անձևացու Մեկնութիւն ժամակարգութեան, Պատարագամատոյց, Մեսրոպ Երեց, Ջենոբ Գլակ և Յովհաննէս Մամիկոնեան, Կարբի 1278 թ.—Պատմ. Տարօնոյ, Երևան, 1941, էջ XII—XIII, Շողակաթ 204։

— 4. Տիրատուր քահանա, գրեց Մանրուսմունքը Սսոյ Ս. Սիմէոն եկեղեցում, 1280 թ.—Սիսուան 223 ա։

— 5. Տիրատուր, արքեպիսկոպոս, առաջնորդ Արքակաղին անապատի, հրամայեց Պօղոս գրչին՝ գրել մի Աւետարան, Դաւիթ եպիսկոպոսի համար, 1280 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 50։

— 6. Տիրատուր, արքեպիսկոպոս Արքակաղնի 1280 թ.—Հացունի, Կարևոր խնդ. 264։

— 7. Տիրատուր, հայր Երեմիաս քահանայի, որ Կարնոյ Կան գյուղում գրել տվեց մի չքնաղ Աւետարան, 1283 թ.—Ձեռ. Վեննետ. Ա. 644։

— 8. Տիրատուր, եպիսկոպոս Բասենի. անդամ Սսոյ եկեղեցական ժողովի («1307 թ.»).—Այրարատ 43, Ազգապ. 1786։

— 9. Տիրատուր Կիլիկեցի, գրիչ. օրինակեց Աւետարանը՝ Գայլաձորի վանքում, 1309 թ.—Սեղրակեան, Հնութ. Երնջակու 30։

— 10. Տիրատուր, որդի Յովհաննէսի և եղբայր Աստուածատուր երեցի, որ օրինակեց Աւետարանը, 1327 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 460)։

— 11. Տիրատուր, քահանա Կանչ գյուղի (Կիլիկիա). պատա-

ջրագելու ժամանակ Մանուճիհր վարդապետը կռիվ հանեց նրա դեմ՝ կաթոլիկական մի խնդրով (1336 թ.).—Ջամչ. Գ. 332. Ազգապ. 1889. ավելի մանրամասն տե՛ս Սիսուան 194 և ծան. 2 (հիշել եմ նաև Կիրակոս № 61). անունը լատին տառադարձությամբ գրված է Diracoe, որ ըստ իս՝ պետք է կարդալ **Տիրացու**. ուրիշներ կարդում են Կիրակոս, Տիրակ, Տիրատուր։

— 12. **Տիրատուր**, «ծառայ սուրբ Աւքսենտին». հիշատակագիր. հիշված է Խրիմի Սուրխաթ քաղաքում գրված մի Աւետարանում, 1347 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 756։

— 13. **Տիրատուր**, մեծ վարժապետ, ուսուցանում էր Վայոց Ձորի Հերմոնի վանքում, 1349 թ.—Սմբատեանց, Երնջակ 179։

— 14. **Տիրատուր** վարդապետ, ուսուցիչ Յովհ. վարդապետ Որոտնեցու (ԺԳ—ԺԴ դար).—Ազգապ. 1958 (Մեծոփ. 15 գրում է Որոտնեցու համար, թե էր «յաշակերտաց մեծին Եսայեայ և Տիրատրոյ վարդապետաց մերոց»).—**Տիրատուր** մեծ հռետոր հիշված է իբրև ուսուցիչ Հերմոնի վանքում 1338 և 1350 թ. (տե՛ս Սիսական 125 բ)։

— 15. **Տիրատուր**, «տիեզերալոյս վարդապետ», հիշված է իբրև հեղինակ 22 հանելուկների. թվականն անհայտ (Ձեռ. Վենետ. Բ. 651), Ալիշան, Յուշիկք Բ. 124, Յովնանեան՝ Հետազ. Ա. 61).—Կա և մի ուրիշ **Տիրատուր** վարդապետ, որ գրել է Վարդավառի վրա մի ճառ և որ Հ. Բ. Սարգիսեան համարում է ԺԴ դարից (Ձեռ. Վենետ. Բ. 1080)։

— 16. **Տիրատուր** վարդապետ. ժամանակակից Բուրթէլի (1401—1402 թթ.), որի վրա կան զրույցներ.—Տաշեան, Ցուց. 169, 178։

— 17. **Տիրատուր**, որդի Յովհաննէսի, դեռ պատանի՝ ստացավ «Եսայի և Թուղթք Պաւղոսի» (1356 թ.).—Տաշեան, Ցուց. 394։

— 18. **Տիրատուր** քահանա, ստացող. Ստեփաննոս գրչին օրինակել տվեց Ն. Շնորհալու տաղերը, 1374 թ.—Manus. Bibl. nat. էջ 146։

— 19. **Տիրատուր** քահանա, որդի Կիրակոսի, վաճառեց մի ձեռագիր Յայսմաւուրք՝ Գրիգոր քահանային, 1394 թ.— Manus. Bibl. nat. էջ 100։

— 20. **Տիրատուր** գրիչ. օրինակել է Վարդան վարդապետի այլաբանական աղյուսակը (ԺԴ դար).—Manus. Bibl. nat. էջ 64։

— 21. **Տիրատուր**, նշանավոր վարդապետ, աշակերտ Դաւթի՝ աշակերտի Եսայի Նչեցւոյ (ԺԴ դար).— տեռ. **Տիրատու**՝ Պորգ.

695.—Անշուշտ նույն է Տիրատուր վարդապետ «մեծ հռետոր», որ նախապես զինվորյալ էր կայսեր և որին վերագրվում են մի քանի ճառեր. ժամանակն անհայտ (ըստ Զարբ. Հին դպր. 763, 794).—Ջամչ. Գ. 453 շուրջ 1400 թվին դնում է Տիրատուր վարդապետ, որին վերագրում է քարոզներ և մեկնություններ.—Ձեռ. Կարին. 24 գիտէ Տիրատուր վարդապետ, որ գրել է քարոզներ, և էջ 217՝ Տեառնթիւն մարգարէին Դաւթի ի Տիրատուր վարդապետէ։

— 22. Տիրատուր, Մեծոփի տաճարի ճարտարապետներից (1402 թ.).—Ազգապ. 2001, Նոտարք 30։

— 23. Տիրատուր, որդի Հնազանդի, որ գնեց մի Աւետարան և նվիրեց Խաչիք գյուղի (Երզնկա) եկեղեցուն, 1404 թ.—Թորոսաղբ. Ա. 66։

— 24. Տիրատուր, Մեծոփայ վանքը շինող ճարտարապետներից մին 1409 թ.—Նոտարք 30։

— 25. Տիրատուր, որդի Յովհաննէս աբեղայի, որ ստացավ մի Աւետարան 1409 թ.—Քոսեան, Հայք ի Զմիւռնիա Բ. 23։

— 26. Տիրատուր, եպիսկոպոս Աղուանից կաթուղիկոսության. հիշված է 1423 թ.—Նոտարք 72։

— 27. Տիրատուր աբեղա, իր ընկեր Վարդան աբեղայի հետ միասին օրինակել է Մեկնութիւն Կաթուղիկեայց՝ Մկրտիչ աբեղայի համար, Երուսաղէմում, 1427 թ.—Նոտարք 82։

— 28. Տիրատուր վարդապետ. կա սրա քարոզների մի հավաքածու, որ կրում է հետևյալ վերնագիրը. «Քարոզգիրք արարեալ և շարադրեալ Տիրատրոյ բանիբուն և ամենիմաստ վարդապետի և փիլիսոփայի Հայոց ի փառս անարատ հարսինն Քրիստոսի և սրբոյ եկեղեցւոյս Հայաստանեայց և ի յօգուտ ուսումնասիրաց մանկանց նորին».—Ձեռ. Հալէպի Ա. էջ 372 № 23. ձեռագիրն է 1758 թվից.—Քարոզների ցանկը տե՛ս անդ.—Տիրատուր վարդապետի քարոզները տե՛ս և Ձեռ. Թաւր. 116 (1738 թվից)։

— 29. Տիրատուր, ավագերեց Հայոց Կամենիցի (1446 թ.).—Ալիշան, Կամենից, էջ 134։

— 30. Տիրատուր, նվիրատու Նեղուցի (Արզաքան) Ս. Աստուածածին վանքի, 1451 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 312։

— 31. Տիրատուր քահանայ, հորեղբայր Կարապետ վանահոր, որ Պառուագրակի վանքում օրինակեց Աւետարանը 1454 թ., երբ Տիրատուրը մեռած էր.—Rapport Belgique 97։

— 32. Տիրատուր, հորեղբորորդի տանուտեր Մանկտաւագի,

որ Մցի գյուղում գնեց մի Ավետարան 1455 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 582։

— 33. Տիրատուր, որդի Յովհաննէսի՝ եղբոր Թումայի, որ Աղթամարում, Ներսէս աբեղային գրել տվեց մի Ավետարան, 1460 թ.—Ձեռ. Վասպ. 433—434։

— 34. Տիրատուր, որի հոգու փրկության համար մի խաչքար է կանգնեցրել կնքահայրը՝ Ջոլախաչ գյուղում (Նոր-Բայազետ), 1468 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 546։

— 35. Տիրատուր, եղբայր Յովհաննէս եպիսկոպոսի, որ գրել տվեց մի Ավետարան, Խիզան, 1486 թ.—Ձեռ. Վասպ. 503։

— 36. Տիրատուր, մերձավոր Աստուածատուրի, որ գնեց մի հին Ավետարան 1488 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 492։

— 37. Տիրատուր, նորընծա կրոնավոր Գողթան Բուստայ անապատում 1489 թ.—Սմբատեանց, Երնջակ 276։

— 38. Տիրատուր, գրվում է ոչ օրինական կաթողիկոս Սսի, 1586 թ. Ազարիա Ջուղայեցու և Յովհաննէս Դ Այնթապցու միջև, նախքան Յովհաննէս, որ նստել է 1588 թվին և նույնպես ոչ օրինական կաթողիկոս է համարվում (Սիսուան 218)։

— 39. Տիրատուր գրիչ, Գրիգոր գրչի հետ օրինակեց Դավիթ Անյաղթի գործերը՝ ԺԵ—ԺԶ դար (Ձեռ. էջմ. 1894=1852).—Մանանդեան, Յունաբ. դպր. 287, 293։

— 40. Տիրատուր Նոտար, գրել է նոր վկա Յովհաննէս եպիսկոպոս Դարանաղցու (+1592 թ.) պատմությունը. տե՛ս Ղ. վրդ. Փիրղալէմեան, Ջորս ընկերք, Թիֆլիս, 1882 թ., էջ 70։

— 41. Տիրատուր գիտնական Սսեցի, եպիսկոպոս Անկյուրիոյ, եղավ պատրիարք Պոլսոյ, հաջորդելով Ստեփաննոսին («1561—1563 թթ.»). ապա պաշտոնանկ լինելով՝ տեղը նստավ Յակոբ Ա, իսկ ինքը գնաց Սսի կաթողիկոս օծվեց՝ գահակալուրկ Ազարիայի փոխարեն («1586 թ.»). երկու տարուց հետո, Յովհաննէս Այնթապցին կաթողիկոս օծվեց («1588 թ.») որով Կիլիկիան երեք կաթողիկոս ունեցավ, մինչև որ «1592 թ.» Ազարիան գահը ձեռք ձգեց և բոլորին վտարեց (Ազգապ. 2283)։ Տիրատուրը նորից դարձավ պատրիարք Պոլսոյ «1596 թ.», իբր հաջորդ Սարգիս Ովնեցու, բայց երեք տարի հետո նորից գահազուրկ արվեց («1599 թ.») (Ազգապ. 2285), տեղը դրվեց Մելքիսեդեկ Գառնեցին, որ Դավիթ Դ կաթողիկոսի աթոռակալն էր և հանգանակության համար Պոլիս էր գնացել (Ազգապ. 2289).—Ձեռ. Հալէպի Բ. 31 բ. Դրոն. 318։

+ ՏԻՐԱՑՈՒ, ար. <հյ. տիրացու բառից. հմմտ. Սարկաւագ.

Տէրտէր և այլն, որոնք եկեղեցական պաշտոնի անուն են և դարձել են անձնանուն։

— 1. Տիրացու քահանայ, Խարբերդում, Յոհաննէս քահանայի հետ միասին առաջնորդ և օգնական եղան Կոզմա գրչին, գրելու Աւետարանը, 1205 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 400։

— 2. Տիրացու վարդապետ, առաջնորդ Դսեղի Բարձրաքար Ս. Գրիգոր վանքի, հիշված 1245 թ.—Խաղբակեանք 178։

— 3. Տիրացու, առաջնորդ Կիլիկիոյ Ակներ վանուց 1247 թ.—Տաթև 1927, 182։

— 4. Տիրացու, աշակերտ Վարդան վարդապետ Հաղբատացու. օրինակեց Տօնապատճառը 1267 թ. Հաղբատում.—Կնիք հաւատոյ. էջ 112։ Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 68։

— 5. Տիրացու Կարսեցի. պանդխտել է Կարսից Հաղբատ, աշակերտել է Վարդան Արևելցուն. գրիչ. օրինակել է իր ուսուցչի Տօնապատճառը Հաղբատի վանքում, 1267 թ.—Գիտ. նյութ. ժող. № 1, էջ 155—156, Շողակաթ 202։

— 6. Տիրացու եպիսկոպոս, հօրեղբայր և ուսուցիչ Բասիլ գրչի, որ Կիլիկիայի Խորին անապատում օրինակեց մի մեծ ճառընտիր 1270 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 235, 564, 1118. Սիսուան 152։

— 7. Տիրացու, ծաղկանկարել է այն Աւետարանը, որ գրեց Իգնատիոս գրիչը 1275 թ.—Ձեռ. Հալէպի Ա. 77։

— 8. Տիրացու երեց, կինն է Տիրուհի, երևի ստացողն է այս Աւետարանի, որ գրեց Իգնատիոս երեցը 1275 թ.—Ձեռ. Հալէպի Ա. 77։

— 9. Տիրացու ոմն, հիշված է այն Աւետարանի հիշատակարանում, որ գրեց Ռոմանոս վարդապետը Վասպուրականում 1276 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 427։

— 10. Տիրացու, գրիչ, արձանագրող կամ փորագրիչ Մխիթար Այրիվանեցու արձանագրության՝ 1289 թ.— Յովսէփեան՝ Մխիթ. այրիվ. էջ 4 բ։

— 11. Տիրացու, առաջնորդ Թադէոս առաքելոյ վանքի 1290 թ.—Հացունի, Կարևոր խնդ. 47. Արրտ. 1911, էջ 224։

— 12. Տիրացու, եպիսկոպոս, առաջնորդ Թադէոս առաքելոյ վանքի, 1285 թվին, երբ Լևոն Գ թագավորը այցելության եկավ վանքը, Տիրացուն սիրով ընդունեց նրան. նույնպես երբ Թորոս և Թովմաս եպիս. նոր կաթուղիկոսի ընտրության համար խնդրակ եկան այս վանքը, 1293 թվին (Сборн. матер. հտ. 29, էջ 11.

*Ձեռ. Ազուլ. Արրտ. 1911, էջ 224)։ Թաթարներից տանջվեց ու կողոպտվեց (Օրր. կթ)։*

— *13.* **Տիրացու,** *նշանավոր եպիսկոպոս Վասպուրականում (ԺԳ դար).—Կիր. Ե (Ազգապ. 1597 սխալմամբ գրում է Գէորգ տիրացու)։*

— *14.* **Տիրացու,** *քահանայ Մշոյ. հրամանավ Ստեփաննոս վարդապետի օրինակեց Ճաշոցը (ԺԳ դար).—Տաշեան, Ցուց. 181 ա։*

— *15.* **Տիրացու,** *կրոնավոր խորին անապատի. օրինակեց մի ժողովածու (1305 թ.).—Տաշեան, Ցուց. 771։*

— *16.* **Տիրացու,** *քահանա, որի անունով կա մի խաչքար Պօղոսի գյուղում, 1313 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 517։*

— *17.* **Տիրացու** *քահանա, Երզնկայում Կարապետ Ծիչողին գրել տվեց մի Շարական իր որդի Մարտիրոս վարդապետի համար, 1320 թ.— Ձեռ. Հալէպի, Բ. 146—147։*

— *18.* **Տիրացու** *քահանա, 1336 թ. տե՛ս Տիրատուր։*

— *19.* **Տիրացու,** *որդի պարոն Ստեփանոսի, որ թուղթ հայ- թայթեց Ստեփանոս քահանային՝ օրինակելու Աստուածաշունչը Քրիստափոր կրոնավորի համար, Սուրխաթ 1352 թ.—Ձեռ. Վասպ. 13։*

— *20.* **Տիրացու,** *որդի Պարոնշահի, հոգևոր հոր Յովհան վարդապետի, որ Սուրխաթում, Ստեփաննոս գրչին գրել տվեց Եսայի և Թուղթք Պօղոսի, 1356 թ.—Ձեռ. Բեռլինի 4 ա։*

— *21.* **Տիրացու** *քահանա, գրել տվեց մի մանրուսմունք՝ Ղուկաս գրչին, 1371 թվից քիչ առաջ.—*Bodleian *20։*

— *22.* **Տիրացու,** *առաջնորդ Մոկաց գավառի Կանաց վանքի. նահապետ գրչին գրել տվեց Եսայեայ մարգարէութիւնը 1380 թ.— Ձեռ. Սեբ. (=ՀԱ 1923, էջ 73)։*

— *23.* **Տիրացու,** *կրոնավոր, որդի Հայրապետի, միաբան Բարթուղիմէոս առաքյալի վանքի. 1339 թվին Ղազարավանքում գրված և Լենկթիմուրի զինվորների ձեռքն ընկած մի Աւետարան փրկանքով գնել ու ազատել է 1388 թ.—Ձեռ. Վասպ. 202։*

— *24.* **Տիրացու,** *եպիսկոպոս խորին վանաց (1395 թ.).—Սիսուան 151, որ և գրված Տիրատու՝ Տաշեան, Ցուց. 817—818։*

— *25.* **Տիրացու,** *կրոնավոր, որդի Հայրապետի (№ 55), միաբան Վարագայ վանքի 1399 թ.—Թորոս աղբ. Բ. 429։*

— *26.* **Տիրացու,** *ռէս (գյուղապետ). մերձավոր Դանիէլ սարկավագի, որ Աղթամարում օրինակեց մի Մաշտոց, 1404 թիվ.— Թորոս աղբ. 277։*

— 27. Տիրացու քահանա, հայր Մելիքսեթ գրչի, որ օրինակեց Քարոզգիրքը՝ Բաղէշ 1410 թ.—Նօտարք 37։

— 28. Տիրացու, հորեղբայր տանուտեր Յովհաննէսի, որ Աղթամարում, Դանիէլ քահանային գրել տվեց մի Աւետարան 1436 թ.—Ջեռ. Վասպ. 373։

— 29. Տիրացու «վարդապետ Վանանդեցի Սիւնեաց», անդամ էջմիածնի ժողովի («1441 թ.»).—Մեծոփ. յիշ. ա. Այրարատ 76, Նօտարք 122։

— 30. Տիրացու, որդի Մելքիսեթ երեցի, որ օրինակեց դանձարանը՝ Աւան գյուղում, 1453 թ.—Bodleian 134։

— 31. Տիրացու, քահանա Մշոյ, «ի մի գիրս ժողովեաց» (այսինքն կազմեց) այն Ճաշոցը, որ Յովհաննէս քահանա գրիչը օրինակել էր Մխիթար կրոնավորի համար, Արճէշում, 1457 թ.—Նօտարք 185։

— 32. Տիրացու, որդի Գուգարի, եղբայր Մելիքսեթի, որ էր վանահայր Երերան վանքի (1460 թ.).—Այրիվ. 16 բ։

— 33. Տիրացու քահանա, հայր Սամուէլ գրչի, որ օրինակեց Սաղմոսն ու Տօնացոյցը 1465 թ.—Ջեռ. Հալէպի, Ա. 190։

— 34. Տիրացու քահանա, հայր Մանուէլ երեցի, որ Երզնկայում Յովհաննէս քահանայի համար օրինակեց մի Աւետարան 1473 թ.—Թորոս աղբ. Բ. 420։

+ ՏԻՐԱՒԱԳ, ար. <հյ. տէր և աւագ բառերից. ունենք նաև սրա հակադիր ձևը՝ Աւագտէր: Հիշատակված է հիշատակագիր ոմն 1497 թ. (Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 45) և այլ ոմն Տիրաւագ՝ թվականն անհայտ (Ջեռ. Թաւր. 83 բ)։

— 1. Տէր Աւագ, միաբան Աղջոց Ս. Ստեփաննոս վանքի, որի համար առու է հանել 1287 թ.—Արձ. Շողակաթ, Ա. 26։

— 2. Տիրաւագ, ս? հիշված է Գլաձորի վանքում գրված մի Աւետարանի հիշատակարանում 1334 թ.—Թորոս աղբ. Բ. 375։

— 3. Տիրաւագ երեց, գրիչ. Գրիգոր և Սիմէոն կրոնավորների համար արտագրեց Աւետարան և Ճաշոց (միասին), Երուսաղէմ 1358-ին։ Իրեն կոչում է «անարժան և մեղսաթաւալ փանաքի և անարհեստ գրչի. սուտանուն տր. աւագ երիցու» (Ջեռ. Հալէպի Ա. 118 ա)։ Վերը, Ա. հատոր, էջ 323, № 22, կոչել եմ Աւագ քահանա։ Նկատի ունենալով այժմ իրեն տված այս նվաստացուցիչ ածականները, կարծում եմ «տր.» պատվանունը չէ, այլ անվան մասն է կազմում։

— 4. Տէրաւագ, պարոն, ազգական Տարօնի Յովհաննէս Ալի-

նախ եպիսկոպոսի, որին հյուրընկալեց, երբ սա պանդխտում էր Երզնկա, 1370 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 780։

— 5. Տիրաւագ (տէր), գրել տվեց Գանձարանը՝ Մանուէլ աբեղային, 1431 թ.—Ձեռ. Դաղեան, Բ. 45 ա։

— 6. Տիրաւաճ աբեղա, որդի Յովսէփ քահանայի և եղբայր Ալեքսիանոս եպիսկոպոսի, որ Արքայից վանքում օրինակեց Աւետարանը, 1486 թ.—Ձեռ. Նոր Բայազ. 11 ա։

ՏԻՐԻԹ, ար.

— 1. Տիրիթ, տե՛ս Տրդատ:

— 2. Տիրիթ, որդի Արտաշէսի՝ անդրանիկ որդւոյ Տիրան Բ-ի. պատանդ էր Հունաց կայսեր մոտ. արձակվեց «351 թ.». և Հայաստան եկավ. սիրահարվելով Փառանձեմին, որ Գնէլի կինն էր, նրան տիրանալու համար չարախոսությամբ սպանել տվեց Գնէլին («359 թ.»), ըմբոստացավ Արշակ թագավորի դեմ և նրա հրամանով սպանվեց.—Բուզ. Դ. ե, ժա, ժե. Խոր. Գ. ժգ, իա—իգ, իե. Մեսր. եր. 43, 49.—սեռ. Տիրիթայ՝ Բուզ. Դ . ժե. Խոր. Գ. իգ (2 ձեռ. Տիրթայ). իե. Ասող. Բ. ա. Վրդ. իգ։—Ակինեան, Մատեն. հետազ. Բ. 105—135 ենթադրելով, թե Տիրիթի պատմությունը Ե դարի գուսանական մի երգ է, փորձում է վերականգնել, չափի վերածելով Փաւստոսի պատմության այդ մասը, իհարկե զուր և անհաջող։

— 3. Տիրիթ, հայր Յովհաննու վանաց՝ յանապատէն Քարմեղինայ (560 թ.).— Կղկնտ. Բ. ղ։

+ ՏԻՐԻԿ, ար. <հյ. տէր բառից. որ և Տիրակ, Տիրուկ (Հիւբշ. 88)։

— 1. Տիրիկ եպիսկոպոս Բասենի. ժամանակակից Խոսրով Գ-ի.—(Խոսրով Գ նստել է ըստ Ազգապ. 384—415 թթ., իսկ Տիրիկի թվականը Այրարատ 43 դնում է 370—373 թթ.).— Բուզ. Զ. ժգ.—սեռ. Տիրկան՝ Բուզ. Զ. ժգ։

— 2. Տիրիկ եպիսկոպոս Բագրեւանդի. ժամանակակից Ներսէս Բ կաթուղիկոսի («548—557 թթ.»).—ուղ. Տիրակ՝ Գիրք թղ. ժէ.—բայց. բցռ. ի Տիրկանէ՝ Գիրք թղ. ժզ։

— 3. Տիրիկ, որդի Բարոնի, իշխան Աղուան. մասնակցեց Պարտաւի եկեղեցական ժողովին. «768 թ.».—Զամչ. Բ. 413. Ազգապ. 882։

— 4. Տիրիկ, հոգևոր հայր Սարգիս եպիսկոպոսի, որ Գուգարաց Կոթիփորայ Ընկուզագոմ վանքում օրինակեց Յայսմաւուրքը 1427 թ.—Նոտարք 84։

ՏԻՐԻԿԷՍ, ար.

— Տիրիկէս, որդի քրմի. Լուսաւորիչը վարժեցրեց նրան քրիստոնեության մեջ և ձեռնադրեց եպիսկոպոս.—Ագաթ. § 845. Արար. Ագաթ. 72. Նույնին կոչում է Տերիկէս եպիսկոպոս Ատրպատականի։

ՏԻՐԻՃԱՆ, ար. իբր օրինակ անձնանվան հիշում են Թր. քեր. 16, Անան. քեր. 142, Սիւն. քեր. 206։—Ըստ Մառի, Վրաց լեզվով կա «Վկայաբանութիւն Դաւիթ և Տիրիճան եղբարց», որ թարգմանված է հայերենից, բայց հայ բնագիրը կորած է։

ՏԻՐԻՃԱՍ, ար. այս անունը մի անգամ գտնում եմ հիշված 1654 թ.—Ջամբռ, էջ 292։

Տ(Ի)ՐՀՈՒՆ, իգ.? (ԺԷ դար).—Ձեռ. Վասպ. 1012 թ.։

ՏԻՐՈՍ, ար. զինվորական էր. 100 տարեկան հասակում կանգնեցրեց մի խաչքար՝ Ալիղըրըղ (Նոր Բայազետ) գյուղի մոտ 1271 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 543։

— Տիրոս, 1503 թ. (Ձեռ. Վասպ. 127—128)։

ՏԻՐՈՏ, ար.

— 1. Տիրոտ, վանքեց Շաղատի մայր եկեղեցու, կարգված Բաբիկ Սիւնու ձեռքով. կոչված է հրաշագործ (Ե դար).—Օրբ. ժ.—սեռ. Տիրոտի՝ անդ։

— 2. Տիրոտ, տեր Պալունեաց. ստորագրում է այն թղթին, որ գրեց Բաբկէն կաթողիկոսը («490—516 թթ.») Պարսկաստանի ուղղափառներին.—Գիրք Թղ. ը։

+ ՏԻՐՈՑ, ար. <անշուշտ տէր բառից։

— 1. Տիրոց Արծրունի, որդի և հաջորդ Բաբկէնի. ուղեկից եղավ Լուսաւորչին՝ Կեսարիա ձեռնադրության գնալու ժամանակ.—Արծր. Ա. թ, ժ։

— 2. Տիրոց Սահառունի. տե՛ս Մերոյ։

— 3. Տիրոց իշխան Բագրատունի, կուսակից Վասակի՝ ընդդեմ ուխտապահների.—Փարպ. լգ. Եղիշ. 71.—գրծ. Տիրոցաւ՝ Օրբ. ժզ։

— 4. Տիրոց, հայր Մուշեղի և Ստեփաննոսի, որոնք իբրև վկա հիշվում են Տաթևի 844 թվի կալվածագրում.—սեռ. Տիրոցի՝ Օրբ. ԼԸ։

+ ՏԻՐՈՒԿ, ար. <հյ. տէր բառի նվազականից. հմմտ. Տիրիկ (Հիւբշ. 88)։ Նույնպես են լտ. Dominicus, հուն. Կիւրակոս, նաև Կիւրեղ անունները։

— Տիրուկ քահանա, որդի Մովսիսկան, ի Ջարիշատէ Վանանդայ. Մեսրոպ և եկեղեցականները պատգամավոր ուղարկեցին նրան

Պարսից մոտ՝ խնդրելու համար Ս. Սահակի կրկին գահակալությունը («432 թ.»).—Խոր. Գ. կե։ (Ալիշան, Յուշիկք, Ա. 349 կարծում է, թե գրած պետք է լինի Ս. Սահակի կենսագրությունը, որ կորել է)։

+ ՏԻՐՈՒՀԻ, իգ. <հյ. տէր բառի իգականից, ակնարկությամբ Մարիամ Աստվածամոր։ Հնագույն հիշատակությունը 1602 թ. (Թորոս աղբ. Ա. 185=Ձեռ. Սեբ.) (ՀԱ 1924, 331).—1640 թ. (Տաշեան, Ցուց. 703)։ Գործածական է և այժմ. փաղաքշական ձևերն են Պլ. Տիւրիկ (=Տիրուկ), Տիրուհ, Տիրօ:

1618 թ. (Ձեռ. Հալէպի Ա. 125 բ).
1622 թ. ( » » Ա. 292 բ).
1658 թ. ( » » Ա. 63 բ)։

— 1. Տիրուհի, կին Կոստանդեայ, հարսն է Պետրոս երեցի Կատենայեցւոյ, որ Հռոմկլայում գրեց մի Աւետարան 1248 թ. այս թվին Տիրուհին «տարաժամ և դեռաբոյս» մեռել էր անզավակ.—Թորոս աղբ. Բ. 351։

— 2. Տիրուհի, կին Տիրացու երեցի, որ երևի ստացողն է այն Աւետարանի, որ գրեց Իգնատիոս գրիչը 1275 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 77։

— 3. Տիրուհի, կին Սահակ քահանայի, որ ստացավ Կոստանդին Ա Բարձրբերդցի կաթուղիկոսի Աւետարանը, 1389 թ. —Ձեռ. Վենետ. Ա. 652։

— 4. Տիրուհի, կին Վասիլի, մայր Կոստանդին Զ Վահկացի կաթուղիկոսի, որ նստավ «1430 թ.».—Ազգապ. 5528։

ՏԻՐ, ար. հմմտ. պրս. تیر tir «Փայլածու մոլորակը, 2. արեգակնային չորրորդ ամիսը. տրէ. 3. ամեն մի ամսվա 13-րդ օրը». ոմանք սրանց են կցում զնդ. tištrya «Sirius, Շնիկ աստղը, որ երբ աստված պաշտվում էր. ջրերի հոսման և անձրևներ տեղալու պատճառն էր». այս ստուգաբանությունը սակայն ընդհանուր ընդունված չէ (Justi 325 բ, Horn, § 406, Barth. 651—652)։

— Տիւր կամ Տիր աստված, երազացույց, երազահան, որ է մեկնիչ երազոց. համապատասխանում է հուն. Ἑρμῆς և լտ. Mercurius աստվածներին։ Հայերենի պես Հերմէսն էլ կոչված է Ὀνειρόπομπος և ἡγήτωρ ὀνείρων. և շատ անգամ Գծ. ժդ. Հերմէս անվան դեմ լուսանցքում գրվում է «Տիր դիք» (Ալիշան, Հին հաւ. էջ 289).— սեռ. Տրի դից՝ Ագաթ. § 778.— Սարգսեան, Ագաթ. և իւր բազմ. 149:

* ՏԻՔԻԿՈՍ, ար. <հուն. Τυχικός անունից, որ թեև չունի

Bailly, բայց անշուշտ գործածական էր Հունաց մեջ։ Տիւքիկոս, մին յեօթանասնից (Գծ. Ի 4 և Եփես. Զ. 21). հմմտ. Տիւքիկոս գիտուն մաթեմատիկոս (Տրապիզոնում), որի մոտ սովորեց Անանիա Շիրակացին (է դար). բուն. նշ. «պատահական»։

— Տիւքիկոս Սեբաստացի, նոր վկա. նահատակվեց եղբոր՝ Գոհարինէի հետ (տե՛ս անդ)՝ 1155 թ.—(Տե՛ս և Տուկիոս.—սեռ. Տուքիկոսի՝ Ճշ. 609)։

+ ՏԻՓԱՐ, իգ. <հյ. տիպար «դեմք» բառի գավառ. տիփար ձևից. մի անգամ գտնում եմ հիշատակված 1512 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 646)։

+ ՏՂԱՊԱՐՈՆ, ար. <հյ. տղայ+պարոն բառերից, իբր թրգմ. հուն. παιδί «տղայ»+αὐθέντης «իշխան, պարոն» անվան. հմմտ. «այր մի անունն Պետինաֆէնդ, որ թարգմանի Տղապարոն, ազգաւ յոյն» (Տաշեան, Ցուց. 191 բ)։ Հիշատակված է երկու անգամ Տղապարոն ձևով՝ ԺԶ դարի՞ց (տե՛ս Տաշեան, Ցուց. 102 բ), Սիսուան 364 բ։

— 1. Տղապարոն ոմն, հիշված է Ձեռ. Վենետ. Բ. 874 (թիվն անհայտ)։

— 2. Տղապարոն, ա՞ր. թե՞. 1321-ից ուշ. Թորոս աղբ. Բ. 346։

— 3. Տղապարոն քահանա, ստացող. Խարբերդում Մինաս դպրին գրել տվեց մի Ցայսմաւուրք, 1444 թ.—Manus. Bibl. nat. էջ 101։ (Մի ուրիշ Տղապարոն քահանա, հիշվում է Manus. Brit. mus. 55 ա անթվական մի ձեռագրում)։

— 4. Տղապարոն, հայր Սպանշահի, որի հիշատակին Կարապետ ոմն ստացավ մի հին Աւետարան 1523 թ.—Ձեռ. Կես. ածած. 47 բ։

+ ՏՂԱՏԻԿԻՆ, իգ. <կազմված հյ. տղայ+տիկին բառերից, նախորդի ոճով։

— 1. Տղատիկին, կին պարոն Բոնաւորի. գրել տվին մի Աւետարան և նվիրեցին Խծկօնից վանքին 1236 թ., հետո էլ այգիներ 1240 թ.—Յովսէփեան, Խաղբակեանք 17, Նիւթեր և ուս. Ա. 25, 27 (ուր կա և իր նկարը). Շիրակ 128.—Տե՛ս և Բոնաւոր:

— 2. Տղատիկին, հիշված է անթվական մի հիշատակագրության մեջ, Ձեռ. Վասպ. 186։

ՏՆԴԻ՞Ն (սեռ. Տնդնի), ա՞ր. թե իգ. մերձավոր Կրակացի Ներսէս աբեղայի, որ Երուսաղէմում օրինակեց Ճառընտիրը, 1335 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 348։

ՏՆԿԻԿ, Հա՞յր խաչատուր սարկավագի, որ Տփղիսում օրինակեց Աւետարանը 1304 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 488։

ՏՆՏԵՍ, անձնանո՞ւն թե հասարակ անուն, որ հիշում է Կարապետ գրիչը իր օրինակած Աւետարանի հիշատակարանում 1357 թ.—Ձեռ. Վասպ. 214։

ՏԱՒՂԱԽ, հայր Տանուտէր Մարտիրոսի, որ իր վաղամեռիկ եղբոր՝ Շարիբէկի հիշատակին գրել տվեց մի Աւետարան, 1489 թվին.—ՀԱ 1894, էջ 52 ա։

* ՏՈՂԱՆ, ար. <թրք. طوغان toγan «բազե» բառից։ Հիշված է Տօղաճ ոմն նվիրատու ձեռագրի (ԺԴ կամ ԺԵ դար). Հայապ. 549։

— 1. Տօղաճ Ջարդրանեցի, իր հօրեղբորորդի Էլպասանի հետ միասին դրամապես օգնեցին մի Աստուածաշնչի արտագրության, Գայլաձոր 1332 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 127։

— 2. Տօղաճ, տանուտեր Արճէշի Սոսկան գյուղի. կինն է խաթուն-մէլիք, որդիներն են Սիրուն և Վարոս, աղջիկները՝ Բաղդատ և Բէգխաթուն. Յովհաննէս քահանային գրել տվեց մի Աւետարան 1489 թ.—Թորոս աղբ. Բ. 437։

ՏՈՂԱՍԼԱ, որդի Պետունայի, որ մի խաչքար է կանգնեցրել Քանաքեռում և այգի է թողել իր որդիներին իբր ժառանգություն, 1305 թ.—Բանաս. 1903, 32 (նույնը սխալներով՝ Այրարատ 297)։

ՏՈՏԼԻ, եղբայր Ուխտատուր վանականի. միասին աղբյուր են բերել Թալին, 783 թ.—Արձ. Այրարատ 139։

ՏՈՐՔ, ար.

— Տօրք հսկա, Հայկակ Բ-ի? թոռան՝ Պասքամի ցեղից, կոչված Անգեղեայ՝ դեմքի սաստիկ տգեղության պատճառով։ Վաղարշակը կարգեց նրան կուսակալ Արևմտից։ Իրանից սերվեց Անգեղ տուն նախարարությունը.—Խոր. Բ. ը. Շնորհ. աո. 115. Մխ. այրիվ. 50.—որ և Տուրք՝ Ասող. Ա. ե. Սամ. անեց. 49. Վրդ. ժդ (հրտ. Էմինի՝ Տօրքն). Առաք. լծ. սահմ. 494.—Ադոնց REA VII 1 (1927 թ.), 185—194 ընդարձակ խոսում է Տորքի մասին, որ համարում է հին Հայոց աստվածներից մին և նույնացնում է փոքր-ասիական Tarku կամ Tarhu աստուծու հետ (կրկնում է Roth ՀԱ 1927, 744). անգեղ բառն էլ համարում է անգղ թռչունը, որովհետև այդ աստվածը ներկայացվում էր անգղի ձևով. Հմմտ. նաև tarku և հուն. Τόργος «անգղ»=ավար. ətarku «անգղ»։— Աբեղեան, Հայ ժող. առասպ. 259—283 ընդարձակ խոսում է Տորքի մասին և ձեռագրաց համեմատությամբ Խորենացու ճիշտ ձևը համարում է Տուրք, որ մեկնում է հյ. տուրք բառով. Հմմտ. Պարգև։ Իսկ Համե-

մատուցյան համար իր հիշած Տուրք եպիսկոպոս Բասենի տե՛ս Տուրգէոս: Տե՛ս նաև Աբեղեան, Հայոց հին գրակ. պատմ. Ա. 26։

+ ՏՈՒԱԾ, ար. Հանշուշտ հյ. տուած բառից, իբր «տուրք Աստուծոյ»։

— Տուած ոմն, հիշված Ջեռ. էջմ. № 671 Գն. (ԺԵ դա՞ր)։

* ՏՈՒԲԻԱ, ար. < ասոր. հուն. Τωβιας (Հիւբշ. 289). նախնական Բագրատունեան անուն, ըստ. Խոր. Բ. կգ. Մխ. անեցիա։

— Տուբիա, իշխան Բագրատունի, հրեայ, որ հյուրընկալեց Թադէոս առաքյալին Եդեսիոյ մեջ և եղավ առաջին քրիստոնյան.— Ուղ. Տուբիա՝ Մխ. անեց. Թ. ժե.—սեռ. Տուբիայ՝ Խոր. Բ. լգ. ՅՀ. կթղ. գ. Մխ. անեց. ժե.—Տուբայ՝ Ուխտ. Ա. լե։

ՏՈՒԿԻՈՍ, ար. անշուշտ հուն. անուն է աղավաղ ձևով ավանդված։

— Տուկիոս Սեբաստացի նոր վկա. նահատակվեց 1155 թ.— Յայսմ. յուլ. 28=Նոր վկ. էջ 12—22 (այլ ձեռագրեր Տուճկիոս. Դոկիոս և այլն). տե՛ս վերը Տիւֆիկոս.— Ջամբ. Գ. 49 գրում է Տուճկի, Ալիշան, Շնորհ. 224 Տճկիկ:

ՏՈ՞ՒՆԿ թե ՏՆԻԿ (սեռ. Տնկանն ձևով), որդի Մարտիրոսի և եղբայր Պարոնշահի, որ գրել տվեց մի Աւետարան 1329 թ.—Ջեռ. վասպ. 179։

ՏՈՒՂՇԱՀԲԷԿ, եղբայր Մելիք-Ստեփանի և հորեղբայր Զաքարիա Գ (+1464 թ.) կաթուղիկոսի Աղթամարի. հիշված է մի արձանագրության մեջ 1444 թ.—Ակինեան, Գաւազանագիրք 86, 108։

ՏՈՒՏԷ, ար. անուն է.

— 1. Տուտէ, հայր Գրիգոր Տուտէորդու (ԺԲ դար), որի համար ունենք գրված՝ Տուտէորդին՝ Լմբ. 223, 227, 243.—Որդի Տուտեայ՝ Գր. Տղ. 21.—Որդի Տուտայ՝ Կիր. 51 և իր ձեռագիրը՝ Այրարատ 166—167. Հայապ. 310։

— 2. Տուտի, եղբայր Ուխտատուր վանականի. միասին շինեցին Թալինի աղբյուրը 783 թ.—Արձ. Շողակաթ 176։ (Սխալ է Ալիշանի Տոռլին)։

— 3. Տուտիկ, հայր Նանայի՝ կնոջ Հեճուպ Դաւթի, որ հիշում է նրան իր մի արձանագրության մեջ՝ սեռ. Տուտկան ձևով, 1300 թ.—Այրարատ 171 ա.—Տուտենց ազգանունը կար Ագուլիսում 1796 թ. (տե՛ս Սմբատեանց, Երնջակ 288)։

— 4. Տուտիկ (սեռ. Տուտկան), հայր Նանայի՝ կնոջ Հեճուպ

Դաւթի, որ շատ նվերներ է արել Յովհաննավանքին, 1300 թ.—Այրարատ 171 ա։

ՏՈՒՏՈՒ, իգ. այս բառը գործածական էր Պոլսահայ բարբառում, անցյալ դարում, «մայրիկ», «հայ կին» իմաստով։ Իբրև անձնանուն գործածական էր Զմիւռնիայում ԺԹ դարում (Քոսեան, Հայք ի Զմ. Ա. 53, 140, 287). կա և մի շիրիմի վրա 1841 թ. (Քոսեան, Բ. 29)։

ՏՈՒՐ, ար. <կա՛մ իրան. تور Thūr անունից (հմմտ. օր. Թուր որդի Ջէմշիդի, Թուր երեց որդի Ֆէրիտոնի և այլն. բուն նշ. «քաջ»), և կամ հյ. տուր բառից իբր կրճատ ձև։

— Տուր, մտերիմ Երուանդ Բ-ի. պալատի գաղտնիքները Արտաշես Բ-ին հայտնելու համար՝ սպանվեց Երուանդի հրամանով. Արտաշեսը նրա ցեղը՝ որ 15 հոգի էին, պատվեց նախարարական պատվով և կոչեց Տրունիք.— սեռ. Տուրայ՝ Խոր. Բ. խէ։

ՏՈՒՐԳԷՈՍ, ար.

— Տուրգէոս, եպիսկոպոս Բասենի և Բագրևանդի. հանդըգնաբար հայտարարեց իրեն արքեպիսկոպոսապետ և քիչ ժողովրդով հարեց արիոսականներին. սրա դեմ է խոսում Երուսաղէմի Մակար պատրիարքը (314—334 թթ.) Հայոց Վրթանէս եպիսկոպոսապետին գրած իր թղթում (Դ դար)։—Իր մասին ընդարձակ խոսում է Ակինեան, Թուղթ Մակարայ 72—80։ Պտմ. զՏուրգեայ՝ Գիրք Թղթ. (ուղ. ձևը չէ ավանդված. Տաշեան, Ցուց. 1159 ա դնում է Տուրգէոս, Այրարատ 17, 43, 523 դնում է Տուրք, իսկ Զամչ. Ա. 423՝ Սուրգայ).—Սեդրակեան, Հայ. եկ. պտկր. 318։ Ավելի մանրամասնե՛ս Վրթանէս անվան տակ, ուր և թվականի ճշտումը։

* ՏՈՒՐՈՒԹ, ար. <պրս. درود durūd «դրուատ, գովեստ» բառից. այս ձևով ունենք մի անգամ՝

— Տուրութ, որդի Աւետիսի, և եղբայր Վարդան գրակալի, որ Արճէշում Յովհ. քահանային գրել տվեց մի Աւետարան, 1450 թ.—Ջեռ. Թաւր. 66 բ։

ՏՈՒՐՓ (սեռ. Տուրփին), կին Գոզալբէկի. ծնողներն են Գրիգոր երեցի, որ գնեց մի հին Աւետարան, 1462 թ.—Ջեռ. Վասպ. 172։

+ ՏՈՒՐՔԻԿ, ար. <անշուշտ Տուրք անունից, իբր փաղաքշական ձև։

— Տուրքիկ, հայր Թեղենեաց վանքի. անդամ Զաքարէ սպասալարի կրոնական ժողովի «1208 թ.».—Կիր. գ. Օրբ. ԺՄ. 23։ (Այրարատ 257՝ Սուրքիկ)։

— Տուրք ծեր, գրիչ. Դարանաղեաց գավառում Աւագ վանքում

օրինակել է «յոյժ մեծադիր» մի Յայսմաւուրք, 1227 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 407։

ՏՈՒՓԼՈՒՄ, իգ. հիշված 1738 թ.—Ձեռ. Դադեան, Բ. 14 բ։

* ՏՐԴԱՏ, ար. <պհլ. Tīrdāt անունից, որ է հպրս. Tīridāta «Տիր աստծու տվածը». հմմտ. Տիրիրազ։ Իբր անձնանուն գործածական էր Իրանեաններն մոտ. հմմտ. Տրդատ Ա (Արշակ Բ) թագավոր Պարթևաց Ն. Ք. 248—210, Տրդատ Բ (Արշակ ԺԴ)՝ թագավոր Պարթևաց 32—26?. Տրդատ Գ (Արշակ ԺԸ) թագավոր Պարթևաց՝ 36 թ. Ց. Ք.— Օտար տառադարձությամբ՝ վրաց. Տիրդատ, հուն. Τιριδάτης, սխալմամբ նաև Τηρδάτης, լտ. Tīridātes (Հիւբշ. 89)։ Իբր արական անվան օրինակ հիշված է՝ Տրդատ Խոր. քեր. 170. Մագ. քեր. 246. բց. ի Տրդատայ՝ Դաւ. քեր. 105, Տրրդատեան՝ Խոր. քեր. 170։ Ուշ ժամանակ ստացել է հունական կերպարանք, ինչ. Տրիդատես, Տրդատիոս, Տրդատես, որոնց համեմատ են հունարեն Ագաթանգեղոսի մեջ՝ Τηριδάτης, Τηριδάτιος, Τιριδάτιος։— Ասոր. գրված է Տուրդատիս (տե՛ս ՀԱ 1937, 106).— Կա և Տրդատ թագավոր Վրաց՝ Մխ. այրիվ. 22։

— 1. Տրդատ Ա (որ և Տիրիթ), կրտսեր եղբայր Պարթևաց Վաղարշ Ա թագավորի. զրադաշտական քրմապետ էր. պարթևական զորքով մտավ Հայաստան և քշելով վրացի Հռադամաստին, թագավոր նստավ Հայոց («53 թ.»)։ Սկսվեց մի մեծ պատերազմ Հռովմայեցոց և Պարթևաց միջև։ Հռովմայեցիք Հայոց թագավոր դրեցին Տիգրանին։ Ի վերջո երկու կողմերը հաշտվեցին այն պայմանով, որ Տրդատը գնար Հռոմ և ստանար Հայաստանի թագը Հռովմայեցոց կայսր Ներոնի ձեռքից։ Ինը ամիս տևեց Տրդատի ուղևորությունը։ Հռոմում փառավոր ընդունելություն ցույց տրվեց։ Այս հաշտությունը երկարատև խաղաղություն բերեց երկրին.—Տրդատը թագավորեց 62—100 թթ.? ըստ Լէօ, 64—82՝ ըստ Գարագաշեան։ — Գրգչ. Քնն. պատմ. Բ. 205—242, Լէօ, Հայոց պատմ. Ա. 456—471. Չամչ. Ա. 306—331. Շուր, Ներոն կայսեր արևելյան քաղքն. Վիեննա 1930 թ.։

— 2. Տրդատ Բագրատունի, որդի Սմբատուհու՝ դստեր Սմբատ Բագրատունու. ամուսնացավ Տիրան Ա-ի Երանեակ աղջկա հետ 149 թ. (Չամչ.)։ Տրդատը լինելով կարճահասակ և «գծուծ տեսլեամբ», Երանեակը չէր սիրում նրան և ափսոսում էր միշտ «իբր թէ ընդ վատակերպոյ և քաջատոհմիկ ընդ վատթարազգւոյ բնակէ»։ Մի օր Տրդատը զայրացավ, սաստիկ ծեծեց նրան, գեղձան մազերը կտրեց, խոպոպիքը փետեց և դուրս վռնդեց։ Բայց

բնականաբար Տիրան թագավորից վախենալով՝ ապստամբեց գնաց Սիւնիք, ուր լսելով Տիրանի մահը, կանգ առավ։ Մի օր Բակուր Սիւնեաց նահապետի տունը ընթրիքի հրավիրված լինելով, տեսավ այնտեղ գեղեցիկ Նազենիկին, որ «Երգէր ձեռամբ»։ Տրդատը կարծեց, թէ երգչուհի է նա և Բակուրից խնդրեց որ իրեն տա։ Բակուրը մերժեց, ասելով, թե իր հարճն է։ Տրդատը խլեց կնոջը, «յիւրն քարշեաց ի բազմականն, շամշելով վաւաշէր ըստ օրինակի երիտասարդի անարգել տարփաւորի»։ Բակուրը հարձակվեց Տրդատի վրա, նրան հետևեցին նաև բարձակիցները, իսկ Տրդատը վերցրեց ծաղկակալ սկուտեղը, կռվեց նրանց հետ և Նազենիկին խլելով, փախցրեց Սպեր.—Խոր. Բ. կգ. Գ. ծե.—սեռ. Տրդատայ՝ Խոր. Բ. կգ։

— 3. Տրդատ Բ, թագավոր Հայոց, որդի և հաջորդ Վաղարշի։ Երբ Կարակալլան բանտարկեց Վաղարշին, Տրդատը փախավ և ապստամբելով Հռովմայեցիների դեմ՝ իրեն թագավոր հայտարարեց։ Կարակալլան զորք ուղարկեց, բայց չարդվեց. Նրա հաջորդ Մակրինոս կայսրը ստիպվեց թագ ուղարկել Տրդատին («215—222 թթ.»).—Գրգչ. Քնն. պատմ. Բ. 265—266, Լէօ, Հայոց պատմ. Ա. 478—480։

— 4. Տրդատ Մեծն, որդի Խոսրովի Ա. ազատվելով Արտաշիր Սասանեանի կոտորածից՝ փախավ Հռոմ, ուր մեծանալով և քաջութեան գործերով Դիոկղետիանոս կայսեր սիրտը շահելով՝ զորք առավ նրանից և եկավ տիրեց Հայաստանին («287 թ.»).—Լուսաւորչի քարոզութեամբ մտցրեց քրիստոնեութիւնը Հայոց մեջ։ Թունավորվելով նախարարներից՝ մեռավ «330 թ.».—Ագաթ. § 13, 14, 17, 36, 47, 100, 123, 125—126, 151—152, 161, 180, 203, 763, 766, 783, 796, 817, 840, 857, 860, 862, 872, 873, 875, 884, 892. Արաբ. Ագաթ. 3—7, 11—12, 26, 37, 48, 50—52, 54—57, 59, 64, 67, 69, 72—81. Բուզ. Գ. ժգ. Եփր. վս. ծն. 54. Սուտ Սեբ. Բ. 14, 15. Խոր. Բ. խբ, հղ, հթ—ձգ, ձե, ձէ, ձթ, ղ. Գ. գ, կգ. Սեբ. լգ. Շիրբրոն. 49. Կանոն. 52. Գիրք Թղ. ղա, ղէ. Մամիկ. 38. լծ. կոչ. 74. Կղկնտ. Ա. ը. Զենոբ 14, 16, 22, 40—44, 46. Ուխտ. Ա. ծղ—ծը, կ, կգ—կե, կը, կթ, հա, հգ, հղ. Խոր. Ճառ Հռիփ. էջ 310. Խոսր. 46. ՅՀ. կթղ. ժ. Գր. Նար. Մատ. 290, 323, 350, 361. Արծր. Գ. իթ. Ասող. Ա. ե, Բ. ա, գ. Շնորհ. չփ. էջ 460, 475, առ. 116. վիպ. 426, 437, 470, 477, 490, 592, 667, 715, 745. Սարկ. լուս. 14. Սամ. անեց. 63, 65. Մխ. այրիվ. 18, 60, 61. Մխ. անեց. գ, թ. Տարօն. Բ. § 13. Մագ. Թղ. ժթ. Միխ. աս. իը (=իէ). Պատմ. Վր. է, ը, ժգ.

Թղթ. դաշ. 14, 16, 20, 21, 26, 29. Կիր. 7, 9, 64, ը. Այրիվ. 20 բ. Անանուն ժմ. 11. Նհպտք. 90. Վրդ. ժէ, ժը, ի, լբ. Վրդ. աշխ. 513, 518—519, 534, Վրդն. սղ. ժթ, խէ. Վրդն. լս. 52, 66. Երզն. լս. 115. Կանոնք սահ. 137. Շար. ժզ. Մ. Մաշտ. 24 ա. Գր. Տղ. Եէմ. 301. Անան. ապստ. 136 ա, 141 ա. Պտրգ. 649. Ագաթ. 395—396. Դարդել 3, 4, 5 (այստեղ ասում է, թե Գերմանացիք ծագել են այն 300 հայ քաջերից, որ Տրդատը նվիրեց Կոստանդիանոս կայսեր). Յայսմ. օգ. 11, 14. հոկ. 5, 6. նոյ. 18, 29. դեկ. 1. մրտ. 2, 6. հունիս 8. Օրբ. դ. Տաթև. Ձմ. ղվ, ղէ. Տաթև. ամ. 420, 429. Տաթև. հարց. 349. Առաք. լծ. սահմ. 533. Սմբ. դատ. 65. Յկ. կր. 11, 12, 22. Դրնղ. 510, 512, 515, 517, 582. Սիմ. Ապար. 96. Մեծոփ. յիշ. բ, գ. Մին. համդ. 22, 23. Թլկր. 47, 52. Ձքր. Սարկ. Ա. 3. Գ. 4. Հաւաք. 10.—Տրիդատ՝ Յայսմ. նոյ. 18.—Տրդատէս՝ Ագաթ. § 37, 41, 42, 44, 820. Սուտ Սեբ. Ա. 10, Բ. 14, 15. Կղկնտ. Ա. ժբ (հրատ. էմինի). Սասն. 37. Միխ. աս. ը. Պտմ. Վր. է. Թղթ. դաշ. 12, 15, 24. Երզն. Մոթ. 518. Վրդ. ժը. Վրդ. սղ. բ, ճլէ. Վրդն. լս. 44, 47, 51, 78. Օրբ. Հկճռ. է. Տաթև. ամ. 418, 420, 637. Նղշ. լատ. 421. — Տրիդատէս՝ Յայսմ. ապր. 12 (շինել է Ս. Ծննդեան տաճար Երուսաղէմում).—Տրդատիոս՝ Ագաթ. § 37, 38, 44—46, 121, 134, 791, 800, 863, 877. Սուտ Սեբ. Բ. 14. Եղիշ. 55. Կղկնտ. Ա. ժբ, իգ. Բրս. Մրկ. 449. Շնորհ. Պտճ. 105. Թղթ. դաշ. 20. Սարկ. լուս. 14. Ոսկ. Ներբ. լս. 805, 818, 828, 832—833.—Պտմ. Վր. ը. Պարականոն շար. 20. ժմ. 599. Կիր. 9. Վրդն. լս. 48, 54. Ներբ. յորդ. 23. Վրդն. սղ. ճխԹ.—սեռ. Տրդատայ՝ Ագաթ. § 12, 13, 48, 132, 173, 828, 877, 885. Բուզ. յուշ. Գ. աւգ. ժդ, ժէ, իա. Դ. ժդ, ժե, Ե. լա. Եփր. վս. ծն. 53. Փրպ. Բ. Սուտ Սեբ. Ա. 1, 10, Բ. 13—15. Կնիք հաւ. 303. Խոր. Ա. ժբ. Բ. ա, ծը, կե, կէ, հէ, հթ—ձը, ղ—ղը. Գ. ա—դ, լե, խ, խէ, ծա, Սեբ. ա. լգ. Ուխտ. Ա. ծզ, ծը, կ. կբ—կե, կէ—կթ, հա, հգ, հդ, հզ. Բ. լը. Խոր. Ճառ Հռիփ. էջ 323. Պտմ. ածած. էջ 295, Ջեն. 14, 16, 23, 45, 48. Մամիկ. 59. Մեսր. եր. 9, 52, 60. Կանոն. 123, 126, 129. Կղկնտ. Ա. ը, ժա, ժբ, ժդ. Գիրք թղ. Յդ. ղա, ծէ. Եզն. երէց. 266. Քհնպ. 269. Նհպտք. 90. Յհ. կթդ. ը, ժ, ժա, իգ, խը. Յհ. կթղ. հյր. 273. Ձքր. եպս. 280. Արծր. Ա. թ, ժ, Բ. ա, Գ. իդ, Ասող. Բ. ա. Գ. բ, գ, Մագ. մեծ են. 71. Շնորհ. Ձփ. էջ 475. Վիպ. 448, 455, 876. սրգ. 19. Միխ. աս. իթ (=իը). Պտմ. Վր. ժբ. Սասն. 53. Մխ. դտ. Ա. ճզ. Թղթ. դաշ. 11, 13, 16—18, 20, 22, 29, 30. Մխ. անեց. թ, ժ, իբ, իդ. Սամ. անեց. 62, 63, 65. Մեծոփ. 80. Ագաթ. 396—398. Պտմ. սահ. 42. Վրք. և վկ. Բ. 284.

Վմբ. 247. մատ. 219. Շար. ժզ. Անան. Ապստ, 135 բ, 136 աբ. Մ. Մաշտ. 22 ա. Ճշ. 521. Պտրգ. 547, 564, 691, ժմ. 948. Յայսմ. Հոկ. 5, 13, 29. նոյ. 18, 29. դեկ. 1, 15. մրտ. 2, 6. մայ. 11. Պարականոն շար. 20, 21, 172. Կիր. 2, 3, 6, 9, 10, 46, 47. գ, խգ, ծբ. Այրիվ. 17 ա. Անանուն ժմ. 10, 11. Վրդ. ժէ—ի, լը, խե. Վրդ. աշխ. 503, 509, 510, 514, 518—519, 534. Վրդ. սղ. ժթ, ճխէ. Վրդն. լս. 47, 56. 2 ադ. 45. Օրբ. ղ, վ. Տաթև. Ձմ. ղզ. ամ. 421, 534, 612. Հարց. 548, Յկ. կր. 13. Մխ. համդ. 23. 25. Հաւաք. 10, 34. Ջուղ. 41, 42, 212. Ձքր. Սարկ. Ա. 1, 3, Գ. 3, 5. Առաք. պտմ. 327. Հայապ. 227.—սեռ. Տրդատեայ՝ Սիմ. ապար. 128.—Տրիդատայ՝ Յայսմ. օգ. 11.—Տրիդատէսի՝ Յայսմ. ապր. 12.--Տրդատիոսի՝ Ներբ. յորդ. 15. Մխ. դտ. Բ. ա.—գրծ. Տրդատաւ՝ Ջեն. 12. Կղկնտ. Ա. թ. ՅՀ. կթղ. ը. Վրդն. սղ. հա, ճծա. Օրբ. Հկճռ, ժ.—Այրարատ 372—393. Հայապ. 104, Աւգեր. Լիակ. Վրք. սրբ. Գ. 460—480. Ալիշան, Արշալ. քրիստ. հատկապես էջ 268 շար. կա և մի վեպ եթովպական լեզվով, որ թարգմանված է անգլ., գերմ. և ֆրանս. վերջինն է René Basset (Les Apocryphes ethiopiens, La légende de S. Tertag), որ կարծում է, թե այդ վեպը խպտերենից թարգմանված է եթովպերենի։ Այս վեպի մասին տե՛ս Սարգիսեան, Ուս. հին կտ. անվաւեր գրոց, էջ 180 և վերը՝ Սարգիս անվան տակ։—Տե՛ս նաև Գաթըրճեան-Տաշեան՝ Պտրգմտոյցք 66։—Տրդատի մահվան հանգամանքները՝ խորենացուց տարբեր, տե՛ս Ճառընտրչ մի հատվածը, որ հրտ. Բազմ. 1851 էջ 75. Սարգիսեան, Ագաթ. և իւր բազմ. 166։ Մելիքսեթ-Բէկ, Վրաց աղբ. Ա. 20—23 (ըստ Վրաց Թրդատ), 41, 75. հտ. Բ. 37, 89—96, 100—104, 164, 166—176, 188—190։—Ըստ Ստ. Մալխասեանի նոր քննության, Տրդատը թագավորել է 263 թ. և նրա 17-րդ տարում, այն է 279 թ. Լուսավորիչը հայրապետական գահ է բարձրացել։ Այս թվին էլ պետք է դնել Հայաստանում քրիստոնեության ճանաչումը իբր պետական կրոն («էջմիածին», 1944, № 1, էջ 26 բ)։—Տրդատի գերեզմանը ցույց են տալիս Անձևացեաց գավառի Հոգեաց վանքում (Հնոց և Նորոց, էջ 13)։—Այս Տրդատին է վերագրվում Գառնիում գտնված հունարեն արձանագրությունը, որի ուսումնասիրությանն է նվիրված Մանանդեանի համանուն աշխատությունը (Երևան, 1946 թ.)։

— 5. Տրդատ, երրորդ որդի Տիրան Բ-ի, որ նրա Գնել որդու հետ միասին պատանդ տվեց Բիւզանդիոն. կայսրը սպանեց նրան՝ ի վրեժ Հայոց պարսկամետ քաղաքականության.—Խոր. Գ. ժգ, իա,

իբ. ՅՀ. կԹղ. ժբ. Պտմ. Ներս. 11. Վրդ. իգ.—սեռ. Տրդատայ՝ խոր. Դ. խա. ՅՀ. կԹղ. ժբ. Պտմ. Ներս. 11։

— 6. Տրդատ ճգնավոր, աշակերտ Գինդի. ճգնում էր Տարօնում՝ Մեծն Ներսէսի մահից («373 Թ.») հետո.—սեռ. Տրդատայ՝ Բուզ. Զ. ժզ։

— 7. Տրդատ՝ «գլխաւոր պաշտօնէից ի Թաղման մեծին Ներսիսի» («373 Թ.»).—Բուզ. Ե. իդ (գրված է Տրդած)։

— 8. Տրդատ, որդի Արշակ Բ-ի և եղբայր Պապի.—Մեսր. եր. 56։

— 9. Տրդատ, եպիսկոպոս Բասենի, Մեծն Ներսէսի ուղեկիցներից՝ Կեսարիա օծման գնալու ժամանակ («353 Թ.»).—Մեսր. եր. 26, որի հետ նույն պետք է դնել՝

— 10. Տրդատ եպիսկոպոս Բասենի՝ 364 Թ.—Այրարատ 43, որ Ալիշան համարում է Բուզանդի Արտիթը:

— 11. Տրդատ Արշակունի, Խոսրով Մեծի որդի Տրդատի սերունդից. Արև, Ջուանշեր, Համազասպ և Գրիգոր նախարարների հետ՝ Պարսից և Վրաց զորքով կռվեց Հոնաց դեմ (Ե դար), Վրաց Վախտանգ Գուրգասար Թագավորի առաջնորդությամբ.—Պտմ. Վր. ժգ. Վրաց աղբ. Ա. 189 (գրում է, Թե այս Տրդատը Գրիգորաշէն քաղաքից էր. իսկ հայ Թարգմանության մեջ Գրիգորաշէնը դարձել է Գրիգոր անունով մի իշխան)։

— 12. Տրդատ, որդի Ռևի. մայրն էր Սալոմէ՝ դուստր Մեծին Տրդատայ. Թագավոր Վրաց 393—405 ԹԹ. իբր հաջորդ է Վարազ-Բակուրի.—Justi 327 բ։

— 13. Տրդատ զորավար, որ Մուշեղ սպարապետի հետ կռվում էր Պարսից հետ միասին ընդդեմ արաբների՝ Տիզբոնի առաջին արշավանքի ժամանակ (Օսման ամիրայի օրով).—Սեբ. լ և ուրիշներ չգիտեն այսպիսի անձ. իսկ Մխ. անեց. իր գրում է Մրդատ, որ այսպես պետք է ուղղել։

— 14. Տրդատ, աշակերտ Անանիայի («713 Թ.»).—Տե՛ս Հերմոն:

— 15. Տրդատ պատրիկ, հորեղբորորդի Արտաւազդ կայսեր, որ ուղարկեց նրան Կոստանդին Կոպրոնիմոս կայսեր դեմ, բայց հաղԹվեց և սպանվեց (+742 Թ.).—Չամչեան, Բ. 405, Justi 327 բ։

— 16. Տրդատ Ա կաԹուղիկոս Հայոց՝ «741—764 ԹԹ.». Վանանդի ՈԹմսոյ գյուղից էր. հաջորդեց Դաւթին Ա. բողոքելով Եզիդ ոստիկանի բռնուԹյանց դեմ՝ պաշտոնանկ անել տվեց.—Ղև. լգ, ՅՀ. կԹղ. իգ. Ասող. Բ. բ, դ. Եղն. եր. 268. ՔՀնպ. 271. ՅՀ. կԹղ-

հյր. 276. Մխ. անեց. դ. Մխ. այրիվ. 21. Միխ. աս. իթ (=իը). Սամ. անեց. 87. Վրդ. լը. Կիր. 39. Օրբ. հա.—սեռ. Տրդատայ՝ Սամ. անեց. 86. Վրդ. խ։

— 17. Տրդատ Բ, Դասնաւորցի. կաթուղիկոս Հայոց «764—767 թթ.» հաջորդեց Տրդատ Ա-ին.—Եզն. եր. 268. ՅՀ. կթղ. իդ. ՅՀ. կթղ. հյր. 276. Ասող. Բ. բ. Սամ. անեց. 88. Միխ. աս. իթ (=իը). Մխ. անեց. դ. ՔՀնպ. 272. Կիր. 39. Վրդ. խ. Օրբ. հա։ (Մխ. այրիվ. 21 փախցրել է՝ շփոթելով նախորդի հետ)։

— 18. Տրդատ ճարտարապետ. շինեց Անիի մայր եկեղեցին, Արգինայի կաթուղիկոսարանը և այլն. «989 թվին», երբ երկրաշարժը կործանեց Պոլսում Այա-Սոֆիայի գմբեթը, Հունաց Վասիլ կայսեր կողմից հրավիրվեց Պոլիս և նորոգեց Այա-Սոֆիա եկեղեցին, որ երկրաշարժից ճեղքվել էր և գմբեթ չէր պահում.—սեռ. Տրդատայ՝ Ասող. Գ. ժա, իէ։ Ըստ մի ձեռագրի հիշատակության՝ Տրդատն է շինել նաև Գագկաշէն եկեղեցին (տե՛ս Թորամանեան, Հայ ճրտր. էջ 276 ծան.)։ Տե՛ս և Լէօ, Անի, էջ 141—150։

— 19. Տրդատ, զորավար Դաւիթ Կիւրապաղատի Տայոց՝ ընդդեմ արաբների, 996 թ.—Justi 327 բ։

— 20. Տրդատ, փակակալ Բագարանի մայր եկեղեցու, 1211 թ.—Արձ. Այրարատ 67։

— 21. Տրդատ Պուքսիմոս, որ Սարվանդիքարի տեր Ծոֆրիի հետ միասին ձերբակալեցին Կիլիկիոյ Փիլիպպոս թագավորին և բանտարկեցին (1235 թ.).—Պատմ. Կիլ. 211։

— 22. Տրդատ, որդի Էտիլշահի և եղբայր Խոնտքար տիկնոջ, որ Խորոտկայ վանքում գրել տվեց Աւետարանը, 1490 թ.—Ջեռ. Նոր Բայազ. 23 ա։

— 23. Տրդատ, հայր Լիանոսի՝ ստացողի Աւետարանի, 1491 թ.—Թորոս աղբ. Ա. 120։

* ՏՐԴԱՏՈՒՀԻ, իգ. <կազմված Տրդատ անունից -ուհի իգ. մասնիկից։ Թեև չէ ավանդված, բայց իբրև իգ. անվան օրինակ հիշում են Թր. քեր. 14. Դաւ. քեր. 105. Անան. քեր. 140. Խոր. քեր. 170։

+ ՏՐԷ, ար. <հյ. տրէ ամսանունից։

— Տրէ, համարվում է Հայկ նահապետի որդիներից մին.—Տաթև. ձմ. ա և Հարց. 200։

ՏՕՆ, ար. հիշված է +1779 թ. (Սիւրմէեան, Պատմ. Հալէպի ազգ. գերեզմ. 45 բ)։

+ *ՏՕՆԱԿ, ար. <հյ.* տօն *բառից , թերևս և* Տօնական *անվան կրճատ ձևն է։ Գտնում եմ մի անգամ՝*

— Տաւնակ *երեց ումն, անթվական մի հիշատակարանում՝* REA *10, 59։*

*+ՏՕՆԱԿԱՆ, ար. <հյ.* տօն *բառից. հմմտ. հուն. խորտիոս, արաբ.* عير *'id, պրս.* بيرام bayrām, *որոնք նշանակում են «տոն», բայց նաև արական անուն են։ Սրանից է* Տօնականեան *ազգանու-նը։ Նկատելի է, որ Հունաց Թէոն փիլիսոփայի անունն էլ թարգ-մանված է* Տօնական. *Թէոն, էջ 4։*

*— 1.* Տօնական, *հոգևո՞ր եղբայր Գրիգոր գրչի, որ նրա հա-մար օրինակեց Աւետարանը Դարանաղեաց Ս. Լուսաւորիչ վան-քում 1310 թ.—Թորոս աղբ. Բ. 445։*

*— 2.* Տօնական, *հանգուցյալ հորեղբա՞յր Քրիստոստուր կրո-նավորի, որ Սուրխաթում (Ղրիմ) գրել տվեց Աստուածաշունչը 1352 թ.—Ձեռ. Վասպ. 7։*

*— 3.* Տօնական, *գրիչ. օրինակել է «Աբբայ Յովհաննու առաջ-նորդի կրօնաւորացն որ ի Սինէական լերինն՝ բան կրօնաւորա-կան», 1361 թ.—Ձեռ. Բեռլինի, էջ 18—19։*

*— 4.* Տօնական, *որդի Խոսրովի և եղբայր Վարդան քահանայի, որ Երզնկայում գրել տվեց մի Աւետարան և վաճառեց մի ուրիշ Վարդան քահանայի, 1397 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 45։*

*— 5.* Տօնական, *վարպետ (ըստ լուսանկարի. իսկ ֆրանսերե-նում սխալ է տպված՝ վարդապետ), միջնորդեց վաճառելու մի Աւե-տարան՝ Խութլու բէկին, 1422 թ.—*REA *7, 107։*

*— 6.* Տօնական *վարպետ, բերել է մի ձեռագիր Աւետարան, որ հետո գնել է Խութլուպէկը՝ 1422 թ.—Կամենից 161։*

*— 7.* Տէր Տաւնական, *միաբան Երուսաղէմի, իբրև վկա հիշ-վում է 1471 թ.—Ձեռ. Հալէպի Ա. 59 բ։*

*— 8.* Տօնական *երեց, տաղասաց ԺԵ դարու. իր տաղերի հա-վաքածուն տե՛ս* Tübingen, *էջ 100—101. տաղերից մեկը 1483 թվից է։*

*— 9.* Տօնայ, *փեսա Ազիզի (նախքան 1420 թ.).—Տաշեան, Ցուց. 666։ (Կարող է լինել կրճատ ձև* Տօնականի *կամ հաջորդներից մեկը)։*

*— 10.* Տօնական *հիշված է նաև 1536 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 340), իսկ Տօնայ իգ.! 1680 թ. (անդ 162)։*

+ *ՏՕՆԱՊԵՏ, ար. <հյ.* տօն+պետ *բառերից (հմմտ. Տօնա-ւագ), որից* Տօնապետեան *ազգանունը։ Հիշված է* Տօնապետ *ԺԶ*

դարից (Հայ-Վենետ, 411), Տօնապետ 1593 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, էջ 341), 1608 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 696), Տաւնայպետ 1606 թ. (անդ 660), 1621 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1924, 123) (սխալմամբ հասարակ անուն համարված)։

— 1. Տօնապետ, մերձավոր Ստեփաննոս եպիսկոպոսի, որ Խորձեանում օրինակեց Աւետարանը 1336 թ.—Նաթանեան, Արտօսր Հյստնի 152։

— 2. Տաւնապետ, որդի Գրիգոր գրչի. «ձեռնասուն պատանեակ», որ թուղթ կոկելով օգնում էր իր հորը, երբ նա արտագրում էր Աւետարանը՝ Աղթամար 1355 թ.—Ձեռ. Վասպ. 204։

— 3. Տաւնապետ, մերձավոր Ստեփաննոս եպիսկոպոսի, որ Բարձենի Խլպաշի վանքում օրինակեց Աւետարանը 1464 թ.—Թորոս աղբ. Բ. 342։

— 4. Տօնապետ, որդի Սահակի՝ եղբօր Կիրակոս քահանայի, որ Ամ գյուղում օրինակել տվեց Աւետարանը 1497 թ.—Ձեռ. ՆորԲայազ. 16 բ։

— 5. Տաւնապետ, հիշված 1693 թ.—Թորոս աղբ. Բ. 365։

ՏԱԻՆԱՍԹԻ, «կին մի բարեհոգի», որ երևի փլատակների տակ է մնացել Արճէշի երկրաշարժի ժամանակ 1275 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 427։

+ ՏՕՆԱԻԱԳ, ար. <հյ. տօն+աւագ բառերից։ Իմաստով նույն է Տօնապետ անվան հետ, ուր պետ=աւագ:

— Տօնաւագ, եզնավաճառ Սուշավացի, իր ծախսով կառուցեց Հաճկատար վանքը 1512 թ.—Տաշ, Արևել. հայք. 16։

— Ավելի ուշ հիշված են՝ 1578 թ. Ձեռ. Վենետ. Ա. 438.—1656 թ. Երեմ. Ձեղ. Օրագր. 131։

+ ՏՕՆԵՐ, ար. <հյ. տօն բառի հոգնակին է, երևի ակնարկելով Զատիկն ու Ծնունդը։

— 1. Տօներ, սարկավագ Եւդոկիացի, գրել է մի Տաղարան, որի օրինակությունը կա 1662 թվից՝ Տաշեան, Ցուց. 313։

— 2. Տօներ, գրիչ. աշակերտ Տէր Կիրակոսի. օրինակեց Եսայեայ մարգարէությունը՝ փակակալ Մկրտիչ քահանայի համար 1381 թ.—Ձեռ. Սանաս. 22 բ։

— 3. Տօներ հիշված կա նաև 1593 թ. (Ձեռ. Հալէպի Ա. 194)։

+ ՏՕՆԻԿ, ար. <հյ. տօն բառից. այժմ կրճատ ձևն է համարվում Տօնական կամ նման մի անվան։ Սրանից ունենք Տօնիկեան ազգանունը (որ և Տօնեան, Տօնոյեան)։ Տօնիկի էլ կրճատ է Տօնօ (տե՛ս Ձեռ. Վասպ. 764)։

— 1. Տօնիկ, հայր Աբրահամի (նախքան 1420 թիվը).— Տաշեան, Ցուց. 666։

— 2. Տաւնիկ, եղբայր Մխիթար քահանայի, որ Ներսէս դրչին գրել տվեց մի Աւետարան 1325 թ.—Թորոս աղբ. Բ. 295։

— 3. Տօնիկ, եղբայր Մովսէս քահանայի, որ նորոգեց Գետաշէնի Աւետարանը 1383 թ.—Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 44։

— 4. Տաւնիկ, 1585 թ.—Ձեռ. Վասպ. 650։

— Ավելի ուշ հիշատակված ունենք Տօնիկ 1656 (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 338), 1670 թ. (Յովսէփեան, Նիւթեր և ուս. Բ. 34)։

# Ր

ՐԱԲՈՒՆԻ,ար. 1613 թ.—Ձեռ. Վասպ. 846 և 847։

# Ց

ՑԱՓՈՒԿ, ար. ծագումն անհայտ. հիշված է Ռ=1551 թվին (Նշխ. մատ. 43)։

+ ՑՈԼԱԿ, ար. <հյ. ցոլ, ցոլալ բառից (համմտ. Փայլակ)։ Գործածական է այժմ էլ։

+ Ցոլակ, որդի Ամասիայի՝ Հայկազն նահապետի. իր անունով է կոչվում Ցոլակերտ քաղաքը.—Խոր. Ա. ժբ. Ուխտ. Ա. ժզ (դնում է որդի Արամայիսի). Սամ. անեց. 42.—սեռ. Ցոլակայ՝ Խոր. Ա. ժբ. Ուխտ. Ա. ժզ. Սամ. անեց. 42. Մին. համդ. 4.—բց. ի Ցոլակայ՝ Խոր. Ա. ժբ։

+ ՑՕՂԻԿ, իգ. <հյ. ցօղ բառից։ Գործածական է այժմ էլ։

— 1. Ցօղիկ տիկին, ստացող Աւետարանի (1222 թվից հետո).—Ուղ. Ցաւղիկ, սեռ. Ցաւղկանն ձեռքով՝ Տաշեան, Ցուց. 559։

— 2. Ցօղիկ տիկին, կազմել տվեց մի գեղեցիկ Տօնապատճառ՝ 1191 թ.—Յովսէփեան, Մի էջ հայ արուեստի, էջ 10։

— 3. Ցօղիկ, կին ումն 1671 թ.—Ձեռ. Թեհր. (ՀԱ 1935, 310)։

— 4. Ցաւղիկ (սեռ. Ցաւղկայ աղախնոյն Քրիստոսի), իր ծախսով Յակոբ կազմարարին կազմել տվեց Փիլիպպոս քահանայի գրած Տօնապատճառը, Այրիվանք 1191 թ.—Շողակաթ, 197։

# Փ

ՓԱԹԱՆ, իգ. ծագումն անհայտ. (ՆՀԲ պատանի բառի դեմ հիշում է արաբ. ֆէթէն, որ պիտի տար հյ. փաթան, բայց այսպիսի

իմաստով և ﻓﺘﻦ ձևով բառ չգտա Կամուսի մեջ)։ Հիշված է 1649 թ.—Հնոց և նորոց 127. սակայն այժմ էլ՝ Փաքանի, իգ. ձևով. գործածական է Ղարաբաղում. կրճատ ձևը Փաքի։

ՓԱԼԻՀԱՆ, իգ. թ.? Ձեռ. Վասպ. 584։

ՓԱԼՕԾ, որդի Ստեփաննոս Ղարիպշահի, որ Լիմում գրել տվեց մի Յայսմաւուրք 1457 թ.—Թաւր. 103 բ։

+ ՓԱԽՉԱՆ, ար. <հյ. փախչիլ բայից, իբր «լավ վազող»։ Սրանից է Փախչանեան ազգանունը։ Համմտ. նաև Գարագաչանեան («շատ արագ վազող=փախչող») ազգանունը Պոլսում։

— 1. Փաղչան ոմն, հիշված է Սակրաբերդում 1491 թ.—Այրարատ 443։

— 2. Փախչան, որդի Աստուածատուրի՝ որ ստացավ մի Յայսմաւուրք (1696 թ.).—Տաշեան, Ցուց. 591։

— 3. Փախչան ոմն, հիշված 1534 թ.—Ձեռ. Պետերբ.=ՀԱ 1892, 52 ա։

— 4. Պաղչան, քիչ հետո Փաղջան թ.?—Ձեռ. Վասպ. 716. 1590-ից ուշ։

— Փաղջան ար. թ.? Ձեռ. Վասպ. 395։
— Փախչան » 1639 թ. » » 395։
— Փաղջան » 1525 թ. » » 417։
— Փախջան » թ.? » » 468։

* ՓԱԽՐԱԴԱՒԼԱ, ար. <արաբ. ﻓﺨﺮ ﺍﻟﺪﻭﻟﻪ faxr-ud-dovla «պարծանք պետության»։

— 1. Փախրադաւլա, որդի Լիպարիտի Օրբելեանց՝ Սիւնեաց իշխանի, եղբայր Սմբատայ իշխանաց իշխանի. հիշված է Նախավկայի արձանագրության մեջ (1261 թ.).— Փախրադաւլայն՝ Օրբ. կե.—սեռ. Փախրադաւլային՝ Օրբ. կդ։

— 2. Փախրադաւլա՝ որդի Տարսայիճի՝ որդւոյ Լիպարիտի Օրբելեանց, եղբայր Ստեփանոս եպիսկոպոսի Օրբելեանց. մեռավ պատանի հասակում.—Օրբ. կե, հ։

* ՓԱՀԼԱՒԱՆ, ար. <պրս. ﭘﻬﻠﻮﺍﻥ pahlavān անունից, որ նշ. «քաջ ու կորովի». թրք. «ըմբիշ». հայտնի են այս անունով Շէմսէդդին Փաճլաւան՝ աթաբեգ Իրանի 1172—1186, Փաճլաւան ոմն գրիչ + 1435, Խօջա Փաճլաւան՝ առաջնորդ Սանակի Բաբերի 1526 թ. և այլն (Justi 237 բ)։

— Փանլաւան, որդի Կիւրիկէ Դ-ի, եղբայր Թաղիաթինի և Աղսարթանի. իշխան Մածնաբերդի (ԺԳ դար).—Հայապ. 392.—Փալ-

ճաւան՝ Կիր. 73։ Չամչ. Գ. 186. Justi 254 ա գրում է Փոյփահլուան և հանում է պրս. pūl «արագ» բառից։

ՓԱՂԱՄ, իգ. հիշված շուրջ 1550 թ.—Ջեռ. Դադեան Բ. 47 ա։

* ՓԱՄՊՈՒԽ, իգ. <Թրք. پامبوق pambuq «բամբակ» բառից, որ Պոլսահայ բարբառում դառնում է փամպուխ. Նույն անվան հայ ձևն էլ կա, որ է Բամբկիկ (ԺԴ դար).—Հիշված է 1739 թ. (Տաշեան. Ուս. Ստ. Կալիսթ. 146). կենդանի էր Պոլսում անցյալ դարում։ Այժմ էլ կա Կովկասում. Տե՛ս Սով. Հյստ. 1945 թ. հուլ. 29, էջ ա։

ՓԱՅԼԱԿ ԽԱԹՈՒՆ, հոգևոր մայր Ներսէս աբեղայի, որ Աղթամարում գրեց մի Աւետարան՝ Թովմայի համար 1460 թ.—Ջեռ. Վասպ. 434։

+ ՓԱՅԼՈՒՆ, իգ. <հյ. փայլուն բառից։ Կենդանի է այժմ Կովկասում. սրա արականն է Փայլակ։

ՓԱՅՉԱՂ, որդի Սրահանգի, Խաղբակեան տոհմից. կանգնեցրել է մի խաչքար իր և իր ծնողների հիշատակին, Հաւապտուկ լեռան կողին, 1214 թ.—Յովսէփեան, Խաղբակեանք 31։

* ՓԱՆԱՀ, ար. <պրս. پناه panāh «ապավեն, ապավինություն» բառից, որ նաև անձնանուն է. հմմտ. Շուշի քաղաքի Բուրք Փանահ խանը.—Մեր մեջ ունենք Փանահ ոմն 1576 թ. (Ջեռ. Սեբ.= ՀԱ 1925, էջ 470)։

* ՓԱՆԹՈՒՄԱՍ, ար. որդի Խոջա-Ծատուրի՝ որ ստացավ մի օրինակ «Վարդապետութիւն Ս. Եղիշէի վրդ.» (ԺԸ դար).—Տաշեան, Ցուց. 789 բ։

ՓԱՆԻԿ, մեծ հայր Խդրշահի, որ Կեսարիայում Յովհաննէս Երզնկացուն գրել տվեց մի Աւետարան 1476 թ.— Rapport Belgique 34։

* ՓԱՆՈՍ, ար. <հին գործածության պատճառով գնում եմ ոչ թե Ստեփանոս անունից կրճատված, այլ հուն. φανος «փայլուն, լուսավոր, մաքրափայլ» բառից։

— 1. Փանոս Ոյծնեցի, վանական Սիոնի. նախագահության պատվի համար գժտվեց Շաղատի Գէորգ վարդապետի հետ. Սիմեոն Յովակիմ եպիսկոպոսի օրով (է դար կամ ավելի հետո).—սեռ. Փանոսի՝ Օրբ. ժա։

— 2. Փա[նո՞ս], միաբան Աստուածընկալ ուխտի, 1207 թ.— Այրարատ, 255։

— 3. Փանոս Աւրանեան (=որդի Աբրահամի). Ղազալցի կամ Հալաչեցի, որ Յակոբ Շահնշահեանի հետ շինեց Իվովում Հայոց

քարաշեն եկեղեցին 1363 թ.—Աղգապ. 2175, Կամենից 131, 217։
— Փանոս, հիշված է ավելի ուշ՝

1557 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 529).
1576 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1927, 314).
1578 թ. (Սմբատեանց, Գեղարք. 510).
1590 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 721).
1645 թ. (Ձեռ. Վասպ. 606).
1658 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 63 բ).
1730 թ. (Ձեռ. Վասպ. 493).
1756 թ. (Ձեռ. Վասպ. 313)։

ՓԱՆՈՒ (սեռ. Փանուին), ար. հիշված է 1647 թ.—Ձեռ. Վասպ. 269. (արդյոք Փանո՞ս, թե առանձին անուն է)։

* ՓԱՆՈՒԷԼ, ար. <եբր. Panuēl անվան, հուն. Φάνουηλ տառադարձությունից։ Բուն նշ. «տեսիլ Աստուծոյ» և է նախ տեղանուն. հմմտ. Ծն. Լբ. 30 «Եւ կոչեաց Յակոբ զանուն տեղւոյն այնորիկ «Տեսիլ Աստուծոյ» (եբր. Փանուէլ), զի տեսի զԱստուած դէմ յանդիման»։ Իբրև անձնանուն գործածված է Ա. Մնաց. Ը. 25 և Դ. 4.— Տաթև. Հարց. 144 մեկնում է «Փանուէլ. յայտնութիւն Աստուծոյ». սրանից է Փանուէլեան ազգանունը։

— 1. Փանուէլ ոմն, հիշված է Ձեռ. Էջմ. № 945 (ԺԵ դար)։

— 2. Փանուէլ պարոն, որդի մեծ իշխան Սարգսի և եղբայր իշխանաց իշխան Շալուէի, հիշված 1441 թ.—Հրտր. Ազաթ. 1909 թ., յոչ. էջ ԽԸ։

* ՓԱՇԱՅ, ար. և իգ. <Թրք. باشا paša «փաշա» բառից, որից Փաշայեան, Մելիք-Փաշայեան ազգանունները։ Գործածական է նաև Փաշիկ, ար. և իգ. այսպես Փաշիկ մելիք 1605 թ. Առաք. պատմ. էջ 9, գործածական է այժմ Փաշիկ. իգ.։

— 1ա. Փաշայ, կին Միրզայի, ծնողներն են կնոջ բրուտ Ստեփանոսի, որ Վանում գրել տվեց մի Աւետարան 1435 թ.—Ձեռ. Վասպ. 369։

— 1բ. Փաշայ, ազգական տանուտեր Ստեփանոսի, որ Վանում գրել տվեց մի Աւետարան, 1435 թ.—Ձեռ. Վասպ. 370։

— 2. Փաշայ, քրոջ դուստրն է Սարգիս աբեղայի, որ Վանում Կարապետ գրչին գրել տվեց մի Աւետարան 1437 թ.—Ձեռ. Վասպ. 376—377։

— 3. Փաշայ, կին Ներսէս քահանայի, որ Սեբաստիայում Դա-

ւիթ գրչին գրել տվեց մի Ճաշոց 1438 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 243—244։

— 4. Փաշայ, կին Յիսաւի և մայր Մովսէս վարդապետի և Ներսէս քահանայի և մեծ մայր Բարթուղիմէոս առաքյալի վանուց առաջնորդ Յովհաննէս արքեպիսկոպոսի, որ ստացավ Յայսմաւուրքը 1438 թ.—Ձեռ. Թաւր. 41 ա։

— 5. Փաշայ, կին Ստեփաննոս քահանայի. ծնողներն են Կարապետ քահանա գրչի, որ Ոստանում օրինակեց Ճաշոցը 1439 թ.—Նոտարք 119։

— 6. Փաշայ, դուստր Կարապետի և քույր Ատոմ քահանայի, որ տե՛ս հավել. 1440 թ.—Ձեռ. Վասպ. 313։

— 7. Փաշայ, կին Ստեփանոսի և մայր Կարապետ քահանայի, որ Ոստանում օրինակեց Գանձարանը 1444 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 40 բ։

— 8. Փաշայ, հանգուցյալ զավակ Թումայ Ղուզիկի, որ Մինասենց Թումայ գրչին գրել տվեց մի Աւետարան և նվիրեց Գառաշից գյուղի եկեղեցուն, 1444 թ.—Ձեռ. Վասպ. 385—386։

— 9. Փաշայ, կին Մանկասարի, մայր Յովհաննէս քահանայի, որ Արճէշում 1450 թ. գրեց մի Աւետարան. սույն թվին արդեն Փաշան և իր ամուսինը մեռած էին.—Ձեռ. Թաւր. 66 բ։

— 10. Փաշայ, դուստր Ստեփաննոսի և Մարթայի, կին Հաւկիթ Ատոմի. որդուն՝ Ջանիբէկին անօրեններր նահատակելով, հայրը՝ Ատոմ «խասրաթմահ» եղավ. Փաշան՝ իր որդու և իր ամուսնու հիշատակին, Կարապետ երեցին գրել տվեց մի Աւետարան, Վան 1451 թ.—Ձեռ. Վասպ. 411, 412։

— 11. Փաշայ, պարոն, որդի Թաթարի, քաջությանը վրա նախանձելով այլազգիները դարանակալ սպանեցին նրան Զորակերտ գյուղում (1451 թ.?).—Այրարատ 120, 123։

— 12. Փաշայ, կին Գրիգորի (մականուն Պալալ, № 620), որոնց որդիքն են Ստեփանոս, Յովհաննէս, Պարսամ, Մարտիրոս, Պետրոս և հարսը՝ Շահում (1458 թ.).—Մնացյալը տե՛ս Փաշամելէք.—Ձեռ. Վասպ. 431։

— 13. Փաշայ, դուստր Թօղանի, Թովմայ առաքյալի վանքում, Յովհաննէս գրչին գրել տվեց մի Աւետարան, 1471 թ.—Ձեռ. Վասպ. 463։

— 14. Փաշայ, թվի թե դուստրն է Յովհաննէսի և քույր տանուտէր Սահակի, որ Խիզանում, Յովհաննէս քահանային գրել տվեց մի Աւետարան 1474 թ.—Ձեռ. Վասպ. 469։

— 15. Փաշա, հորաքույր Խոջա Խդրշահի, որ Վանում Աղաբրիա երեցին գրել տվեց մի Աւետարան 1484 թ.—Ձեռ. Վասպ. 497։

— 16. Փաշա կամ Փաշիկ, հանգուցյալ որդի Ղարիբշահի (№ 4), որ Արծկէում գրել տվեց մի Աւետարան 1486 թ.—Ձեռ. Վասպ. 501։

— 17. Փաշայ, կին Յովսէփի. ծնողներն են Յակոբ կրոնավորի, որ Աղթամարում գրեց մի Աւետարան 1493 թ.—Ձեռ. Վասպ. 520։

— 18. Փաշայ, որդի Յուստիանէի՝ քրոջ Մանուէլ քահանայի, որ Գեղարքունեաց Կած գյուղում Յովհաննէս Արծկեցուն գրել տվեց մի Ճաշոց (ԺԵ դար).—Ձեռ. Սևան 18։

— 19. Փաշա, 1579 թ.—Ձեռ. Վասպ. 578։

— 20. Փաշա, եղբայր Աղարիա վարդապետի, որ ստացավ մի Յայսմաւուրք (ԺԵ—ԺԶ դար).—Տաշեան, Ցուց. 544 ա։

— 21. Փաշա, ազգական տանուտեր Ստեփաննոսի, որ Վանում գրել տվեց մի Աւետարան, 1435 թ.—Ձեռ. Վասպ. 370։

* ՓԱՇԱԲԷԳԻ, իգ. <Թրք. پاشا paša بك beg բառերից. Հիշված է ԺԶ—ԺԷ դարերում. այսպես՝ Փաշաբէկի 1562 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 157), Փաշապակ 1644 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1927, 310), անթվական են Փաշաբեկի՝ Ձեռ. Վենետ. Բ. 419, Ա. 414, Ա. 718, Սմբատեանց՝ Գեղարք. 517։

— 1. Փաշաբէկի, 1573 թ.—Ձեռ. Վասպ. 677։

— 2. Փաշաբէկի, 1575 թ.—Ձեռ. Վասպ. 686։

— 3. Փաշաբէկի, 1609 թ.—Ձեռ. Վասպ. 833։

— 4. Փաշաբէկի, 1615 թ.—Ձեռ. Վասպ. 850։

— 5. Փաշաբէկ, հիշված է անթվական մի հիշատակարանում.—Bodleian 148։

ԲԱՇԱՋԱՏԷ, իգ. 1698 թ.—Ձեռ. Վասպ. 987։

* ՓԱՇԱԽԱԹՈՒՆ, իգ. <Թրք. փաշա+խաթուն բառերից։

— 1. Փաշախաթուն, դուստր Սիմէոնի և քույր Յակոբ սարկավագ գրչի, որ օրինակեց Կիւրղի Կոչ. ընծ. շուրջ 1358 թ.—Ձեռ. Թաւր. 28 բ։

— 2. Բաշայ խաթուն, կին Իւլովցի Դաւիթ վաճառականի, որ ունի նրա անունով մի կտակագիր 1450 թ.—Բժշկեան, Ճանապարհ. ի Լեհ. 115>Նոտարք 163։

— 3. Փաշախաթուն, կին Յովհաննէսի, որ իր որդի Ջոհրապի յիշատակին կանգնեցրեց մի խաչքար՝ Վառակաշէն (Բասարգեչար) գյուղում, 1456 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 604։

— 4. Փաշա խաթուն, մեռել է 1463 թ. իր դամբանը գտնվում է Եւդոկիոյ Յովակիմ-Աննա վանքում.—Նոտարք 210։

— 5. Փաշախաթուն, դուստր Գալուստի և քույր Ջանղուրբանի, որ Կուքի գյուղում գրել տվեց մի Աւետարան՝ 1495 թ.—Սմբատեանց, Երնջակ 135։

* ՓԱՇԱՄԷԼԻՔ, իգ. <թրք. پاشا paša+արաբ. ملك melek «հրեշտակ» բառերից. հիշված է մի անգամ անթվական մի հիշատակարանում՝ Ձեռ. Հալէպի, Ա. 274 ա և մի անգամ էլ Փաշամելիք ձևով. Ձեռ. Վենետ. Ա. 780։

— 1. Փաշամելիք, կին Համազասպի և մայր Վարդանէս արեղայի, որ Արծրունեաց գավառի Կոճերաց վանքում օրինակեց Գանձարանը, 1412 թ.—Manus. Brit. mus. 120 բ։

— 2. Փաշ[ա]մելէք, դուստր Ստեփաննոսի և քույր Յովհաննէս քահանայի, որ Ռշտունեաց Տշող գյուղում գրել տվեց մի Ճառընտիր 1419 թ.—Նոտարք 59։

— 3. Փաշամէլիք, կին Մանկասարի. ծնողներն են Արճիշեցի Յովհաննէս (№ 1095) քահանայի, որ թողել է մի քանի ձեռագրեր 1445—1463 թվերին.—Նոտարք 217։

— 4. Փաշամելիք, կին Բեհնամի և մայր մահտեսի Կիրակոսի, որ նորոգել տվեց մի հին Աւետարան, 1454 թ. այս թվին Փաշամելիքը մեռած էր.—Թորոս աղբ. Ա. 330։

— 5. Փաշամէլիք, կին Մանկասարի, ծնողներն են Յովհաննէս քահանա գրչի, որ օրինակեց Ճաշոցը, Արճէշ 1457 թ.—Նոտարք 186։

— 6. Փաշամելէք, կին Ստեփանոսի, որի որդին է Յովանէս և սրա կինն էլ Աղիզ։ Այս Ստեփանոսը և Յովանէսը մեռան տարաժամ ևւ սուգ անմխիթար եթող ծնողին (Փաշամելիքին). և զոր ինչ ունէր ի մահուանն՝ խաչ օրհնեցին. և նա դառն սրտիւ և ունայն ձեռօք սկսաւ զուգել զԱւետարանս ի յիշատակ իւրն և առն իւրում Ստեփանոսին և որդոյն Յովանիսին»։ Այս Աւետարանի գրչությունը հանձն առավ Կեցանայ ձորի Սորավանք գյուղում Յովհաննէս քահանան, որդի Թաւաքալի, 1458 թ.։ (Շարունակությունը տե՛ս Յովհաննէս քահանա։—Սույն Ստեփանոսի գերդաստանը հետևյալն է. հայրն է Աղեր, մայրը Տիկին մելէք, որդին Յովանէս, սրա կինը Աղիզ, սրա որդին Գրիգոր Պալալ, որի կինն է Փաշա։ Գրիգորի որդիքն են Ստեփանոս, Յովանէս, Պարսամ, Մարտիրոս, Պետրոս, և հարսը՝ Շահում։ Մյուս ազգականներն են Հալիմ խաթուն, Արուս խաթուն, Արմելէք (գուցե Ջարմելէք), Թումայ և Կենակիցն Շնոխվոր և որ-

դին Կիրակոս։ Սրանց ազգակցական կապը չէ նշանակված.—Երբ Յովհաննէս քահանան քարի արկածին կոհ գնաց, Աւետարանի արձանագրութիւնը շարունակեց Յովհաննէս աբեղան (տե՛ս այս անունը) և ավարտելով նվիրեց Եղեգիսի վանքին.—Ձեռ. Վասպ. 426—431։

— 7. Փաշամէլիք, կին Մանկասարի. ծնողներն են Յովհաննէս քահանայի, որ Արճէշում օրինակեց Աւետարանը՝ խօջա խաչատուրի համար 1462 թ.—Ձեռ. Վասպ. 439։

— 8. Փաշամէլէք, կին Ծերունի և մայր Յովհաննէս կրոնավորի, որ գնեց մի հին Ճարակնոց և նորոգել տվեց 1465 թ.—Rapport Belgique 145։

— 9. Փաշայ-Մելիք, կին Թադէոսի և մայր Զօրայի, որ Կոնթեր գյուղում Երեմիա գրչին գրել տվեց մի Մաշտոց 1474 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 339։

— 10. Փաշամելէք (կրճատ Փաշա). կին Ստեփանոսի և տատ Դովլաթխաթունի, որ Աղթամարում օրինակել տվեց Աւետարանը, 1490 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 12։

— 11. Փաշամելիք, կին Գալուստի և մայր Ջանղուրբանի, որ Կուքի գյուղում գրել տվեց մի Աւետարան՝ 1495 թ.—Սմբատեանց, Երնջակ 135։

— 12. Փաշամէլէք, իգ. թ.?—Ձեռ. Վասպ. 372։

* ՓԱՇԱՋԱՆ, իգ. <թրք. باشا paša բառից+պրս. جان ǰan գգվականով. հիշված է 1548 թ.— Ձեռ. Սանաս. 25 բ և 1554 թ. Ձեռ. Վասպ. 98։

— 1. Փաշաջան, 1629 թ.—Ձեռ. Վասպ. 876։

— 2. Փաշաջան, հիշված է 1224 թվից հետո գրված անթվական մի հիշատակարանում.—Թորոս աղբ. Բ. 273.—Ավելի ուշ՝ 1605 թ.—Ձեռ. Ադուլ. (Արրտ. 1911, 315)։

— 3. Փաշաջան, իգ. թ.?—Ձեռ. Վասպ. 441։

— 4. Փաշաջան, իգ. թ.?—Ձեռ. Վասպ. 450։

ՓԱՇԵԿԷՆ, իգ. հիշված է 1671 թ.—Bodleian 161։

* ՓԱՇԻԿ, տե՛ս Փաշա, որի գգվականն է։

— 1. Փաշիկ, կին մահտեսի Սամուէլի, որ մի Մաշտոց նվիրեց Յովհաննավանքին 1464 թ. և ուրիշ գրքեր.—Այրարատ 198։

— 2. Փաշիկ, ա՞ր. հիշված 1644 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 334։

* ՓԱՇՈՒԿ, իգ. Փաշիկ անվան այլ գգվական ձևն է. հիշված 1729 թ. տպագիր մի հիշատակարանում։

ՓԱՇՈՒՄ, իգ. հիշված 1702 թ.—Manus. Brit. mus. 167 բ։

ՓԱՊԱԿ, ար. ծագումն ինձ անհայտ։

— 1. Փապակ, իշխան Առաւեղենից. անդամ Արտաշատի ժողովի («449 թ.»). Յազկերտ Բ-ի բանտարկած նախարարներից մին. մասնակցեց Վարդանանց պատերազմին (451 թ.).—Եղիշ. 150. Փարպ. իգ (ձեռ. Փապակ, տպ. Փափագ), իբ (ձեռ. Փափագ, տպ. Փափաf), իէ (ձեռ. և տպ. Փափակ).—գրծ. Փափագաւ՝ Փարպ. լթ (այսպես և ձեռ.)։

— 2. Փապակ Պալունի. կուսակից Վահանի. մասնակցեց Ներսեհապատի ճակատամարտին.—Փարպ. հա։

ՓԱՌԱՆՁԵՄ, իգ. գործածական է և այժմ. կրճատ ձևով՝ Փառօ, Փառիկ։ (Պատահական է երևում պրս. فرنگیس farangīs, որ է դուստր Աֆրասիաբ թագավորի և կին Սիավուշի. Շահն. հտ. 2, 264)։

— Փառանձեմ, թագուհի Հայոց. Անդովկ Սիւնու դուստրն էր, որին կին առավ Գնէլ Արշակունի՝ եղբորորդի Արշակ Բ-ի. Արշակը սպանել տվեց Գնէլին («359 թ.») և ամուսնացավ Փառանձեմի հետ։ Արշակի գերությունից քիչ հետո, Փառանձեմը Արտագերսի մեջ ամփոփված՝ 14 ամիս դիմադրեց Պարսից, բայց վերջապես անձնատուր եղավ («369 թ.») և գերվելով Պարսկաստան՝ անպատվությամբ սպանվեց։ Վասակ Սիւնի մարզպանի հորաքույրն է.—Բուզ. Դ. ժե, ի, խդ, ծե. Ե. իբ. Խոր. Գ. իբ, իդ, լդ, լե. Մեսր. եր. 43—45, 49—51. Ասող. Բ. ա. Մխ. անեց. իգ. Կիր. 12 (տպ. Փառանձեմ). Մին. համդ. 24. Օրբ. ը. Նոր. ժող. Գ. 25.—սեռ. Փառանձեմայ՝ Բուզ. Դ. ժե, խդ, ծե. Ե. գ. Խոր. Գ. լդ. Մեսր. եր. 49. Ասող. Բ. ա. Վրդ. իգ. Յայսմ. նոյ. 19. Դրնղ. 48.—գրծ. Փառանձեմաւ՝ Խոր. Գ. լե։

ՓԱՌԱՑ, կին Անդրէասի, ծնողներն են Գրիգոր գրչի, որ Աղթամարում օրինակեց Աւետարանը 1355 թ.—Ձեռ. Վասպ. 204։

ՓԱՌԱՆՑ, տիկին, 1311-ից ուշ գրված մի հիշատակարանում. թ.?—Ձեռ. Թաւր. 74 բ։

* ՓԱՌԷՆ, ար. <իրան. անուն, հպրս. farnah—, պրս. farr. «փառք» բառից. հմմտ. Փառներսեհ (Հիւբշ. 89), որի դղվականն է ըստ Հիւբշ. 90 ծան.։

— Փառէն երեց Տարօնեցի, հետո եպիսկոպոս Աշտիշատի. թվի Գրիգոր Լուսաւորչի ցեղից (հմմտ. Բուզ. Գ. ժե վերջին տողերը). Վրթանէս կաթողիկոսի Պոլիս գնացած ժամանակ վարեց եկեղեցական գործերը («339 թ.»). ընտրվեց կաթողիկոս Տիրան Բ-ի օրով, իբրև հաջորդ Յուսիկի. Թույլ, բայց սրբակեցիկ, նստեց «սակաւ ժամանակս» «348—352 թթ.» (ա՛յս է ըստ Խոր. Փառներսեհ).—

Բուզ. Գ. ժզ.—սեռ. Փառնեայ՝ Բուզ. Գ. ժէ.—Փառինայ՝ Բուզ. Գ. ժգ. Զ. ը, ժ։

* ՓԱՌՆԱԿ, ար. <փաղաքշական ձևն է Փառնաւազ կամ նման մի անվան։ Հմմտ. Փառնակ Ա թագավոր Պոնտոսի, պապ Միհրդատի (Ն. Ք. 180 թ.)։ Փառնակ Բ որդի Միհրդատի. (Փառնակի հուն. արձանագրությունը Արմաւիրում տե՛ս Տեղեկ. ԱրմՖանի 1942 № 1, էջ 58)։— Φαρνάκης աներ Դարեհ Գ-ի։—Փառնակ անունը գործածական է այժմ։

— 1. Փառնակ, սատրապ Լիւդիոյ և Յոնիոյ. Justi 93 ա. Նույնը լուսնի աստվածն է Կապադովկիա և Միւսիա։

— 2. Փառնակ Ա, նահապետ Հայկազանց. հաջորդ Զաւէնի. Ն. Ք. 1531 թ. ըստ Չամչ.—Իր օրով Եգիպտացոց Սեսոստր արքան արշավեց Հայաստան և փախցրեց Փառնակին.—Գրված է Փառնաս՝ Խոր. Ա. ժթ. Կղկնտ. Ա. ժե (հրտր. Էմինի), բայց Փառնակ՝ ՅՀ. կթղ. բ. Մագ. թղ. ժթ. Մխ. այրիվ. 17. Սամ. անեց. 45. Մին. համդ. 9.—Փառան՝ վրդ. է (այլ ձեռ. Փառնան)։ Փանասկոր՝ Վրաց աղբ. Ա. 74։

— 3. Փառնակ Բ. նահապետ Հայկազն. հաջորդեց Փառնաւազ Ա-ին.—Չամչ. Ա. 92 (չունի Խոր.) Ն. Ք. 805 թ.։

* ՓԱՌՆԱՒԱԶ, ար. <հպրս. * Parnabūzu ձևից. հմմտ. հուն. Φαρνάβαζος, վրաց. Փարնավազ (առաջին թագավոր Վրաց՝ ըստ Մխ. այրիվ. 22), սատրապների դրամների վրա, որ է Parnabazu (Հիւբշ. 89), ըստ Justi 92 բ նշ. «փառավոր բազկով»։—Հմմտ. պրս. Xōšnavāz որդի Խաքանի (Շահն. հտ. 6, էջ 74)։

— 1. Փառնաւազ Ա, նահապետ Հայկազն, հաջորդեց Կայպակին.—Չամչ. Ա. 92 (չունի Խոր.) Ն. Ք. 838 թ.։

— 2. Փառնաւազ Բ, թագավոր Հայկազն, հաջորդեց Հրաչեայ թագավորին Ն. Ք. 678 թ.—Չամչ. գրված է Փառնուաս՝ Խոր. Ա. իբ, բայց նույնը Փառնաւաս՝ Մագ. թղ. ժթ.—Փառնաւազ՝ Ուխտ. Ա. իգ. Կղկնտ. Ա. ժե (հրտր. Շահն. Փառնաւազ). ՅՀ. կթղ. գ. Մխ. անեց. գ. Սամ. անեց. 46. Վրդ. է (հրտր. Էմինի՝ Փառնուազ). Մխ. այրիվ. 18, 54. Մին. համդ. 11.—Փառնեվազ՝ Վրաց աղբ. Ա. 74.—սրա մասին տե՛ս Աբեղեան Հայ ժող. առասպ. 399—407։

— 3. Փառնաւազ, թագավոր Հայկազանց, հաջորդ Շաւարշի. հպատակվեց Բաբելացոց Նաբուգոդոնոսոր թագավորին.—Սուտ Սեբ. Ա. 6 (սխալ հասկանալով Սեբէոսը, ավելացնում է, թե Փառնաւազը Բաբելոնումն է մեռել). Սիմ. ապար. 19.—սեռ. Փառնա-

ւազայ՝ *Սիմ. ապար. 19.—ընդարձակ սրա մասին խոսում է Ալիշանը՝ Հյաստ. 235։*

* **ՓԱՌՆԵՐՍԵՀ,** *աբ.<պհլ.* * Parr-Nerseh *անունից, որ կազմված է պհլ. պրս.* farr=*հպրս.* farnah *«փառք» բառից*+Ներսեհ *անունից. առաջինի համար հմմտ. հպրս.* Vindafarnā, *հուն.* Φαρνά-Βαζος, Τισσαφέρνης, *և մի ուրիշ անվան հետ կցման համար՝ պհլ.* Farr-Ohrmazd *(իբր թե *Փառ—Որմիզդ).— երկրորդի հետ բարդված անուններ են* Ատրնեrսեհ, Միհրնեrսեհ, Ամիրնեrսեհ *(Հիւբշ. 90)։*

— Փառնեrսեհ, *կաթողիկոս Հայոց (տե՛ս* Փառէն, *որ նույն անվան փաղաքշականն է).—Խոր. Գ. ժզ. Եղն. եր. 266. ՅՀ. կթղ. ժա. ՅՀ. կթղ. Հյր. 273. Մեսր. եր. 14. Ասող. Բ. ա. Մխ. այրիվ. 20. Մխ. անեց. դ. Սամ. անեց. 66. Միխ. աս. իթ (=իը). Վրդ. իր. Կիր. 11. Մ. Մաշտ. 336 ա. Օրբ. հա.—*Փառնեrսէ *ՔՀնպ. 270.—* Փառնեrսէս՝ *Եղն. եր. 268.—սեռ.* Փառնեrսեհի՝ *Խոր. Գ. ժզ. Վրաց. աղբ. Ա. 77 (*Փառնեrսեխ՝ *Ապրականանեցւոց երկրից)։*

* **ՓԱՌՈԽ,** *աբ. <պրս.* فرّخ farrux *«օրհնյալ» բառից (Պատկ. Սեբ. էջ 7)։ Տե՛ս և* Ֆառուխ:

— 1. Փառոխ, *որդի Ամասիայի՝ նահապետի Հայկազանց. կոչված է «արի»։ Իր անունով է* Փառախոտ *տեղանունը.—ուղ.* Փառոխ՝ *Խոր. Ա. ժբ.—*Փարոխ *Ուխտ. Ա. ժզ. (դնում է որդի Արամայիսի). Սամ. անեց. 42.—սեռ.* Փառոխի՝ *Խոր. Ա. ժբ.—*Փարոխայ՝ *Ուխտ. Ա. ժզ. Սամ. անեց. 42. Մին. համդ. 4.—բց.* ի Փառոխայ՝ *Խոր. Ա. ժբ.—Ըստ Սուտ Սեբ. Ա. 7* Փառոխ=*Եղիազար (է որդի Մարսեակի՝ Աբրահամ նահապետի ընդոծնի և փախել է Հայաստան. իր անունով է Փառոխտ տեղանունը)։*

— 2. Փառոխ *Խաղբակեան, որդի Վասակի, եղբայր Պապակի, իշխան Խաչենի +1282 թ.* (Justi *94 բ)։*

* **ՓԱՌՈՒԽՇԱՀ,** *աբ. <պրս.* فرّخ farrux *«երջանիկ, օրհնյալ» (տե՛ս* Փառոխ*)*+ šāh *բառերից։ Հմմտ.* Farruxšāh *պարսիկ ասպարաշխ ի Բաղդադ (+977).* Farrux šāh *որդի Շահան շահի, եղբորորդի և տեղակալ Սալահադդինի ի Դամասկոս. հաղթեց խաչակրաց ( + 1182 թ.),* Justi *96 բ։ Տե՛ս և* Ֆառուխշահ:

— 1. Փառուխշահ *ումն (ժԵ դար).—Ջեռ. էջմ. № 940։*

— 2. Փառուխշահ, *որդի Սուլտանի և եղբայր Մատթէոս երեցի, որ օրինակեց Տօնականը Վերի Նորավանքում 1456 թ.—Հրատր. Ազաթ. 1909 թ. յոշ. էջ ԽՋ։*

\+ ՓԱՌՔՈՒՇԻ, իգ. <հյ. փառք բառից + ուշի իգ. մասնիկով. նորակերտ անուն, քիչ գործածական։

ՓԱՍԱԲԱՅ, ար. (թվի թե պետք է կարդալ Փասաբան, որ է պրս. پاسبان pāsbān «պահապան»). հիշված է մի խաչքարի վրա՝ անհայտ թվականով.—Սմբատեանց, Գեղարք. 569։

* ՓԱՏԼՈՒՆ, ար.

— Փատլուն, Անիի թուրք Փատլուն ամիրայի թոռն է, որ լսելով, թե իր հոր մայրը՝ Կատա (№ 3) հայ է և քրիստոնյա Բագրատունեաց արքայական տոհմից, քրիստոնյա դարձավ ինքն էլ, բնակվեց 15 տարի Ս. Գրիգորի լեռը, իբրև կրոնավոր, մեծ ճգնությամբ, ապա գնաց Կիլիկիա՝ Դրազարկի վանքը, ուր մեռավ ու թաղվեց 1130 թ.—Սիսուան 232 բ։

ՓԱՐԱՃԱՆ (սեռ. Փարաճանին). ծագումն ինձ անհայտ. ար. հիշված է 1506-ից ուշ (Ձեռ. Հալէպի, Ա. 79 բ)։

* ՓԱՐԱՄՈՒՉ, ար. <պրս. فرامرز Farāmurz անունից, որ բուն նշ. «կուսակալ, և է իշխողն այնր ամրոցի և քաղաքի, որ է ի սահմանածայրի տէրութեան». այս անունով էր կոչվում քաջն Ռուսթէմի որդին (Շահն. հտ. 3, էջ 124, 282)։ Նաև Farāmurz իշխող Սպահանի 1041 թվից, հետո Եզդի (Justi 90 բ) և այլն։ Կա նաև Վրաց մեջ Faramurz, Paremuz ձևով (Justi անդ)։ Անշուշտ իբր ար. անուն գործածված է մեր մեջ, որովհետև ունենք Փարամուզեան ազգանունը (Ղարաբաղ)։ Հիշված է Փարիմուզ ձևով 1798 թվից քիչ հետո (Սմբատեանց, Երնջակ 294). ավելի ո՞ւշ հիշված է Ֆարամազ ոճ (Սիսական 263 բ)։

— Փարէմուզ, ար. հիշված է 1728 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 120)։

* ՓԱՐԱՋ, ար. <արաբ. فرج faraǰ «ազատություն» բառից. իբր հատուկ անուն գործածվում է նաև արաբների մեջ (Կամուս, Ա. 430). հմմտ. Ֆարաճ բժիշկ ասորի, որ Սմբատ Գ Թագավորի հրամանով կազմեց «Անասնաբուժություն» (1295 թ.). տե՛ս Ձեռ. Թաւր. 137։

— Փարաչ, որդի Զագիկ իշխանի։ Բոլորաքար գյուղը հաստատեց Տաթևի վանքի վրա (ԺԱ դարի սկիզբը).—սեռ. Փարաչոյ՝ Օրբ. ծգ.—բց. ի Փարաչոյ՝ անդ։

\+ ՓԱՐԵԼԻ, իգ. <հյ. փարիլ «գրկել, փաթաթվել» բայից՝ փարելի «սիրելի»։ Իբր իգ. անուն հիշված է 1687 թ. (էջմ. № 936 ձառընտրի մեջ)։

ՓԱՐԹԱՄ սարկավագ Զէյթունցի, գրիչ. օրինակել է պատմվածքների մի ժողովածու, 1674 թ.—Ձեռ. Հալէպի Բ. էջ 94 ա։

* ՓԱՐԻ, ար. և իգ. <պրս. بیری parī «պարիկ, գեղեցկադեմ ոգի» բառերից։ Հմմտ. Փարի՝ քույր Լաւասափ Թագավորի վրաց (Առաք. պտմ. 87)։ Հիշված է իբր իգ. անուն ԺԶ դար (Կրպտ. եպս.՝ Դօփեանք 152) և 1596 թվից հետո. 1661 թ. (Արցախ, 259), 1671 (Խաղբակեանք 253), 1789 թ. (Ձեռ. Թաւր. էջ 76 բ և 126 բ), և իբր ար. անուն 1687 թ. (անդ, էջ 24 բ)։

— 1. Փարի, իգ. 1655 թ.—Ձեռ. Վասպ. 553։

— 2. Փարի ս? հիշված 1665 թ.—Թորոս աղբ. Բ. 411։

— 3. Փարի. իգ. հիշված 1678 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 2 բ։

— 4. Փարի. իգ. հիշված է 1674 թվին (Ձեռ. Դադեան, Բ. 46 բ) և 1685 թվին (Ձեռ. Ագուլ.=Արրտ. 1911, էջ 1011)։

— 5. Փարի, իգ. 1735 թ.—Ձեռ. Վասպ. 546։

— 6. Փարի, իգ. 1742 թ.—Ձեռ. Վասպ. 565։

* ՓԱՐԻԶԱԴ, իգ. <պրս. بیری parī «փերի, հուշկապարիկ»+ زاده zādā «ծնյալ» բառերից, իբր հուշկապարիկի ծնունդ (անպար գեղեցկության)։ Հմմտ. Մոլլա Մոհամմեդ Սահիր Փէրիզադէ Թուրք գրող + 1749 թ. (Justi 247 ա)։ Հիշված է 1647 թ. Փարիզատ ձևով (Ձեռ. Թաւր. 101 բ) և 1726 թ. Փարիզադ ձևով (Ձեռ. Նոր-Բայազ. 22 բ)։

* ՓԱՐԻԽԱՆ, իգ. <պրս. بیرخوان parīxān «դյութություն, հմայք», որ կազմված է بیری parī «հուշկապարիկ»+ خوان xān «կարդալ, կոչել» բառերից։ Հմմտ. Perīxān քույր Շահ Թահմասպի (1524—1576 թթ.), Փերիխան՝ դուստր Շահ Թահմասպի՝ + 1577 (Justi 246—247)։ Հնագույն հիշատակությունը 1535 թ. (Ձեռ. Թաւր. 88 ա)։

— 1. Փարիխան, 1575 թ.—Ձեռ. Վասպ. 683։

— 2. Փարիխան, 1585 թ.—Ձեռ. Վասպ. 699։

— 3. Այնուհետև հիշված կան Փարէխան 1578 թ. (Ձեռ. Սեր.=ՀԱ 1925, 472), Փարիխան ԺԶ դար (Ձեռ. Վասպ. 783), Փերիխան 1674 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 175), Փերիխան 1664 թ. (Bodleian 252), Փէրիխան 1704 թ. (Ձեռ. Թեհր. 6 բ=ՀԱ 1935, 396)։ Ունենք նաև Փիրուխան՝ 1629 թվից ուշ (ՀԱ 1890, 21 բ), և կրճատ Փարօ 1798 թ. (Ձեռ. Վասպ. 223). բոլորն էլ իգ.։ Ավելի ուշ Փիրիխան ձևով՝ իգ. 1654 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 127) և 1661 թ. (անդ 75 բ)։

— 4. Փարիխան, թ.?—Ձեռ. Վասպ. 582։

ՓԱՐԻՆՍ, իգ. հիշված է մի խաչքարի վրա 1653 թ.—Սմբատեանց, Գեղարք. 620։

* ՓԱՐԻՇԱՆ, իգ. <պրս. بارشان parīšan «խեղճ, թշվառ», գործածվում է այժմ Կովկասում (տե՛ս Սով. Հյաստ. 1948 թ. սեպտ. 17, էջ ա, սյունակ 3—17)։

— 1. Փառշան, կին Դովլաթշահի՝ որդւոյ Խոջա Ջալլի, որ Յովհաննէս աբեղային գրել տվեց մի Աւետարան, 1490 թ.—Ձեռ. Վասպ. 514 (իսկ էջ 515 սխալ գրված Փաղիջան):

— 2. Փարիջան, 1594 թ.—Ձեռ. Վասպ. 737։

ՓԱՐՂՈՒՋԱԹ, ար. հիշված է անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Նոր-Բայազ. 51 ա)։

* ՓԱՐՈՒԽԱԹՈՒՆ, իգ. <պրս. بيرى parī «պարիկ»+խաթուն բառերից. մի անգամ գտնում եմ հիշված անթվական մի հիշատակարանում.—Bodleian 148։

* ՓԱՐՍԱԴԱՆ, ար. սովորական անուն է Վրաց մեջ. Պարսից մեջ չի հիշատակված. թեև կարելի է մեկնել իբր պրս. fārsī-dān «պարսկերեն իմացող»? ըստ այսմ հայերենը կարելի է համարել փոխառյալ վրացերենից։ Հմմտ. 1) Parsidan բէգ հրամանատար 1555 թ., աղնվական ի Կախեթ 1603 թ. 2) Փարսադան ամիլախոր իմերեթցի 1651 թ. 3) Փարսադան զորավար Վախթանգ Զ-ի 1724 թ. 4) Փարսադան պատմիչ +1703 թ.—Justi 98 ա։ Մեր մեջ հիշատակված է նախ ԺԷ դար (Ջբր. սարկ. Ա. 82), ապա Փարսատան 1661 թ. (Manus. Brit. mus. 302 ա), Բերսատան 1683 թ. (Ուղուրլեան, Պատմ. գաղթ. ի Լիվոռն. 258)։ Այս անունը սովորական է այժմ Ղարաբաղում և նրա կրճատ ձևն է Փարսի.—սրանից են Փարսադանեան և Մելիք-Փարսադանեան ազգանունները։

— 2. Փարսադան Գորգիջանիձէ, ծնվել է Գորիում 1626 թ.։ Վրաց Ռոստոմ թագավորը սնուցել է նրան՝ իբրև հարազատ որդու 1656 թվին ուղարկվեց Սպահան, իբրև ներկայացուցիչ Վրաստանի, և ընդունելով Իսլամը, ծառայեց Շահաբասին և նրա որդի Սուլեյմանին։ Սպահանում նա մնաց 40 տարի, 1656—1696 թթ.։ Վրաց ԺԷ դարի նշանավոր գրողներից է. իր գործերն են Վրաստանի պատմությունը, Օսմանցոց թագաւորների պատմությունը, Ջամի-Աբասս (մահմեդական օրէնսգիրքը), Վրացերէն-արաբերէն-պարսկերէն բառարան։ Մեռել է 1703 թվին։ Սրան ոմանք համարում են վրացի, իսկ ուրիշներ, և հատկապես Brosset և Իվ. Ջավախիշվիլի՝ հայ են ընդունում.—Մելիքսեթ-Բեկ, Վրաց աղբյուրները, Բ. 82—88։

— Փարսադան, մելիք Հալիձորեցի, օգնական Դաւիթ Բէգի.

գործել է մեծ քաջություններ, մանավանդ Մեղրու պատերազմում. սպանվեց Ագուլեցոց դավաճանությամբ 1727 թ.—Ջամչ. Գ. 798։

* **ՓԱՐՍՄԱՆ**, *ար.* <*իրան.* անուն է. համտ. օտար տառադարձությամբ Φαρασμάνης, սատրապ Խորազմի, թագավոր Իբերիոյ, Pharasmanes II՝ թագավոր Իբերիոյ, Φαρεσμάνης Կողքիսացի ոմն, Pharesmanes՝ Յուստինոս կայսեր զորավար, ասոր. Przmn (Հիւբշ. 90)։ Վրաց. ևս Փարսման, ինչպես ունենք Փարսմաճ՝ թագավոր Վրաց (Մխ. այրիվ. 22)։

— 1. Փարսման Մանդակունի, մասնակցեց Վարդանանց պատերազմին (451 թ.), ուրիշ նախարարների հետ 12 տարի բանտարկվեց Պարսկաստանում և հետո արձակվելով Հայաստան դարձավ.—Փարպ. խէ. Եղիշ. 77, 150. Յայսմ. օգ. 7։

— 2. Փարսման քահանայ Կակաղեցի. փառամոլ անձ, որ վրացական դավանանքն ընդունեց և Ծաթերին էլ բաժանելով հայերից՝ հունադավան դարձրեց 821 թ.—Մխ. այրիվ. 69.—սեռ. Փարսմանայ՝ Այրիվ. 19 ա։

**ՓԱՐՎԱՆԱ**, *ար.* 1721 թ.—Ձեռ. Վասպ. 474։

**ՓԱՐՎԱՆՇԱՅ**, որդի Էտիլշահի և եղբայր Խոնդքար տիկնոջ, որ Խորոտկայ վանքում գրել տվեց Աւետարանը, 1490 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 23 ա։

**ՓԱՐՎԱՐ**, *իգ.* հիշված 1661 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 119)։

**ՓԱՐՕ**, *իգ.* 1720 թ.—Ձեռ. Վասպ. 1002։

**ՓԱՒՈՍ**, *ար.* (այս անունը ստուգաբանել ուզելով Մագ. թղ. ժթ գրում է. «Ո՛ւր Բաւոս փառացի և ըստ պարսկականին բազմանի»)։

— Փաւոս թագավոր Հայկազանց. հաջորդեց Կոռնակի Ն. Ք. 622 թ.—Ջամչ. Ա. 101.—Խոր. Ա. իբ. Կղկնտ. Ա. ժե. ՅՀ. կթղ. գ. Մխ. անեց. գ. Սամ. անեց. 46 Մխ. այրիվ. 18. Մին. համդ. 11.—Բաւոս՝ Մագ. թղ. (տե՛ս վերը).—Փաւոզ՝ Ուխտ. Ա. իգ.—Փովա վրդ. է (հրատ. Էմինի՝ Փովայ).—Փաւսայ (ըստ մի ձեռ. Կղկնտ.—սեռ. Փաւոսայ՝ ՅՀ. կթղ. գ։—Փաոս՝ Վրաց աղբ. Ա. 74։—Փաոոս՝ Մխ. այրիվ. 55։

* **ՓԱՒՍՏՈՍ**, *ար.* <*հուն.* Φαῦστος անունից, որի հետ նույն են Φαυστίνος, Φαύστυλος, *իգ.* Φαῦστα, Φαυστίνη, որոնք բոլորը փոխառյալ են լտ. Faustus, Faustinus, Faustulus. Fausta, Faustina ձևերից։ Հայտնի են օրինակ Fausta դուստր Սիլլայի, Faustianus եպիսկոպոս, Faustina կին Մարկոս-Աւրելիոսի, Faustus որդի Սիլ-

*լալի և բազմաթիվ եպիսկոպոսներ,* Fausta *դուստր Մաքսիմիանո-սի, կին Կոստանդիանոս Մեծի,* Փաւստա *կամ* Փաւստիա *մկա-լուհի,* Փաւստիոս *մկա,* Փաւստոս *անունով որիշ անձինք՝ տե՛ս Սոկր. էջ 514. Եւս. Պատ. 549. Վրք. և վկ. Բ. 349։ Բոլորի աղ-բյուրն է լտ.* faustus *«երջանիկ».— Հիւբշ. 335—336։*

*— 1.* Փաւստոս *եպիսկոպոս, ժամանակակից Արշակ Բ-ի. ծե-րունի էր «353 թվին», երբ սարկավագ ձեռնադրեց Մեծն Ներսե-սին.—Բուզ. Դ. գ.—սեռ.* Փաւստոսի՝ *Կիր. 12։ (Ոմանք համարում են Բուզանդ պատմիչը. այլ է ըստ Միքայան* ZAPh *2, 281—282 և Ազգապ. 168 և 252).—*Փեստոս՝ *Մեսր. եր. 23։*

*— 2.* Փաւստոս *Բուզանդացի, հույն, բնակվում էր Հայաստա-նում, ուզեց եպիսկոպոս ձեռնադրվել և դրա համար դիմեց Մեծն Ներսեսին, հետո Կեսարիոյ Բարսեղ հայրապետին, և երբ այս բոլորն էլ մերժեցին, դիմեց Կապադովկիոյ Անթիմոս մետրոպոլիտին և ստացավ նրանից ապօրինի կերպով եպիսկոպոսական ձեռնադրու-թյուն. հետո խլեց Կիւրղոսից Բասենի աթոռը, բայց շուտով վտար-վելով՝ եկավ Ներսեսի մոտ և ներում ստանալով՝ նշանակվեց աղ-քատանոցների վերատեսուչ (370 թ.՝ Չամչ. Ա. 447, Այրարատ 43)։ Չամչ. համարում է նրան նույն՝ հաջորդ երկուսի հետ։ Այս անձի մասին մեզ տեղեկություն է տալիս Ս. Բարսեղ՝ 373 թվին գրած իր մի թղթում, որից երևում է, որ Փաւստոսը ուղարկված էր Պապի կողմից Ս. Բարսեղի մոտ եպիսկոպոս ձեռնադրվելու (փոխանակ Կիւրեղի, որ նրա հակառակորդն էր)։ Երբ Բարսեղը քննել ուզեց նրան, նա փախավ Ս. Բարսեղի հակառակորդ և Դիանա քաղաքի մետրոպոլիտ Անթիմոսի մոտ և նրանից եպիսկոպոս ձեռնադրվեց.— Ալպօյաճեան, Պատմ. Հայ Կես. Ա. 281—282. Ն. Մ., Փաւստոս Բուզանդ, Վիեննա, 1890, էջ 8—12, Հացունի, Կարևոր խնդ. 204—206։*

*— 3.* Փաւստոս *եպիսկոպոս, հույն. թելակալ Մեծն Ներսեսի. ժամանակակից Պապի. հուղարկավոր եղավ Մեծն Ներսեսի թաղ-ման («373 թ.»). կենդանի էր դեռ Արշակ Գ-ի ժամանակ («384 թ»).—Բուզ. Ե. իդ. Զ. ե.—սեռ.* Փաւստեայ՝ *Բուզ. Զ. ե. զ։*

*— 4.* Փաւստոս *Բիւզանդացի (որ և* Փօստոս, Փոստոս*), պատ-միչ. գրեց Հայոց պատմութիւնը Տրդատի մահից մինչև Արշակու-նեաց բաժանումը.—Փարպ. ա, գ. Ասող. Ա. ա. Մխ. անեց. ե.—* Փաւստոս Բիւզանդ՝ *Սամ. անեց. 3.* Փօստոս Բիւզանդ՝ *Սիմ. այրիվ. 37. Կիր. 3.* Փաստոս Բիւզանդ՝ *Եւ. կթղ. էջ ը (դնում է հույն պատ-մագրաց շարքում).—սեռ.* Փաւստեայ *(գրված է* փախստեայf*)*

Բուզ. Գ. իա.—Փաւստոսի՝ Փարպ. գ.—Փոստոսի՝ Սիմ. ապար. 33։ (Փաւստոսի վրա զանազան քննություններ տե՛ս Տաշեան, Ցուց. 1160 ա, որոնց ավելացրու Սարգիսեան, Ագաթ. և իւր բազմ. գաղտ. էջ 298 և Միաբան ZAPh 2, 286։ Ամենից ամփոփ գործն է Ն. Մ.՝ Փաւստոս Բուզանդ, Վիեննա 1890, էջ 52։ Գրգչ. Քնն. պտմ. Բ. 67—78)։—Բարսեղ Կեսարացու թղթերումն էլ հիշված է մի Փաւստոս եպիսկոպոս, որ Չամչ. Ա. 447 համարում է մեր պատմիչը. տե՛ս ZAPh 2, 281. մերժում է Գրգչ. Քնն. պտմ. Բ 68։—Տե՛ս և Զարբ. Հին դպր. 242—256, Թրգմ. 49—53։

ՓԱՓԱՍ, իգ. հիշված 1808 թ. (Չեռ. Վասպ. 360), նաև Փափաւէ (անդ՝ այլ)։

ՓԱՓՈՒԿ, մերձավոր տանուտէր Ստեփանոսի, որ Վանում գրել տվեց մի Աւետարան 1435 թ.—Չեռ. Վասպ. 370։

* ՓԵԲՐՈՆԷ, իգ. <հուն. Φεβρωνία անունից. այս անունով հայտնի է Փեբրոնէ (սեռ. Փեփրոնեայ) կույս, որի նահատակության պատմությունը անցած է Յայսմաւուրքի մեջ, Աւգեր. Լիակ. Վրք. սրբ. Չ. 71։ Հնից չէ ավանդված. գործածական էր անցյալ դարում. այժմ էլ կա, Փեփրոնէ, Փեփրոն ձևերով. հնագույն հիշատակությունը 1796 թ. (էֆիմ. 448)։

ՓԵՆԵԷՍ, ար. <եբր. Pinəxās անունից՝ հուն. Φινεες տառադարձության միջոցով. թերևս եգիպտական ծագում ունի (Gesenius 640)։ Այս անունով հայտնի են Եղիազար քահանայապետի որդին և Հեղի քահանայապետի որդին (Թուոց Իե. 7. Ա. Թագ. ա. 3 և այլն)։ Մեր մեջ չէ գործածված. պատահել է Լենինականում ոմն Փենէս (տե՛ս Խորհ. Հյստ. 1932, փետր. 22, վերջին սյունակ)։

* ՓԵՆՆԱ, տե՛ս Ֆիմի:

— Փեննա (կամ Ֆիմի), դուստր Լևոն Չ-ի (+1393 թ.).— Յուշիկք Բ. 515 և 517—518, 529. Չամչ. Գ. 359.—Աղգապ. 1965 սուտ է համարում այն զրույցը, թե Լևոնի հետ Փեննան գնացած լինի Երուսաղէմ, և այնտեղ մեռած։ Ամուսնացած էր Շահանի հետ. հոր հետ գերի գնաց Կահիրե. ըստ Բասմաճեան՝ «Լևոն» էջ 41, 46, Լևոն Չ-ի Պեմունդ հորեղբոր այրին էր և ոչ թե դուստր Լևոն Չ-ի։ Ամուսնացավ 1374 թ. Լևոն Չ-ի զինակիր ֆրանսացի Sohier Douleart-ի հետ։

ՓԵՊՈՍ Լուսինեան, մարաջախտ Հայոց Կիպրոսում, 1459 թ.— Բակուրան, Կիպրոս կղ. 119։

Սեռ. ՓԵՏՐՈՒՆ, ար. 1507 թ.—Չեռ. Վասպ. 623։

ՓԵՐԱՄԲԵՐ, *իգ. հիշված է 1635 թ. (Նոր-Ջուղա).—Ձեռ. Դաշեան, Ա. 104 ա։ (Թվի եվրոպական անուն, ինչպես է նրա ամուսինը Խեների)։*

ՓԵՐԵԿ, *ար. հիշված 1608 թ.—Ձեռ. Վասպ. 831։*

ՓԵՐԻԳՈՒԼ, *ար. գործված 1721 թ. Երևանում (Արբ. Երև. էջ 16)։*

ՓԷՐԱԻԺ, *քույր Լիանոսի՝ ստացողի Աւետարանի, 1491 թ.—Թորոս աղբ. Ա. 120։*

* ՓԵՐՈՆ. *ար. <հուն.* Φέρων *անունից, որ գրվում է* Φέρω *«բերել» բայից։*

— 1. *Փերոն, զորավար Դաւիթ Կիւրապաղատի Տայոց, պատերազմ վարեց Մամլանի դեմ (Ժ դար).—Ուռհ. 36։*

— 2. *Ֆերոն ոմն, որ մի կով է նվիրել վանքին. թիվն ու սեռն անհայտ (Տաշեան, Ցուց. 666 ա)։*

* ՓԵՐՈՒԶ, *իգ. <պրս.* پیروزه pīrūza *(արաբ.* fīrūza*) անունից, որ բուն նշ. «փիրուզակ», երկնագույն պատվական մի քար է։ Համմ.* Fīrūzeh *մայր Խուդադադի,* Fīrūzeh *իշխանուհի* (Justi 251 ա)*։ Գործածական էր ԺԹ դարում* Փերուզ, Փերուզիկ, Բելուզ *(Պոլիս). այժմ* Փիրուզա *(Ղարաբաղ)։ Նույնը գործված է* Բերոզա *ձևով՝ 1578 թ. (Կամենից 164,։—* Բերոզայ, *իգ. 1578 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 438)։—* Փիրուզ, *իգ. 1810 թ. (Ձեռ. Վասպ. 310)։*

— Բէրուզբակ՝ *Թորոս աղբ. Բ. 337 ուղղել* Փիրուզբախտ:

ՓԷՄԳԷ, *իգ. <թրք.* پمبه pembe *«վարդագույն», իսկ պրս.* پمبه pembe *«բամբակ». Պոլսում գործածական էր անցյալ դարում։*

ՓԹՈՒԹ, *դրամով օգնեց այն Աւետարանի համար, որ Աստուածատուր քահանան գրեց Հաղարծինում 1284 թ.—Թորոս աղբ. Բ. 339։*

* ՓԻԱՆԴԱ, *իգ. <կա՛մ իտալ.* pianta *«ոտի տակը, գարշապար» կա՛մ պրս.* پای انداز pāy-andāz *«թագավորի ոտի տակ գցելու թանկագին դիպակ». մի անգամ հիշված 1587 թ. (Հայապ. 614)։*

* ՓԻԼԱՐԵՏ, *ար. ծագումը տե՛ս Փիլարտոս։ Այս անունով ունենք մի հայ իշխան, որի դուստրը՝ Մարիամ ամուսնացավ Հունաց Կոստանդին կայսեր հետ (788 թ.).—Ջամչ. Բ. 423։*

— *Փիլարետ, այսպես էր կոչվում Մալաթիայի հայ իշխան Գաբրիէլը (№ 5), որ իր իշխանությունը ստացել էր նույնիսկ խալիֆայից։ Շարունակեց Փիլարտոսի իշխանությունը նրա անկումից հետո ամբողջ 15 տարի, մինչև 1101 թ. ունեցավ հաջող պատերազմներ Իկոնիայի սուլթանի և Դանիշմանի հետ, որին ստիպվեց հանձ-*

նել իր քաղաքը՝ Մալաթիան և քաշվել Պոլիս (1101 թ.).—Ալպօյաճեան, Պատմ. Հայ Կես. Ա. 474։ (Ալիշան, Սիսուան 47 համարում է հայ, Ալպօյաճեան կոչում է յոյն. անշուշտ հայ-հոռոմ էր)։

* ՓԻԼԱՐՏՈՍ, ար. <հուն. Φιλάρετος «առաքինասեր» բառից։ Այս անունով կա Պետրոս Փիլարտոս Կրետացի եպիսկոպոս Մեդիոլանի, որ ընտրվեց պապ Հռոմի՝ վերակոչվելով Աղեքսանդր Ե 1409—1410։

— Փիլարտոս, հունադավան հայ իշխան, Վարաժնունեաց գավառից. հունական զորավար էր. երբ Ռոմանոս Դիոգէն կայսրը գերի ընկավ («1071 թ.»), առիթից օգուտ քաղելով՝ ինքնիշխան հայտարարեց իրեն. բռնագրավեց Մարաշ «1077-ին». Հայոց հրավերով տիրեց Անտիոքին և կոտորեց Վասակ Պահլավունու 700 հույն դավադիրներին. «1083-ին» տիրեց Եդեսիոյ շրջակայքը. «1086» թվին գնաց Պարսկաստան՝ Մելիշահի մոտ, թրքացավ և նրան հանձնեց Անտիոքը.—Միխ. աս. խա. Կիր. 47. Վրդ. կ—կր. Մխ. այրիվ. 19.—Փիլառտոս՝ Ուռհ. 206—210, 213—214, 220, 223—225, 228, 233—234, 244.—Ֆիլարտոս՝ Սմբ. պտմ. 86.—Ֆիշառտոս՝ (կարդա Ֆիլառտոս) Սամ. անեց. 118.—սեռ. Փիլարտոսի՝ Միխ. աս. խա.—Փիլառտոսի՝ Ուռհ. 206—209, 216, 223, 229, 231, 233, 240.—բց. ի Փիլառտոսէ՝ Ուռհ. 228.—Ի Փիլարտոսէ՝ Միխ. աս. խա.—Ի Փիլարտոսայ՝ անդ.— (Հունաց մոտ կոչվում է Ֆիլարէտոս. Գելցեր, Հմռ. Բիւզ. պատմ. 330. Ալիշան, Շնորհ. էջ 40). Փիլարտոսի մասին մի փոքր մենագրություն ունի Laurent REA 9, 61—72։ Մի առանձին գիրք էլ ունի Կոմմագենացի «Փիլարտոս Հայը» խորագրով (Հալէպ 1930 թ.)։

* ՓԻԼԱՔՍՈՆ, ար. <հուն. Φιλόξενος անունից, որ բուն նշանակում է «հյուրասեր»։ Այս անունով կա մի անձ, որ մի խաչքար է կանգնեցրել Հաղբատո՞ւմ 1005 թ.—Մովսէսեան, Լոռի Կիւր. 48։

* ՓԻԼԹԱՆ, ար. <պրս. پیلتن pīltan «հաղթամարմին» (հատկապես քաջ Ռուսթեմի ածականն է). բուն. նշ. «փղամարմին». հիշված մի անգամ Ջեռ. Հալէպի Ա. 184 բ անթվական մի հիշատակարանում։

* ՓԻԼԻՊՊԻԿՈՍ, ար. <հուն. Φιλιππικός ձևից. տե՛ս հաջորդը։

— 1. Փիլիպպիկոս Վարդանէս, հայ զորավար, որդի Նիկեփոր պատրիկի, թերևս Մամիկոնեան. 701 թվին երազ տեսավ, որ ինքը կայսր պիտի լինի. կայսրը լսեց այս և Վարդանին Կեֆալոնիա կղզին աքսորեց. 10 տարի հետո Վարդանը Խրիմ աքսորվեց. ժողո-

վրրդական ապստամբության միջոցին Վարդանը Խրիմում կայսր հրատարակվելով արշավեց Պոլիս, հաղթեց և սպանեց Յուստինիանոս կայսեր և տեր դարձավ Բիւզանդիոյ գահին («711—713 թթ.»). —Justi 352. Ջամչ. Բ. 383 (հմմտ. նաև Ջամչ. Բ. 561)։ Յուշիկք Բ. 333—349։ Հետևելով միաբնակ դավանանքին՝ հալածեց և աքսորեց երկաբնակ եպիսկոպոսներին, բայց ինքն էլ զոհ գնալով՝ կուրացվեց և գահից զրկվեց («713 թ.»)։

— 2. Փիլիպպիկոս, կառավարիչ Հունահայոց, հաջորդ Մօրիկի 584—586 թթ. և երկրորդ անգամ 595 թ.—Այրարատ 561։

* ՓԻԼԻՊՊԻՆԷ, իգ. <հուն. Φιλιππηνή «կին Փիլիպպեցի», որի ար. ձևն է Φιλιππηκός. մի անգամ ավանդված ունենք՝

— Փիլիպպինէ, դուստր Ռուբէն Բ-ի, նշանվեց Զորտուանէլ Սասունցու որդի Շահնշահի հետ, որի մահվանից (1193 թ.) հետո ամուսնացավ Նիկիոյ կայսր այրի Թէոդոր Լասկարիսի հետ, որից ունեցավ Կոստանդին Լասկարիս որդին.—Սիսուան 58, 79, 441. Թէոդոր կայսրը շուտով գժտվեց իր կնոջ հետ և նրան հետ ուղարկելով՝ ամուսնացավ Պոլսի լատին կայսեր դուստր Մարիամի հետ։

* ՓԻԼԻՊՊՈՍ, ար. <հուն. Φίλιππος անունից, որ բուն նշ. «ձիասէր»։ (Այս բառը սխալ մեկնելով Յայսմ. հունիս 30 գրում է. «Փիլիպպոս, որ ասի բերան ձեռաց և բան ջահից»։ Նույնը կրկնում է Զքր. սարկ. Ա. 75)։ Այս անունով հայտնի են՝ Փիլիպպոս թագավոր Մակեդոնացոց (359 թ. Ն. Ք.), հայր Մեծն Աղէքսանդրի, Փիլիպպոս առաքյալ (+87), Փիլիպպոս կայսր Հռովմայեցոց (արաբ) 244—249, Փիլիպպոս թագավորք Սպանիոյ (Փիլիպպոս Ա. 1478—1506, Փիլիպպոս Բ 1527—1598, Փիլիպպոս Գ 1598—1621, Փիլիպպոս Դ 1621—1665, Փիլիպպոս Ե 1700—1746), թագավորք Ֆրանսիայի (Փիլիպպոս Ա 1060—1108, Փիլիպպոս Բ 1180—1223, Փիլիպպոս Գ 1270—1285, Փիլիպպոս Դ 1285—1314, Փիլիպպոս Ե 1316—1322, Փիլիպպոս Զ 1328—1350), Փիլիպպոս կայսր Գերմանիոյ (+1208) և այլն։ Օտար ձևերն են լտ. Philippus, գերմ. Philipp, ֆրանս. Philippe, անգլ. Philip, ռուս. Филипп։ Իբր օրինակ ար. անվան հիշված է Թր. քեր. 44 Փիղիպպոս և Խոր. քեր. 179 Փիլիպպոս ձևով։— Մեր մեջ գործածվում է նաև Փիլիպոս, Փիլիպպէ, Ֆիլիպ և կրճատ Փիլիկ, Փիլօ ձևերով։

— 1. Փիլիպպոս, տեր Սիւնեաց. պատերազմեց Գողոն Միհրան մարզպանի դեմ.—Սեբ. Բ։

— 2. Փիլիպպէ Սիւնի, որդի Վասակի, հայր Ներսեհի Փիղիպեան, որ տե՛ս.—սեռ. Փիլիպպէի՝ Օրբ. լբ։

— 3. Փիլիպպոս, վանահայր Վարագի, աշակերտ և հաջորդ Ղևոնդէսի, շուրջ 520 թ.—Հայյապ. 232։

— 4. Փիլիպպէ Բ Սիւնի, որդի Վասակ Իշխանիկի, որդւոյ Փիլիպպէի Ա. ազգական Վարազ Տրդատ Բ-ի. տեր էր Շնհերի և Հաբանդի. ժամանակակից Սմբատ Ա.-ի և Աշոտ (+928 թ.) Երկաթի, սրա որդին է Ներսեհ Դժնդակ։—Փիլիպէ՝ Օրբ. ծ, ծդ.—սեռ. Փիլիպպէի՝ Օրբ. լզ, խը.—Փիլիպպէի՝ Օրբ. ծ. —բց. Փիլիպպէէ՝ Օրբ. խը։

— 5. Փիլիպպէ, որդի Իշխան-Սևադայի և թոռնորդի Սահակ-Սևադայի՝ աներոյն Աշոտ (+928 թ.) Երկաթի.—Կղկնտ. Գ. իզ (ըստ Շահն. խսկ էմին երկու տող փախցրած լինելով՝ այս Փիլիպպէն դարձել է որդի Գրիգորի և թոռն Սահակ-Սևադայի)։ Թագավորում է Աղուանից գահին. սա և Ատրներսեհ (Բ) դիմել են Տիրան(ուն) վարդապետին և ստացել գրավոր պատասխան (տե՛ս Տիրան)։

—6. Փիլիպպէ Ա, իշխան Սիւնեաց, որդի Վասակայ մեծի և հայր Վասակ իշխանիկի, Աշոտի և Բաբկէնի. ժամանակակից Դաւիթ եպիսկոպոսի Սիւնեաց. հարստացրեց Տաթևի վանքը իր նվերներով. մեռել է 848 թ.—Փիլիպպէ՝ Օրբ. լը.—Փիլիպէ՝ Օրբ. ծդ, ծէ.—սեռ. Փիլիպպէի՝ Օրբ. լդ, լզ, լը—խ, խբ, խե, խը.—Փիլիպէի՝ Օրբ. ծ, հդ, ծը.—բց. Փիլիպպէէ՝ Օրբ. լը։

— 7. Փիլիպպէ, իշխան Սիւնեաց, գերի քշվեց Բաղդատ՝ Բուղայի ձեռքով.—Արծր. Գ. ժա։

— 8. Փիլիպպոս, թագավոր Աղուանից Կապանի, որդի Գոշակտակի (որ է Գրիգոր Բ, որ և Գողազգակ. սրանց մասին տե՛ս Բարխուդ. Պատմ. Աղուանից 172)։ Իր աթոռը դրել է Դարբանդում։ «961 թ.» թագավոր պսակեց Աշոտ Գ Ողորմածին. Ուռհ. 3.—Փիլիպպէ՝ Ուռհ. 4, 17. Սմբ. Պտմ. 22, 32.—Փիլիպէ՝ Ուռհ. 231.—սեռ. Փիլիպէի՝ Ուռհ. 231։

— 9. Փիլիպպոս քահանա, Անանիա Նարեկացու (+1003 թ.) նամակը տարավ Ուխտանէս պատմագրին.—սեռ. Փիլիպպոսի՝ Ուխտ. Ա ա։

— 10. Փիլիպպէ, ազատ. օգնական էր Վասակ սպարապետին՝ Թուրքերի դեմ պատերազմում («1020 թ.»).—Ուռհ. 12. Սմբ. Պտմ. 29։

— 11. Փիլիպպոս քահանայ, իր երկու որդիների՝ Ստեփաննոսի և Սահակի հետ՝ ուսուցանում էր Սեբաստիայում, 1066 թ.—Rapport Arm. 46։

— 12. Փիլիպէ, կրտսեր որդի Գրիգոր Մագիստրոսի. մեռավ ծաղիկ հասակում.—Ազգապ. 1260—1261.—Ջամչ. Բ. 929։

— 13. Փիլիպպոս, իր Ստեփաննոս և Սահակ որդիների հետ ուսուցիչ էր Այրարատում. 1066 թվին արդեն մեռած էր.—Հացունի, Դատ. 126։

— 14. Փիլիպոս իշխան, որի անվան մի խաչքար է կանգնեցրած Երնջակի Ս. Կարապետ վանքում, 1074 թ.—Սմբատեանց, Երնջակ 16։

— 15. Փիլիպէ, թագավոր Փառիսոսի, որդի Գրիգոր թագավորի և թոռ Հասունի. զոհ գնաց Պարսիկ Փատլուն իշխանի դավաճանության, որով և նվաճվեց Փառիսոսը (ԺԱ դար).—Վրդ. ծղ. Բարխուդ. Պատմ. Աղուանից 179։

— 16. Ֆիլիփ, կրտսեր դուստր Ռուբէն Բ (1175—1185 թթ.) թագավորի. կին Լաշքարէ թագավորի Հունաց.—Սմբ. պատմ. 105, 113. Պտմ. Կիլ. 208—209։

— 17. Փիլիպպոս քահանա, գրիչ. Այրիվանքում օրինակեց Տօնապատճառը 1190 թ., որ մի տարի հետո նվիրեց Ս. Նշանին, 1191 թ.—Շողակաթ 197։

— 18. Փիլիպպոս կամ Փիլիպ քահանա, գրիչ. Այրիվանքում օրինակել է մի գեղեցիկ Տօնապատճառ 1191 թ.—Յովսէփեան, Մի էջ հայ արուեստի, էջ 10 և Նիւթեր հին Հյստ. պատմ. 131։

— 19. Փիլիպպոս, առաջնորդ Սանահնի վանուց, հաջորդ Վարդանին՝ 1211 թվից հետո. մեռավ 1214 թվին և իրեն հաջորդեց Գրիգոր որդի Աբասու.—Ակինեան, Մատեն. հետազ. Ա. 8։

— 20. Փիլիպպոս, թագավոր Հայոց Կիլիկիոյ «1222—1225 թթ.». Անտիոքի լատին բրինձի որդին էր. մոր կողմից հայ. ամուսնանալով Լևոն Բ-ի դստեր՝ Զապէլ թագուհու հետ՝ բարձրացավ Հայոց գահը։ Հայոց կրոնին թշնամանելու և պալատից գողություններ անելու պատճառով՝ գահազուրկ եղավ և բանտ դրվեց, ուր և մեռավ։—Փիլիպպոս՝ Կիր. է (լե).—Փիլիպ՝ Միխ. աս. իը (=իէ). Սամ. անեց. շար. 148.—Փիլիկճ Փռանկ՝ Մխ. այրիվ. 20. Ֆիլիպ՝ Սամ. անեց. շար. 149. Պտմ. Կիլ. 210. Նհպտք. 104. Դարդել. 15, 16. Սմբ. պտմ. 121, 136. Հեթ. պտմ. Վրդ. ծղ. Մին. համդ. 43. Յուշիկք Ա. 136—140.—սեռ. Ֆիլիպի՝ Մին. համդ. 43. Նհպտք. 104.—Հիշված է 1223 թվին գրված մի ձեռագրի հիշատակարանում ասելով. «Ի ժամանակս մեծի արքային Փիլիպպոսի» (Թորոս աղբ. Բ. 388)։

— 21. Փիլիպպոս վարդապետ. միաբան Սաղմոսավանից, ուսուցիչ Մկրտիչ քահանայի, որ օրինակեց Կարբիում՝ խորհրդ

Անձեացու Մեկնութիւն ժամակարգութեան, Պատարագամատոյց, Մեսրոպ երեց, Զենոբ Գլակ և Յովհան Մամիկոնեան, 1278 թ.— Պատմ. Տարօնոյ, Երևան, 1941, էջ XIII։

— 22. Փիլիպպոս քահանա, ստացող Հաւաքածոյի (գրված 1284 թ.).—Տաշեան, Ցուց. 834 բ։

— 23. Ֆիլիպ, հիշված է Յովհաննէս արքայեղբոր հիշատակարանում (1286 թ.) իր եղբայրներից հետո, իր քույրերի (Կոստանդին Պայլի դուստրների) շարքում, այն է «Հոփսիմէ կրօնաւոր, Թիֆանաւ թագուհի Կիպրոսի, և Կալամառի գոնդէս Ճաֆում և Ռամլոյ և Ֆիլիպ և Մարիամ թագուհի» (Ձեռ. Վասպ. 110)։

— 24. Փիլիպպոս քահանա, ունեւ մի օրինակ Ժողովածու, որ տվեց խաչատուր գրչին արտագրելու համար Կիլիկիոյ Փերճերի վանքում 1292 թ.—Ձեռ. Հալէպի Ա. 347 բ։

— 25. Փիլիպպոս, եպիսկոպոս խորձեանի, անդամ Սսոյ ժողովի («1307 թ.»).—Աղգապ. 1785։

— 26. Փիլիպպոս եպիսկոպոս, առաջնորդ Հռոմկլայի, Յովհաննէս դպրին պատվիրեց գրել Աւետարանը, 1357 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 612—613։

— 27. Փիլիպպոս, հիշված է 1377 թ.։

— 28. Փիլիպոս, երեց Կամենիցի. գրեց Կամենիցի Ս. Նիկողայոս եկեղեցու շինության պայմանագիրը՝ Խութլուպէի որդի Սինանի և Ռուսաց և Օլախաց առաջնորդ Յովհաննէս արքեպիսկոպոսի միջև, 1398 թ.—Կամենից, էջ 133, Труды Вост. Комм. ИМАО, հտ. II, 3, էջ 43։

— 29. Փիլիպոս, երեց Կամենիցի՝ 1398 թ. (Կամենից, էջ 133)։

— 30. Փիլիպպոս, «նորաբողբոջ» քահանա, որի խնդրանոք Յովհաննէս գրիչը Գամաղիէլի վանքում օրինակեց Աւետարանը 1455 թ.—Նոտարք 181։

— 31. Փիլիպպոս, Թղղթ կոկելու մարմարիոնն է տվել Ստեփաննոս եպիսկոպոսին, երբ սա խորձենի Խլպաշի վանքում օրինակում էր Աւետարանը, 1464 թ.—Թորոս աղբ. Բ. 342։

— 32. Փիլիպպոս ռայիս, հայր Առաքել աբեղայի, որ Աւագ վանքում օրինակեց Գանձարանը և նվիրեց Սեպուհ լեռան Լուսաւորչի վանքին, 1481 թ.—Թորոս աղբ. Բ. 308։

— 33. Փիլիպպոս եպիսկոպոս, գրիչ. Սեբաստիայի Ս. Աստուածածին վանքում, Գրիգոր նկարչի համար օրինակեց մի Աւետարան, 1485 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 598։

— 34. Փիլիպպոս Արևեցի, գրիչ. Մատթէոս վարդապետ

պատկերով գրեց մի փառավոր Ճաշոց, Սեբաստիոյ Ս. Նշան վանքում, 1489 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 239—240։

— 35. Փիլիպպոս, ուսուցիչ Որճոկում (Խիզան), 1497 թ.—Տաշեան, Ցուց. 285 ա։

— 36. Փիլիպպոս եպիսկոպոս գրիչ. օրինակել է Հաղբատում Մաշտոց ձեռնադրութեան, 1498 թ.—Ձեռ. Կարին. 142։

— 37. Փիլիպոս, քահանա Խիզանի Իւրյանց գյուղի Ս. Նշան եկեղեցու, 1499 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 577։

— 38. Փիլիպպոս, պատրիարք Երուսաղէմի 1542—1550 թթ., հաջորդեց Աստուածատուր Բ. Մերդինցուն (Աղանունի). իրեն էլ հաջորդեց դարձյալ Աստուածատուր Մերդինցին 1550 թ.։

— 39. Փիլիպպոս Տոմեցի կամ Բումեցի. կաթուղիկոս Աղուանից. հաջորդեց Դաւիթ Թ Առաջաձորեցուն՝ ՌԻԲ (գրված ՌԺԲ)= 1573 կամ 1574 թ. իրեն էլ հաջորդեց Յովհաննէս՝ 1578 թ.—Դաղեան, Ա. 89 բ, Բարխուդ. Պատմ. Աղվ. Բ. 21։

— 40. Փիլիպպոս, կաթուղիկոս Աղուանից, հաջորդեց Դաւիթ Ը-ին և նախորդեց Յովհաննէս Է-ին (ԺԶ դարի կեսից հետո).—Ջամբռ 78։

— 41. Փիլիպպոս Աղբակեցի, կաթուղիկոս Հայոց «1633—1655 թթ.». աշակերտ Մովսէս կաթուղիկոսի, որին և հաջորդեց. ուսումնասեր և լուսամիտ մարդ էր. Տաճկաց և Պարսից պատերազմներից քանդված էջմիածինը նորոգեց, դպրոց բաց արեց և բազմաթիվ ձեռագրեր օրինակել տվեց։ Ճամփորդեց Նոր-Ջուղա (և այնտեղից Լուսաւորչի աջը էջմիածին բերեց), Երուսաղէմ (ուր Սսոյ կաթուղիկոսի և Երուսաղէմի պատրիարքի հետ ժողով գումարելով «1652 թ.»՝ ճշտեց երկու կաթուղիկոսական աթոռների իրավունքները), Պոլիս (ուր հաշտեցրեց և վերջացրեց հայ ազգային վեճերը)։ Նորոգել է Հռիփսիմէի և Գայանէի վանքերը. շինել է էջմիածնի մեծ զանգակատունը, Արագածից ու Սևանից ջուր է բերել էջմիածին.—Սամ. անեց. շար. 178—179. Նշխ. մատ. 48. Ցկ. Կր. 43, 46, 60. Մ. Մաշտ. 336 բ. Ջուղ. 119, 140. Ես. կթղ. 12. Ջքր. սարկ. Ա. 74, 76, 81, 83. Բ. 26—29, 32, 39, 40, 46—47, 53, 60, 64, 66, 69, 74. Գ. 9, 34. Առաք. պտմ. 182—185, 241—272, 295—300, 313—315, 319, 332—333, 338—339, 409, 417, 496—497, 499, 516—518, 340. Կամենից 244—256 (տպված են իր 5 թղթերն առ Լեհահայս). Ջքր. ագուլ. 45. Ձեռ. Հալէպի Բ. էջ 71—73 (իր մի կոնդակը 1641 թվից).—Մարտ. ժմ. 96 ա (Փիլիպպոս ձեռով)։ Դրնղ.

583—585, Ջամբռ 22.—Իր մասին ընդարձակ հիշատակարաններից՝ Ձեռ. Վենետ. Ա. 172։

— 42. Փիլիպպոս, կաթողիկոս Աղթամարի, հիշված է 1671 թ. ըստ Լալայեանց, Ազգագր. հանդ. հտ. Ի, էջ 209.—Ակինեան, Գաւազանագիրք 137 մերժում է, ասելով, որ դա էջմիածնի Փիլիպպոս կաթողիկոսն է։ Բայց այդ թվին Փիլիպպոս Աղբակեցին վաղուց էր մեռած։

— 43. Փիլիկ, հիշված է 1677 թ.—Սիւրմ. Պատմ. Հալէպի ազգ. գերեզմ. 29 ա։

— 44. Փիլիպպոս Հաղրատցի, մի ձեռագրում հիշված է պատարագի սրբերի շարքի մեջ.—տեռ. Փիլիպպոսի՝ Պարգ. 690 (թվականն անհայտ)։

* ՓԻԼՈՆ, ար. <հուն. Φιλων անունից, որ ծագում է φιλω «սիրել» բայից։ Այս անունով հայտնի են Փիլոն փիլիսոփա՝ ուսուցիչ Կիկերոնի, Փիլոն Աղեքսանդրացի փիլիսոփա, Փիլոն Բիւզանդացի և մանավանդ Փիլոն Տրրայեցի, որի բազմաթիվ գործերը թարգմանված են հայերենի։

— Փիլոն Տիրակացի. ժամանակակից Անաստաս կաթողիկոսի. թարգմանեց հունարենից Սոկրատ Սքոլաստիկոսի եկեղեցական պատմությունը՝ «696 թ.» (իսկ Մալխասյանը Արմֆանի Տեղեկ. 1940 № 1, էջ 216 դնում է 678 թ.).—Ասող. Բ. բ. Մխ. այրիվ. 65.—տեռ. Փիլոնի՝ Վրք. սեղբ. (սկիզբը)։—Ոմանք անվանում են Շիրակացի, որ սխալ է. հմմտ. Սոկր. յուշ. էջ 82, Միքրանի քննությունը։—Զարբ. Հին դպր. 474—475, Սոկր. յուշ. 17, 82—85. Չամչ. Բ. 375. Խալաթեան, Մ. Խոր. Վիեննա 1898, էջ 4—8։

ՓԻՍԱԿ, ար. Justi 100 բ համարում է «բորոտ», իբր հպրս. πισαγας։

— Փիսակ Սիւնի, սենեկապետ Տիրան Բ-ի, որ նրա քսութեամբ բռնվեց և գերի քշվեց Վարազշապուհի ձեռքով.—Բուզ. Գ. ի.—բց. ի Փիսակայ՝ Բուզ. Գ. ի։

ՓԻՏԵՆՏԻՈՍ Ս. եպիսկոպոս, պաշտպան Պադուա քաղաքի (Բ դար).—Ալիշան, Յուշիկք Ա. 738։

ՓԻՐԱՋԻՋ, ար. 1585 թ.—Թորոս աղբ. Բ. 368։

* ՓԻՐԱԼ կամ ՓԻՐԱԼԻ՝ թերևս ար. անուն, որ ծագած պիտի լինի պրս. بیر pīr «սուրբ»+ علی 'alī բառերից. ունենք Փիրալեան ազգանունը. սրանից՝

— Փիրալի, ար. հիշված 1551 թ. (Матер. Арх. Кавк. III, էջ 93—94) և մի ուրիշը 1603 թ. (անդ, էջ 99—100)։

* ՓԻՐԱՆ, ար. <պրս. پیران pīrān անունից, որ ծագում է پیر pīr «ծեր» բառից. այս անունով հայտնի է Աֆրասիաբ թագավորի վեզիրը և զորավարը (Շահն. հտ. 2, էջ 234)։ Անշուշտ ար. անուն էր, որից ունենք Փիրանեան ազգանունը։ Ըստ իս՝ սրա հինն է Պիրան, որ Justi 252 բ կցում է այս անվան։

ՓԻՐԱՍԱՓ, ար. ծագումն անհայտ (Փիր <պրս. پیر pīr «սուրբ», իսկ ի՞նչ է Ասափ). հիշված է 1633 թ.—Ձեռ. Հալէպի Ա. 86։

ՓԻՐԱՏ, ար. անո՞ւն, որից կա Փիրատեանց ազգանունը (Կովկաս)։

ՓԻՐԳԱԳԱ, ար. հիշված 1576 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 8 բ). ավելի ուշ՝ Ֆիրբար ձևով հիշված 1591 թ. Սանահնում (ՀԱ 1887, 56 բ)։

* ՓԻՐԲԱՇԽ, ար. <պրս. پیر pīr «սուրբ» + بخش baxš «նվեր» բառերից, երբ «սրբանվեր»։ Մի անգամ գտնում եմ գործածված 1631 թ. (Bodleian 139)։

ՓԻՐԳՈՒՏԱԽ, ար. հիշված 1603 թ. (Матер. Арх. Кавк. III, էջ 99—100)։

* ՓԻՐԲՈՒԴԱՂ (գրված ՓԻՐԳՈՒՏԱՂ), ար. <պրս. پیر pīr «սուրբ»+Բուդաղ անունից, որ տե՛ս վերը. հիշված է անթվական մի հիշատակարանում (Արցախ 244)։

* ՓԻՐԳՈՒԼ, ար. <պրս. پیر pīr «ծերունի, սուրբ»+ gu «վարդ» կամ արդյո՞ք pīr-qūlī «սրբի ծառա, սրբի ղուլ»։ Իբր ար. անուն Փիրիգուլ ձևով հիշված է 1719—1724 թթ. (Այրարատ, 305), որից ունենք Փիրգուլեանց ազգանունը (Կովկաս). հիշված խորհ. Հայաս. 1931, № 40, վերջին էջ։

* ՓԻՐԶԱԴԱ, ար. <պրս. پیر زاده pīr+zāda համմտ. Շէյխիւլիսլամ Մուհամմետ Փիրիզադէ (Justi 252 բ)։

— Փիրզադա Ղափանցի, 1586 թվից դուրս եկավ ճամփորդության, գնաց Վան, Հալեպ, Ղարահամիդ, Զմիւռնիա, Պոլիս, Լեհաստան, Պրագա, Իտալիա, Վենետիկ, Ջենովա, Հռոմ և այլն. այս ճամփորդության համառոտ նկարագիրն ունի տեղական բարբառով. տե՛ս Հայ-Վենետ. 458—459։

* ՓԻՐԻ, ար. <պրս. پیری pīrī «սրբական, սրբի» բառից. հիշված է 1513 թ. (Օրբ. Ժմ. յավել. 46=Սիսական 34 ա), ԺԷ դար (Ջամբռ 204, Եղիազար) 1682—1691 թթ. (կաթուղիկոսի ժամանակ), անթվական (Ձեռ. Վենետ. Բ. 622)։

ՓԻՐԻ կամ ՓԻՐԻՋԱՆ, ար. հիշված է 1622 թ.—Ձեռ. Վասպ. 861—862։

ՓԻՐԻ, ար. ումն հիշված 1671 թ. (տե՛ս իմ Քնն. և հմմտ. Ծվնըկայ, էջ 5)։

* ՓԻՐԻԲԷԿ, ար. <պրս. بیری pīrī (որ տե՛ս Փիրի) + թրք. بك beg բառերից։ Գործածական է նաև պարսիկների մեջ. ինչ. Փիրիբէկ ամիրայ՝ տեր Վանայ բերդի, 1418 թ. (Նոր վկայք 222)։ Մեր մեջ գործածված է անթվական մի հիշատակարանում, Ձեռ. Վեննետ. Ա. 582։

— 1. Փիրիբէկ, հիշված 1541 թ. (Սմբատեանց, Գեղարքունի 59)։

— 2. Փիրիբէգ, հիշված 1667 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 3 բ)։

— 3. Փիրիբէկ, հիշված է 1686 թ. (Ձեռ. Վասպ. 967)։

ՓԻՐԻԽԱՆ, իգ. տե՛ս Փարիխան։

ՓԻՐԻՄ, տե՛ս Փիրում։

*ՓԻՐԻՋԱՆ, ար. <պրս. بیری pīrī անունից (որ տե՛ս վերը) + جان ǰān «հոգեակ»։ Մեր մեջ գործածված է ԺԶ—ԺԷ դարերում. որանից է Փիրջանեան ազգանունը (Ղարաբաղ)։—Փիրիջան 1533 թ. (Ձեռ. Վեննետ. Ա. 717), 1548 թ. (Ձեռ. Սանաս. 25 բ)։

— 1. Փիրիջան, հիշված է 1557 թ.—Ձեռ. Վասպ. 660։

— 2. Փիրիջան, հիշված է 1575 թ.—Ձեռ. Վասպ. 684։

— 3. Փիրիջան, հիշված է 1602 թ.—Ձեռ. Վասպ. 442։

— 4. Փիրիջան, 1605 թ. (Ձեռ. Վասպ. 818)։

— 5. Փիրիճան, 1605 թ. (Ձեռ. Վասպ. 133)։

*ՓԻՐՀԱՄԶԱ, ար. <պրս. پیر pīr «սուրբ»+համզա անունից, որ տե՛ս. հիշատակված է մեր մեջ՝ 1505, 1513 թթ. (Կրպտ. եպիսկ. Դոփեանք 97, 98), 1544 թ. (Սմբատեանց, Գեղարք. 492), 1513 թ. (Օրբ. ժմ. հավել. 46=Սիսական 34 ա)։

ՓԻՐՂԱԼԱՄ, որից և Փիրղալէմեան ազգանունը։ Հիշված է 1490 թվից հետո գրված մի հիշատակարանում (Ձեռ. Սեան 5 ա)։

— Փիրղալամ, ար. 1525 թ.—Ձեռ. Վասպ. 417։

Այլ թ.? անդ՝ 468։

ՓԻՐՂՈՒԼԻ, ար. հիշված 1591 թ.—Ձեռ. Դադեան Բ. 33 բ։

— Փիրղուլի, ար. հիշված 1651 թ. (Древн. Вост. Труды Вост. Комм. ИМАО, հտ. II, в. III, Москва 1903, էջ 52)։

ՓԻՐՆԱԴԱՐ ս? հիշված է 1596 թ.—Ձեռ. Վասպ. 749։

ՓԻՐՈԶ, ար. ծագումն անհայտ։

— Փիրոզ, ազգապետ Աղուան, ժամանակակից Վաչագան Գ-ի.—Կանոն. 197. Կղկնտ. Ա. իգ. բայց տե՛ս Խոսրոֆեան։

ՓԻՐՈՅ, ար. անո՞ւն. Թվի պրս. پیر pīr «սուրբ» բառից. սրանից ունենք Փիրոյեանց ազգանունը (Կովկաս)։

ՓԻՐՈՒԶ, Թ.? (1481-ից ուշ).—Ձեռ. Վասպ. 490։

ՓՕՐՕՋԱՅ, իգ. հիշված 1655 Թ.—Ձեռ. Վասպ. 553։

ՓԻՐՈՒԶԲԱԽՏ, կին Նիկողոսի, մայր Խոջա Մալհամի, ազգական Սելչուկ խաթունի, որ Հայրապետ քահանային գրել տվեց մի Մաշտոց 1466 Թ.—Թորոս աղբ. Ա. 232։

* ՓԻՐՈՒՄ, ար. <պրս. پیر pīr «ծերունի, սուրբ» բառից+թրք. -um ստացական հոդով, իբր «իմ սուրբը». Հմմտ. Աղում, Բէգում, Շահում, Միրում, որից Փիրումեանց ազգանունը (Կովկաս)։ Փիրում անվան հնագույն հիշատակությունններն են 1512 Թ. (Ձեռ. Վենետ. Ա. 646), 1555 Թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 335), 1580 Թ. (Հայ-Վենետ. 398), ՌԿ=1611 Թվից՝ Նշխ. մատ. 47 և 1634 Թվից՝ Տաշեան, Ցուց. 858 բ (Պոլիս).—Նույն անունը կա նաև Փիրիմ ձևով, անթվական մի արձանագրության մեջ՝ Սմբատեանց, Գեղարք. 630։

— Փիրում, հիշված է 1565 Թ.—Ձեռ. Վասպ. 663։

* ՓԻՐՍՈՒԼԹԱՆ, ար. <պրս. پیر pīr «սուրբ, ծեր»+արաբ. سلطان sultān բառերից։ Մեր մեջ գործածված է մի անգամ անթվական մի հիշատակարանում՝ Ձեռ. Վենետ. Ա. 502 (1358-ից ուշ)։

— Փիրսուլթան, ա՞ր. Թե ի՞գ. հիշված է 1517 Թ. (Թորոս աղբ. Բ. 275)։

* ՓԻՐՎԱՆԴԻ (սեռ. Փիրվանդէ), իգ. մի անգամ գտնում եմ հիշատակված 1680 Թ. (Քոսեան, Հայք ի Զմիւռն. Բ. 19)։

ՓԻՐՎԷԼԻ, ար. հիշված է 1490-ից հետո գրված մի հիշատակարանում (Ձեռ. Սեւան. 5 ա)։

ՓԻՐՔԱՄԱԼ, ար. <պրս. پیر pīr+արաբ. کمال Kamāl անուններից. հիշված է մի անգամ անթվական մի հիշատակարանում.—Ձեռ. Վենետ. Ա. 582։

— Փլաւիոս Հէրակլ՝ եղբայր Հերակլ Ա կայսեր (640 Թ.). տե՛ս Հէրակլ Ա։

* ՓԼԱՒ ԽՈՋԱ, ար. <պրս. پیلاو pilāv+խոջա բառերից. շինել է ըստ ավանդության Աշտարակի կամուրջը. Թվականն անհայտ.—Այրարատ 185։

ՓԼՔՆԱԶ, իգ. ծագումն ինձ անհայտ. մի անգամ հիշված է 1693 Թ. (Ձեռ. Վենետ. Բ. 1048)։

ՓՈԼԱՏ, ար. <պրս. پولاد pōlād «պողպատ» բառից։ Այս անունով հայտնի է Պարսից Քէյքոբադ Թագավորի զորավարներից

մեկը (Շահն. հտ. 1, էջ 381). նույն անունով երեք խան Քիշլաղի ԺԴ—ԺԵ դարերում, Pūlād բեգ՝ դեսպան Շահաբասի Ռուսաց ցարի մոտ՝ 1621 թ. (Justi 255 բ)։ Հին հիշատակությունը 1540 թ. (Ձեռ. Մաղն. էջ 29). 1548 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 318), 1560 թ. (տե՛ս Տաշեան, Ցուց. 314 բ), 1566 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1924, 249). անթվական (Ձեռ. Վասպ. 186)։ Սրանից է Փոլատեան ազգանունը, Փուլատ, որ և Փոլատ 1596 թ. (Ձեռ. Թաւր. 75 բ)։

+ ՓՈԽԱՆ,ար. <հյ. փոխան «փոխանակ, փոխարեն» բառից։ (Երբ որդին մեռնում է և նրանից հետո ծնողներն ունենում են մի նոր որդի, անունը դնում են Փոխան, իբր նրա փոխարեն ծնված)։ Նույնը թրք. Բադալ կամ Դեգիշ, որոնք տե՛ս առանձին։

— 1. Փոխան, այր իմաստուն և բարեպաշտ, որ իր «Եսայի և Թուղթք Պօղոսի» ձեռագիրը փոխ տվեց և հորդորեց արտագրել Գրիգոր քահանային (1356 թ.).—Տաշեան, Ցուց. 394 ա։—Ավելի ուշ հիշատակված են՝ 1601 թ. (Ձեռ. Վասպ. 795), 1785 թ. (անդ 264), 1786 (անդ 262), 1810 թ. (անդ 310)։

— 2. Փոխան տիկին, կինն է Խելաւքի (№ 1), որ Արգելանի վանքում գրել տվեց մի Ավետարան 1294 թ.—Ձեռ. Վասպ. 116—120։

— 3. Փոխան, ար. թ.? (1481-ից ուշ).—Ձեռ. Վասպ. 490։

— 4. Փոխան ս.? 1592 թ.—Ձեռ. Վասպ. 731։

— Փոխանշախ, որդի պարոն Յովհաննէսի. հիշված է այն Ավետարանում, որ գրեց Մարտիրոս քահանան 1410 թ.—Ձեռ. Վասպ. 164։

— Փոխիկ, ար. 1601 թ.—Ձեռ. Վասպ. 798։

* ՓՈԿԱՍ, ար. <հուն. Φωκᾶς անունից, որից և լտ. Phocas. այս անունով հայտնի են Փոկաս կայսր Հունաց (602—610 թթ.) և Փոկաս լատին քերական։

— 1. Փովկաս, եպիսկոպոս Բասենի, ժամանակակից Բաբգէն («490—516 թթ.») կաթուղիկոսի.—Այրարատ 43 դնում է 496—500 թվերին.—բց. ի Փովկասայ՝ Գիրք Թղ. ըւ

— 2. Փոկաս, եպիսկոպոս Սալմաստի. հյուրընկալեց Գրիգոր Դերենիկ Գ. Արծրունի իշխանին, երբ սա այցելության էր գնում Հերի պարսիկ իշխանի մոտ, որ դավաճանությամբ սպանեց նրան «886 թ.».—Սոտ Շապհ. 69։

+ ՓՈՂՈՑ, ար. <հյ. փողոց բառից է. բայց ի՞նչ առումով։

— 1. Փողոց Կոնիռապատցի, անեռ Արիստակէս երեցի՝ որ ստացավ մի Ավետարան (1435 թ.).—Ձեռ. Թաւր. 13 բ։

— 2. Փողոց ումն մահտեսի. հիշված Ց. Մուրատ. Ցայտ. Յովհ. ՑՁԱ։

— Փողփուչ. հայտնի չէ, թե «փող փչող» (զուռնաչի) իմաստո՞վ է գրված, թե անուն է. հավանաբար հետևյալն է. «Ամանին և իւր որդոյն՝ Հայրապետին, Ամիրամադն, փողփուչին և մաւր Խնչաւքին», 1478 թ.—Ձեռ. Վասպ. 486։

— Փոշիկ աբեղա, գրիչ. օրինակել է Անապատ մենաստանում Եպիփան Կիպրացու ճառերը՝ ՈԼՁ=1187 թ.—Ձեռ. Կարին 77 (տպ. ՌԼՁ=1187, որ Տաշեան, Ակնարկ 82 ուղղում է իրավամբ ՈԼՁ)։

ՓՈՐՈՍ, իգ. ծագումն ինձ անհայտ. մի անգամ գտնում եմ հիշված 1649 թ. (Հնոց և Նորոց 127)։

+ ՓՈՒՆՁԻԿ, իգ. <հյ. փունջ բառից (ավելի ճիշտ պիտի լիներ Փնջիկ).—Սովետ. Հյաս. 1948 թ. դեկտ. 18, էջ բ, սյունակ 1-ին։

ՓՈՒՍԱՆ-ՎԵՇ, ար. ծագումն անորոշ, բայց անշուշտ պարսկական։

— Փուսան-Վեն, ձիավոր զինվորական. եղած էր դայակ Վարազ-Տրդատ իշխանի Աղուանից. խլեց Ներսմիհրի վանքի հողերից մի գյուղ և եղավ նրա եկեղեցու աշխարհական վանահայրը (Ը դար).—Կղկնտ. Գ. ժա.—սեռ. Փուսանու-Վենի՝ անդ։

— Փոտ, պատրիարք Հունաց. եթե կարծիք կա թե հայ է, տե՛ս Փափազեան, Պտմ. եկեղ. էջ 368, 369, 370, 371, 395, 405։ (Տե՛ս Արշաւիր Հայկազն)։ Արշավիր պատրիկի քրոջ որդին էր։

ՓՈՒՐԹՈՒԽԱՆ, իգ. ծագումն ինձ անհայտ. անշուշտ թրք. կամ պրս. մի անգամ ունենք՝

— Փուրթուխան, դուստր Արանի և քույր Դավիթի, որ էր ամուսին Վանէի՝ քրոջ Աբաս Բ թագավորի Կիւրիկեանց. Փուրթուխանը արդեն մեռած էր 1189 թ.—Մովսէսեան, Լօռիի պտմ. 71։

— Փուրղուլի, իր եղբոր՝ Ճանղուլի սգալի մահվան առթիվ մի խոյարձան է կանգնեցրել Թերփ գյուղի եկեղեցու մոտ, 1264 թ.—Խաղբակեանք 49։

ՓՈՒՓՈՒԿ, իգ. գործածական էր Պոլսում, անցյալ դարում. այժմ էլ կա. տե՛ս Սովետ. Հյաս. 1945 թ. հուլ. 29, էջ ա։

— 1. Փափոխիկ (սեռ. Փափըխկանն ձևով), հանգուցյալ կին Պարոնշահի, որ գրել տվեց մի Աւետարան 1329 թ.—Ձեռ. Վասպ. 179։

— 2. Փափխիկ, իգ. հիշված է Նետողաց ազգի ժամանակ, այն է ԺԳ—ԺԴ դարում.—Ձեռ. Վենետ. Ա. 474։

— Փոփխիկ? (*սեռ Փոփխկանն ձևով միայն*), *իգ. հիշված է անթվական մի հիշատակարանում.—Ձեռ. Դադեան Բ. 30 բ։*

+ *ՓՈՔՐԻԿ, ար. <հյ.* փոքրիկ *բառից. հմմտ.* Պստիկ *և* Փոքրտիկին, *նաև թրք.* küčük xan *անունը՝ նույն իմաստով։*

— *1.* Փոքրիկ, *հյուսն. շինեց Արցախում մի վկայարան, ուր հանգուցին Մխիթարի բերած մասունքները Երուսաղէմից (է դար).— Կղկնտ. Բ. ծ (թե՛ էմին և թե՛ Շահն. հասարակ անուն են կարծում)։*

—Փոքրիկ (*հունարեն գրված* Πουκρίκας), *որդի Մանուէլի պրոտոսպաթարի, եղբայր Բագրատունի (Թ դար).—* Justi 255։

*ՓՈՔՐ ԽԱԹՈՒՆ, իգ. հյ.* փոքր+խաթուն *բառերից. տե՛ս վերը թրք.* Բալախանում, Բալախաթուն *և նույնի հյ. ձևը, որ է* Փոքրտիկին: *Մի անգամ գտնում եմ անթվական մի հիշատակության մեջ (Ձեռ. Վենետ. Բ. 384)։*

— Փոքրմէր, *կին Առաքելի և մայր Ցրա Դոմինիկոս գրչի, որ օրինակեց Համառօտ հաւաքումն յաղագս հոգւոյ, 1360-ական թվերին.—Ձեռ. Բեռլինի, 58 ա։*

+ *ՓՈՔՐ-ՏԻԿԻՆ, իգ. <հյ.* փոքր+տիկին *բառերից. հմմտ. նախորդը։*

— *1.* Փոքր-տիկին *հիշվում է էջմ. № 671 Գև. ձեռագրում (ժե դա՞ր). մի ուրիշ անգամ էլ* Փոքտիկին (*թերի գրչությամբ*), *անթվական (1311 թվից ուշ) մի հիշատակարանում.—Ձեռ. Թաւր. 74 ա։*

— *2.* Փոքրտիկին, *կին Մարտիրոսի, ծնողներն են Պարոնշահի, որ գրել տվեց մի Աւետարան 1329 թ.—Ձեռ. Վասպ. 179։*

— *3.* Փոքրտիկին, *կին Սահակի՝ եղբոր տանուտեր Ցովհաննէսի, որ Աղթամարում գրել տվեց մի Աւետարան, 1436 թ.—Ձեռ. Վասպ. 373։*

* *ՓՌԼԱՆԹԻ, իգ. <թրք.* pərlantə *«շողակն», որ է ֆրանս.* brillant (*=բռիլյանդ*) *բառից։ Գործածական էր Պոլիս՝ անցյալ դարում։*

* *ՓՐԱԱԴԷՍ, ար. ծագումը տե՛ս Հրահատ. մի անգամ ունենք՝*

— Փրաադէս *վարդապետ Հայոց. անհայտ անձ. հիշված է մի ձեռագրի մեջ.—Ջարբ. Թրգմ. 40։*

* *ՓՐԻԴՈՆ, ար. <պրս.* فریدون Farīdūn *անունից, որ է պհլ.* Frētūn, *պազ.* Frēdūn. *զնդ.* θraetaona. *հին հայերեն տվել է Հրուդէն (Խոր. Ա. լգ. Բիւրասպի առասպելի մեջ), բայց չէ գործածված մեր մեջ (Հիւբշ. 32)։ Պետք է գործածված լինի* Փրիդոն, *որովհետև ունենք* Փրիդոնեան *ազգանունը, Պարսից 6-րդ թագավորի*

անունն է, որ սպանեց գլխապաշտ բռնակալ Զոհակին (Շահն. հտ. 1, էջ 85). Երևանում կա Ֆրիդոն (Սմբատեանց, Գեղարքունիք 240)։

— Ֆրիդոն կամ Փրէյդին, հիշված է Պատմ. Աղուանից (Բարխուդ. Բ. 51)։

* ՓՐՈՆԴՈՆ, ար.

— Փռոնդոն, հա՞յ. հիշված է (շուրջ 373 թ.) Ս. Բարսեղ Կեսարացու մի թղթում, ուր գանգատվում է Եւսեբիոս Սամոսատցի եպիսկոպոսին, թե այդ անձը «փառասիրութեամբ և դաւաճանելով իր ուղղափառ հաւատին՝ եպիսկոպոս է ձեռնադրուել և չկարենալով ժողովրդի սիրտը և համակրութիւնը շահել՝ առելի է դարձել ամբողջ Հայաստանին.— Ալպօյաճեան, Պատմ. Հայ Կես. Ա. 281 <Բազմ. 1932 էջ 352։

Ք

ՔԱԲԱՐԱԿ, ար.

— Քաբարակ Վահևունի. մասնակցեց Գուրգէնի պատերազմին ընդդեմ Բուղայի «852».—Արծր. Գ. դ (այլ ձ. Քաբարակաւն)։

* ՔԱԹԱՆ, իգ. <պրս. کتن katan «քաթան, կտաւ» բառից։ Գործածական է Ղարաբաղում։ Հնից հիշված է 1503 թ. (Ձեռ. Վասպ. 280)։

— Քաքան, իգ. հիշված 1657 թ. Ձեռ. Դադեան, Բ. 33 բ։

— Քաքում, ար. թ.?—Ձեռ. Վասպ. 818, (1605-ից ուշ)։

* ՔԱԼԱՇ, ար. <արև. թրք. کالش kalāš «քաչ» բառից. (հնչ. Քեալաշ). այժմ կենդանի անուն է. հիշված է Սմբատեանց, Երնջակ 116։

* ՔԱԼԻ, իգ. (<արաբ. Քալիքալայ «Կարին» քաղաքի անվան վրայից ձևված անգո անձ և անուն)։

— Քալի, կին Արմանիակոս իշխանի Հունահայաստանի. ամուսնու մահից հետո կառավարեց երկիրը. շինեց Կարին քաղաքը, որ իր անունով կոչվեց։—Այսպես ըստ Բելադորի արաբ. պատմիչի (Խալաթ. Արաբ. մատ. 36)։

— Քանալցիցիկ Աղուան, աշակերտ Եղիշէ առաքեալի, 85 թ. նշ. «մեծ ծաղիկ». վանահայր Սադիանի.—Ըստ Ջալալ. Բ. 380, 388։

+ ՔԱՀԱՆԱՅ, ար. <հյ. քահանայ բառից. տե՛ս Տէրտէր։ Հիշատակված է ԺԵ—ԺԶ դարերում։

— 1. Քահանայ, իր եղբոր Շմաւոնի հետ ուսանում և սնվում

էին Թեղենեաց վանքում, իրենց հորեղբայր Նահապետի մոտ. Քահանան սկսեց արտագրել Ավետարանը, բայց կիսատ՝ մեռավ. Շմավոնը նույնը գրել վերջացնել տվեց Դավիթ կրոնավորին, 1295 թ.— Manus. Brit. mus. 16։

— 2. Քահանայ դպիր, Թուղթ կոկող (1458 թ.) Երզնկայում.— Տաշեան, Ցուց. 753 ա։

— 3. Քահանայ, 1513 թ.—Օրբ. ժմ. յավել. 46=Սիսական 34 ա։

+ ՔԱՀԱՆԱՅԱՊԵՏ, ար. <հյ. քահանայ+պէտ բառերից. հմմտ. Հայրապետ։

— 1. Քահանայապետ, նվիրատու Ջորուտ գյուղի Ս. Աստուածածին եկեղեցու, 1207 թ.—Այրարատ 257 բ, Սմբատեանց՝ Գեղարքունի 314 (Արղաքան)։

— 2. Քահանայապետ, որդի Ավետիսի և եղբայր Վարդան դրակապի, որ Արճէշում 1450 թ. Յովհաննէս քահանային գրել տվեց Ավետարանը.—Ջեռ. Թաւր. 66 բ։

+ ՔԱՂՈՑ, ար. <հյ. քաղոց ամսանունից։ Հայկ նահապետի որդիներից մին ըստ Տաթև. Հարց. 200։

+ ՔԱՂՑՐԵՆԻ, իգ. հյ. քաղցր-ենի բառից. հիշված է 1796 թվից (էֆիմ. 448)։

* ՔԱՄԱԼ, ար. <արաբ. كمال kamāl անունից, որ բուն նշ. «կատարեալ», որից Քամալեան ազգանունը։ Գործածված է մեր մեջ ԺԶ—ԺԸ դարերում. այսպես՝ Քամալբէգ 1579 թ. (Կրպտ. եպիսկ.՝ Դօփեանք 137), 1575 թ. (Բարխ. Պատմ. Աղուանից Բ. 27), Քամալ 1595 թ. (Ջեռ. Վասպ. 742), 1672 թ. (Ջեռ. Թաւր. 50 բ), Քամալբէկ 1677 թ. (Արցախ 259), Քամալ 1709 թ. (Ջեռ. Վասպ. 265)։

— 1. Քամալ, կին Աբրահամի և մայր Մարտիրոս կրոնավորի, որ Բաղէշի Պոռ գյուղում գրել տվեց մի Յայսմաւուրք 1418 թ.— Նօտարք 55։

— 2. Քամալ, ար. թ.?—Ջեռ. Վասպ. 699։

* ՔԱՄԱՐ, ար. <կամ արաբ. قمر qamar «լուսին» և կամ պրս. کمر kamar «գոտի, կամար» բառից։

— Քամար, եղբայր Սեթի, կրտսեր որդի Պարոնի, որ նորոգեց Բագնայրի նշանավոր Ավետարանը 1308 թ.—Խաղբակեանք 15։

— Քամարաս, ա՞ր. հիշված է անթվական մի հիշատակարանում (Manus. Brit. mus. 56 ա)։

* *ՔԱՄԻԼ, ար. <արաբ.* كامل kāmil *«կատարեալ, իմաստուն, խելահաս» բառից։ Իբրև անձնանուն գործածված է Ջեռ. էջմ. № 130, Գև. (ժէ դա՞ր), Քամիլ իգ. 1749 թ. (Արցախ 122), Քէմիլ ար. թիվն անհայտ (Հրար. Ազաթ. 1909 թ. յոչ. էջ ԽԴ)։*

— *Քանադալայ, ար. հիշված է 1603 թ. (*Матер. Арх. Кавк. III, *99—100)։*

**ՔԱՆԱՆ, ար. <տճկ. Քէնան անունից, որ թերևս պրս.* كنان kanān *«միասին. վրան» (Գ. դ) բառն է. հայտնի են Քէնան բէգ. տաճիկ կառավարիչ Աղճաղալայի, որին Շահաբասը թնդանոթի կապեց Երևանի առաջ.—Քանան փաշա Կայնոյ՝ Զքր. սարկ. Բ. 16, Դրնղ. 578.—Քէնան տաճիկ ոմն 1654 թ. (Երեմ. չել. օր. 48)։ Չի կարող լինել <եբր.* kənáan *բառի հուն.* χαναάν *տառադարձու-թյունից, որ Հրէաստանի հին անունն է, որովհետև հնից ավանդ-ված չէ։ Անշուշտ իբր անձնանուն գործածված է մեր մեջ, որովհետև սրանից է Քանանեան ազգանունը (Տաշեան, Ցուց. 797 կա գրված Քենանեան)։*

— *Քանան, ար. թ.?—Ջեռ. Վասպ. 550։*

*ՔԱՆԱՆԻԴԱՍ, ար.*

— *Քանանիդաս, նշանավոր իշխան Քանանացի, որ Յեսուի ձեռքից փախչելով եկավ Հայաստան (2553 թ. Զամչ. Ա. 83), նրա-նից առաջացավ Գնթունեաց ցեղը.—Խոր. Ա. ժթ. Սամ. անեց. 45. տպ. Քանի դաս.—Մին. համգ. 9.—սեռ. Քանիդայ՝ Ասող. Ա. ե (ուղղել Քանանիդայ)։—Քանանիդասի և Քանանացոց գաղթակա-նության առթիվ խոսել եմ իմ «Ձեռագրական սրբագրություններ» աշխատության մեջ (էջ 40) և ցույց տվել Խորենացու և Պրոկոպիոսի կապը. այս մասին ինձնից 32 տարի առաջ խոսել է Գարիէրը, Նո-րագոյն աղբերք, Բ. էջ 33—43։ Այս մասին խոսում է նաև Ալիշանը՝ Հյատն. էջ 209, բայց չի հիշում Պրոկոպիոսին։*

* *ՔԱՆԱՐԱՆԳ, ար. <պրս.* كنارنك Kanārang *անունից որ բուն նշանակում է «սահմանակալ, կուսակալ»։ Հմմտ.* Kanārang *մարզպան Թուս գավառի (651 թ.).— Քանարանգ, որդի Խոսրովի և այլն (*Justi *155 ա)։*

— Χαναράγγης, *պարսկահայ, որ աքսորյալ Արշակի հետ Յուս-տինիանոսի դեմ դավ սարքեց (Պրոկոպ.).—* Justi *155 ա։ Հմմտ.* Դրաստամատ:

— Քանջ-խաթուն, *դուստր խոջա Խաչատուրի, որ Արճէշում գրել տվեց մի Աւետարան 1462 թ.—Ջեռ. Վասպ. 438։*

— Քաշար, ա՞ր. հիշված է 1490-ից հետո գրված մի հիշատակության մեջ (Ձեռ. Սևան 5 բ)։

— Քաջ, Հայկ նահապետի եղբորորդին էր. շինել է Գաշենք քաղաքը, որ ապա կոչվեց Ցուրտաւ։ (Այսպես է ասում վրացական մի ավանդություն, ըստ Ակինեան, Կիւրիոն կթղ. էջ 199 ծան.)։

— Քաջազաւր, շինել է Նորատուսի կամուրջը 1211 թ.— Սմբատեանց, Գեղարքունի 487 (Նույնը Սիսական 47 Քաջաջաւր ձևով)։

ՔԱՋԱՋ, ար. <Քաջ+աջ «որի աջը քաջ է»։

— 1. Քաջաջ եպիսկոպոս Մարդպետական, Ներսէսի ուղեկիցներից էր երբ նա գնում էր օծվելու Կեսարիա «353 թ.».—Մեսր. եր. 26։

— 2. Քաջաջ սարկավագ Ռշտունեաց, աշակերտ Սահակ եպիսկոպոսի. բռնվեց Ատրորմիզդ մարզպանի ձեռքով և բանտարկվեց Պարսկաստանում. նահատակվեց Ապար աշխարհում՝ Ղեոնդեանց խմբի հետ՝ «454 թ.».—Փարպ. խբ, խդ, խէ, ծզ, ծէ. Եղիշ. 101, 139, Վրդ. իէ. Յայսմ. յուլ. 31. Սիմ. ապար. 48.—սեռ. Քաջաջայ՝ Փարպ. ծէ։

— 3. Քաջաջ Սահառունի, կուսակից Վահանի. նահատակվեց խոսրովակերտի պատերազմում «483 թ.».—Փարպ. հը։

+ ՔԱՌԱՍՈՒՆՔ, ար. <հյ. Քառասունք բառից, հանուն Սեբաստիոյ Ս. Քառասնից վկայից։

— Քառասունք, կրոնավոր, 1187 թվին Անիից և Տփղիսից բերավ կազմարարական պիտույքներ, Սաղմոսավանք՝ կազմելու համար էջմ. № 919 Ճառընտիրը (Միաբան, Գոր. և չմ. էջ 53)։

— Քասի, ար. ծագումն ինձ անհայտ. հիշված է մի անգամ, անթվական մի հիշատակարանում.—Ձեռ. Վենետ. Ա. 736։

ՔԱՍՈՒ, ար. հր. խեսու?

— Քասու, եպիսկոպոս Տուրուբերանոյ, անդամ Արտաշատի ժողովի՝ («449 թ») պատասխանելու համար Միհրներսեհի նամակին.—Եղիշ. 22.—Նույն անձը հիշում է Փարպ. իգ՝ Քասուն եպս. Տուրբերունոյ ձևով։

* ՔԱՏԷՄ, իգ. <Թրք. قدم qadem «բարեհաջողություն բերող ոտք», որ արաբ. قدم qadam «ոտք» բառից է։ Իբր իգ. անուն հիշված է 1796 թ. (Էֆիմ. 448 ցանկում)։

* ՔԱՐԱՄ, ար. և իգ. <արաբ. كرم karam «ազնվություն, շնորհ» բառից։ Անշուշտ անձնանուն էր, որից ունենք Քարամեան

ազգանունը (Կովկաս)։—Մեր մեջ հիշված է 1553 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 578), 1660 թ. (Խաղբակեանք 253)։

— 1. Քարամ, կինն է Սահակ քահանայի, ծնողներն են Յովհաննէս քահանայի, որ գնեց մի հին Աւետարան և նորից կազմել տվեց 1439 թ.—Ձեռ. Հալէպի Ա. 83 ա։

— 2. Քարամ, դուստր տանուտեր Մանկտաւագի, որ Մցի գյուղում գնեց մի Աւետարան, 1455 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 582։

— 3. Քարամ, մերձավոր Ստեփաննոս եպիսկոպոսի, որ Խորձենի Խլպաշի վանքում օրինակեց Աւետարանը 1464 թ.—Թորոս աղբ. Բ. 342։

— 1. Քարամխաթուն, դուստր Աւետիսի և քույր Վարդան գրակապի, որ 1450 թ. Արճէշում գրել տվեց Աւետարան Յովհաննէս քահանային.—Ձեռ. Թաւր. 66 բ։

— 2. Քարամխաթուն, իգ. թիվն անհայտ.—Ձեռ. Վենետ. Ա. 657։

ՔԱՐԴՈՒՇՏ, ար. (տե՛ս տակը)։

— Քարդուշտ եպիսկոպոս Աղուանից. գնաց Հոնաց աշխարհը և քրիստոնեություն քարոզեց. երկու տարուց հետ դառնալով, իր տեղ ուղարկեց Մաք անունով հայ եպիսկոպոսին (Զ դարի առաջին կես).—Ըստ Զաքարիա հռետորի Եկեղ. պատմ. (Տե՛ս Ակինեան, Եղիշէ Ա. 221), որ ասում է, թե Քարդուշտ նշանակում է «Մխիթար»։ Ահա աղուաներէն հետաքրքիր մի բառ։

* ՔԱՐԻՄ, ար. <արաբ. كريم Karīm անունից, որ նշանակում է «ազնիվ, ողորմած»։

— 1. Քարիմ, որդի Խոսրովի և եղբայր Աւագ-Սարգսի, Երկայնաբազուկների տոհմից. հիշված է Հաղբատի մի արձանագրության մեջ (ԺԱ դար).—Շողակաթ 74։

— 2. Քարիմ Նաղաշ (ծաղկող). ծաղկանկարել է Վիեննայի Մխիթարեանց № 7 Յայսմաւուրքը՝ 1439 թ.—Տաշեան, Ցուց. 25, 50։

— 3. Քարիմ, ծերունի էր, մի Մաշտոց գրել տվեց Գրիգոր քահանային և նվիրեց Գաւաշ գյուղի եկեղեցուն, 1444 թ.—Նոտարք 134։

— 4. Քարիմ սարկավագ Երուսաղէմացի, 1596 թ.—Rapport Belgique 24։

— 5. Քարիմ, ար. 1587 թ.—Bodleian 107։

— 6. Քարիմ, տե՛ս Շիրակ 175 (տախտակը) և իմ Բռ. Զաքարիա Պլու։

* ՔԱՐԻՄԱՏԻՆ, ար. <Հայապ. 512 մեկնում է արաբ. كرم

الدين karam-ad-dīn «շնորհք հավատոյ». սրանի՞ց է Քարմատանենց ազգանունը (Տաշեան, Յույ, 907, 959). թե՞ «քարի մատան» (Հանք), որ հավանական չէ։

— Քարիմատին մեծ իշխան, որդի Ումեկի, մոր կողմից Բոռն Ջալալ իշխանի խաչենի. բնակվում էր Թիֆլիսում (ԺԳ դար). նրա մոտ իջևանեց Յովհաննէս Պլուզ Երզնկացի՝ Տփղիս այցելության ժամանակ.—տես. Քարիմատինին՝ Երզն. երկն. յոզ. Հայաստ. 512։

— Քարիմշայ Վանեցի, խոջա և տանուտեր, որդի Թումայի. իր եղբայրներն են խոջա Խդրշահ և խոջա Աստոմ, որոնց հետ միասին Ազարիա երեցին գրել է տվել Վանում մի Ավետարան, 1484 թ. զարդարել է Պետրոս առաքյալի ժամատունը, թարմա է կապել, մի երկաթագիր Ավետարան, մի Մաշտոց և մի շուրջառ է նվիրել, Ռուսաստանից մի բուրվառ է բերել նույն եկեղեցին.—Ձեռ. Վասպ. 495—498։

— Քաւթար, որի հիշատակին կանգնեցրած է մի խաչքար Մարտիրոս գյուղում, 1279 թ.—Սիսական 176, խաղբակեանք 129 (Ջալալեան սխալմամբ նույնացնում է Իւանէ Օրբելեանի եղբայր Քաւթարի հետ, որ վրացի էր և սպանված մի դար առաջ.—Վրդ. Պամ. էջ 130)։

— 1. Քաւուն (կամ Քայուն), որդի Ալեքսի, միայնակեաց, որ Յակոբ քահանային գրել տվեց մի Ավետարան. Յակոբի նահատակությամբ գործը կիսատ մնաց և Մարտիրոս գրիչը ավարտեց 1330 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 769։

— 2. Քաւուն, մեծ հայր Քաւուն միայնակեացի, որ գրել տվեց մի Ավետարան, 1330 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 770։

* ՔԱՖՈՒՐ, իգ. <պրս. كافوری kāfūrī. գործածված է անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Վասպ. 122)։

— 1. Քաֆուր, կին Բուրթելի և մայր Հազարբէգի, որ Խլաթում գրել տվեց մի Յայսմաւուրք, 1445 թ.—Թորոս աղբ. Բ. 306։

— 2. Քաֆուր, կին Պարոնլուսի. ծնողներն են Սարգսի, որ Բաղէշում, Կիրակոս քահանային գրել տվեց մի Ավետարան, 1454 թ.—Նոտարք 173։

— 3. Քաֆուր, զավակ Մկրտիչի՝ եղբոր Կիրակոս քահանայի, որ Ամ գյուղում օրինակել տվեց Ավետարանը 1497 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 16 բ։

— 4. Քաֆուր, իգ. թիվն անհայտ.—Ձեռ. Վասպ. 295։

— ՔԵԹԵՒԱՆ, իգ.

— 1. Քերեան, իգ. հիշված 1661 թ.—Ձեռ. Ագուլ. (Արար. 1911, 119)։

— 2. Քերեան, մայր Յովսէփ արքեպիսկոպոս Արղութեանի՝ 1700-ական թ.—Աղգապ. 3202։

— ՔԵՂՈՒԲԱԹ, ար. <պրս. کی‌قوباد key-Qūbād անունից որ է «թագաւորն կաւատ». տե՛ս վերը Նաճղուբաթ։ Հիշված է անթվական մի արձանագրության մեջ (ուշ շրջանի).— Սմբատեան, Գեղարք. 119։

— Քեմեր, կին Տնկիկի և մա՞յր խաչատուր սարկաւագի, որ Տփղիսում օրինակեց Աւետարանը 1304 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 488։

— Քեմեր, կին Երանոսի՝ հորեղբոր Քաւուն միայնակեցի, որ գրել տվեց մի Աւետարան, 1330 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 770։

— Սեռ. Քէմըլի, ար. 1666 թ.—Ձեռ. Վասպ. 926։

* ՔԵՇԻՇ, ար. <թրք. كشيش kešīš «քահանա» բառից. մի անգամ 1651 թ. (Ձեռ. Վեննա. Ա. 218)։

— Քաշիշ, ար. հիշված 1551 թ. (Матер. Арх. Кавк. III, էջ 93, 94)։

— ՔԵՌԵԿԻՆ, իգ. <հյ. Քեռեկին բառից. անո՞ւն է. հմմտ. «եւ զդեռաբոյս զաւակսն մեր զՄելքիսէթն և զՍտեփաննոսն և զՔեռէկինն և զՇահմելիքն» (Ձեռ. Թաւր. 13 բ, 1435 թ.)։

— ՔԵՉԻ, ար. <թրք. کچی keči «այծ» բառից. սրանի՞ց է Քեչեան ազգանունը։ Քեչի անունը հիշված է մի անգամ 1609 թ. Ջքր. սարկ. Գ. 22. տե՛ս և Կիչիպակ, Քիչիխան։

— Քեչի խաթուն, կին բրուտ Ասատուրի, կարծես ժառանգորդ բրուտ Ստեփանոսի, որ Վանում գրել տվեց մի Աւետարան 1435 թ.—Ձեռ. Վասպ. 370—371։

— Գեչի, ար. հիշված 1674 թ. (Ձեռ. Դաղեան Բ. 46 բ).— Նույն է Գիչիպէկ, ար. հիշված 1626 թ. (Ձեռ. Դաղեան Բ. 32 բ)։

* ՔԻՉԻԲԷԿ կամ ՔԻՉԻԲԷ, ար. <թրք. kičik (փոքր)+beg, bey «բէգ» բառերից, իբր «իշխանիկ կամ փոքր իշխան»։ Մեր մեջ իբրև արական անուն գործածված է այս երկու ձևով էլ՝ ԺԷ դարում (Ջքր. ագուլ. 62, 92)։

— Քիչի խան, Շաքիի իշխանը 1711 թ., որին հիշում է Եսայի կաթողիկոսը (Պատմ. Աղուանից 25)։

— 1. Քիչիճաթուն, իգ. 1599 թ.—Ձեռ. Վասպ. 757։

— 2. Քիչխաթուն, իգ. 1648 թ.—Ձեռ. Վասպ. 914։

+ ՔԵՐՈՎԲԷ, ար. <հյ. Քերովբէ «հրեշտակ» բառից։ Սովորական է այժմ. կրճատ ձևով Քերոբ (Պլ. աղավաղյալ Քէօրքէօփէ)։

— Քերովբէ *ողբասաց, ումի տաղեր (ԺՆ դար).—Տե՛ս Հացունի, Պատմ. տարազի, էջ 222։ Անշուշտ նույն է Քերովբեն տաղասաց ԺԶ դարու՝ Յուշիկք Բ. 125։*

— Քրովբ, *սարկավագ ոմն. հիշված 1563 թ.—Ձեռ. Թաւր. 68 ա։*

*ՔԷՄԻ, իգ. ձևն անստույգ. գրված է Քէմիին, որ պիտի լինի կամ սեռ. Քէմի-ին և կամ ուղ. Քէմին. մի անգամ հիշված է 1582 թ. (Ձեռ. Վասպ. 696)։*

* *ՔԻՄԻԱ, իգ. <պրս.* كيميا kīmya *«ոսկի շինելու արհեստը»։*

— 1. Քիմիա *խաթուն Սեբաստացի, կին Ծերի և մայր պարոն Ասլանի. ստացավ մի ժողովածու 1350 թ.—Տաշեան, Ցուց. 107 ա։*

— 2. Քիմիա, *դուստր մղդեսի Մանուկի, որ Կեսարիայում գրել տվեց մի Ճաշոց 1484 թ.—Ալպօյաճեան, Պատմ. Հայ Կեսարիո Բ. 1849։*

— 3. Քիմիայ, *զավակ Ջէմպարհի՝ եղբոր Սահակ երեցի, որ Կեսարիոյ Մանտիսոն գյուղում օգնեց Յովհաննէս աբեղային գրելու Յայսմաւուրքը՝ 1495 թ.—Ալպօյաճեան, Պատմ. Հայ Կես. Բ. 1850։*

— 4. Քեմիա, *իգ. 1636 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 752։*

— *Այլ ոմն* Քեմիա, *կին Ասլանի, հիշված է 1603 թ.—Ձեռ. Լվով (ՀԱ 1936, 506),* REA *7, 151։*

— Քիմիլ, *տե՛ս Մերկիս Մանկտաւագ (ԺՆ դար)։*

— Քիշար, *ար. հիշված 1661 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911. 119)։*

*ՔԻՇԻ, ար. <թրք.* كيشي kišī *«անձ», «ազնիվ անձ» բառից. մի անգամ ունենք Քիշի ոմն՝ որդի Յովհաննէս ավագերեցի. կազմել է Ս. Աթանասի գործերի ցանկը՝ 971 թվին գրված մի ձեռագրի վերջում, 1225 թ.—Տաշեան, Մատեն. մանր. ուս. Ա. 295։*

— Քիշիբէկ, *ար. հիշված է անթվական մի յիշատակարանում (*Bodleian *148)։*

* *ՔԻՇՄԻՇ, իգ. <թրք.* كشمش kišmiš *«չամիչ» բառից։*— Քիշմիշ, *իգ. հիշված 1608 թ. (Ձեռ. Վասպ. 255)։*—Քիշճիշ, *իգ. (ճ տառով). հիշված 1736 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 44 ա)։ Այս անունը լսել եմ նաև Երևանում, Ալաշկերտցի մի կնոջ անունն էր. տե՛ս և Սով. Հայաստ. 1945 թ., հուլ. 29, էջ ա։*

— *Սեռ.* Քշմշին. *թիվն անհայտ.—Ձեռ. Վասպ. 450։*

— Քիշմիր, *հիշված է մի խաչքարի վրա, 1701 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 498։*

— Քիչի Տաւակալայ, ազնվական քաղաքացի Կաֆայի, որին է միջի այլոց գրեց Կոստանդին կաթուղիկոսը՝ Ֆլորենտիայի ժողովի առթիվ (1438 թ.).—Պալճյան, 87։

— Քիրամ, խաչքարի փորագրիչ, 1575, 1595, 1596, 1602 և այլն.—Սմբատեանց, Գեղարքունի 58, 458, 532, 494։

— Քնար, իգ. հիշված է 1626 թ. (Թորոս աղբ. Բ. 255) և Քնար ամն մեծ մայր՝ 1604 թ. (անդ, էջ 266)։

— Քնար, ա՞ր. 1636 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 752։

— Քնար, ա՞ր. 1670 թ., Ճանիկեան, Հնութ. Ակնայ 90։

— Քնար, ի՞գ. 1662 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1929, 13)։

+ ՔՆԱՐԻԿ, իգ. <հյ. քնար բառի փաղաքշականն է, ինչպես որ նույն անվան կրճատ ձևն էլ է Քնար: Նորահնար անուն է։ Ըստ այսմ սրա հետ կապ չունի Քնարիկ՝ պարսիկ նահանգապետ Հայաստանում (Զ դար). Վրք. և վկ. Բ. 127։

+ ՔՆՔՈՒՇ, իգ. <հյ. քնքույշ բառից։

— 1. Քնքուշ խաթուն, ազգական Արղուլմսեհի, 1327 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 461)։

— 2. Քնքուշ, կին Սարգսի. ծնողներն են Սիմէոն կրոնավորի, որ Երուսաղէմում օրինակել տվեց Աւետարանն ու Ճաշոցը 1358 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 118։

— 3. Քնքուշ, դուստր Թումայի և քույր տանուտեր խոջա Խդրշահի, որ Վանում, Ազարիա գրչին գրել տվեց մի Աւետարան, 1484 թ.—Ձեռ. Վասպ. 496։

— 4. Քնքուշ խաթուն, կին Կիրակոս քահանա գրչի (№ 133), որ Բաղէշում օրինակեց մի Յայսմաւուրք, 1438 թ., մի Աւետարան 1454 թ. և մի Աւետարան էլ 1463 թ.—Նոտարք 118, 173։

— 5. Քնքուշ անունով ուրիշ կանայք հիշված են 1542 թվից (Manus. Brit. mus. 34 բ), 1567 թվից (Թորոս աղբ. Բ. 256), ԺԶ դարից (Ձեռ. էջմ. № 1617), 1602 թվից (Նաթանեան, Տեղեկ. Սեբաստ. 85, Թորոս աղբ. Ա. 184, Ձեռ. Սեբ.=ՀԱ 1924, 331)։

— 6. Քնքուշ, կին Ստեփաննոսի Որճոկեցւոյ (1497 թ.).—Տաշեան, Ցուց. 284։

— 7. Քնքուշ, իգ. հիշված է 1507 թ.—Ձեռ. Վասպ. 624։

— 8. Քնքուշ, իգ. 1602 թ.—Ձեռ. Վասպ. 807։

— 9. Քնքուշ, իգ. 1634 թ.—Թորոս աղբ. Բ. 431։

— ՔՇԻԿ, ար. հմմտ. Քշիկ:

— Քշիկ, վանահայր Վանուց Ներսմերհի (706 թ.).—Կղկնտ. Գ. ը.—սեռ. Քշկայ՝ Կղկնտ. Գ. թ.—Քշիկայ՝ Կղկնտ. Գ. ժա։

— Քոթիք, կինն է Գոհար խաթուն (№ 5), հայր Առիւծի, Գազանի և Անդրէաս կուսակրոն քահանայի (№ 17). վերջինս Այրարատի Կոշ գիւղից Սիս էր գաղթել և այնտեղ Սարգիս քահանային գրել տվեց մի շքեղ Աւետարան, 1336 թ.—Ձեռ. Վասպ. 185։

— Քօխա,ար. հիշված է 1809 թ.—Ձեռ. Դաղեան, Բ. 19 բ։

— 1. Քոյրազատ, կին Բարեմանուկի և մայր Կիրակոսի, որ խաչատուր գրչին գրել տվեց մի Աւետարան, 1252 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 379։

— 2. Քոյրազատ, դուստր Մկրտիչ կուսակրոն քահանայի, որ Կաֆայում գրել տվեց մի Աւետարան 1344 թ. այս թվին էլ մեռավ Քոյրազատը.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 237։

— Քուրխաթ, կին Վարդան քահանայի, մայրենի պապի Գէորգ քահանայի, որ օրինակեց մի Ճաշոց, Երզնկա 1391 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 241։

+ ՔՈՅՐԽԱԹՈՒՆ, իգ. <հյ. քոյր+խաթուն բառերից։

— 1. Քուրխաթուն, մայր Հատիի, կնոջ Վարդան քահանայի, որ Երզնկայում, Խոսրովի որդի Վարդան քահանայից գնեց մի Աւետարան, 1397 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 46։

— 2. Քուրխաթուն, կին Կարապետի և մայր Սկանդարի Կամախեցւոյ՝ ստացող Մաշտոցի (1567 թ.), ի Կամենից.—Տաշեան, Ցուց. 310 ա։

ՔՈՆԹ, ար. ծագումն ինձ անհայտ. ունենք միայն՝

— Քոնթ Առաւենեան, կուսակից Վահանի. նահատակվեց Շտէոյ գյուղի կռվում «483 թ.».—Փարպ. ձգ։

ՔՈՉԱՐԻ, իգ. կրճատ ձևով Քէօչի. գործածական են Ղարաբաղում. օր. Քոչարի բեգ Մելիքների տոհմից + 1740 (Բարխուդ. Պատմ. Աղուանից 150)։

— Քոչաֆշեր, որի կինն է Խորիշահ. նվերներ արին Բջնիի Ս. Աստուածածին եկեղեցուն, 1306 թ.—Արձ. Այրարատ 273 բ։

— ՔՈՉԲԷԿ սարկավագ, ապա ձեռնադրվեց քահանա և կոչվեց Հովհաննէս, որդի Գրիգոր քահանայի և եղբայր Ստեփաննոս գրչի, որին օգնում էր թուղթ կոկելով, Ոշտունեաց Տշող գյուղում, 1404 թ.—Հիշված է նաև 1417 թ.—Նօտարք 22, 50։

— 1. Քօչբէկ կամ Քօչիկ, կինն է Ջօհար, ծնողներն են Պօղոս կրոնավորի, որ Խիզանում Յովհաննէս գրչին օրինակել տվեց մի Յայսմաւուրք և նվիրեց Գամաղիէլի վանքին, 1407 թ.—Նօտարք 26—27։

— 2. Քաւչբէկ (տպ. Քաւզբէկ), սարկավագ, որին հիշում է

Իգիտ կրոնավորը, որ Նարեկ գյուղում օրինակեց Աւետարանը 1420 թ.—Ձեռ. Վասպ. 327։

— 3. Քոչբէկ, որդի Սուլդանի և եղբայր Մատթէոս երեցի, որ օրինակեց Տօնականը Վերին Նորավանքում, 1456 թ.—Հրատ. Ազաթ. 1909 թ., յուշ. էջ խՁ։

— 4. Քաչբէկ, մեծավոր Մկրտիչ քահանայի, որ Բիւրականում օրինակեց Ժողովածու քերթուածոց, 1469 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1114։

— 5. Քոչբէկ, ար. հիշված է ԺԵ դարում (Ձեռ. էջմ. № 940)։

— Քոչխաթուն, իգ. թվականն անհայտ, մի հիշատակարանում.—Ձեռ. Թաւր. 74 ր (1311-ից ուշ)։

— Քօչօ, ար. 1735 թ.—Ձեռ. Վասպ. 546։

— Քուլակ, ար. հիշված է 1610 թ.—Ալպօյաճեան, Պատմ. Հայ Կես. Բ. 1866։

— Քուլաւշա՞յ (տես. Քուլաւշին), ար. հիշված է 1280-ից հետո գրված անթվական մի հիշատակարանում.—Թորոս աղբ. Ա. 216։

— Քուլէֆ, ար. թվականն անհայտ. ավելին տե՛ս Թմլաճ։

— Քումաշ տիկին, թվականն անհայտ.—Ձեռ. Վասպ. 610։

— Քուշ, գրչի սխալ կամ կրճատ ձև Քնքուշ իգ. անվան. թիվն անհայտ.—Ձեռ. Վասպ. 214։

— 1. Քուշաք Հառկուանցի, տաղասաց ԺԶ դարու.—Ցուցիկք. Բ. 125։

— 2. Քոշակ, ար. հիշված 1610 թ.—Ձեռ. Կես. Աժաժ. 52 աբ։

ՔՈՒՊՂԻԴՈՒԽՏ, իգ. <իրան. անուն է, որի երկրորդ մասն է պրս. duxt «դուստր». առաջինը անհայտ (Հիւբշ. 38)։

— Քուպղիդուխտ, դուստր Վասակայ մեծի՝ տեառն Սիւնեաց, քույր Փիլիպպէի Ա և կին Հրահատի. Տաթևի վանքին նվիրեց Մաճ գյուղը՝ 867 թ.—Օրբ. լթ։

— Քուրաճ, կին Բախթիարի և մայր Շահամիրի, որ Սարգիս վարդապետին գրել տվեց մի Աւետարան, 1487 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 264։

* ՔՈՒՐԴ, ար. <պրս. کرد kurd ազգի անունից. հմմտ. Քիւրտ աղա, որ Սուլթան Մուրադ Ա-ի զորավարներից մեկն էր՝ Կոսովայի ճակատամարտում։

— 1. Քուրդ իշխան Սիւնեաց, հայրը Յովհանի. ընկերանալով Բաբգէն իշխանին՝ խնդրեցին կաթուղիկոսից ձեռնադրել Ստեփաննոսին («+735 թ.») եպիսկոպոս Սիւնեաց.—Ուղ. Քուրդ՝ Օրբ. լ. (ձեռագիրը այստեղ աղավաղ է).—Քուրդիկ՝ Այրիվ. 20 բ.—Քուրդոյ՝ Օրբ. ծգ. ծդ.—տես. Քուրդոյի՝ Տաշեան, Ցուց. 45 բ.—Քրդի՝ Ցայսմ.

յով. 24.—Քուրդ+ոյ (իմա՛ Քուրդկոյ)՝ Կիր. 41.—բց. ի Քուրդոյէ՝ Կղկնտ. Գ. ժզ։

— 2. Քուրթ Ամատունի, տե՛ս Յազդ Ամատունի «895 թ.».— Սոտ Շապհ. 69, 74։

— 3. Քուրդ կամ Ամիր-Քուրդ Արծրունի, ամիրա Տփղիսի, օգնեց վրաց Գէորգի Գ թագավորին՝ ընդդեմ Օրբելյանների ապըստամբության (1178 թ.), տեր Կայենոյ և Մահկանաբերդի, պապ Սադուն աթաբեգի և նշանավոր ըմբշի՝ որ ապրում էր ԺԳ դարում.— սեռ. Ամիր Քրդին՝ Մաղաք. աբ. 34։

— 4. Քուրդ Արծրունի, կամ Ամիր-Քուրդ, իշխան Կայենոյ և Մահկանաբերդի, որդի Վահրամի և եղբայր Վասակի՝ որ Տփղիսի շահապն էր, միաժամանակ Տփղիսի ամիրապետն էր՝ Վրաց պետության մեջ. գժտվելով Վրաց թագավորից՝ գնաց Կարին. իր մոտ մնաց մի ժամանակ Մխիթար Գօշը (+«1213 թ.»)։ Թամար թագուհու օրով վերադարձավ և պատիվ ստացավ։ Քուրդի դուստրը՝ Արզուխաթուն կինն է Վախտանկ Խաչենցու, Սադուն աթաբեկի մեծ պապն է։ Զաքարէի և Իւանէի մորեղբայրն է.—Հայապ. 389. Կիր. ժա. Տաշեան, Ցուց. 182 ա.—սեռ. Քրդի՝ Կիր. ժա, ժբ. Վրդ. ձգ.— Արձ. Սմբատեանց, Գեղարք. 173, Խաղբակեանք 21։

— 5. Քուրդ, իշխանաց իշխան, 1176 թ. նորոգել տվեց Սհառի տաճարի դուռը՝ ձեռամբն հյուսն Յովհաննէսի (Սմբատեանց, Գեղարքունի, 120), Խաղբակեանք 81, որ միացնում է սրա հետ։

— 6. Քուրդ, որդի Սմբատի, հայր Սմբատի և Ոսքանի, եղբայր Բարսեղ արքեպիսկոպոսի Հաղբատու. արձ. 1220 թ.—Justi 179 ա։

— 7. Քուրդ Բ. Մեծ իշխան Արագածոտն գավառի, որդի և հաջորդ Վաչէի Վաչուտեանց և հայր Վաչէի և Հասանի. կինն էր Խորիշահ Մամիկոնեան. շինել է Սաղմոսավանքի մեծ գավիթը 1250 թ. (Ջամբռ 291)։ Իր մոտ իջևանեց Հեթում Ա՝ Վարդենիս գյուղում, Մանգու խանին այցելության գնալիս («1254 թ.»).—Կիր. ծզ. Ջբր. սարկ. Գ. 14. ZAPh 2, 48. Այրարատ 162—163, 168—169, 171 ա, 253, 261. Շողակաթ Ա. 32.—սեռ. Քրդի՝ Կիր. ծզ.—սեռ. Քրդոյ՝ Ջբր. սարկ. Գ. 14, 15, 30.—Նույն է անշուշտ յիշ. 1267 թվի (հրտր. Գ. Տեր-Մկրտիչ. Անան. Շիր. էջ 32.—Ջեռ. Վենետ. Բ. 314 և Սիսուան 102).—Ըստ Այրարատ 253—255 նստել է 1235— 1267 թթ. կանգնել է Յովհաննավանքի գավիթը 1250 թ. շինել է Սաղմոսավանքի գրատունը՝ 1235 թ. (Յովսէփեան, Մի էջ հայ արուեստի, 18), նորոգել է Սևանում Պետրոս Առաքյալի եկեղեցին 1243 թ. (Սմբատեանց, Գեղարք. 160)։ Հրաժարվեց իշխանությու-

նից և քաշվեց Սևան, ուր ճգնական կյանքով վախճանվեց 1235 թ. իր վաղամեռիկ դուստր Մամախաթունի հիշատակին շինել է Սաղմոսավանքում մի գրատուն և մի մատուռ. հիշված է 1213—1267 թթ.։

— 8. Քուրդ իշխան, ազատեց Սուրմառիի Մարկոս արքեպիսկոպոսին, որ գերի էր ընկել թաթարների ձեռքը՝ 1238 թ.—Այրարատ 122, Հայապ. 458։

— 9. Քուրդ, որդի Կախաբերի, կրոնավոր դարձավ Կեչառու վանքում և կոչվեց Յովհաննէս. շինեց Ս. Յովհաննէսի պահարանը 1244 թ.—Արձ. Այրարատ 261։

— 10. Քուրդ, որի դուստրը Մամքան (1298 թ.) կինն էր Հասան Ականեցւոյ, որդւոյ Ղարա-Գրիգորի.—Ձեռ. Դաղեան, Ա. 89 ա։

— 11. Քուրդ Գ Անբերդցի, իշխանաց իշխան, որդի Հասանի (Տայիր) և թոռն Քուրդ Բ մեծ իշխանի Արագածոտն գավառի. հիշված է 1317 թ. կինն է Խոյան կամ Խուանդ խաթուն.—Այրարատ 171 ա, 253—254. քաջ զորավար, ուներ ընտիր բանակ, որով երկյուղ էր ազդում թշնամիներին. սիրելի դարձավ թաթար իշխաններին և իր երկիրը պահեց անվրդով. Հայապ. 527. որդիքն են Բէշդոս Զրքին և Թայիկ։ Այս Քրդի մի Արձ. 1338 թվից տե՛ս ZAPh 2, 48 և մի Արձ. 1329 թ. տե՛ս Այրարատ 181։

ՔՈՒՐԴԱՄԻՐ, ար.

— 1. Քուրդամիր, կինն է Հերիք տիկին. ծնողներն են Արզումանի, որ նորոգել տվեց մի Աւետարան, 1386 թ.—Ձեռ. Վասպ. 117։

— 2. Քուրդամիր, որդի Գորգի և եղբայր Դաւիթի, որ գնեց մի հին Աւետարան, 1407 թ.—Ձեռ. Վասպ. 165։

— 3. Քուրդամիր, որդի Խուաէնբէկի և եղբայր Հայրապետ կրոնավորի, որ գնեց մի Աւետարան 1431 թ.—Նոտարք 98։

— 4. Քուրդամիր, ամուսին Շնոֆորի և փեսա Ներսէս քահանայի, որ Սեբաստիայում գրել տվեց մի Ճաշոց, 1438 թ.։ Ներսէսն ասում է քրոջը համար «բազում աշխատանք և երախտիք ունի ի վերայ մեր... զի գորովագութ աղետիւ սպասաւորեաց մեզ և զմայրութեան զգութն և զտեղն ոչ պակասեցոյց և Քուրդամիրն զեղբայրութեան տեղն»։

— 5. Քուրքամիր, ար. հիշված 1534 թ. (Նաթանեան, Արտօսր Հյաստնի 149)։

— 6. Խուրդամիր, ար. 1592.—Ձեռ. Վասպ. 731։

— 7. Քուրտամիր, ար. հիշված է 1701 թ. (Bodleian 207)։

— 8. Քուրդիկ իշխան Մամիկոնեան, ուզեց փախցնել Յովսէփ

և Սահակ եղբայրներին Հունաց երկիրը, բայց չհաջողվեց, ձերբակալվեցին և նահատակվեցին «808 թ.».—Ազգապ. 920. Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Դ. 295։

— 9. Քուրդիկ Մամիկոնեան, հայր Գրիգորի և Սմբատի՝ որոնք գերի քշվեցին Բուղայի ձեռքով Կարինից Ասորիք (Թ դար)։ Այս Քուրդիկը վերջին Մամիկոնեանն էր, որին գլխատեց Բուղա 852 թ. և Բագրևանդ գավառը անցավ Բագրատունեաց (Կոգեան, Կմսրկնները 39).—Արծր. Գ. ժգ Քուրդկայ՝ Սամ. անեց. 91. Վրք. և վկ. Բ. 267 Արծր. Գ. ժա։

— 10. Քուրդիկ իշխան Փոքր Հայոց. նշանակված էր վերակացու Լոզանեայ. Միքայէլ կայսեր ժամանակ գժտվելով Հունաց հետ, ասպատակեց շատ տեղեր. երբ Վասիլ Ա կայսր նստավ, անձամբ գնաց նրա մոտ և հնազանդություն հայտնեց (870 թ.).—Չամչ. Բ. 698։

— 11. Քուրդոյ, որդի Ճապուհի, ազատ Սյունի. հիշված է Տաթևի 844 թվի կալվածագրում։—Օրբ. լը։

— Քուրթ պարոն, իշխան Այրարատեան գավառի Սերկևլի գյուղում, 1441 թ.—Հրտր. Ազաթ. 1909 թ. յոց էջ խԸ։

— Քուրդեայշին (սեռ. հոլով), կինն է Շնորհաւոր, ծնողներն են Սիոն միակեացի, որ Կողուց վանքում Վարդան գրչին գրել տվեց մի Աւետարան, 1461 թ.—Նոտարք 198։

ՔՈՒՐԹՈՒԽ, սեռն ու ծագումը ինձ անհայտ. հիշված է մի անգամ 1593 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 194)։

— Քուրխաթուն, կին Կարապետի և մայր Թաւաքալ Հալէպցու, որ գնեց գերի ընկած մի Աւետարան 1400 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 402։

— Քուf, կինն է Էլխաթուն. ծնողներն են Մկրտիչ կրոնավորի և Յովհաննէսի, որոնք Բաղէշում, Ստեփաննոս գրչին գրել տվեցին մի Յայսմաւուրք 1446 թ.—Նոտարք 151։

ՔՉԻԿ, ար. համտ. Քչիկ:

— 1. Քչիկ, հայր Վրթանէս Քերթողի.—սեռ. Քչկան՝ Գիրք թղ. խա, իգ։

— 2. Քչիկ, տանուտեր կամ վանահայր Ներսմեհրի վանքի, Աղուան. մին այն կրոնավորներից, որոնք նզովեցին Ներսէս-Բակուր կաթուղիկոսին Աղուանից «713 թ.».—Բարխուդ. Պատմ. Աղուանից Ա. 123։

* ՔՈՒՄԵԱՆՔ, տե՛ս Ոսկեաճf:

* ՔՍԵՐՔՍԷՍ, ար.<հպրս. xšayāršan—անվան հուն. = ξέρξεης

(=լտ. Xerxes) տառադարձությունից։ Այս անունով հայտնի է Դարեհ Ա-ի որդի և Պարսից աշխարհակալ թագավոր Քսերքսէսը։ Բուն նշանակում է «իշխողների մեջ արուն՝ քաջը» xšaya+āršan բառերից)։ Bartholomae, Altir, Wört. 550, Justi 174 ա։

— 1. Քսերքսէս, իշխան Արծրունի. գործակից էր Տիգրան Ա-ին՝ Աժդահակի դեմ պատերազմում. Լիւդացւոց պատերազմում գերի բռնեց Կրեսոսին և հանձնեց Կիւրոսին.—Արծր. Ա. ե.—սեռ. Քսերքսեայ՝ Արծր. Ա. ե, զ.—Քսերքսեաճ՝ Արծր. Ա. ե։

— 2. Քսերքսէս, թագավոր Հայոց (Ծոփաց), կոչվում է նաև Փրատափեոն կամ Շաւարշ. թվի որդի Արդիսարէսի. հաջորդեց Արշամին. ապստամբեց նախ Սելևկյանց մեծն Անտիոքոս թագավորի դեմ, ապա հաշտվեց՝ ամուսնանալով նրա Անտիոքիա քրոջ հետ, ստանալով իբր օժիտ Արևելյան Հայաստանը, որ Անտիոքոսը խլել էր Ատրպատականի թագավորի ձեռքից. երկրորդ անգամ ապստամբելով՝ սպանվեց իր կնոջ ձեռքով (Ն. Ք. 215 կամ 200 թ.).— Գրգչ. Քնն. պտմ. Բ. 130 ըստ Պոլիբ. հտկտ. ը. 25, Լէօ, Հայոց պտմ. Ա. 379. Justi 174 ա. Ալպօյաճեան Պատմ. Հայ Կես. Ա. 195։

— Քրաճ, տաղասացի անո՞ւն է. սրանից ունենք միայն «Տաղ Քրանէ ասացեալ. Մեռա՛ւ գնաց աղքատ Ղազար, տեղն է կանաչ ու պայծառ. անմահութեան աղբիւրն առաջին, շուշան ծաղկունք հաբիւր հազար» (Զեռ. Հալէպի, Ա. 209, թվականն անհայտ)։

— Քրիսոլ (Chryseuil), սուրբ ավանդությունը համարում է Փարիզի Ս. Դիոնիսիոսի աշակերտ, հայ. այժմ պաշտպան Commines-ի. թիվն անհայտ (Ալիշան, Յուշիկք Ա. 73)։

+ ՔՐԻՍՏԱՏՈՒՐ, ար. <փխ. Քրիստոսատուր անելու. մի անգամ գտնում եմ հիշված 1649 թ. (REA 10, 51)։

* ՔՐԻՍՏԱՓՈՐ, ար. <հուն. Χριστοφόρος անունից (գերմ. Christoph, ֆրանս. Christophe, անգլ. Christopher, ռուս. Христофор), բուն. նշ. «Քրիստոսաբեր» (Հիւբշ. 336)։ Հայտնի է օր. Քրիստափոր նահատակ Սկիւթացի (Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Դ. 406)։ Գործածական է և այժմ. կրճատ ձևն է Քրիստ. Կովկասում ըստ ռուսականին հաճախ Խրիստափոր.—Հիւբշ. 336։ Ուշ ժամանակ հունարեն դարձել էր Խռսօֆօռ. և այս անունով էր կոչվում Լևոն Բ-ի ժամանակ Խռաֆ պարոն և տեր Լաւզարոյ, ներկա եղավ Լևոնի թագադրության հանդեսին «1199 թ.».—Սմբ. պտմ. 162 (կոչի Խռաֆ, տպ. Մոսկ. Խռսաֆ, իսկ Սիսուան 289—290 գրում է Խռսաւֆօռ՝ հույն ազգաւ)։

— 1. Քրիստափոր Ա Արծրունի, կաթողիկոս Հայոց «472—

478 թթ.», հաջորդ Գիւտ կաթուղիկոսի. առանց օծում ստանալու վարեց կաթուղիկոսական պաշտոնը. Արծր. Բ. բ։ (Ըստ Աղգապ. 430 և 529՝ Ջամչեանի գյուտն է, բոլորովին անգո անձ)։

— 2. Քրիստափոր Բ. Տիրառիճեցի, կաթուղիկոս Հայոց՝ «539—545 թթ.» հաջորդ Սահակ Բ Ուղկեցու. կոչվել է Փիլիսոփա. ուղղափառ ասորիներին նեստորականների դեմ պաշտպանելու համար նախ գրով, ապա անձամբ դիմեց Պարսկաստան, ներկայացավ Խոսրով Նուշիրվանին և Ասորոց եկեղեցու համար ձեռնադրյալներ կատարեց։ Այս ձեռնադրություններ մեջ հիշվում է Ասորոց մեծագործ եպիսկոպոս Աքուդեմէ ըստ Ասսեմանի (Սիսուան 462).—Եղն. եր. 268. ՔՀնպ. 271. ՑՀ. կթ. ժգ. ՑՀ. կթ. Հյր. 274. Ասող. Բ. բ. Սամ. անեց. 73. Մխ. անեց. դ. Մխ. այրիվ. 20. Միխ. աս. իթ (=իը). Կիր. 22. Վրդ. լ. Օրբ. հա. Վրաց աղբ. Ա. 78.—սեռ. Քրիստափորի՝ Ասող. Բ. բ. Մագ. թղ. կէ.—Այս Քրիստափորի մասին խոսում է նաև ասորի մատենագիր Բարհեբրէոսը և կոչում է նրան Մար Քրիստափորոս, որին համարում է ծագմամբ ասորի (տե՛ս Տէր-Մինասեանց, Հայոց եկեղ. յարաբ. 122—133. նաև Ցուցակաթ Ա. 109։ Ավելի մանրամասն Տեր-Մինասեան, Նեստորակ. 211)։

— 3. Քրիստափոր, եպիսկոպոս Պալունեաց, անդամ Դունոյ Բ ժողովի (554 թ.).—ուղ. Քրիստոփոր՝ Գիրք թղ. ժէ.—սեռ. Քրիստափորի՝ Գիրք թղ. ժզ։

— 4. Քրիստափոր, եպիսկոպոս Ռշտունեաց (Զ դար). հաջորդ Սահակ եպիսկոպոսի Ռշտունեաց՝ որ մեռել էր 560 թ. (Ջամինեան, Անահիտ 1931 սեպ. էջ 124).—բց. ի Քրիստափորէ՝ Գիրք. թղ. ժթ. Կղկնտ. Բ. է։

— 5. Քրիստափոր, եպիսկոպոս Սիւնեաց, հաջորդ Գրիգորի, անդամ Դուինի ժողովի «607 թ.».—Ուխտ. Բ. լ, լե. Օրբ. իդ, իե, կը, հա. Օրբ. հկճռ. ժբ.—Քրիստափոր՝ Գիրք թղ. լը.—սեռ. Քրիստափորի՝ Ուխտ. Բ. լէ. Գիրք թղ. խ. Օրբ. իդ.—բց. ի Քրիստափորէ՝ Ուխտ. Բ. լբ.—Ի Քրիստոփորէ՝ Գիրք թղ. լթ։

— 6. Քրիստափոր Գ Ապահունի կաթուղիկոս Հայոց՝ «628—630 թթ.» անապատական, Ապահունեաց եպիսկոպոս էր. հավատո ձեռնարկ տվեց Աբրահամ կաթուղիկոսին («607 թ.»). Վարազտիրոց մարզպանի և Թէոդորոս Ռշտունու առաջարկությամբ ընտրվեց կաթուղիկոս իբրև հաջորդ Կոմիտասի. իր գոռոզ և խիստ բնավորության պատճառով ատելի դարձավ և գահընկեց եղավ, քաշվեց միայնարան և ճգնական կյանքով ապրեց մինչև իր մահը.—Սեբ. իը.

Գիրք Թղ. խ, ծէ. Ուխտ. ր, լէ. ՅՀ. կԹղ. ժէ. Եղն. եր. 268. ՔՀնպ. 271. Ասող. Բ. բ. ՅՀ. կԹ. Հյր. 275. Մխ. անեց. դ. իդ. Մխ. այրիվ. 21. Միխ. աս. իԲ (=իբ). Սամ. անեց. 79, Կիր. 31, Վրդ. լգ, Օրբ. իէ, Հա.—սեռ. Քրիստափորի՝ Մխ. անեց. իդ. Միխ. աս. ժբ.—բց. ի Քրիստափորէ՝ Գիրք Թղ. ծե. Կղկնտ. Բ. խԹ.—Վրաց աղբ. Ա. 38, 48։

— 7. Քրիստափոր, եպիսկոպոս Դարունեաց, անդամ Կարնոյ ժողովի («633 Թ.» Եզր կաթուղիկոսի ժամանակ).—Այրարատ 43, 497. Տաշեան, Յուց. 114 բ. Ջամչ. Բ. 328։

— 8. Քրիստափոր, Հայ զորավար, ազգական Վասիլ կայսեր, որ իր փոխարեն ուղարկեց նրան Պաւլիկեանց գլխավոր Քրիսկիւրոսի դեմ. սա չուզեց կովել Հունաց Հետ և քաշվեց Տիւրիկ. Քրիստափորը 600 Հոգի Հայ և 600 Հոգի կապադովկիացի ուղարկեց նրա դեմ՝ Հսկելու Համար նրա շարժումների վրա, մի կովի ընթացքում Քրիսկիւրոս խարդախ և ստոր եղանակով սպանվեց մի Հույնի ձեռքով, որ նրանից շատ բարիքներ էր տեսել։ Քրիսկիւրոսի սպանման վրա (874 Թ.) Քրիստափոր դիմեց Տիւրիկի վրա, որ գրավեց առանց կովի, որովհետև պարիսպները քանդված էին երկրաշարժից և բնակիչները փախած։ Քրիստափոր Հիմնահատակ կործանեց Տիւրիկը, Պաւլիկեաններին կոտորեց, մնացածին բոնի զինվորագրեց, մի մասն էլ ցրվեց, որով վերջացավ Պաւլիկեան սարսափը, որ ծանրացել էր Փոքր Ասիոյ վրա ամբողջ 25 տարի (Ալպօյաճեան, Պատմ. Հայ Կես. Ա. 310)։

— 9. Քրիստափոր, վանաՀայր Նորավանից. եղբորորդի Ստեփաննոս վանաՀոր. նստել է 970 Թվից Հետո.—Օրբ. խզ։

— 10. Քրիստափոր, վանական Գնդեվանից. շինեց եկեղեցու գավիթը՝ 999 Թ.—Օրբ. խԹ։

— 11. Քրիստափոր գրիչ. օրինակել է մի Աւետարան՝ Սիմէոն քաՀանայի Համար, 1033 Թ.—Շողակաթ 191։

— 12. Քրիստափոր կրոնավոր, գրիչ. օրինակել է Աւետարանը 1033 Թ. Սարգիս ստացողի Համար.—Ջեռ. Կարին. 17։

— 13. Քրիստափոր, 1041 Թ. Մատ. Թղ. յոչ. էջ ժԹ ծան.։

— 14. Քրիստափոր քաՀանա, իր երկու որդիների Հետ նաՀատակվեց Թուրքերից, Արկնիում (1062 Թ.).—ՈւռՀ. 139. Ջամչ. Բ. 976։

— 15. Քրիստափոր, քարագործ Քեսունցի, Հայր Թէոդորոսի (1074 Թ.)։ Տե՛ս Թէոդորոս անվան տակ։ Արձանագրության «Քրիստոսի որ» ընթերցվածը պետք է ուղղել Քրիստափոր։

— 16. Քրիստափոր քարագործ, հայրն է Թէոդորոս (№ 33) նկարչի. տե՛ս անդ։

— 17. Քրիստափոր, առաջնորդ Կամրջաձորի. հրամայեց Աւետիս գրչին՝ օրինակելու Սամուէլ Անեցու ժամանակագրութիւնը, 1176 թ.—Օրբ. ժմ. յուշ. էջ 4։

— 18. Քրիստափոր ոմն, համառոտեց Բարսեղի Կեսարացւոյ Վեցօրեայքը (ԺԲ դար).—Զարբ. Թրգմ. 343։

— 19. Քրիստափոր, աշակերտ կամ օգնական Իգնատիոս գրչի և ծաղկողի (ԺԳ դար).—Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 24։

* ՔՐԻՍՏԻՆԷ, իգ. <հուն. Χριστινή անունից, որից և գերմ. անգ. Christina, ֆր. Christine, ռուս. Христина։ Հայտնի է այս անունով Քրիստինէ կույս Տիւրացի, որի վկայության պատմությունը անցել է Յայսմաւուրքի մեջ (Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Դ. 162)։ Հնից ավանդված է մեր մեջ մի անգամ, անթվական մի հիշատակարանում (Զեռ. Վասպ. 186), բայց գործածական է այժմ. փաղաքշական ձևը ըստ ռուսականի՝ Խրիստին։

— Քրիստինէ, կին Յովհաննէսի և մայր տանուտեր Մարտիրոս Շատախեցու (Մոկաց երկրից), որ Ծպատի անապատում Կարապետ գրչին գրել տվեց Աւետարանը, 1395 թ., երբ կինը արդեն մեռած էր.—Ձեռ. Վասպ. 231—234։

— Քրիստինոս՝ Վոյթ Հայոց Լեմպերկի. դիմեց Լեհաց Կազիմիր Դ թագավորին 1462 թ. ստանալու Հայոց համար զանազան արտոնություններ.—Գալէմք. Ուս. Լեհ. Դատ. էջ 10։

— Քրիստոս, ար. Հայոց մեջ գոյություն չունի. մի անգամ գտնում եմ գործածված 1686 թ. (Կամենից, 199), անշուշտ Քրիստոսատուր ասելու փոխարեն։

+ ՔՐԻՍՏՈՍԱՍԷՐ, ար. <Քրիստոս+սէր բառերից։

— 1. Քրիստոսասէր, որդի Պարսից թագավորի, Մուղանի մեջ մկրտվելով Գիւտ ճգնավորից՝ ստացավ այս անունը. մտավ Գիւտի վանքը և վերջապես նահատակվեց իր հոր զորքից (Զ դար).—Օրբ. ի.—սեռ. Քրիստոսասիրի՝ Օրբ. ի։—Նույնը ունի Manus. Bibl. nat. էջ 103.—Ձեռ. Վենետ. Բ. 1008։

— 2. Քրիստոսասէր, կին Սարգսի և մայր Ղազար վարդապետի, որ Դարանաղեաց Ս. Գրիգոր վանքում օրինակեց Աւետարանը, 1201 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1924, 247)։

+ ՔՐԻՍՏՈՍԱՏՈՒՐ, ար. <Քրիստոս+տուր բառերից, իբր «Քրիստոսի տվածը», ինչպես կա Աստուածատուր: Հմմտ. նաև

յրան. Yešūθaθ «Յիսուսատուր» (պատրիարք Քաղդէացոց 852 թ.)։

— 1. Քրիստոսատուր, հաշվագետ Զորրորդ Հայքեցի. սրա մոտ սովորեց Անանիա Շիրակացին 6 ամիս, բայց հմուտ չգտնելով հեռացավ։ (Թվի թե հույն է, բայց անունը հայերեն թարգմանված. Տաշեան, Ցուց. 1162 գ համարում է հայ).—Շիր. 1. Հայապ. 232։

— 2. Քրիստոսատուր, եպիսկոպոս Բասենի, անդամ Դունայ ժողովի («645 թ.»).—Կանոն. 130. Այրարատ 43. Տաշեան, Ցուց. 654 ա. Ջամչ. Բ. 345։

— 3. Քրիստոսատուր, աշակերտ Յովսէփ անապատականի. միասին գնացին Երուսաղէմ՝ բերելու սրբերի մասունքներ (Է դար).—գրծ. Քրիստոսատուրի՝ Կղկնտ. Բ. ծ (հրտր. Շահն. -տրով)։

— 4. Քրիստոսատուր, ճգնավոր ի Վարագ. համախոհ Ն. Լամբրոնացւոյ.—Լմբ. 229. Տաշեան, Ցուց. 334։

— 5. Քրիստոսատուր, գրիչ և երգող. ունի գանձեր (ԺԲ դար).—Հայապ. 232։

— 6. Քրիստոսատուր, պարոն, որդի Վասլի. նվիրաբեր Կապոսի Ս. Լուսաւորիչ վանից, 1255 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 35։

— 7. Քրիստոսատուր, եղբայր Գրիգորի և Աւագի, որ օգնեցին Սիմէոն երեցին արտագրելու Աւետարանը՝ Խրիմի Սուրխաթ քաղաքում, 1343 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 755։

— 8. Քրիստոսատուր, որդի Կարապետի, մայրն է Սուրաթ. աշակերտ Խրիմի նշանավոր Աւետիք Խոտաճարակ վարդապետի (№ 29), որ սնուցեց ու կրթեց նրան և «մինչ հասոյց յարբունս հասակի», դարձրեց կուսակրոն քահանա։ Սուրխաթ քաղաքում (Խրիմ) Ստեփաննոս քահանա գրչին գրել տվեց մի Աստուածաշունչ 1352 թ.—Ձեռ. Վասպ. 5—16։

— 9. Քրիստոսատուր, որդի Ոսկեհերի և եղբայր Գէորգ կրոնավորի, որ ստացավ Իգնատիոսի Մեկնութիւն Ղուկասու, 1363 թ.—Սմբատեանց, Երնջակ 228։

— 10. Քրիստոսատուր կրոնավոր, գրիչ. Կաֆայում օրինակեց Խազգիրքը՝ 1428 թ.—Գաթըրճեան, Պտրգմտ. 560։

— 11. Քրիստոսատուր քահանա, գրիչ. գրեց մի Խազտետր Կաֆա քաղաքում, Աւետիք աբեղայի համար, 1428 թ. մի տարի հետո գրեց, ծաղկեց և կազմեց մի Շարական, նույն Կաֆա քաղաքում, իր եղբոր Մարտիրոս կուսակրոն քահանայի համար, 1429 թ.—Manus. Bibl. nat. էջ 33, 38, 168։

— 12. Քրիստոսատուր կրոնավոր. Կաֆայի Ս. Անտոն վան-

քում օրինակեց «Տաղաչափութիւնք Ն. Շնորհալւոյ» 1432 թ.—Տաշեան, Ցուց. 1016 բ։

— 13. Քրիստաւստուր, միրձավոր Աստուածատուրի, որ գնեց մի հին Աւետարան 1488 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 492։

— Քրիստոֆերէս, Պաւլիկեան աղանդավոր. հաջորդեց Տաճատ Անձևացուն իբր զորավար հույն բանակի, սկսած 790 թվից. Կոստանդին Զ կայսեր կողմից ուղարկվեց ընկճելու հայկական ապստամբ բանակը.—Ալպօյաճեան, Պատմ. Հայ Կես. Ա. 400։

— 1. Քրման, ար. հիշված է 1599 թ.—Ձեռ. Վասպ. 756։

— 2. Քրման, ա՞ր. հիշված է 1633 թ.—Ձեռ. Վասպ. 882։

— 3. Քրման, ար. հիշված անթվական մի հիշատակարանում (1655 թվից հետո՞).—Ձեռ. Նոր-Բայազ. 43 ա։

— 4. Քրման խաթուն, կին Աստուածատուրի (№ 105). ծնողներն են Պակթամուրի, որ Կամախում գրել տվեց մի Ճաշոց, 1439 թ.—Նոտարք 120։

— 5. Քրման-խաթուն, կին Գրիգոր քահանայի, ծնողներն են Թումայ (№ 202) քահանայի, որ Աղթամարում, տանուտեր Սաղաղայի համար օրինակեց Աւետարանը 1476 թ.—Ձեռ. Վասպ. 482։

ՔՕԹՆԱՅ, ար.

— Քօթնայ կամ Քօթան, խլաթեցի տաղասաց ԺԶ դարու (Տե՛ս Նորայր, Հայկ. բառաք. էջ 2).—Ցուչիկք, Բ. 125։

# Օ

— Օգեմէն արեղայ, գրիչ. օրինակել է Գր. Տաթևացու Մեկնութիւն Աւետարանին Յովհաննու. ուրեմն և XIV դարից հետո, բայց միշտ թիւն անհայտ.—Ձեռ. Կարին 159։

* ՕԳՈՍՏԻՆՈՍ, ար. <լտ. Augustinus անունից, որ ծագում է augustus «սուրբ, բարեհաջող, վեհափառ» բառից։ Այս անունով հայտնի է Ս. Օգոստինոս, լատին եկեղեցու նշանավոր հայրերից մեկը (354—430 թթ.)։

— 1. Օգոստինոս Կարնեցի, Դոմինիկեան կրոնավոր. նախապես կոչվում էր Աւետիք, բնակվում էր Վենետիկում (1380—1383 թթ.). գրել է Նախադրութիւնք Ս. Գրոց, նաև պեսպես կրոնական գրվածներ՝ արձակ և ոտանավոր (Հայ-Վենետ. 155, Նոր. ժող. Դ. էջ 54—56), Bodleian 234։

— 2. Օգոստինոս Բաջենց կամ Բաջենցի, Դոմինիկեան, փրա քահանա կաթոլիկ. Երնջակի Ապարաներ գյուղից էր. մասնակից եղավ Շահաբասի գաղթականության, երբ դեռ պատանի էր. Արաքսի մեջ մի գոմշի ագի ձեռքն ընկնելով՝ մաղապուրծ ազատվեց մահից. դարձավ եկավ Գեղարդի մոտ Խոշկաշէն գյուղը, հետո գնաց Սպահան, ուր 3 տարի ծառայեց եւրոպացի մի դեսպանի մոտ։ 1609 թվին ճամփորդեց Եւրոպա՝ Դերբենդի, Աստրախանի, Մոսկուայի վրայով և շրջեց Լեհաստան, Գերմանիա, Իսպանիա և Իտալիա. Հռոմում 1614 թ. քահանա ձեռնադրվեց և ուղարկվեց Հայաստան քարոզելու. հետո եղավ արքեպիսկոպոս Նախիջևանի, նորից եկել է Հռոմ 1630 թ. (Բանաս. 1900, 145) և վերադարձել Նախիջևան, ուր և մեռել է 1667 թվին։ Թողել է իր Ճամփորդության պատմությունը, որ հրատարակեց Ք. Պատկանեանը Նշխարք մատ. Հայոց, Պետերբ. 1884, որից անտեղյակ երկրորդ անգամ հրատարակեց Բասմաջեան, Բանասէր 1899, էջ 218—237։—Աւգուստինոս՝ անդ 24։ Օգոստ. Բաջ. 5, 11, 22.—Օգոստինոս: Ունի արտագրած մի քանի ձեռագիր օրժողովածոյ 1617 թ. (Բանասէր, 1899, էջ 257)։

ՕԴԷ, իգ. (Ջամչ. Ա. 277 Ովգէ). ծագումն ինձ անհայտ. մի անգամ ունենք՝

— Օղէ, քույր Աբգար թագավորի, մայր Սանատրուկի.—Խոր. Բ. լզ։

ՕԶԱՆ, ար. <պրս. اوزن avzan «քաջ, ուժեղ, հզոր»։ Թերևս իբր անձնանուն էր գործածվում, որից Օզանեան ազգանունը (Փոքր Ասիա)։

— 1. Աւզբէկ, ա՞ր. թիվն անհայտ, 1298-ից ուշ (Թորոս աղբ. Բ. 335—336)։

— 2. Օզբէկ, կինն է Խութլու խաթուն. ծնողներն են Մկրտիչ քահանայի (№ 88), որ Բերկրի քաղաքի առաջնորդն էր 1418—1422 թվերին.—Նոտարք 55։

— Ավթայ կամ Աւթայ, կին Խնկիկի, ծնողներն են Թադէոս կրոնավորի, որ Աղթամարում գրել տվեց երկու Աւետարան 1292—1293 թվերին.—Ձեռ. Վասպ. 225—229։

— Աւթա, կին Ստեփաննոսի. ծնողներն են Յովհաննէս կրոնավորի, որ Բերկրիի Եղավանքում գրել տվեց մի Աւետարան. 1422 թ.—Ձեռ. Վասպ. 347—348։

ՕԹԱՐ, ար. <թրք. اوتر öter «գեղգեղող, դայլայլող» բառի՞ց. հիշված է 1665 թ.? Ջամբռ 208.—Սրանից ունենք Օթարեան ազգանունը (Կովկաս)։

— Օլման, ա՞ր. հիշված է մի խաչքարի վրա 1653 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 620։

— Օլուխնա, լեհահայ իգ. անուն. հիշված 1602 թ. հետևյալ ձևով. «բանի օլուխնային, որ է Հեղինէ».—REA 7, 121։

— 1. Աւfայ-բէկի, իգ. թիվն անհայտ (1509-ից ուշ).—Ձեռ. Վասպ. 642։

— 2. Աւլfայ բէկի, իգ. հիշված է 1596 թ.—Ձեռ. Վասպ. 244։

— 3. Օլfա-բէկի, իգ. 1602 թ.—Ձեռ. Վասպ. 802։

— 4. Օլfաբէկի, իգ. 1646 թ.—Ձեռ. Վասպ. 904։

— Օնանեան, ար. 1670 թ.—Ձեռ. Վասպ. 936։

— Օղիպա, ա՞ր. թե իգ. հիշված է 1791 թ.—Ձեռ. Սանաս. 21 ա։

— 1. Աւղլան, դուստր Ռստակէս քահանայի (1619 թ.).—Ձեռ. Թաւր. 68 ա։

— 2. Աւղլան, ա՞ր. թիվն անհայտ.—Ձեռ. Վասպ. 150։

— 3. Օղլան, իգ. թիվն անհայտ.—Ձեռ. Վենետ. Ա. 410։

— Օղլանգէraf, իգ. հիշված է 1587 թ. Bodleian 107, 1627 թ. (Ձեռ. Թեհր.=ՀԱ 1935, 395)։

*ՕՂԼԱՆՓԱՇԱ, իգ. <Թրք. oγlan «տղա, որդի» + paša «փաշա» բառերից։

— 1. Օղլանփաշա, իգ. 1595 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 695։

— 2. Ուղլանփաշա, կին Պօղոսի, մայր Ազարիա վարդապետի, որ ստացավ մի Ցայսմաւուրք (ԺԵ—ԺԶ) դար.—Տաշեան, Ցուց. 544։

3. Ուղլանփաշա, իգ. հիշված 1626 թ.—Ձեռ. Դաղեան, Բ. 32 բ։

— 4. Օղլան-փաշա, իգ. 1666 թ.—Ձեռ. Վասպ. 928։

— 5. Օղլանփաշա, իգ. թիվն անհայտ. Bodleian 147։

— ՕՂԼԱՆՔԷՇԻՇ, ար. <Թրք. oγlan «տղա» և keš.š «քահանա» բառերից. հիշված կա 1605 թ.—Առաք. պատմ. 9։—Նույն անունը հիշված է նաև 1697 թ.—Ուղուրլեան, Պատմ. գաղթ. ի Լիվոռն. էջ 68, որի դեմ էջ 83 գտնում ենք Օղլանքեշիշեանց կամ Տէրտէրեանց, որով իմացվում է, որ ազգանուն է և ոչ անուն։

ՕՂՈՒ, ի՞գ. թե ար. <Թրք. اوغلى oγlu «որդի» բառից. հիշված է 1311 թվից հետո գրված անթվական մի հիշատակարանում ողլու, ուղլու ձևերով (Ձեռ. Թաւր. 72 բ)։

— Օղուզխան, ար. հիշված է 1389 թվից հետո գրված անթվական մի հիշատակարանում.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 760)։

* ՕՂՈՒԼԲԱԼ, ար. <Թրք. اوغول بالی oγūl-bali «ձագուց մեղր»։ Տե՛ս և Բալի անունը, որ միշտ արական է։

— 1. Ողուլպալ, հայր Տէր Ղազարի՝ ստացավ մի Գանձարան (գրված 1485 թվին).—Տաշեան, Ցուց. 760 բ.—Գրված է «Հաւր նորա Ողուլպալ, ե[ւ] մաւրն նորա Մինասին»։ Մինաս իգական անուն չլինելով և ընդհակառակը Օղուլբալին կանանց ավելի հարմար լինելով, թերևս այստեղ սեռի սխալ կա։

— 2. Օղուլպալի (ձեռագրում սեռական Օղուլպալէ) 1619 թ.—Ջեռ. Սեբ.=ՀԱ 1925, 475։

— 3. Օղուլպալի, ար. 1657 թ.—Ջեռ. Սեբ.=ՀԱ 1926, 547։

* ՕՂՈՒԼԲԷԿ, ար. <Թրք. اوعول oγul «որդի»- بك beg «բեգ» բառերից, իբր թե «որի որդին իշխան է» և կամ պարզապես անունն է թերևս Օղուլ, իսկ բեգ տիտղոս է։ Իբր անձնանուն գործածված պետք է լինի ԺԵ դարում, որից Օղուլբէկեանց ազգանունը՝ 1446 թ.—Տաշեան, Ցուց. 418։

— Օղուլմելիք, եղբորդուստր Ազարիա աբեղայի, որ Նղեգիսում գրել տվեց մի Աւետարան, 1495 թ.—Ջեռ. Վեննետ. Ա. 586։

* ՕՆԳՈՒԼԲԱՀԱՐ, իգ. կազմված պրս. بهار bahār «գարուն» բառից. անծանոթ է Օնգուլ: Բայց գուցե և պետք է կարդալ Գուլբահար:

— Աւնկուլպահար, երիցակին (1640 թ.).—Տաշեան, Ցուց. 426 բ։

* ՕՇԻՆ, ար. <պրս. افشين afšīn անունից (Կամուս, Գ. 683). օր. افشين حيدر Afšīn Haidar արաբական ոստիկան Հայաստանի՝ 833—842 թվերին. Afšīn զորավար Ալփասլանի (1071 թ.)։ Հայերեն տառադարձված է Ափշին՝ Բագրատունեաց շրջանում, հետո Օշին<Աւշին՝ Ռուբինեանց շրջանում։ Ըստ Justi 253 Afšīn արաբացյալ ձևն է pašin=զնդ. pisina անվան, որի մեկնությունը հայտնի չէ՝ ըստ Barth. 907։ (Իսկ պրս. آفشين āvšīn նշանակում է «ծոթրին»)։

— 1. Օշին Ա Գանձակեցի, իշխան. տաճիկներից նեղվելով՝ իր եղբայր Հալկամի և ուրիշ իշխանների հետ Գանձակից գնաց Կիլիկիա, փեսայացավ Ապլխարիպ Արծրունուն, որից ժառանգեց Լամբրոնը (1071 թ. Սիսուան 46 բ)։ Երբ Ալեքս կայսրը պատերազմի գնաց (1085 թ.) Լոնգոբարդացոց դեմ, Օշին իր բանակով օգնական գնաց, պատերազմի մեջ հաղթեց և սպանեց Ռոբերտ դքսի վիթխարի ախոյան ֆրանսիացուն և իբր պատիվ ստացավ կայսրից Տարսոնը. եղավ հիմնադիր Լամբրոնացոց իշխանության և ցեղին.—

Օգնել է խաչակիրներին.—Ուռհ. 259. Սամ. անեց. 117.—Աւշին՝ Պտմ. Լմբ. 225։ Justi 253 ա. Հայապ. 414. Զմչ. Բ. 995. Գ. 10։ Այս Օշինի մասին չափազանցրած մի պատմություն խաչակրաց կողմից տե՛ս Սիսուան 257 բ։—Տե՛ս և Ասպետ Արշակունի։

— 2. Օշին, որդի Թորոս Ա-ի (1100—1129 թթ.).—Justi 253 բ. Սիսուան 45։

— 3. Օշին Բ, երեց որդի Հեթումի Ա Սեբաստոսի և թոռն Օշինի Ա, պապ Օշինի Գ, եղբայր Սմբատի, տեր Լամբրոնի, Հունաց Մանուէլ Ա կայսրից (1143—1180 թթ.) պատվվեց սեբաստոս տիտղոսով. ամուսնացավ Շնորհալու եղբոր Շահան-Զորավարի աղջկա՝ Շահանդուխտի հետ. Անդրոնիկոսի բանակում կռվեց Թորոս Բ-ի (1145—1168 թթ.) դեմ, որի ձեռքը գերի ընկավ. Թորոս ներեց նրան և հետը խնամացավ։ Առաջնորդեց թուրքերին Ատանա, որտեղից 500 հայ աղջիկ գերի տարավ։ Մեռել է «1169 թ.», թողնելով Լամբրոնի իշխանությունը իր որդի Հեթումին։ Ն. Լամբրոնացու հայրն է.—Գր. եր. 401. Շնորհ. Պտճ. 86. Վահր. ոտ. 206—207. Սմբ. պտմ. 96, 113. Պտմ. Կիլ. 207.—Աւշին՝ Պտմ. Լմբ. 225—226, 234.—սեռ. Օշնի՝ Շնորհ. Պտճ. 86. Վրք. Շնորհ. 49. Սկեռ. Լմբ. 11. REA 8, 31.—սեռ. Աւշնի՝ յիշ. Թորոս աղբ. Բ. 443. Սմբ. պտմ. 101, 109, 113. Յայսմ. յուլ. 17. գրծ. Օշնիւ՝ Շնորհ. Պտճ. 107.—Զարբ. Թրգմ. 464, 513, 606, 617. Աթան. յոբ. ԺԴ. Հայապ. 414. Սիսուան 81. Շնորհ. և պրգյ. 315—317։

— 4. Օշին Գ, երեց որդի Հեթումի, թոռն Օշին Բ-ի, տեր Լամբրոնի, որին խոստացավ Լևոն Բ իր եղբոր դուստր Ֆիլիպին։—սեռ. Օշնի՝ Կիր. լե. Սմբ. պտմ. 113.—Զարբ. Թրգմ. 607։

— 5. Օշին, իբրև թագավոր Հայոց հիշված է Մասրուց վանքի արձանագրության մեջ, Յովհաննէս կաթուղիկոսի ժամանակ, 1219 թ.։ Այս թվին իրոք կաթուղիկոս է Յովհաննէս, բայց Լևոն Բ մեռնում է, Զապէլը գահ է բարձրանում և չկա Օշին թագավոր, ուստի այն իշխաններից մեկն է, որին ուզում էին հանձնել գահը (Սմբատեանց, Գեղարք. 513)։

— 6. Օշին, հայր Կոստանդինի և պապ Յովհաննէս Մեծաբարոյ («1203—1221 թթ.») կաթուղիկոսի. Լամբրոնի Հեթումեանց տոհմից.—սեռ. Օշնի՝ Սմբ. պտմ. 115։

— 7. Օշին, հունադավան իշխան Հեթում Ա-ի. խլեց Իկոնիոյ սուլթանից Մունդաս բերդը. սուլթանը (կամ նրա որդին Ռուգնադին) արշավեց գրավելու համար բերդը. Հեթումը Սմբատ սպարա-

պետի հետ վրա հասավ, կոտորեց սուլթանի բանակը և բոլոր քրիստոնյաներին տարավ Կիլիկիա, 1259 թ.—Սիսուան 177։

— 8. Օշին, որդի Ճոֆրի իշխանի՝ տեառն Սարվանդիքարի (+1261 թ.), եղբայր Կոստանդնի և Սմբատի. հաջորդեց իր եղբոր Կոստանդնին. Կոստանդին արքայահոր եղբոր՝ Սմբատի թոռն է. հիշված է 1259 թ.—Թորոս աղբ. Բ. 437. Սիսուան 209 բ։

— 9. Օշին պայլ, եղբայր Հեթում Ա-ի, որդի Կոստանդին թագավորահոր, տեր Կոռիկոսի, Մանիոնի, Կանչի և այլն. նշանակվեց պայլ՝ 1226 թ.։ Հեթում պատմիչի հայրն է. իր կինն է Ջալալ Պահլաւունու դուստրը։ Ուղարկվեց Աքայիա՝ պապական դեսպանին տեսության (1262 թ.). մեռել է և թաղվել «1264 թ.» (ըստ Ձեռ. Օշ. 99 ա ՁԺԴ թվին դեկտ. 25).—Միխ. աս. յավել. և յիշ. Սկևռ. պատ. 7 Սմբ. պատմ. 124. Սիսուան 336, 334, 484 ա. Ձեռ. Դադեան Բ, 30 ա. Manus. Brit. mus. 14 ա, Ջարբ. Թրգմ. 567, Ուղեգրութ. Ա. տե՛ս և Justi 253 բ։

— 10. Աւշին, հայր Մխիթար քահանայի (Արծ. Հաղբատի 1267 թ.).—Justi 253 բ։

— 11. Օշին, որդի Հեթում Ա թագավորի (1226—1290 թթ.), հիշված է 1253 թ. (Justi 253 բ). ըստ Ալիշան, Յուշիկք Ա 145 սխալ է. Հեթում Ա չունի Օշին անունով որդի։ Սակայն Դարդել գիտե Օշին որդի Հեթում Ա-ի և եղբայր Լևոն Գ-ի։ Այս Օշինը Լևոն Գ-ի և Հեթում միականու մահից հետո ժառանգել է Կիլիկիո գահը. սրա որդին է Լևոն Ե.—Դարդել 16, 26—28, 31, 37 (շփոթում, ավելի ճիշտ խեղաթյուրում է Օշին թագավորին)։

— 12. Օշին, քեռորդի Օշին մարաջախտի. մայրն է Կեռան՝ քույր այս Օշինի. եղբայրներն են Կոստանդին թագադիր Հայոց և Սմբատ. հիշված է 1274 թ.—ՀԱ 1898, 246 և 248։

— 13. Օշին պարոն, որդի Կոստանդինի՝ տեառն Սարվանդիքարի. իր Սմբատ եղբոր հետ հիշված է 1278 թ. (ավելին տե՛ս Կոստանդին № 77).—Ձեռ. Վասպ. 102։

— 14. Աւշին սարկավագ, հիշված է Լևոն Գ թագավորի Իտալիոյ Perugia քաղաքի Հայոց եկեղեցուն նվեր ուղարկած Աւետարանի հիշատակարանում, 1279 թ.—Սիսուան 519։

— 15. Օշին, սարկավագ Իտալիոյ Perugia քաղաքի Հայոց Մատթէոս Աւետարանիչ եկեղեցու (1279 թ.).—Հայապ. 485։

— 16. Օշին պայլ, որդի Կոստանդին պայլի, հիշված 1286 թ.—Ձեռ. Վասպ. 109։

— 17. Օշին պարոն, Այասի մաքսատան պռոքսիմոս 1288 թ.— Սիսուան 368 ա։

— 18. Օշին սիր Պայլոնց, ըստ Սիսուան 557 ա մեռել է 1299 թ. գնացել էր Եգիպտոս, ուր և մեռավ Ղազան խանի գալու ժամանակ. իր ժառանգորդները ի հիշատակ նրա հոգու գնեցին 1292 թ. այն Աւետարանը, որ գրել էր Յովհաննէս եպիսկոպոս արքայեղբայրը՝ 1278 թ.—Ձեռ. Միսխ. 8։

— 19. Օշին մարաջախտ և զորավար թագավորության Հայոց. որդին էր իշխանաց իշխան Կոստանդինի՝ տեառն Լամբրոնի, եղբայր Հեթումի (Գ), տեր Մառնիշոյ և իշխան Ասկուռայ բերդի, Լևոն Գ թագավորը կարգեց նրան մարաջախտ (նախքան 1274 թ. և ո՛չ թե 1277 թ.)։ Սիս քաղաքում, 1274 թ. Կոստանդին գրչին գրել տվեց մի սքանչելի Աւետարան, որ այժմ Ամերիկայումն է (REA 6, 169)։ Մեռել է 1294 թ. իրեն հաջորդեց որդին Հեթում.—Սմբ. պտմ. 126. ՀԱ 1898, 244—248. Սիսուան 85. Ձեռ. Օշ. 101 ա, Ջամ չ. Գ. 279, 293, REA 6, 170 և 171։

— 20. Պարոն Օշին սինիչալ, որդի Սմբատ Գունդստապլի, Օշին Բակուրնանց սպասալարի և ուրիշ իշխանների հետ միացած՝ ապստամբեց Հեթում Բ և Թորոս Ռուբինեանց թագավորների դեմ, 1296 թ.—Ձեռ. Օշ. 101 ա։

— 21. Օշին Բակուրնանց, պարոն, արքունի սպասալար («դարպսուն»), միանալով Օշին սինիչալի և ուրիշ իշխանների հետ՝ ապստամբեց Հեթում Բ-ի և Թորոսի դեմ, 1296 թ.—Ձեռ. Օշ. 101 ա։

— 22. Սիր Օշին Պայլոնց, թերևս թոռն է առաջին Օշին պայլի, Ղազան խանի արշավանքի ժամանակ դեպի Եգիպտոս (1299—1301 թթ.) սպանվեց. իր որդիներն են Թորոս և Վասակ.—Սիսուան 484 ա։

— 23. Օշին, որդի Հեթում պատմիչի և թոռն Օշնի, որ Հեթում Ա թագավորի եղբայրն էր։—Սիսուան 193 բ. համարում է Գրիգոր Է կաթուղիկոսին մի տող ծոնող Օշինը։ Հաջորդեց իր հորը իբրև պայլ՝ 1307 թ.։ Մեռավ 1329 թ.—Սիսուան 484։

— 24. Օշին, արքայական իշխան, տեր Կոռիկոսի և Կանչոյ, որդի Օշին պայլի, եղբոր Հեթում Ա թագավորի և որդւոյ Կոստանդին թագավորահոր (կամ աւագ պարոնի), որի թոռն էր այս Օշինը. իր եղբայրներն են Գրիգոր և Հեթում պատմիչ. իր հորեղբորորդի Լևոն Գ-ի կողմից կարգվեց սենեսկալ և տեր Կանչոյ (1277 թվին՝ ըստ Ջամ չ. Գ. 279 և 289)։ Հեթում Բ-ի (1289—1305 թթ.) գունդըստապլն էր. իր եղբոր Հեթումի հետ միացած ապստամբեց նրա

դեմ՝ 1293 թ. (Ձեռ. Օշ. 100 բ)։ Հեթում թագավորի հետ վանեց Եգիպտական արշավանքը «1305 թ.» (Չամչ. Գ. 300)։ Կարգվեց սպարապետ Լևոն Դ պատանի թագավորի (1301—1307 թթ.)։ Ուսումնասեր մարդ էր։ «Ժողովեաց գյոգնիմաստ տառքս տաղից, ներբողինից, քաջոլորակաց, ըստ Հոմերի չափուց և ոչ ըստ աշխարհի»։ Ատանայում, Կոստանդին քուռաթ քահանային օրինակել տվեց Շնորհալու գործերը, 1284 թվին (Ձեռ. Թաւր. 15)։ 1287 թվին արտագրել տվեց մի ուրիշ «Հոգիաշունչ մատեան, որ ունի զծաղիկս զանազանս», որի հիշատակարանի մի մասն է միայն մնում (Ձեռ. Դաղեան, Բ. 30 ա)։ Ունի ոտանավոր մի նամակ (մասամբ տպված Սիսուան 193—194), որ ուղղված է Գրիգոր Է (1293—1306 թթ.) կաթուղիկոսին։ Ներկա է եղել Սսոյ «1307 թվի» կրոնական ժողովին։ Զոհ գնաց հակակաթոլիկական շարժման և Պիլարղուի ձեռքով սպանվեց՝ Հեթում Բ-ի և Լևոն Դ-ի հետ միասին «1307 թ.»։— Ձեռ. Օշ. 101 ա, Սամ. անեց. շար. 155.—բց. յՕշնէ՝ Օշն. նկ. 159, 160. Ազգապ. 1787։

— 25. Օշին, որդի Լևոն Գ-ի (1270—1289 թթ.). ծնված 1272 թ. (Ձեռ. Օշ. 99 բ), երկվորյակ (խեղեփ) Ալինախի (№ 1) և եղբայր Հեթում Բ-ի (1298—1305 թթ.) տեր Կապանի. անդամ Սսի եկեղեցական ժողովի «1307 թ.»։—Պատմ. Կիլ. 212. Ձեռ. Օշ. 100 ա. Ազգապ. 1787. Հայապ. 490.—Աւշին՝ Պատմ. Լմբ. 243։

— 26. Օշին, հայր Հեթում Սեբաստոսի, որ ստացավ մի նշանավոր բժշկարան (թիվն անհայտ) (Ձեռ. Երուսաղեմի).—Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 73։

— 27. Օշին, որդի Լևոն Գ-ի (+1289 թ.), կրտսեր եղբայր Հեթում Բ թագավորի, Սմբատ Գ-ի, Թորոսի և Կոստանդնի, որոնք իրար հետևից խլեցին Հեթում Բ-ի գահը.—Մին. համդ. 47, 48. նույնացնում է Օշին թագավորի հետ, որ սխալ է։

— 28. Օշին գրիչ, օրինակեց Վարդանի Մեկնութիւն Հնգամատենի՝ 1296 թ. Գէորգ Սկեռացու աշակերտ Երեմիայի համար.— Յովսէփեան, Նիւթեր և ուս. 69։

— 29. Օշին, որդի Սմբատ Գունդստապլի՝ տեառն Պապեռոնի, եղբայր Հեթումի, Կոստանդինի և Լևոնի, հիշված է 1269 թ. հաջորդեց իր եղբոր Լևոնին՝ իբրև գունդստապլ 1279 թ. միևնույն ժամանակ սենեսկալ էր Հայոց թագավորության 1277—1307 թթ. մեռավ 1307 թ.—սեռ. Աւշնի՝ Անսիզք 93.—Սիսուան 72, 484—485, 519 բ։

— 30. Օշին, որդի Սարգսի՝ եղբայր Կոստանդին արքեպիսկո-

պոս Պեհեսնեցւոյ. մեռավ 1310 թ. և թաղվեց Աստրոց ծոխաթ վանքում.—Բակուրան, Կիպրոս կղ. 108։ Տե՛ս նաև Ձեռ. Վասպ. 60։

— 31. Օշին Եհաննեց Պոռքսիմոս, որին Օշին թագավորը 1314 թ. հրովարտակ է տալիս՝ հրամայելով, որ Մոնպելիեի վաճառականները Այաս ապրանք բերելիս 2% մաքս պիտի տան.— Ցրանս. տարեգ. 1927, 53։

— 32. Օշին իշխան, բերդակալ Կոպիտառի. անդամ Սսոյ (1307 թ.—Աղգապ. 1787, 1819) և Ատանայի (1317 թ.—Ջամբ. Գ. 279, 314, Սիսուան 158) եկեղեցական ժողովների։ Ըստ Աղգապ. 1311—1312 թթ. Օշին որդին է Լևոն Գ-ի և եղբայր Ալինախի. երկուսը երկվորյակ են և ծն. 1283 թ. այս դեպքում Օշինը միանում է վերինի հետ։

— 33. Օշին Վասիլենց, գտնվում էր Այաս նավահանգստում. Վենետիկցի նավաստիներ հարձակվեցին Այասի վրա և կողոպտեցին զանազան մարդկանց ինչքը։ Սրանց թվումն էին բացի Օշին արքայեղբորից, Օշին Վասիլենց, Վասիլ Կիռ-Սահակենց, Վասիլ երեց, Թորոս Յովհան կամ Յովակիմ (Tros Joahim), Թորոս Պայտար, Գրիգոր Ղազար, Կոստանդին վաճառապան? (vassarabam), Ռիթա տիկին և այլն։ Այս դեպքը տեղի ունեցավ 1304 թ.։ Գործը դատի տրվեց և Վենետիկցիք ամբողջ տուգանքը վճարեցին (1307 թ.).—Սիսուան 367։

— 34. Օշին, որդի գունդստապլի Հայոց, մայրն է Ջապլուն իշխանուհի, որ գրել տվեց մի Աւետարան, 1309 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1924, 519)։

— 35. Օշին թագավոր Կիլիկիոյ՝ «1308—1320 թթ.», ծն. «1283 թ.», որդի Թորոսի, եղբայր և հաջորդ Լևոն Դ թագավորի, որ սպանվել էր Բիլարղուի ձեռքով. նախքան թագավորելը կոչվում էր «արքայեղբայր և տէր Կապանու» (Սիսուան 367 ծան.)։ Օշին հարձակվեց Բիլարղուի վրա, դուրս քշեց նրան Կիլիկիայից և գահ բարձրացավ։ Շինել է բազմաթիվ բերդեր և եկեղեցիներ. պարսպով պատել է Տարսոնը։ Հեթումի նման կաթոլիկության հարած լինելով և ուզելով այն տարածել ժողովրդի մեջ, իր դեմ ելավ ժողովուրդը մեծամեծ ցույցերով «1308 և 1309» թվերին։ Շատերին բռնեց, բանտարկեց, սպանեց և աքսորեց։ Պտույտի ելավ Տարօն, Աղձնիք, Բաղէշ, ուր մի ժողով էլ գումարեց՝ համոզելու համար մտքերը, բայց անհաջող։ Վերջին անգամ «1317 թ.» գումարեց Ատանայի կրոնական ժողովը, որպեսզի կարողանա կաթոլիկ ծեսը մուծել մեր մեջ։ Բայց անօգուտ։ Խնդրից հիրոպայորդ օգնությունը, բայց

նրանցից անհույս մնալով՝ կռվեց իր ուժերով Կիպրացոց և Մամլուքների դեմ։ Իր ավագերեց Թորոս Հռոմկլայեցու միջոցով 1319 թվին Յակոբ քահանային գրել է տվել մի ձեռագիր, որ պարունակում է մի տուփի մեջ Ժամագիրք, Սաղմոս, Մանրուսմունք, Շարական, Տօնացոյց։ Այս գիրքը մեծադիր, ստվար, համակ մագաղաթյա հոյակապ արքայական մի ձեռագիր է (Ձեռ. Օշ. 92 բ, 101 բ, 102 ա), որ նույն է Ձեռ. Հալէպի Ա. էջ 12 ա։ Այս հետաքրքրական ձեռագրի մասին մի առանձին հատոր է նվիրել Արտաւազդ արքեպիսկ. Սիւրմէլեան («Նկարագիր Օշին թագաւորի ձեռագիր ժամագիրքին» վերնագրով, տպ. Անթիլիաս 1933 թ., ուր Հեթումը հիշված է 92 բ, 101 բ)։ Օշինը մեռավ «1320 թ.».—Սմբ. պատմ. 127—128, 131, 137. Նհպտք. 106. Սամ. անեց. շար. 153, 156—157, 165—167. Մխ. համդ. 49.—սեռ. Օշնոյ՝ Մխ. համդ. 50.—սեռ. Օշնի՝ Բրս. մրկ. 460. Մկ. Մեծոփ. 27. Սամ. անեց. շար. 157. Նհպտք. 107. Ջարբ. Թրգմ. 265, 308, 728. Աթան. յոշ. ժէ (Աւգեր. Լիակ. վրք. սրբ Զ. 453—460 պատմում է Իսպանացոց Յահոբ թագավորի դիմումը Օշինին (1319 թ.) և նրանից ստանալը Թէկղի կույսի մասունքները՝ Տարակոնի մայր եկեղեցու համար։—Հետաքրքիր է, որ 1341 թ. Աչախ քաղաքում գրված մի Ճաշոցում (Ձեռ. Պետ. թանգարանի №811) գրված է «Լևոնի որդոյ Աւշընդրի» փխ. Օշինի (Շահազիզ, Հին Երևանը, էջ 72)։—Սրա համար տե՛ս վերը Օշին անվան ծագման մեջ՝ պրս. اوشين avšin «ծոթրին» նշանակությամբ։

— 36. Օշին թագավոր, ամուսնացավ 1315—1316 թ. Տարենտայի իշխան արքայազարմ Փիլիպպոսի դուստր Յովհաննայի (Եռինէ, Աննա) հետ, որ եղավ Լևոն Ե-ի խորթ մայրը։

— 37. Օշին թագավորը ամուսնացել էր նախ Զապել թագուհու հետ (№ 9), որ մեռավ «1310 թ.» սրանից հետո Օշին ամուսնացավ Սիկիլիոյ Ռոբերտ թագավորի եղբոր աղջկա հետ՝ 1316 թ.—Ախուեան 271։

— 38. Աւշին, որդի Սարգիսի, թոռ Վասիլի և եղբորորդի Սկևռայ վանքի առաջնորդ Կոստանդին եպիսկոպոս (№ 109) Պեհեսնեցու, 1314 թ.—Ձեռ. Վասպ. 60։

— 39. Աւշին Եհաննենց, պռոքսիմոս Այասի մաքսատան, 1314 թ.—Ախուեան 368 ա։

— 40. Օշին, որդի Կոստանդին մարաջախտի՝ եղբոր Օշին պայլի, մեռավ Եգիպտացոց պատերազմում «1322 թ.».—Սմբ. 130։

— 41. Օշին, մարաջախտ թագավորության Հայոց, Լամբրոնացի, տեր Մառնիշոյ. սրա որդին՝ Վահրամ Լօռիկը մեռավ 1322 թ.

*հիշված է Վասիլ մարաջախտից հետո Սմբ. պտմ. ցանկում՝ էջ 137։ Վասիլը մարաջախտ էր 1198 թվին, ուստի և նրա հաջորդը չի կարող լինել 1322 թվերին. բայց պետք է նկատել, որ Սմբատի ցանկը կատարյալ չէ, որովհետև Հեթում Ա-ի ժամանակ մարաջախտ էր Լևոն, որ չէ նշանակված և պետք է դնել Վասիլից հետո.—Սմբ. պտմ. 130, 137։*

*— 42.* **Օշին**, *կոմս Կոռիկոսի, որդի Հեթում պատմչի. պապի անունով կոչվում էր Օշին, քաջ, աշխարհաշեն, բայց փառավոր մարդ էր. թղթակցել է Հռոմի պապի հետ, Եսայի Նչեցու հետ (Սիսուան 340). եղբայրն է Կոստանդինի (№ 127), սինիչալ, անդամ Ատանայի ժողովի (1317 թ.), իբր սպարապետ հաջորդեց Լևոն գունդստապլին, 300 հոգով վանեց խարամանցոց արշավանքը՝ «1318 թ.», տիրեց Տարսոնի և Պապերոնի և բովանդակ գավառին Իսաւրիոյ. իր աղջիկը ամուսնացրեց Լևոն Ե-ի հետ, ինքն էլ ամուսնացավ Օշին թագավորի այրի թագուհու հետ, բայց հետո սպանեց իր կնոջն էլ, նրա երեց որդու հետ. եղավ պայլ թագավորության Հայոց՝ Օշինի և Լևոն Ե-ի օրով («1320 թ.»). Իր դուստրը Ալիծ (թե՞ Զապէլ) կինն էր Լևոն Ե-ի և ինքն էլ ամուսնացավ Լևոն Ե-ի խորթ մոր՝ Յովհաննա թագուհու հետ. իր խստության պատճառով չարախոսվելով Լևոնի առաջ, թե միտք ունի ապստամբելու, Լևոն Ե-ի հրամանով սպանվեց իր եղբոր՝ Կոստանդինի և իր աղջկա՝ Լևոնի կին Ալիծ թագուհու հետ «1329 թ.».—Բրս. Մրկ. 460. Ջեռ. Մխնխ. 29 բ. Սմբ. պտմ. 128, 137. Սամ. անեց. շար. 157—158.—սեռ. Օշնի՝ Սմբ. պտմ. 128, 130. Սամ. անեց. շար. 158։—Սիսուան 73. Դարդել 28, 30, 31, 37 պատմում է, թե այս Օշին պայլը Օշին թագավորի կողմից գնաց Սիկիլիայ Ռոբերտ թագավորի մոտ Նէապոլ և նրա եղբոր Տարենտոնի իշխանի դուստր օրիորդ Յովհաննային բերեց իբրև հարսնացու Օշին թագավորին։ Ինքը սիրահարվեց նրան և երբ Օշին թագավորը մեռավ, Օշին պայլը ամուսնացավ նրա հետ և ունեցավ մի դուստր Մարիամ, որ Կոստանդին Դ թագավորի մայրն էր։ Օշին պայլի մյուս աղջիկը Ալիսիան էլ ամուսնացրեց անչափահաս Լևոն Ե թագավորի հետ։ Օշին թագավորի հավատարիմներից էր, ուստի Օշին թագավորը իր մահվան ժամանակ սրան հանձնեց իր մանուկ որդի Լևոն Ե-ի խնամակալությունը։*

*— 43.* **Աւշին** *պարոն, որի գերեզմանը գտնվում է Վոլկայի վրա Բուլղար քաղաքում,. ՉԶԴ=1335 թվից.—Սիսական 470 (ըստ* Brosset*)։*

— 44. Օշին, որդի Կոստանդին Դ թագավորի (№ 144). ծնվել է 1338 թ.—Սիսուան 559 ա։

— 45. Օշին, իշխան Կոռիկոսի, հայր Մարիամի՝ կնոջ Կոստանդին Դ թագավորի (1344—1363 թթ.) Կիլիկիոյ.—Դարդել 132։

— 46. Օշին, ավագ որդի Կոստանդին Դ թագավորի, ծն. ի Բարձրբերդ 1338 թ: մեռավ մանկահասակ.—Ալիշան, Հայ-Վենետ. 131. դեռ կենդանի էր 1345-ին (Յովսէփեան, Մի էջ հայ արուեստի, էջ 18). Սիսուան 149, 413. Բասմաջեան, Լևոն, էջ 27։

— 47. Օշին Բակուրան (Պագարոն), պարոն. երբ հայերը սպանելով Գուիդոն Լուսինեան (№ 4) թագավորին («1344 թ.»), արքայական դահլիճում ժողովված խորհրդակցում և ցավ էին հայտնում իրենց արածի վրա, այս իշխանը վեր կացավ և ասաց. «Նրա մահը երկրի և ժողովրդի խաղաղության համար էր. ամբողջ մեղքը ես եմ վերցնում»։ Հազիվ այս խոսքերը ասել էր, ոտքի տակին դահլիճը քանդվեց, Օշինը խորասուզվեց և ճանկից կախված մնաց։ Դահլիճում ուրիշ ոչ ոք չվնասվեց:—Այս առասպելը պատմում է կաթոլիկ Դարդել քահանան, էջ 50—51։

— 48. Օշին մարաջախտ, եղբայր Թորոս ավագ մարաջախտի և հայր Վասլի 1370 թ.—Սիսուան 542 ա։

— 49. Օշին Նղրեցի, աներ Կոստանդին Ե թագավորի և հայր Աշոտ Նղրեցի հավատափոխ իշխանի, որ դրդեց Եգիպտոսի սուլթանին արշավելու և գրավելու Սիսը (1374 թ.).—Դարդել 119։

— 50. Օշին, իշխան ումն, որ թաղվել է Կեսարիոյ Ս. Դանիէլ վանքում (թիվն անհայտ)։—Զմշ. Գ. 319։

— 51. Օշին, կառուցել է Ս. Դանիէլի վանքի եկեղեցին, որ հիմնել էր Թադէոս առաքեալը.—Հայտնի չէ թե ո՞վ է.—Ջեռ. Կես. Սարգ. 31 բ։

ՕՏԱ, ար. կարելի է համեմատել 'Αντόβάρης (միտք, խելք ունեցող՝ կրոնի համար), 'Αντοβοισακης (խելք բուսցնող?) 'Αντοφραδάτης (խելք առաջ տանող) իրանական անունների հետ և համարել նրանց կրճատ ձևը (Justi 52—53).— Զնդ. aota. օսս. ōd «խելք» բառից: (Բառիս ծագման մասին այլ ընդ այլոյ կարծիքներ՝ տե՛ս Սարգիսեան, Ագաթ և իւր բազմ. գաղտ. էջ 88)։

— Օտա Ամատունի, փեսա Սլկունեաց, սնուցեց Խոսրովի դուստրը Խոսրովիդուխտին՝ փախցնելով նրան Պարսից կոտորածից. Տրդատ կարգեց նրան հազարապետ և ավագ նախարար. սպանվեց ապստամբ Սլուկի ձեռքով.—Ագաթ. § 217, 218. արաբ. Ագաթ. 27, 28. Խոր. Բ. հէ, ձբ, ձդ. Մագ. Թղ. ե. Ուխտ. Ա. կզ. Յայսմ. հոկ.

6, նոյ. 18. Շնորհ. Վիպ. 610. Վրգ. ժը, խե. Վրդն. լա. 48. Վրդն. աշխ. 503, 519. Տաթև. Ձմ. զէ.—սեռ. Աւտայի՝ Թղթ. դաշ. 20.—գրծ. Աւտայիւն՝ Ագաթ. § 220.—Վրաց. աղբ. Բ. 90 (գրում է Ավետ. շփոթվելով Աւտա գրչությունից)։

— Աւտար Կողբացի, որդի Յովանէսի. իր կնոջ Սեդայի հետ մի խաչքար է կանգնեցրել և ագահանքի կեսը նվիրել է Բագարանի մայր եկեղեցուն, 1235 թ.—Արձ. Այրարատ 68։

— 1. Օտարշահ, գրված է աւտարշա. թիվն անհայտ. Ձեռ. Թաւր. 74 ա (1311-ից ուշ).—Այլ ոմն գրված Աւտրշահ, թիվն անհայտ (Ձեռ. Վասպ. 186)։

— 2. Աւտարշա, որդի Մխիթարի, որդւոյ Խոյդանայ. իր հիշատակին կանգնեցրել է մի խաչքար Ներքին Ախտա գյուղում։ Խոյդանի որդի Մխիթարը հիշված է 1263 թ.—Սիսական 175. Խաղբակեանք 130։

— 3. Աւտարշահ Հովծեծենց, հայր Ներսէս արեղայի Կրակացւոյ, որ Երուսաղէմում օրինակեց Ճառընտիրը, 1335 թ.—Ձեռ. Վննետ. Բ. 374 և Ա. 150։

— 4. Աւտարշահ, հայր Ներսէս գրչի, որ Գամաղիէլի վանքում օրինակեց Ճառընտիրը՝ Ասադ միայնակեացի համար, 1397 թ.—Ձեռ. Վեննետ. Բ. 1286։

ՕՏԱՐ ՏԻԿԻՆ, իգ. <Հյ. օտար+տիկին բառերից։

— 1. Աւտարտիկին, դուստր Գազանի (նախքան 1420 թ.).—Տաշեան, Ցուց. 666 ա։

— 2. Օտարտիկին, այլ ոմն, թիվն անհայտ, հիշված Ձեռ. Թաւր. 74 ա (1311-ից ուշ)։

— Որաղ-սոլթան, իգ. 1615 թ.—Ձեռ. Վասպ. 795։

* ՕՐԲԵԼ, ար. <Օրբելեանց տոհմանունից է, գործածական է այժմ Ղարաբաղում Օրբէլ ձևով։

— 1. Օրբել, հայր Մկրտիչ վարդապետի, եղբայր Թովմա վարդապետ Մեծոփեցու (ԺԴ դար).—Զարբ. Թրգմ. 391։

— 2. Օրպէլ, կինն է Դովլաթ, ծնողներն են Բերկրիի Տեր Յուսկան որդի վանքի վանահայր Մկրտիչ վարդապետի, որ օրինակեց մի Աւետարան 1420 թ. և գրել տվեց մի Մաշտոց.—Նօտարք 61, 101։

— Աւրղու-մէլիք, կին Աւետիսի, ծնողներն են խոջա Միրիջանի, որ Աղթամարում, Յակոբ կրոնավորին գրել տվեց մի Աւետարան 1493 թ.—Ձեռ. Վասպ. 520։

— Աւրտուն (սեռ. Աւրտունի), դուստր Մոմնզէնի և քույր Թա-

*թարբէկլի, որ Նարեկ գյուղում Իղիտ գրչին գրել տվեց մի Աւետարան, 1420 թ.—Ջեռ. Վասպ. 326։*

* *ՕՐԴՈՒՇԱՀ, ար. <թրք.* اوردو ordū *«բանակ» + պրս.* šāh *բառերից. Միւն անհայտ.— Ջեռ. Թաւր. 74 ա (1311-ից ուշ)։*

+ *ՕՐԻԿ, իգ. <հյ. օր բառից. 1666 թ.—Սմբատեանց, Երընջակ 241։*

— Օսխարուն, *տե՛ս* Աւսխարուն?։

* *ՕՔՍԵՆՏԻՈՍ, ար. <հուն.* 'Ανξέντιος, *լտ.* Auxentius *անունից։ Այս անունով կա մի ճգնավոր և մի վկա՝ Յայսմաւուրքում։ Հայերենում գրված է* Աւքսենտիոս, Օքսենտիոս, Օգսենտիոս, Օգսենտոս, Օգսենդոս, Օգսէնտ, Աքսէնդ. *վերջին ձևով կա մի վանք Սուշավայում։ Անցյալ դարում գործածական էր Պոլսում* Օգսէնտ= Օքսէնտ *ձևով։ Գտնվում է առ այժմ։*

— *1.* Օգսենտիոս, *քահանա Արօրակի (Սեբաստիա). հավատը չուրանալով նահատակվեց (Դ դար)։ Եւստրատոսեան նահատակներից մեկն է.—Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Թ. 481։*

— *2.* Օքսենց *իշխան, որ Կապանի պատերազմում գերի ընկավ Քայքաւուսի ձեռքը (1216 թ.).—Սմբ. պատմ. 118 (տպ. Մոսկ.* Լօքսենց):

— *3.* Օգսէն *աբեղա, գրիչ. օրինակել է Անանիա Շիրակացու «Յաղագս կշռոց», Կաֆա 1445 թ.—Աշ. Աբրահամեան, Շիրակացու մատեն. 78։*

— *4.* Օքսենտ, *որդի Գրիգոր քահանայի, թոռ Յովհաննէս ավագերեցի Կամենիցի. շարունակել է սրա Պատմ. Լեհահայոց 1610 թվից մինչև 1621 թիվը թաթարերեն լեզվով.—Հայապ. 131։*

— *5.* Օգսենտիոս, *եպիսկոպոս Մեծն Հայոց (Տաշեան, Ցուց. 420)։*

— *6.* Օգսէնտ, *հիշված 1677 թ. (Ակինեան, Մատեն. հետազ. Դ. 180)։*

— *7.* Աւքսենտիոս, *եպիսկոպոս Վրզարեան, որդի Պոթուչանի դատավոր Լուսիկի. ավարտեց Լեմբերգի քահանայապետական վարժարանը և Հռոմի Պրոպագանդայի դպրոցը։ Վերջինիս կողմից պաշտոն ստացավ՝ Տրանսիլվանիոյ հայերին կաթոլիկ դարձնելու. հարատևությամբ աշխատեց այս գործի համար և հայերին հռոմեական դարձրեց՝ 1684—1690 թթ. (Գովրիկեան, Հայք յՕղիսար. Բ. 155—157 և Տրանսիլուանիոյ Հայոց մետրոպոլիսը, էջ 116—133)։ Մեռել է 1715 թ., որից հետո հայ թեմը մտավ լատին եպիսկոպոսի իշխանության տակ։*

— 8. Ակսէնտ, տիրացու, որդի Անտոնի (1798 թ.). օրինակեց ժամագիրքը.—Տաշեան, Ցուց. 1014 բ։

— Օֆայ խաթուն, կին Ալթունտաղ ոսկերչի և մայր Ազարիա արքեպիսկոպոսի Գողթան գավառի, 1471 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 388)։

# Ֆ

— Ֆատլալա, գրիչ Աստուածաշնչի, 1641 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 23։

— Ֆատլալայ, ար. 1643 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 320։

* ՖԱԹՄԱ, իգ. <արաբ. فاطمه Fātіma անունից (աղավ. Fatma), որ ծագում է فطم fatm «կաթից կտրել» բայից։ Այս անունով հայտնի է Մուհամմէդի աղջիկներից մինը։ Շատ սովորական մահմեդականների մոտ, մի անգամ պատահում է մեր մեջ՝

— Ֆաթմա կամ Փաթմա (սեռ. Փաթմին, Ֆաթմին), կին Մարտիրոսի, մայր Սարգսի, որ ստացավ Յայսմաւուրքը (որ գրված է 1418-ից հետո).—Ձեռ. Թաւր. 38—39։

— 1. Փալաf, իգ. հիշված է անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Նոր-Բայազ. 32 ա)։

— 2. Ֆալաf, իգ. գործածված է ԺԸ դարի վերջից և ԺԹ դարի սկզբից. հիշատակելի է Ֆալաք՝ մայր Պերճ Պռոշեանցի՝ ծն. 1837 թ. Աշտարակ (տե՛ս Հուշեր, Երևան, 1940, 23)։

— 1. Ֆախրադին, ար. հիշված է անթվական մի հիշատակարանում, որ գտնվում է 1311 թ. գրված մի Աւետարանում.—Ձեռ. Թաւր. 71 ա, 74 ա։

— 2. Ֆախրատին խոջա Բալուեցի, որի կինը Ահլիմելիք գրել տվեց մի Աւետարան՝ Աւետիք աբեղային, 1437 թ.—Manus. Brit. mus. 30 բ։

— Ֆախրիկ (սեռ. Ֆախրկան ձևով միայն աւանդված), հայր Մելքիսեթ երեցի, որ Աւան գյուղում օրինակեց Գանձարանը, 1453 թ.—Bodleian 134։

— Ֆախro, ար. թիվն անհայտ.—Ձեռ. Վասպ. 237—238։

— Կա հայ ոմն Ֆարխատին ԺԷ դար (Ջամբռ 120)։

— Ֆախրիշահան, իգ. 1574 թ. Կրպտ. եպիսկ., Դոփեանք 120, 190։

— Ֆախրի Ջահան, իգ. 1575.—Սմբատեանց, Գեղարքունի 809, Բարխուդ. Պատմ. Աղուանից Բ. 27։

— Ֆաճի, իգ. Որբերեանի վեպի հերոսուհին. այժմ կենդանի է Ֆանէ (Սովետ. Հյաս. 1945 հուլ. 7, էջ ա, սյուն. 6)։

— Ֆարճաւ, ար.—նախքան 1574։ Ձեռ. Վասպ. 621։

* **ՖԱՌՈՒԽ**, ար. պրս. فرّخ farrux «օրհնեալ» բառից, որ է պհլ. farrax «երջանիկ». տե՛ս և Փառուխ: Հմմտ. պրս. Farruxān անունը։ Պրս. فروخزاد Farrūxzād անունը, որ կրում էր Լոհրասպի որդին Գուշտասպ Ցունաց երկրում (Շահն. հտ. 4, էջ 268). Farrūx զինվորական պարսիկ (Շահն. հտ. 7, էջ 59). օտար տառադարձությամբ հուն. Φροχάνης, ասոր. Feruhān, Faruxān. արաբ. Farruhān (Հիւբշ. 43). Farrux որդի Զալի, ժառանգ Ռոստեմի, Farrux նահանգապետ Nimrūz-ի Խոսրով Բ-ի ժամանակ, Farrux որդի Խոսրով Բ-ի և Մարզպան Nimrūz-ի և այլն (Justi 94)։

— 1. Ֆառուխ, հայր Նիկոլի, որ երկրորդ ստացող եղավ մի Յայսմաւուրքի՝ գրված 1439 թ.—Տաշեան, Ցուց. 50 բ։

— 2. Ֆառուխ, ա՞ր. թիվն անհայտ.—Ձեռ. Վասպ. 395։

— 3. Ֆառուխշայ, մերձավոր տանուտէր բրուտ Ստեփանոսի, որ Վանում գրել տվեց մի Աւետարան, 1435 թ.—Ձեռ. Վասպ. 369։

— 4. Ֆառուխշայ խոջա, որդի Ստեփաննոսի, կինն է Ջաւր խաթուն, եղբայրն է Փաշայի, որ իր որդու և ամուսնու հիշատակին Վանում գրել տվեց մի Աւետարան, որի թուղթն էլ Ֆառուխշահը հայթայթեց 1451 թ.—Ձեռ. Վասպ. 411—412։

— 1. Ֆարաճ, գլխավոր ճարտարապետ Մեծոփայ վանքի, 1409 թ. ազգով հույն էր ըստ Մեծոփ. 58։

— 2. Ֆարաճ կամ Ֆրաճ, որդի մահտեսի Աստուածատուրի, մայրն է մահտեսի Ֆիմոց, եղբայրներն են Յովհաննէս, Սիմէոն, Կարապետ, Դանիէլ, քույրերն են Շամէխաթուն, Շնոհւոր, Գոհար, որդին է Աբրահամ սարկավագ, Հալէպում Մելքիսէթ գրչին գրել տվեց մի Աւետարան 1478 թ.—Ձեռ. Հալէպի Ա. 96։

— 3. Ֆարաճ, որդի Պետրոս ռայիսի՝ մերձավորի մյուս Ֆարաճի, որ Հալէպում գրել տվեց մի Աւետարան 1478 թ.—Ձեռ. Հալէպի Ա. 97։

— 4. Ֆարաճ, ոմն Երզնկացի, թուղթ կոկող՝ Լեհաց Զամոսցա քաղաքում, 1603 թ.—Ձեռ. Լվով (ՀԱ 1936, 507), REA 7, 151։

— 5. Ֆարաճ, թիվն անհայտ.—Ձեռ. Վասպ. 610։

— Ֆարղոզատ, ար. (1548-ից ուշ).—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1925, 378)։

— Ֆարղուղաք, ար. 1512 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 646։

* **ՖԱՌՈՒԽՇԱՀ**, *ար.* < *պրս.* فرّخ farrux + šah *բառերից.—Տե՛ս* Փառուխշահ:

— Ֆառուխշահ, *որդի Աղուպշահի և եղբայր Աբրահամ կրոնավորի Արճիշեցւոյ՝ ստացողի (իբր ԺԷ դար).—Տաշեան, Ցուց. 531 բ (ուղ.* Ֆառուխշէն, *սեռ.* Ֆառուխշին *ձևերով)։*

* **ՖԱՐՀԱՏ**, *ար.* < *պրս.* فرهاد Farhād *անունից. Նշանավոր է Պարսից մեջ* Շիրին *և* Ֆարհադ *զույգ սիրահարների սրտառուչ պատմությունը։ (Պլ. ռմկ.* շիրին ֆէրյադ *նախատական ածական է)։ Պոլսում գործածական էր Ֆէրհատ ձևով (Ազգապ.* $25^{1}8$*). Ջամբ. Գ. 672, 1657 թ.։ Սրանից է* Ֆերհատեան *ազգանունը.—Տե՛ս և* Հրահատ:

— *1.* Ֆահրատ *խոջա Բաղիշեցի, որի մայրն է Թուրվանդա (№ 10) խաթուն, 1459 թ.?։ Տե՛ս անդ։*

— *2.* Փերհատ *ձևով՝ 1556 թ.* (Труды Вост. Комм ИМАО *հտ.* II, *3, էջ 62)։*

— *3.* Ֆարղուշաթ, *ար. 1575 թ.—Ձեռ. Վասպ. 686։*

— *4.* Վահրատ *Առջակեցի, որին Գրիգոր Դարանաղցին ուղարկեց Արմաշի վանքը (1612 թ.).—Ազգապ. 2371։*

— *5.* Ֆարհուսադ, *ար. 1613 թ.—Ձեռ. Վասպ. 845—846։*

— *6.* Վարհատ, *1628 թ.—Դրնղ. 190։*

— *7.* Վահրատ *Ակնցի (1647 թ.).—Տաշեան, Ցուց. 497։ Եվ այլ ոմանք երկու հայր և թոռ Տիւրիկցի՝ 1561 թ. (Թորոս աղբ. Ա. 228)։*

— *8.* Ֆարհա, *իգ. 1654 թ.—Ձեռ. Հալէպի Ա. 128։*

— *9.* Վէհրէտ, *1656 թ.—Երեմ. Ձել. Օրագր. 186։*

— *10.* Ֆէհրադ, *1658 թ.—Երեմ. Ձել. Օրագր. 271։*

— *11.* Վարհաթ, *1666 թ.—Ձեռ. Հալէպի 8։*

— *12.* Ֆառհա, *իգ. 1674 թ.—Ձեռ. Հալէպի Ա. 175։*

— *13.* Վեհրատ, *1713 թ.—Ձեռ. Թաւր. 131 բ։*

— *14.* Ֆահրատ *ոմն (ԺԸ դար).—Տաշեան, Ցուց. 799։*

— *15.* Ֆարհատ, *թիվն անհայտ.—Ձեռ. Թաւր. 120 բ։*

— *16.* Վարհատ, *թիվն անհայտ.—Ձեռ. Սեբ=ՀԱ 1926, 236։*

— *17.* Ֆարհօ, *ար. հիշված է Ձեռ. Վասպ. 252 (անթվական)։*

— Ֆարման, *ար. հիշված 1761 թ. (Ազգ. մատ. ՀԸ 337),* Ֆարման, *թիվն անհայտ (բայց 1538-ից ուշ). Ձեռ. Վեննետ. Բ. 536։*

**ՖԱՐՄԱՇԱ**, *ար.* < *պրս.* فرمانِ شاه farmān-i šāh *«արքայական հրովարտակ» բառից։*

— Ֆարմաշա՝ *մորեղբայր Ցակոբ սարկավագ գրչի, որ օրի-*

նակեց Կիւրղի Կոչումն ընծայութեան. Ցարմաշան մեռել է 1358 թ.— Ձեռ. Թար. 28 բ։

— Ցարճուլա, ար. 1661 թ.—Ձեռ. Հալէպի Ա. 75 բ.—սեռ. Ցարճալին, 1654.—Ձեռ. Հալէպի Ա. 127։

— Ցառուխ, սեռն անհայտ, մերձավոր Յովհաննէս քահանայի, որ Վանում Կարապետ քահանային գրել տվեց մի Աւետարան, 1422 թ.—Նոտարք 69։

— Ցարվարի, իգ. թիվն անհայտ.—Ձեռ. Վեննա. Ա. 640։

— Ցելիֆիանոս (ժէ դար), ար.—Ձեռ. Վեննա. Ա. 362։

— Ցերաղաք, ար. հիշված 1744 թ. (Գալէմք. Կենս. Սարգ. արք., էջ 191) տպ. Ցէրաշաք։

— Ցերում, ար. հիշված 1595 թ. (Հայ-Վեննա. 419), որից և Ցերումխան. հմմտ. Բարոնակ պեյ Ցէրուհխան՝ բժիշկ և գրող (Պոլիս ԺԹ դար)։

— Ցիղան, իգ. այժմ կա Սովետ. Հյաս. 1945, ապր. 7, էջ ա։

* ՑԻԼՈՄԷՆ, իգ. <հուն. Φιλομήνα անունից. այս անունով հայտնի է Աթէնքի Պանդիոն թագավորի աղջիկը, որ հետո սոխակի փոխվեց։ Բանաստեղծական լեզվով նշանակում է «սոխակ»։ Կա և Philomène նահատակուհի Դ դարից.— Նորամուտ անուն։

— Ցիլոր, տե՛ս Ցլօրա։

* ՑԻՄԻ, իգ. <տե՛ս Եփիմէ։

— 1. Ցիմի, դուստր Լեոն Գ-ի, քույր Զապլունի և Սիպիլի, ծն. 1266 թ.—Ձեռ. Օշ. 99 ա. Հայապ. 544։

— 2. Ցիմի, իշխանուհի, դուստր Հեթում Ա թագավորի (1226—1270 թթ.) և քույր Լեոն Գ-ի. 1252 թվին ամուսնացավ ֆրանսիացի իշխան Ճուլիանի (կամ Յուլիանի) հետ, որ էր տեր Սայիդոյ (Սիդոն).—Ձեռ. Օշ. 98 ա, 100 ա. Պտմ. Կիլ. 211։ 1263 թվին, պատերազմի պատճառով, Ցիմին հեռացավ Սայիդից և իր Պալիան և Ճուան որդիների և Մարկրուն (կամ Մաունէ) աղջկա հետ եկավ Կիլիկիա, զրկված իր իշխանությունից, պատսպարան փնտրելով իր հոր արքունիքում։ Այստեղ եղբայրը՝ Լեոն Գ նվիրեց նրան մի շքեղ Աւետարան՝ 1263 թ. (Սիսուան 146, Շահաուդ, Պատմ. պատկերներ 97 և 120, Յովսէփեան՝ Մի էջ հայ արուեստի 24)։ Յովհաննէս եպիսկ. արքայեղբայրն էլ նվիրել է Յոբ և Սողոմոնի գրքերը, իբրև մխիթարություն Ցիմիի դառնացյալ սրտին։ Այսպես է այս գրքի ձօնականը, որի լուսատիպը տե՛ս Սիսուան 145. «Ընկալ, ով աստուածասէր և գթասէր հոգի, մեծդ ըստ մարմնոյ և բար-

գաւաճդ ըստ ոգւոյ՝ ծիրանածինդ Ֆիմի, զբաղձալին քոյ, երկամբք ձեռին մեղապարտիս Յովհաննէս եպիսկոպոսի՝ կրտսերս եղբօր հօր քո, որով յԱստուած և յաստուածայինսն խոկացիս միշտ, և տրտմեալ սրտի քո սփոփանս սովաւ արասցես. գիտելով զի սեփհական է մարդկան նժդեհութիւն և պանդխտութիւն և փորձանք, որոց անդորր տացէ ձեզ, որ ամենահնարն է»։ (Սիսուան 145—146, Հայապ. 486—487, Ձեռ. Վենետ. Ա. 164—165, REA 8, 22—24)։ Ամուսինը մնաց 1274 թ. և այրիացած Ֆիմին կրոնավորուհի դառնալով վանք մտավ։ Եղավ մայրապետ Տիրոսի Ս. Աստուածածին վանքին (Կիպրոս), որ կառավարում էր 1308 թվին, խորին ծերության մեջ (Յուշիկք Բ. 533—565, Հայապ. 545, Բակուրան, Կիպրոս 62, 116)։

— 3. Ֆիմի, դուստր Հեթում Ա-ի. ամուսնության ժամանակ օժիտ վճարել է 100 000 բիզանդ հայկական 1252 թ.—Համեմատության համար հիշենք Ալիծի օժիտը 250 բիզ. (1279 թ.), Լևոն Գ-ի դուստր Ռիթայի օժիտը (մի մասը) 30 000 բիզ. ոսկի (1215 թ.), Թորոս Ա-ի դուստր Արտայի օժիտը (1098 թ.) 60 000 բիզ. ոսկի։ Այս բոլորը տե՛ս ըստ Ալյասի հաշվեցուցակի՝ Սիսուան 370։

— 4. Ֆիմի, վաղամեռիկ դուստր Գրիգոր Տիվնցու, որ գրել տվեց մի Աւետարան՝ 1326 թ.—Rapport Belgique 87։

— 5. Ֆիմիկ, դուստր Պաղտին մարաջախտի, քույր Կոստանդին Դ թագավորի, ծնվել է 1326 թ.—Սիսուան 413 ա (նույնացնում է Ռեմիի հետ, որ Կոստանդին Գ թագավորի որդի Պեմունդի կինն է)։

— 6. Ֆիմի, մորաքույր Կրակացի Ներսէս աբեղայի, որ Երուսաղէմում օրինակեց Ճառընտիրը, 1335 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 348։

— 7. Ֆիմի Այասցի, կին Վահրամի, իշխանուհի Այասի. մայրն է Հոփսիմէ։ Երբ Լամբրոնը ավարի տրվեց (1375 թ.), Կոստանդինի չքնաղ Աւետարանն էլ գերի բերին Այաս։ Ֆիմին փրկանքով ազատեց։ Սրա մասին հիշատակություն է գրել Յովսէփ դպիրը, հրամանաւ Սիմէոն եպիսկոպոսի և վկայությամբ Վասիլ և Ստեփանոս քահանաների.—Ձեռ. Վենետ. Ա. 559. Սիսուան 85։

— Ֆիմոց, մահտեսի, կին մահտեսի Ֆարաճի, որ Հալէպում, Մելքիսեթ գրչին գրել տվեց մի Աւետարան, 1478 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 96 բ։

* ՖԻՐՈՒԶ,ար. <պրս. فیروز Fīrūz անունից (հին Հայոց մեջ Պերոզ), որ նշանակում է «հաղթող, հաղթական»։ Համմ. Ֆիրուզ շահ՝ թագավոր Քանդահարի (Mille et un jours, Paris. 1844, 300)։

— Ֆիրուզ, ուրացեալ հայ. որդին էր զրահ շինող մի արհես-

տավորի. մտավ Թուրքերի ծառայության. Անտիոքի երեք բերդերի հրամանատարն էր. երբ խաչակիրները պաշարեցին Անտիոքը, Ֆիրուզը այդ բերդերը հանձնեց Բեմունդ զորավարին և խաչակիրներին Անտիոք մտցրեց (1098 թ.).—Rapport Arm. 63, ՀԱ 1927, 894։

— Ֆէրու, հայր Զաքարիայի, որ հետին մի ստացող է Եզնկայ ձեռագրի (տե՛ս իմ Քնն. և հմմտ. Եզնկայ նորագիտ ձեռ. էջ 17)։

— Ֆիրուզբախտ, կին Նիկողոսի, ազգական Սալչուկ խաթունի, որ գրել տվեց մի Մաշտոց 1466 թ.—Թորոս աղբ. Ա. 232, Բ. 337։

* ՖԼՕՐԱ, իգ. <հուն. Φλῶρα, լտ. Flora «զեփիւռի կինը, աստվածուհի ծաղիկներիս»։ Նորամուտ անուն (Կովկաս). Նույնը Պոլիս՝ Ֆլոր, արդեն հնացած։

— Ֆօլօրիքա, իգ. հիշված է 1639 թ. (Bodleian 163)։

ՖՈՒԼԻԱՆԷ, իգ. փաղաքշական ձևը Ֆուլիկ. գործածական էր անցյալ դարում (Պոլիս)։

* ՖՌԱՆԳ, ար. <Թրք. frang «ֆրանսիացի, եւրոպացի» բառից։

— 1. Ֆրանկ սարկավագ
— 2. Ֆրանկ պարոն } ստացող Սիմէօն կրոնավորի՝

Ցայսմաւուրքի գրչության ժամանակ (1439 թ.).— Տաշեան, Ցուց. 49, 50։

* ՖՌԱՆԳ ՏԻԿԻՆ, իգ. ֆռանգ բառից+տիկին։

— Ֆռանգ տիկին (Francha Dighina), կին Նիկողայոս Մուրտա (Nicoloso de Murta) Պիզացի վաճառականի, որ բնակվում էր Այասում, 1274 թ.— Սիսուան 363։

— 4. Ֆռանֆ, պարոն, հայր իշխան Շնոֆորի, որ Արճէշում գրել տվեց մի Աւետարան, 1304 թ.—Ձեռ. Վասպ. 146։

— 5. Ֆռանկտիկին, կին դերձակ Ծուանիսի և մայր Գրիգոր Տիվնցու, որ գրել տվեց մի Աւետարան, 1326 թ.—Rapport Belgique 87։

— 6. Ֆռանգ Խլաթցի, ազգական Ներսէս վարդապետ Սասնեցոյ, նվիրատու ձեռագրի (1332 թ.).—Հայապ. 546։

— 7. Ֆռանգ, որդի Զաքարէի, որ էր տանուտեր Բերկրի քաղաքի 1422 թ.—Ձեռ. Վասպ. 350։

— 8. Ֆռանկ երիցակին, 1649 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 574։

— 9. Ֆրէնկ, ար. հիշված է 1808 թ.—Ձեռ. Կես. Անձած. 46 բ։

— 10. Ֆռանգխաթուն, հիշված Սիսուան 363 ծան.։

— 11. Ֆռանգշայ, որդի Ասատուրի և Քեչի խաթունի, որոնք

ժառանգորդներն են Բրուտ Ստեփանոսի, որ Վանում մի Աւետարան գրել տվեց 1435 թ.—Ձեռ. Վասպ. 371։

— 12. Ֆռանգշայ, հանգուցյալ որդի Բրուտ Ստեփանոսի՞, որ Վանում գրել տվեց մի Աւետարան 1435 թ.—Ձեռ. Վասպ. 369։

— 13. Ֆղանկտիկին (ԺԵ դա՞ր).—Ձեռ. էջմ. № 671 Գև։

— 14. Ֆռանցիաս, գրիչ. 1601 թվին Կաֆայում օրինակել է Աստուածաբանութիւն Ալբերտի (Ձեռ. Կարին 7)։

* ՖՐԱՆԳՈՒԼ, ար. <պրս. թրք. فرنك كلى firang güli «եւրոպական վարդ»։ Համտ. Ֆռանգտիկին և պրս. Firankdik անունը (բուն «ֆրանկ աքլոր» Justi 100 ա). գործածական էր անցյալ դարում. հնագույն հիշատակություն 1671 թ. (Ձեռ. Օշ. 102 ա) Ֆըռանկիւլ ձևով (Պոլիս)։

— 1. Ֆռանգուլ, ար. 1534 թ.—Ձեռ. Վասպ. 647։

— 2. Ֆռանկիլ, 1571? թ.—Ձեռ. Հալէպի Ա. 12։

— 3. Ֆռանգուլ, ար. հիշված 1618 թ.—Manus. Brit. mus. 13 ա։

— 4. Ֆռանգիլ, ար. 1660 թ.—Ձեռ. Վասպ. 553։

— 5. Ֆռանգուլ, իշխան Երիցվանիկի, դավաճան. 2000 զորքով եկավ օգնելու Ջավնտուրի Թորոս իշխանին ընդդեմ Ֆաթալի խանի, երբ խանը հաղթվելով փախչում էր, Ֆրանգուլ զենքը դարձրեց Հայոց դեմ և Ֆաթալիի հետ միանալով կոտորեցին Հայոց բանակը, ուր ընկավ նաև Թորոս իշխանը (1724 թ.).—Չամչ. Գ. 788. այնուհետև Ֆրանգուլ հավատը ուրացավ և Ֆաթալիի հետ գնաց։

— 6. Փռանկուլ, որդի Ազիզ պէկի, Շրչևանց գյուղից, ըստ Նոր վկա.՝ հավատը չուրանալով նահատակվեց Խրիմի Ղարասուբազար քաղաքում «1757 թ.».—Նոր. վկ. 567, Ազգապ. 3000։

— Ֆռսադ խաթուն, կին պր. Յովանիսի՝ որ ուրացավ և նորոգել տվեց Ժ դարում գրված մի Աւետարան (ԺԳ դա՞ր).—Ձեռ. Սանաս. 9 բ։

— Ֆռամ-խաթուն, իգ. թիվն անհայտ.—Ձեռ. Վասպ. 766։

— Ֆռանչիսկա, հայ կին, որ բնակվում էր Վենետիկ 1344 թ.—Հայ-Վենետ. 159։

— 1. Ֆռանչիսկոս Myre, մեննեսկալ Հայոց թագավորության 1391 թ.—Սիսուան 485 ա։

— 2. Ֆռանչիսկոս վարդապետ, գրել տվեց Աստուածաշունչը Յովհաննէս գրչին 1401 թ. (Ձեռ. Կարին 11)։

* ՖՐԱՆՍՈՒՀԻ, իգ. <հյ. ֆրանսուհի «ֆրանսիացի աղջիկ կամ

կին» բառից, իսր ֆր. Françoise, որ նույն ձևով կազմված իգական անուն է։ Նորամուտ, բայց հազվագյուտ անուն էր Պոլսում։

— Ֆրի, մորաքույր Կրակացի Ներսէս աբեղայի, որ Երուսաղէմում օրինակեց Ճառընտիրը, 1335 թ.—Ջեռ. Վեննա. Բ. 348։

ՖՐԻԿ, աբ. կարճեմ Ֆրեդերիկ անունից է. Մխ. Համդ. 137 կայսեր անունը գրում է Ֆտրիկ փխ. Փրետերիկ։—ՆՀԲ եղի բառի տակ դնում է Ֆրիկ «եղի» (որ է աղանձ)։

— 1. Ֆրիկ (սեռ. Ֆրկան), «որդի թագվոշի, եղբօրորդի գոդանոյի» (Ալիշան, Յուշիկք, Բ 125), նշանավոր տաղասաց ԺԳ դար. իր տաղերից տե՛ս Տաշեան, Ցուց. 1163 գ։ Կոստանեանց՝ Նոր ժող. Գ. 35—43. երկու ամբողջ ձեռագիր Ֆրիկի երգերի՝ տե՛ս Bodleian 238—242, իսկ ամբողջական հրատարակությունը՝ Երևան 1941. իր կյանքի և շրջանի ուսումնասիրությանն է նվիրված Ֆրիկի ժողովածուն, Երևան, 1937, ուր հիշատակության արժանի է Ա. Ղանալանեանի հոդվածը «Ֆրիկի կյանքն ու ստեղծագործությունները», էջ 93—136։ Իր անունով կա մի փողոց Երևանում։—Ֆրիկի անունը հիշված է իր բանաստեղծությանց մեջ, յուրաքանչյուրի սկիզբը. սեռ. Ֆրկան ձևով և մեջը Ֆրիկ ձևով՝ մի կամ մի քանի անգամ։ Ջեռ. Վեննա. Բ. 541 հիշում է Ֆրիկի մի ոտանավորը «Ի յողջոյն տուքն», որի համար հրատարակիչը հայտնում է, թե պակասում է Տաշյանի ցուցակում և միանգամայն ասում է, թե Ֆրիկի բովանդակ գրվածքների մեջ լավագույնն է։

Ֆրիկին համարում են ԺԵ դարի հեղինակ, անշուշտ հենվելով որևէ ձեռագրի հնության վրա։ Ֆրիկից երեք 21 ձեռագիր կա, բայց սրանց նկարագրությունը և գրության ճվականը չունենք, որպեսզի ավելի ստույգ բան կարենանք ասել։ Ֆրիկը իրապես ԺԳ դարի հեղինակ է։ Սրա ապացույցն այն է, որ Ֆրիկը (էջ 209—215) ունի մի երկար տաղ Արղուն խանի վրա. այս տաղի մեջ հիշված են ո՛չ միայն Արղուն խանը, որ քրիստոնեից բարեկամ էր, այլև Բուղա, Արուխ, Աբաղա, Սուլթան աղա, Ջանկըղ խան, Ջինքսան, Ջալալադին, Թուման-Տուխ և Ղազան Սադադօլի թաթար խաները։ Սրանք ծանոթ անձեր են պատմության մեջ և հիշատակված են Օրբելեանի մոտ՝ Բուղայչինքսանի ապստամբության առթիվ՝ Արղուն խանի դեմ (1289 թ.)։ Ֆրիկը աշխարհական անձ է. այս բանը հատկապես հիշատակված է Ֆրիկի երկու տաղերի խորագրում. «Ի Ֆրիկէ աշխարհականէ ասացեալ» (էջ 89), «Ֆրիկ ճարտար աշխարհական է» (էջ 95)։ Ինքն էլ իր մասին գրում է (էջ 126).

«Ֆրիկն ի՞նչ հող է կամ մոխիր,
Որ հանց գոհար բան շարէ նա.
Ոչ է ծառայ վարդապետի,
Ոչ կարդացել է օր մի նա»։

Այս տողերը ցույց են տալիս, որ նա վանքում կամ որևէ վարդապետի մոտ կրոնական ուսում չի ստացել։ Նա իր գիտությունը ձեռք է բերել ինքնօգնությամբ և բնական խելքով։

Ֆրիկի ծննդավայրը հայտնի չէ. Մկրեան (էջ 11) ասում է, թե «երկար տարիներ ապրել ու աշխատել է Կիլիկիայի Հարգա քաղաքում» (իմա՛ Հարգան, որ է Հաճին)։ Մկրեանը հայտնեց ինձ, թե այս կարծիքը Տիրայր արքեպիսկոպոսինն է, որ հանել է էջ 42 Ֆրիկի մի տողից. «Շատ մի դատեցայ եղբարք Հարգայ ես շատ մի տարի»։ Ձեռագիրն ունի այստեղ Հայզայ, որ անշուշտ բայական ձև է, ճիշտ ինչպես դատեցայ և նշանակում է նրա նման «ջանացի, աշխատեցի»։ Բոլորովին անմիտ է փոխել Հարգայ և սրանով հասկանալ Հարգան, ուր ապրել է իբր թե շատ տարիներ։ Ո՞ր տեղից է հանում այս բոլորը։ Բանաստեղծություններից մեկի մեջ (էջ 230 վարիանտում) Ֆրիկը կոչված է «Սեբաստացի». «Մեղապարտ Սեբաստացւոյ լեր յաւուրն յետնում ողորմած»։

Ֆրիկն իր կյանքը անց է կացրել շարունակ զրկանքների մեջ. կորցրել է տուն ու տեղ, հարստությունը թաթարների ձեռքով ավարի է տրվել, նրանք հարկի կամ պարտքի համար նույնիսկ նրա որդուն գրավ են վերցրել և Ֆրիկը նրան գտնելու կամ ազատելու համար տարինե՜ր է թափառել, բայց իզուր.

Ժողովեցի շատ մի բարի,
Ըռզակ արի զնա Թաթարի (էջ 25).
Ջինչ մեծամեծ վաստակ արի,
Ամէն դարձաւ հող 'ւ ի փոշի (էջ 26).
Ֆրիկն ողորմ է ու լալի,
Երկու կենօքըս կու զրկի (էջ 27).
Դրի զիմ որդին գրաւ.
Միթէ՞ Թագաւորն Երկնից
Նա բերէ զիմ որդին ի տուն (էջ 40)։

Ֆրիկի տաղերը մեծաւ մասամբ խրատական բնույթ ունեն. մի մասը կրոնական է. ավելի հետաքրքիր են ընկերային (հասարա-

կական) անհավասարության, ազգերի հակամարտության, Թուրքերի բռնակալության և հայերի ճնշված դրության մասին գրվածտաղերը։ Այս վերջին կարգին է պատկանում № 41 տաղը, որի վերնագիրն է «Գանգատ բան ի Ֆրիկ գրքոյն», և որ ունի երկու ուրիշ վարիանտ, մեկը «Կռիւ ընդ Աստուծոյ», մյուսը՝ «Մարտ ընդ Աստուած կամ Գանգատ առ Քրիստոս»։ Այս երկուսը Բարսեղ անունմեկի և Սարկաւագ վարդապետի սարքած ձևափոխություններն են։

Արվեստով ու լեզվով Ֆրիկի լավագույն բանաստեղծությունն է № 29, որի սկզբի մասը վերականգնելով 6 ձեռագրից, դնում եմ իբր նմուշ.

«Խրատ բարոյ ի դէմ զղջման մեղաց և ճառաչանք ի խորոց
սրտէ առ Աստուած

Աններելի հուր վառեցի ՚ւ անհոգ յաշխարհս ի շուռ կուգամ,
Վախեմ թէ յայն օրն ատենին ես բարեխօս զոք չունենամ.
Վասն իմ բազում մեղք ու չարին զօրն ու գիշերըն կու հոգամ,
Յահէն ահեղ դատաստանին քան սևացեալ ամպ կու ցօղամ.
Յորժամ յիշեմ զինչ գործեցի, տարեկուսիմ լուկ կերերամ,
Երբ զահաւոր դատողն յիշեմ, ես յայն յահէն քան զուռ դողամ.
Կու սարսափին ոսկերքս ամէն, ջերմըն կալնու, հիւանդանամ,
Ի սպառնալեացն եմ զարհուրել, չեմ ի գիտել թէ ուր կուգնամ.
Ահն ու անդոհն է զիս պատել, վասն այնօք այն զարեան գետըն
կուլամ.
Երբ խարեցայ յանցաւորէս, ես ինձ բարոյ այլ չի մնամ.
Երբ հրեղէն գետն ելանէ, ես յայն հրոյն մէջն մնամ.
Երբ Գաբրիէլ զփողն գոչէ, ես յարութեան չարժանանամ.
Եղուկ թէ յայն ձայնէն լսեմ, թէ ե՛րթ յինէն ՚ի ձախ մնամ.
Տանին զիս յիմ որդունքն ի մօտ, որ ճանաչեմ և գիտենամ»։

Ֆրիկի կյանքի ու գործերի մասին ամփոփ մենագրություն ունի Ա. Ղանալանեան (Երևան, 1944 թ.)։

Ֆրիկի մի նորահայտ բանաստեղծությունը, Ա. Մնացականեան, Տեղեկ. ակադ. 1946, № 2, էջ 79։

— 2. Ֆրիկ, ոմն հիշատակագիր (ԺԵ դա՞ր).—Ձեռ. Թաւր. 46 բ։

* ՖՐԻՏՈՆ, ար. < պրս. فریدون feridūn անունից, որ իբրև օտար բառ տառադարձված է Հրուդեն ձևով՝ Խոր. Ա. լբ-ից հետո։

— Ֆրիտոն, ար. հիշված 1579 թ.—Սիսական 393 ա։

# Ա

— 1. Աբաս Ա, թագավոր Բագրատունեաց.—Անան. ապար. 131 ա, 131 բ, 139 բ.—սեռ. Աբասայ՝ անդ 132 ա, 133 ա, 139 բ, 142 ա։

— 2. Աբաս, կանգնեցրեց Կամրջաձորի վանքը 920 թ.—Տաթև 1927, 185։

— 3. Աբաս (№ 17). հաստատվում է, որ Արտաշրի որդին է. այդ Աբասը 15 տարեկան եղած ժամանակ արաբներից սրախողխող է եղել և Սեահողը նվեր է տվել Ս. Սիոն եկեղեցուն՝ 1200 թ.—Արձ. Այրարատ 194 ա։

— 4. Աբաս երեց, նորահայտ նկարիչ ԺԳ դարի առաջին կեսից.—Յովսէփեան, Նիւթեր և ուս. Բ. 50, 53։

— 5. Աբաս, որդի մելիք Բախտամի. կյանքը տե՛ս Առաքել վարդապետ՝ Դիզակի մելիքութ. 73—82։

— 1. Աբգար թագավորի մասին մի զրույց, որ իբր թե նա հանդիպել է երեք մոգերին Եդեսիայում, ըստ Եպիփան Կիպրացու (կեղծիք)՝ տե՛ս Սարգիսեան, Երեք թագաւոր մոգերու զրոյցն. Վենետ. 1910, 17 բ։

— 2. Աբգար, թագավոր Հայոց.—Դարդել, էջ 2, 3։

— 3. Աբկար մեծ իշխան, նախահայր Վրթանէս եպիսկոպոս Օձոպեցու (+1493 թ.). ծնված պիտի լինի շուրջ 1270 թ. (տե՛ս Գեղիկ).—Խաղբակեանք, 248։

— 4. Աբգար, սեռ. Աբգարու.—ZAPh 1, 216։

— 5. Աբգար թագավոր.—Վանակ. տարեմ. 166 ա։

— Աբիսողոմոն (այսպես գրված). տե՛ս Մատթէոս:

— Աբդլազիզ, որդի Կաքաւի՝ եղբորորդւոյ Ստեփաննոս Ղարիպշահի, որ Լիմ կղզում գրել տվեց մի Յայսմաւուրք 1457 թ.—Ջեռ. Թաւր. 104 ա, 105 բ։

— Աբդուլքարիմ (№ 1) (ԺԴ դար).—Ջեռ. էջմ. № 1656. ճիշտ թիվն է ՊԾԽ=1391 (Հրատ. Ազաթ. 1909 թ. յոշ. էջ ԼԱ)։

— Աբել վարդապետ, առաջնորդ Աղջոց Ս. Ստեփաննոս վանից, ուր շինել է մի եկեղեցի, 1217 թ.—Խաղբակեանք 63։

— Աբլ-Հասան, կանգնեցրել է մի խաչքար Սեանում, 1227 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 394։

— 1. Ապլղարիպ սպարապետ, մեծ իշխան Հայոց և Վրաց, հիշված է Աշոտ Ողորմածի կեղծ նվիրագրում, 976 թ.—Սմբատեանց. Երնջակ 419, 424. Արրտ. 1868, էջ 33։

— 2. Ապլղարիփ, որի որդին ինչ-որ հողեր է գնել Փարպիում կամ Աշտարակում, 1323 թ.—Արձ. Այրարատ 186 բ։

— Աբու-Աբդալլահ-Իսա-Բին-Մալիք-Բին-Շիմր-էլ-էրմէնի, նշանավոր գիտնական հայաստանցի, արաբացած հայ. ուղևորություններ է կատարել դեպի Եգիպտոս և Աֆրիկեան երկրները.—Իպն Խալլիքան 16։

— Աբու-Ալի-Ահմադի մասին (էջ 23, № 2) խոսում է նաև Իպն Խալլիքան, էջ 164, 167 և ասում է, որ Եգիպտոսի գահակալ էլ-Ամիրի սպանության օրը գահակալ հռչակվեց էլ-Հաֆիզ Հորեղբորորդին։ Այդ միջոցին Աբու-Ալի-Ահմադը բանտարկված էր. զինվորները ազատ արձակեցին. Ահմադը հաղթեց Հաֆիզին և ինքը Եգիպտոսի գահակալ դարձավ 1130—1131 թթ. մինչև որ Հաֆիզի դավադրությամբ մի պալատական սպանեց Ահմադին և Հաֆիզը խլեց գահը։

— Աբուլ, ար. հիշված է 1672 թ.—Սմբատեանց, Երնջակ 12։

— Ապլվարդ, հայր Վարշիրի և պապ Արտաշիրի, որ մի այգի նվիրեց Եղվարդի վանքին, 1191 թ.—Այրարատ 199։

— Ապուլճերիթ, Տայոց Դաւիթ կյուրապաղատի մահից (1000 թ.) հետո պատանդ գնաց Պոլիս, ուր պատվով ընդունվեց, որովհետև Ապուլհերիթի աները՝ Ապուհարպ Ա ծանոթ անձնավորություն էր պալատում։ Կրոնական կոչում ընդունելով կոչվեց Յովհաննէս Հագիորիտ. հիմնեց Աթոսի վրացական վանքը. ստացել է «սուրբ» կոչումը. իր որդին է Ս. Եւթիմիոս.—Ակինեան, Մատեն. հետազ. Դ. 61։

— Ապուլֆարամ, որդի Կիր Վասիլի, իր հոր մահից հետո ուխտի եկավ Երզնկայի Ս. Լուսաւորիչ վանքը և հոր Աւետարանը ընծայեց վանքին 1287 թ.—Գարեգին կթղ. Կեանք և գիր, Գահիրէ 1948, էջ բ։

— 1. Աբուճարպ Ա, որդի Թոռնիկ Ա-ի և եղբայր Զորտուանէլ Ա-ի. Տայոց Թոռնիկեան տոհմից (Ժ դար)։—Ակինեան, Մատեն. հետազ. Դ. 60, 61.—տես. Ապուճարպայ՝ Աստղ. Գ. խգ։

— 2. Աբուճարպ Բ, որդի Զորտուանէլի և թոռն Թոռնիկ Ա-ի. Տայոց Թոռնիկեանց տոհմից (Ժ դար).—Ակինեան, Մատեն. հետազ. Դ. 60։

— Աբուս, որդի Խաղբակ Բ-ի, եղբայր Հասանի, Վասակի, Ջաջուռ Բ-ի և Գրիգորի. մեռել է 1191 թ. և եղբայրը՝ Վասակ կանգնեցրել է մի խաչքար նրա շիրմի վրա.—Յովսէփեան՝ Խաղբակեանք 32.—Բարխուդ. Պատմ. Աղվ. 144 կոչում է Աբու-Սէթ։

— Աբուսալմ, կանգնեցրել է մի խաչքար Աղջիբիր գյուղում, 1274 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 432։

— Աբու-Սէք, տե՛ս Աբուս:

— Աբուտաճլ, որդի Խուլթլուբէկի (№ 4) և պապ Վրթանէս եպիսկոպոս Օձոպեցու (+1493). ծնված պիտի լինի շուրջ 1360 թ.—Խաչըակեանք 248։

— 1. Աբրահամ (№ 9) Ա կաթողիկոս Հայոց 607—615 թթ.—Անան. ապար. 137 ա.—սեռ. Աբրահամու՝ անդ 137 ա.—բց. յԱբրահամայ՝ անդ 137 ա։

— 2. Աբրահամ, առաջնորդ Դարանաղեաց Աւագ վանքի, 1200 թ.—Տաթև 1927, 183։

— 3. Աբրահամ քահանա, գրել տվեց խաչատուր քահանային մի Աւետարան՝ Կիպրոս 1287 թ.—ՀԱ 1937, 380։

— 4. Աբրահամ քահանա, որի անունով կա մի խաչքար Պողոսի գյուղում, 1313 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 517։

— 5. Աբրահամ, հայր Թումայ կրոնավորի, որ ուսուցիչն էր եղել Կարապետ աբեղա գրչի, 1428 թ.—Տաշեան, Ցուց. 583 բ (ցանկում մոռացված է)։

— 6. Աբրահամ, որդի Գորճ երեցի, կինն է Աննա. թոռն է Մարկոս քահանայի, որ գնեց մի հին Աւետարան 1439 թ.—Ձեռ. Հալէպի Ա. 83։

— 7. Աբրահամ քահանա, սատացող. Գրիգորիս և Յովհաննէս քահանաներին գրել տվեց Տոմարը, Երզնկա 1342 թ.—Աշ. Աբրահամեան, Շիրակացու մատեն. 122։

— 8. Աբրահամ արքեպիսկոպոս Անկիւրիոյ, հաջորդեց Ներսէս արքեպիսկոպոսին 1466 թ.—Հացունի, Կարեւոր խնդ. 271։

— 9. Աբրահամ վարդապետ Տրապիզոնցի, որին Ֆաթիհ սուլթանը Մատթէոս Սեբաստացու հետ բերեց Պոլիս 1479 թվին պատրիարք դարձնելու համար, բայց նա մերժեց.—Թորգոմեան, Ստամպօլայ պատմ. 228, Ալպօյաճեան Պտմ. Հայ Կես. Ա. 583։

— 10. Աբրահամ վարդապետ Տրապիզոնցի (№ 80), երևի թե սա՛ է, որ Սուլթան Մեհեմմեդ Ֆաթիհը 1479 թվին Պոլիս է տարել Մատթէոս վարդապետ Սեբաստացու հետ՝ պատրիարքության համար։ Բայց նրանք մերժել են ընդունելու աթոռը, նախընտրելով մենակեցությունը.—Թորգոմեան, Ստամպօլոյ պատմ. 228։

— 11. Աբրահամ, կրտսեր որդի Խոջա Ղութաթի, որ Առաղ գյուղաքաղաքում գրել տվեց մի Աւետարան, 1490 թ.—Սմբատեանց, Երնջակ 257։

— 12. Աբրահամ երեց, քահանա Կեսարիոյ Մանտիսոն գյուղի. 1495 թ.—Ալպօյաճեան, Պատմ. Հայ Կես. Բ. 1850։

— 13. Աբրահամ վարդապետ, մայրն է Գոնձայ, եղբայրն է Աւագտէր, եղբայրներն են Դաւիթ քահանա, Զաքարիա աբեղա, Յակոբ և Մարգար. Վայոց Ձորի Նղեգիս ավանի Վերին Նորավանք ուխտում, Գրիգոր աբեղային գրել տվեց մի Աւետարան, 1495 թ.—Ձեռ. Վասպ. 522։

— 14. Այս Աբրահամը (որ և կոչված է ծաղկող, հռետոր, վերջում նաև քաջ րաբունապետ) ունի բազմաթիվ եղբայրներ։ Այսպես՝ Դաւիթ քահանա գրիչ (№ 225), Զաքարիա աբեղա (№ 87, 96, 100 երեքն էլ միևնույնն են), Յակոբ միայնակեաց, Մարգար աշխարհական։

— 15. Աբրահամ վարդապետ Աստապատցու (№ 104) հիշատակարանը ունի Սմբատեանց՝ Երնջակ 185—191։

— 16. Աբրահամ աբեղա, որդի Տէրտէրի, մայրն է Գոնցա, գրիչ և ծաղկող. միաբան էր Բոլորաբերդի անապատի, որ կոչվում էր նաև Սպիտակաւոր Ս. Աստուածածին (Սրկղունից գյուղում). եղբորորդին և աշակերտն էր Աւագտէր վարդապետի (տե՛ս անդ)։ Նկարազարդել է երկու Աւետարան 1475 թ., գրել ու ծաղկել է մի ուրիշ Աւետարան 1482 թ. և մի Մանրուսմունք 1484 թ.։ Նույն Ա հատորում հիշված № 86 և 91.—Խաչիկեանք 232—237։ Վերջին անգամ հիշված է Աբրահամ հռետոր անունով՝ 1498 թ.։ Այս թվից հետո էլ ստացվել է մի Աւետարան, որն ինքը սկսել է նկարազարդել զանազան ժամանակ 1495 թվից մինչև 1502 թ.—Խաչիկեանք 228։

— 17. Աբրահամ տեր, երեց թարգմանիչներց մեկը.—ZAPh 1, 206։

— Ագարանգեղ.—Դրնդ. 517։

— Ագարանգեղոս պատմիչ.— Եա. կթղ. էջ Ը։

— Ագում, սրա և Նրճիսի անունով պատարագ է ստացել Համլիկ Մամիկոնյանը Դսեղի մի արձանագրության համաձայն.—Յովսէփեան, Խաղբակեանք 16։

— Ատիլ բէկ, եղբայր Վրթանէս (+1493 թ.) եպիսկոպոս Օձոպեցու.—Խաղբակեանք 248։

— Աղխան, իգ. անուն. հիշված 1673 թ. Ղարաբաղում. տե՛ս Արցախ 158։

— Ազարլու, իգ. անուն. հիշված 1692 թ. հրտր. Ազաթ. 1909, յոց. էջ ԺՁ։

— Ազատ (№ 3). Ատոմը անզավակ էր, ուստի Ազատը ոչ թե Ատոմի որդին էր, այլ նրա քեռորդին. տե՛ս այս մասին Հարիր անվան տակ։

— Ազատ խաթուն, անդրանիկ դուստր Ղարիպ խաթունի, որից ժառանգեց մի Աւետարան 1489 թ.—Սմբատեանց, Երնջակ 275։

— Ազատխան,ար. անուն. հիշված 1660 թ.—Ջեռ. Վասպ. 553։

— Ազատիկին, միաբան Երզնկայի Ս. Գրիգոր վանքի, 1224 թ.— Տաթև 1927, 184։

— 1. Ազարիա, եղբայրն է հայր Գրիգորի, որի օգնությամբ Դաւիթ իշխան Կիւրիկեան շինեց Անապատի եկեղեցին, 1598 թ.— Տեղեկ. ԱրմՖանի, 1940 թ., № 4, էջ 168 (Արձ.)։

— 2. Ազարիա (№ 6) աբեղան ո՛չ թե հիշատակագիր է, այլ Հայրապետ քահանայի (№ 50) եղբայրը, որ վիճելով իր եղբոր աղաչանքին, հանձն առավ և ավարտեց Սիմէոն քահանայի կիսատ թողած Աւետարանը, Երզնկա 1351 թ.—Թորոս աղբ. Բ. 357։

— 3. Ազարիա (№ 12) քահանան Վանում արտագրել է մի Աւետարան՝ տանուտեր Պետրոսի համար, ՋԻԴ=1475 թ. Սարգիս կաթուղիկոսի ժամանակ։ Այսպես եմ դրել ըստ Ջեռ. Վասպ. 476։ Նույնը ունի նաև Թորոս աղբ. Բ. 276, բայց այստեղ Ազարիայի տեղ գտնում ենք Զաքարիա և թվականն էլ ՋԽԴ=1495 (փոխանակ ՋԻԴ=1475)։ Սխալը ո՞ւմն է։ Ամենայն համեստությամբ և ապահովությամբ կարող ենք ասել, ինչպես միշտ, նաև այստեղ, որ սխալը Լալայեանինն է։ Նա անմիտ ձևով կրճատել, ավելի շուտ՝ տող է փախցրել և պակաս է արտագրել հիշատակարանը, որ Թորոս Աղբօր մոտ ավելի ընդարձակ է։ Լալայեանի սխալ լինելուն ապացույց է այն, որ 1475 թվին էջմիածնում Սարգիս կաթուղիկոս չկա, իսկ 1495 թվին իրոք նստում է Սարգիս Դ։ Ըստ այսմ պետք է ջնջել իմ բառարանից № 12 Ազարիա քահանա և պահել միայն Զաքարիա № 97։

— 4. Տէր Ազարիա, կրոնավոր Աղուլիսում 1481 թ.—Սմբատեանց, Երնջակ 300։

— 5. Ազարիա արքեպիսկոպոս Նախիջեանի. շնորհեց Յայսմաւուրքի օրինակը Գրիգոր աբեղային՝ արտագրելու համար, 1481 թ.—Սմբատեանց, Երնջակ 300։

— 6. Ազարիա եպիսկոպոս Գողթան, հիշված է 1489 թ.— Սմբատեանց, Երնջակ 274։

— 7. Ազարիա սարկավագ Ամիրազիզի, գրիչ. Արճէշ կղզում-

քաղաքում, խոջա Ղուրաթի ծախսով գրեց մի Աւետարան՝ 1490 թ.— Սմբատեանց, Երնջակ 246, 254, 256, 257։

— 8. Ազարիա (№ 20), փոխել այսպես. վարդապետ, Սասնեցի, աստղագետ, տոմարագետ և տաղաչափ. ծնվել է Սասնոյ գյուղերից մեկում, որի անունը հայտնի չէ. հայրն է Մելիքսեթ. մայրը Նսէֆ. իր ամբողջ գերդաստանը Ջէլլալիների արշավանքին զոհ է գնացել և կոտորվել. ինքն էլ է գերի ընկել նրանց ձեռքը և 4 տարվա չարչարանքներից հետո հազիվ ազատվել է նրանցից և շունչը առել է Պոլիս (1603 թ.)։ Վաղուց նա փափագ ունեի սովորելու աստղաբաշխական գիտությունները, տոմարագիտություն և մանավանդ Հայոց եկեղեցական իրավաբանությունը, որի համար քաղաքից քաղաք շրջելով որոնում էր մի լիակատար Կանոնագիրք։ Լսելով, որ մի այդպիսի գիրք գտնվում է Գրիգոր Կեսարացու մոտ, գալիս աշակերտում է նրան Պոլսում, դասընկեր ունենալով Մովսես Տաթևացուն (բայց Կեսարացին բռնակալ, կոպիտ և ընչաքաղց մարդ էր)։ Ուսումը ավարտելուց հետո սկսեց քարոզություն. մեծ համբավ հանեց այս ասպարեզում իր հմտությամբ և պերճախոսությամբ։ Երկար մնաց Պոլիս, ուր ո՛չ միայն արտագրեց կամ արտագրել տվեց Կեսարացու Կանոնագիրքը, այլև լրացրեց այն բազմաթիվ ուրիշ հայ և օտար ժողովական կանոնադրություններով, դատաստանագրքերով, սուրբ հայրերի գրած կանոնական թղթերով և այլն, այնպես որ կազմեց մի նորակերտ ժողովածու՝ Գիրք թղթոցի նման։ Պոլսում առիթ ունեի նաև շփվելու իտալացոց հետ և սովորելով իտալերեն՝ թարգմանեց Պտղոմէոսի աշխարհացոյցը։ Ջուղայեցին հայ վկաների խնդրանոք կազմեց մի նոր տոմար, որ հայտնի է «Փոքր թիւ Ազարիայի» անունով։ Այս տոմարը սխալմամբ վերագրում են Ազարիա Ջուղայեցուն, ավելի ճիշտ կլինի ասել Ազարիային համարել են Ջուղայեցի։ Այդ սխալը սկսել է Դյուլորիեից։ Անցավ Նիկոմիդիայի շրջանը, ուր շրջելով հայ գյուղերը, մտադրություն ունեի մի ուսումնավայր վանք հիմնելու, բայց չհաջողվեց։ Նիկոմիդիայում հալածեցին նրան, և Ազարիան փախավ Անտիոք, որտեղից նավ նստելով ուզում էր փախչել Եգիպտոս. նավի մեջ մեռավ, իր վերարկուի մեջ փաթաթած ծովը գցեցին. ալիքները հանեցին ծովեզերքը, ուր գտան մարմինը և իմանալով որ կրոնավոր է, թաղեցին Տրիպոլիում, 1628 թ.։

Ազարիա Սասնեցու աշխատություններն են. 1) Ողբ ի վերայ հարուածոց աշխարհին Հայոց, 532 տող ոտանավոր, ուր պատմում է Ջէլլալիների և Շահաբասի արշավանքների պատմությունը, այն

է 1591—1609 թվերի դեպքերը. առանձին աշխատություն չէ, այլ կցված է իր Կանոնագրքի հիշատակարանին. 2) Յաղագս գիտութեան երկնից բարձրութեան և եօթն պարունակացն... ասացեալ Արիստոտէլի և Նիկոմաքոս իմաստասիրի. 3) Յաղագս որքանութեան եօթնհազար և երկերիւրոցն [ամաց]. 4) Յաղագս գիտութեան արեգական թաւալմանցն. 5) Վասն գիտութեան հինգ աւուրց արարչութեան. 6) Յաղագս գիտութեան Հայոց թուականի. 7) Տոմար արեգական և լուսնի. այստեղ է պարզում նա իր կազմած նոր տոմարը, որ սկսվում է 1616 թ. նոյ. 29-ից. 8) Աշխարհացոյց Պտղոմէոսի (Թրգմ.). 9) Բան յաղագս Աստուծոյ (պատրիարքական իշխանությունը վարելու համար կազմված մի կանոնադրություն). 10) Կարգ և թիւ կաթուղիկոսաց Հայոց (ժամանակագրութիւն). 11) Հաւաքածոյ կանոնագրոց (վերև հիշատակված գործն է, ուր կարևոր է հիշատակել՝ Ս. Եղիշայի ի կանոնաց գրոց, Մեծի Ագաթանգեղոսի ի բանէն որ զԿայենէ, Երանելւոյն Մեսրոպայ Հայոց վարդապետին «Բարւոք եղբայր ոմն [ի] սրբոց», Կանոնք տեառն Սիմէոնի Աղուանից կաթուղիկոսի, Եզնկայ Կողբացւոյ Հայոց վարդապետի բան Ա և Բ, Եպիսկոպոսք Կամսարական տան)։—Այս բոլորի մասին ընդարձակ տե՛ս Ակինեան, Մատեն. հետազ. հտ. Դ, էջ 241—308, որի վերջում հրատարակված է Ազարիա Սասնեցու Ողբը։

— 9. **Ազարիա** Ջուղայեցի (№ 18) կաթուղիկոսի կենսագրությունը տե՛ս Տաթև տարեցոյց, 1928, էջ 90—96.—Դրնդ. 318—322, 379, 380, 381։

— 10. **Ազարիա** անունը կրճատ **Ազար** ձևով հիշված է 1793 թվից ավելի առաջ՝ 1678 թվին (Ձեռ. Վասպ. 1023)։

— 1. **Ազիզ**, կին տանուտէր Կիւրեղի, որ Ախքերմանում, Նիկողայոս եպիսկոպոսին օրինակել տվեց Ճաշոցը՝ 1460 թ.—REA 10, 64։

— 2. **Ազիզ**, կին Բագարատի և մայր Սարգսի, որ Խաչենի Թիւախոռ գյուղում մի խաչքար է կանգնեցրել նրա հիշատակին, 1228 թ.—Արցախ 190։

— 3. **Ազիզգուլ**, իգ. անվան հին հիշատակութիւնը գտնում եմ 1749 թ. (Արցախ 122)։

— 4. **Ազիզ**, կին, որի որդին՝ Ղոչ սարկավագը կանգնեցրեց մի խաչքար նրա հիշատակին, Շօշու գյուղի (Արցախ) հին եկեղեցում, 1458 թ.—Արցախ 132։

— 5. **Ազիզմամ**, իգ. կին Գէշի, հիշված 1225 թ. (Տաշեան, Մատեն. մանր ուս. Ա. 295)։

— Ազիզպարոն, հիշված է մի խաչքարի վրա 1653 թ.—Սրմ-քառեանց, Գեղարքունի 541։

— Ազիլ, սրա փոխարեն Սիսուան 521 ա ունի Վասիլ Օքսենց ընթերցվածը։

— Ազնաւոր, իր կնոջ Ղուտալշաքի և իր . որդի Զաքարիայի հետ հող են նվիրել Աշտարակի Ս. Մարիանէ մատուռին, 1326 թ.— Այրարատ 186 ա, նաև 1325 թվին տաճարի շուրջը պարիսպ են քաշել (անդ 187).—Գրված է միշտ Ասնաւոր։

— Աթաբակ Բ, որդի Ջալալ Բ-ի և Աթաբակ Ա-ի (№ 1), իշխան խաչենի. Աթաբակ Ա նստել էր 1261-ին և դեռ իշխում էր 1282-ին. սրան հաջորդեց որդին Ջալալ Բ, որ արդեն գահի վրա էր 1293 թվին. սրան էլ հաջորդեց սույն Աթաբակ Բ. թվականները հայտնի չեն.— Բարխուդ. Պատմ. Աղուանից 205, 209։

— Աթանագինէ, մի խաչ է կանգնեցրել Փիլաքսոնի հետ Հաղբատո՞ւմ 1005 թ.—Մովսէսեան, Լոռիի Կիւր. 48։

— Աթանագինէս կրոնավոր, ոմն գրիչ. հիշված է անթվական մի հիշատակարանում (Զեռ. Վեննա. Բ. 1052—1053)՝ ԺԶ—ԺԷ դարից։

— 1. Աթանաս, մի հող է նվիրել Հաւապտուկի վանքին և տարեկան երեք պատարագ է ստացել՝ 1163 թվից քիչ ուշ.—Յովսէփեան, Խաղբակեանք 30։

— 2. Աթանաս եպիսկոպոս, վանահայր Մաքենեաց վանքի 1285 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 576։

— 3. Աթանաս Գ կաթուղիկոս Աղուանից, հաջորդել է Մատթէոս Գ-ին. գահակալության թվականը հայտնի չէ, բայց նստել է 1450-ական թվերին. իրեն հաջորդեց Գրիգոր Ա, որ 1455-ին արդեն գահի վրա էր։—Բարխուդ. Պատմ. Աղուանից 212—213.—Տե՛ս Գրիգոր Ա։

— 4. Աթանաս դպիր, միաբան Բոլորաբերդի անապատում, Սրկղունս գյուղ, 1478 թ.—Սիսական 130 բ։

— 5. Աթանաս գրիչ, Օձոպ գյուղում օրինակեց Աւետարանը՝ 1488 թ.—Սմբատեանց, Երնջակ 151։

— Աթարիկ (սեռ. Աթարկան). հիշված է Յովհաննավանքի անթվական մի արձանագրության մեջ՝ Այրարատ 171 բ։

— Աթու մելիք, կին Արապշահի, որ իր երեք եղբայրների հետ Աղբակի Երնկանի գյուղում գրել տվեց մի Աւետարան 1490 թ.— Զեռ. Վասպ. 511։

— Աժմանդ, ար. հիշված է 1400 թվի մի խաչքարի արձանագրության մեջ (Սիսական 111)։

— Ալագօզ, «դօլուադւոր, դավադաւոր», որ Վանի Արարք գյուղի եկեղեցուն շատ նվերներ է տվել 1647 թ.—Ջեռ. Վասպ. 268—269։

— 1. Ալամշահ, կին Ստեփանոսի և մայր Կարապետ վարդապետ Բաղիշեցի տաղասացի, որ ծնվել է շուրջ 1475 թ.—Ակինեան, Մատեն. հետազ. Դ. 311։

— 2. Ալամշահ, կին Ստեփանոսի և մայր Կարապետ Բաղիշեցու (ծն. շուրջ 1475 թ.), որ էր գրիչ, տաղասաց, ապա և առաջնորդ Մշոյ Առաքելոց վանքի.—ՀԱ 1937, 320։

— Ալեքս (№ 8), որդի Քաւուն միայնակեացի, որ գրել տվեց մի Աւետարան 1330 թ.—Ջեռ. Վենետ. Ա. 770։ (№ 5-ի թոռն է)։

— 1. Ալէքսանոս քահանա, վկայում է, որ էվաշուն Տրապիզոնո՞ւմ գնել է մի հին Աւետարան, 1425 թ.—Ջեռ. Վենետ. Ա. 486։

— 2. Ալէքսանոս փակակալ, Բոլորաբերդի վանից 1482 թ.—Խաղբակեանք 236։

— 3. Ալէքսանոս, որդի Յովհաննէսի, որ իր քույր Սայրուկի և այլոց հետ գնեց Ամինադինի այգին և նվիրեց Ս. Նշան վանքին՝ շուրջ 1461 թ.—Թորոս աղբ. Բ. 347 (թվականը չի նշանակված, բայց որոշվում է Ամինադին № 2 և Ալէքսանոս № 8 հիշատակության միջոցով)։

— 4. Ալեքսիանոս, որդի Նուրիձանի, որ Ագուլիսում գրել տվեց մի Յայսմաւուրք 1481 թ.—Սմբատեանց, Երնջակ 300։

— Ալեքս (№ 1) զորավար, հսկա հայ (Արմէնիօն կիղոնտիէօն անտրա), որին Վասիլ Ա կայսրը (867—886 թթ.) մեծ բանակով ուղարկեց Կիպրոսի վրա։ Ալեքսը Կիպրոսը ետ առավ արաբներից (868 թ.), կայսեր կողմից նշանակվեց փոխարքա Կիպրոսի և 7 տարի «թշնամիների սարսափը» դարձավ.—Բակուրան, Կիպրոս կղզի 49. Տեր-Սահակեան, Հայ կայսերք Ա. 346։

— Ալթուն, եղբայր Գրիգոր իշխանի Խաչենեցւոյ, թոռն Գրիգոր բարի իշխանի (ԺԳ դար).—Բարխուդ. Արցախ 208, Պատմ. Աղուանից Ա. 137։

— 1. Ալի Արմանի եւ հիշվում է Մխ. այրիվ. 74 հետևյալ ձևով. «Բոնակալն Ալի արմնի ասլանն ի Կարնոյ քաղաք, որ ի ծագել արեգականն մարդ սպանանէր և ի մտանել արեւու ընդ կուսի նչէր. 1061 թ.»։

— 2. Ալի, որդի Ջենովբի, եկավ Պարսկաստանից, շինեց մի

եկեղեցի, Արցախի Վերին-Թաղավարդ գյուղում, 1228 թ.—Արձ. Արցախ. 91։

— 3. Ալիբէկ, թոռն Ըռուզբէկի, որ գրել տվեց մի Գանձարան 1478 թ.—Սմբատեանց, Երնջակ 195։

— 4. Ալի–էլ–էրմէնի, մահմեդական դարձած հայ իշխան է անշուշտ, որ «մարտիրոսացել է» (այսինքն քրիստոնյաների հետ պատերազմում մեռել է) Հելուրէս կոչված տեղում (Իպն Խալլիքան, էջ 355)։

— 1. Ալիծ ոմն, ամուսնացավ Januino de Domo Ջենովացու հետ, որ մեռավ 1279 թ. Այասում.—Սիսուան 371 ա։

— 2. Ալիծ, կին ձիավոր (ասպետ) պարոն Բարթուղիմէոսի, որ տե՛ս այս հավելվածում (1332 թ.)։

— Ալինախ, որդի Հեթում Ա-ի և եղբայր Լևոն Գ թագավորի. Հայրը ուղարկեց նրան Թաթարաց Մանգոյ խանի մոտ և նրա միջոցով ազատեց Լևոն Գ-ին եգիպտական գերությունից։ Երբ Թաթարաց Բիլարղու զորավարը խարդախությամբ սպանեց Լևոն Դ-ին և Հեթում Միականիին, Ալինախը նորից գնաց խանի մոտ, բողոքեց և խանի հրամանով ու իր ձեռքով սպանեց Բիլարղուին։ Մեռել է անզավակ.—Դարդել 16, 21, 25, 26 (շփոթում է № 1 Ալինախի հետ)։

— Ալիսիա, դուստր Օշին Պայլի, որ Լևոն Ե թագավորի խնամակալն էր։ Օշինը այս Ալիսիային ամուսնացրեց սույն անչափահաս Լևոնի հետ։ Երբ Լևոնը մեծացավ, Ալիսիային սպանեց և կին առավ Սիկիլիոյ Փրեդերիկոս թագավորի դուստր Կոստանդիային, որ Կիպրոսի Հանրի թագավորի կինն էր եղել։ Դարդելն ասում է, թե Լևոնը ամուսնացավ Կոստանդիայի հետ միայն նրա ունեցած կալվածների համար, որոնք տարեկան 70 000 արծաթ դահեկան եկամուտ էին բերում.—Դարդել 28—30։

— Ալլահդադ, հիշված է Ալահդատ ձևով, որ մեռել է 1493 թ.— Բարխուդարեանց, Աղուանից երկ. 205։

— Ալմայ խաթուն, հիշված է 1582 թ.—Ջեռ. Վասպ. 698։

— Ալշահ, անհայտ թագավոր Հայո՞ց. հմմտ. «Ալշահ թագաւորն զՏրասխ շինեաց» (Այս են քաղաքք և շինողք նոցին ZAPh 1, 190)։

— Ախան, հիշված 1708 թ. (Սմբատեանց, Գեղարքունի 613). նրա հետ հիշված է և իր կինը. սրանով պարզվում է, որ արական անուն է. կարծում եմ, որ ծագած է Աղախան ձևից (արագաբանությամբ)։

— Ախիջան կամ Հախիջան, որդի Ջալալի, իշխան Աղուանից,

նստում էր Ցորայ ամրոցում (1478 թ.).—Բարխուդ. Պատմ. Աղուանից Ա. 132, Արցախ 67, 107։

— Աղիջան,ար. 1635 թ. (Սրեմեան, Նոր-Ջուղայի ԺԸ դարու որմնանկարչ. յուշարձ. էջ 27 ա)։

— Ակակիոս, իշխան, հա՞յ, բարեկամ Համազասպի, որին Յուստինիանոս կայսրը նշանակել էր Հայաստանի կառավարիչ. լինելով մտերիմ Հունաց կայսեր հետ, չարախոսեց նրա մոտ, թե Համազասպը չարչարում է հայերին և ուզում է Կարինը հանձնել Պարսից։ Սրա վրա կայսրը հրամայում է Ակակիոսին սպանել Համազասպին և իշխանությունը հանձնում է նրան։ Ակակիոսը շատ է նեղում հայերին, որոնք ապստամբում են նրա դեմ և սպանում (536 թ.).—Ջամչ. Բ. 241. Տեղեկ. Համալս. № 1, էջ 66։

— Անարոն, տե՛ս Թոդոսակ (Է դար)։

— Անի, ար. հիշված է անթվական մի հիշատակարանում՝ Բարխուդ. Արցախ 40.—Համարում եմ նույն ընդ Անխի։

— Անիայ[ն] (տե՛ս Հ. Ա, էջ 92). այս անունը գործածված է մի անգամ Ձեռ. Վենետ. Ա. 696։ Բայց նույն հիշատակարանը տպված է նաև Այրարատ 295 ա, ուր գտնում ենք Անիայն (տե՛ս Հ. Ա, էջ 166)։ Բնականաբար այս երկուսը պետք է միացնել։ Եվ որովհետև եբր. Անիայ շատ անծանոթ բառ է հների համար, ուստի ենթադրում եմ, թե ուղիղն է Անիա:

— Անլի, հիշված է իբր իգ. անուն 1576 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 192։

— Աղա, որդի Սաւղաթմիշի և եղբայր Նուրիճանի, որ Ագուլիսում գրել տվեց մի Յայսմաւուրք, 1481 թ.—Սմբատեանց, Երնջակ 299։

— Աղազատ, ավելի հին հիշատակություն ունենք 1607 թվից.—Սմբատեանց, Երնջակ 181։

— 1. Աղաճան գյիր, Սրկղունք գյուղի Բոլորաբերդի անապատում, 1478 թ.—Սիսական 130 բ։

— 2. Աղաջան, փոքր որդի Մարտիրոսի (սրա երկրորդ կնոջից՝ Բէկի-Ջիհանից). Մարտիրոսն էլ որդին է Խաչատուրի, որ Արճէշում, Յովհաննէս քահանային գրել տվեց մի Աւետարան, 1462 թ.։ Աղաջանը լինում է Խաչատուրի թոռը, որով հնագույնն է Աղաջան անվան հիշատակության. հազիվ 1500 թ.—Ձեռ. Վասպ. 441։

— Աղան Արծրունի, ZAPh 1, 207։

— Աղանանա, իգ. հիշված է նաև անթվական մի հիշատակարանում, որ գրված է 1604 թվից հետո.—Ձեռ. Վասպ. 812։

— Աղախան, հայր Գրիգոր քահանայի, որ Աղթամարում, Աստոմ քահանայի համար օրինակեց մի Աւետարան 1454 թ.—ՀԱ 1937, 580։

— Աղաշա (№ 1) որդին է խոջա Յովհաննէսի, բայց սա չէ հորեղբօրորդի Պօղոս վարդապետի, այլ խոջա Յովսէփի։

— Աղշայ, ա՞ր. թե իգ. ամուսին Շիրազարի. միասին նվերներ են տվել Տեղերի վանքին՝ 1274 թ.—ZAPh 2, 46։

— Աղապապ, հիշված է 1591 թ. (Սմբատեանց, Երնջակ 274)։

— 1. Աղասուլթան, իգ. ավելի հին է 1575 թ.—Բարխուդ. Պատմ. Աղուանից Բ. 27։

— 2. Աղասուլթան, իգ. 1610 թ.—Ջեռ. Վասպ. 838։

— Աղբաստ իշխան Գանձասարի, հիշված 1443 թ.—Շահխաթ. Բ. 376, Ջալալ. Ա. 188>Նոտարք 130։

— Աղբերանց, ա՞ր. թե իգ. Գերգի հետ միասին եղան նվիրատու Տեղերի վանից 1293 թ.—ZAPh 2, 47։

— Աղբիանոս.—Դրնղ. 515։

— Աղէկ, որդի Ջալալի, իբր վկա ստորագրում է 1456 թվի մի պայմանագրի.—Արցախ 187։

— Աղուտ, կին Վրթանէսի. միասին 100 դեկան են նվիրել Հաղարծինք վանքին, 1291 թ.—Խաղբակեանք 60։

— Աղութ խաթուն, Շահդիշայի հետ միասին գրել տվին Վանում, Վարդան երեցին մի Աւետարան, 1460 թ.—Արցախ 139։

— Աղուտ տիկին (№ 2), կին Վասիլի, մայր Կոստանդին եպիսկոպոսի. հիշված է նաև 1311 թ. (Բակուրան, Կիպրոս կղ. 108)։

— Աղասուլթան, իգ. 1575 թ.—Սմբատեանց, Գեղարք. 809։

— Աղբերանի անվան շատ ավելի հին հիշատակությունը ունենք 1309 թ. (Արձ. Սիսական 107), ուր հիշված է Աղբայրանի՝ հայր Գրիգորէսի, որ կանգնեցրել է մի խաչքար՝ Գնդեվանքի մոտիկ Կիմիշխանէ գյուղում։

— Աղբուղայ (№ 2) ունի և մի ուրիշ արձանագրություն 1264 թվից.—Արարատ 159։

— Աղրիբէգ, ար. 1575 թ.—Սմբատեանց, Գեղարք. 809։

— Ամաղեկ՝ փոխանակ Աղրամելէք, որդի Սենեքերիմ թագավորի Ասորեստանցոց.—Սոտ Շապհ. 21։

— Ամասիա, նահապետ Հայկազանց, որի անունով կոչվեց Մասիսը (ըստ Խոր.) դարձել է «Ամասիա թագաւոր զՄասիս շինեաց» (Այս են քաղաքք և շինողք նոցին ZAPh 1, 190)։

— Ամբակում, առաջնորդ Սեպուհ լեռան Լուսաւորչի անա-

պատի, հաջորդեց իր եղբորը՝ Աւետիքին, որ նստել էր 1200 թ.— Տաթև 1927, 184։

— 2. Ամբակում (№ 3), Երեմիա Չէլէպիի մօր մօրեղբայրը և Երեմիայի հոգևոր դաստիարակն է։ Կենսագրութիւնը և հատկապես վերջին ժամերի սրտառուչ նկարագրութիւնը տալիս է Երեմ. Չէլ. Օրագր. 307—314։

— Ամբրասիոս, հայր Վրթանէս եպիսկոպոս Օծոպեցու (+1493 թ.) և թոռն Խութլուբէկի (№ 4). ծնված պիտի լինի շուրջ 1390 թ.—Խաղբակեանք 248։

— Ամիկ, կին Սարգսի. երկուսով նվերներ արին Վանեվանից եկեղեցուն, 1329 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 568, Սիսական 62 (վերջինս ունի նույն արձանագրութիւնը, բայց չի հիշում Ամիկին)։

— Ամեանիայ (Ամինիա), վաղամեռիկ դուստր Պապաքի և քույր Մխիթար քահանայի, որ Որոտանի Աղիտու վանքում գրեց մի Աւետարան, 1296 թ.—Սմբատեանց, Երնջակ 201։

— Ամենադին. որ հիշված է Թորոս աղբ. Բ. 347 անթվական մի հիշատակարանում. 1461 թվից է, ինչպես երևում է Ամինատին № 2 հիշատակութիւնից։

— 1. Ամիր, որդի մղդեսի Մանուկի, որ Կեսարիայում գրել տվեց մի Ճաշոց՝ 1484 թ.—Ալպօյաճեան, Պատմ. Հայ Կես. Բ. 1849։

— 2. Ամիր, որդի Սահակ երեցի, որ Կեսարիոյ Մանտիսոն գյուղում օգնեց Յովհանէս աբեղային գրելու Յայսմաւուրքը 1495 թ.—Ալպօյաճեան, Պատմ. Հայ Կես. Բ. 1850։

— 1. Ամիրագիզ (№ 2). հիշատակարանը եղծված է. թվականը թեև գրված է 1444, բայց պետք է ուղղել 1293։

— 2. Ամիրագիզ, հայր Աղարիա սարկավագի, որ Արաշ գյուղաքաղաքում գրեց մի Աւետարան, 1490 թ.—Սմբատեանց, Երնջակ 257։

— Ամիրաս անվան մի քիչ ավելի հին հիշատակութիւն. այն է 1627 թ. էջմիածին, 1944, № 1, էջ 37 բ։

— 1. Ամիրբէկ, որդի Սահմատինի, որ Անիի պատրոնն էր և շնորհել է Օշականի ղանաղան հարկերը 1286 և 1288 թվերին։ Այս Ամիրբէկի որդին է Բէյաւթայ՝ հիշված 1295 թ.—Արձ. Այրարատ 189, 190։

— 2. Ամիրբէկ, պապ Յոհանէս երեց խաչպանի, որ գնեց մի Աւետարան 1411 թ.—Սմբատեանց, Երնջակ 232։

— 3. Ամիրպէկ սարկավագ, արտագրելու համար շնորհեց

Սամուէլ գրչին մի Շարական, Երզնկա 1436 թ.—Ճանիկեան, Հնութ. Ակնայ 79։

— 4. Ամիրբէք, որդի Խաչատուրի և եղբայր Յովսէփ աբեղայի, որ Մկրտիչ Նաղաշից ստացավ մի Աստուածաշունչ 1449 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 185։

— 1. Ամիրգուլի, ի՞գ. հիշված է 1682 թ.—Ձեռ. Վասպ. 957։

— 2. Ամիրգիվ,ար. հիշված է 1711 թ.—Սմբատեանց, Երնջակ 180։

— 3. Ամիրգուլ, ա՞ր. հիշված է անթվական մի հիշատակարանում.—Ձեռ. Վենետ. Բ. 420։

— 1. Ամիր-Հասան, որդի Պապաքի և եղբայր Մխիթար քահանայի, որ Որոտանի Աղիտու վանքում գրեց մի Աւետարան, 1296 թ.—Սմբատեանց, Սրնջակ 201։

— 2. Ամիր-Հասան Բ-ի շինածն է Սպիտակաւոր Աստուածածնի վանքը, որի պատի վրա քանդակված է իր նկարը՝ երիտասարդական հասակում (1321 թ.).—Եղբակեանք 201—202, 212—214։

— 3. Ամիր-Հասան, որդի Ջալալի. իբր վկա հիշված է 1456 թ.—Արցախ 187։

— 4. Ամիր-Հասան, որդի Միրիշիկի, եղբորորդի Ջումայ Բ-ի, Պռօշեանց ցեղից. հիշված են 1475 թ.—Խաղբակեանք 232, 236։

— Ամիրմէտ, ար. հիշված 1576 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 339։

— Ամիրշահ, հիշված է 1534 թ. (Նաթանեան, Արտօսր Հայաստանի, 149—150)։

— Ամիրոց, որդի Կիր Վասլի, որ ունտի եկավ Երզնկայի Ս. Լուսավորիչ վանքը 1287 թ.—Տե՛ս Կիր Վասիլ:

— Ամիրջիհան (տպված է Ամիրճիկան), ար. 1576 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 339։

— Ամիրսարգիս. ազգական Կարապետ կրոնավորի, որ Սըղկայու վանքում օրինակել տվեց Հին Կտակարանը 1381 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 850)։

— Ամիր-Սարգիս, Անգեղակոթեցի, որդի Ղազիկի. շինել է Վաղադինի Ս. Կարապետ վանքի գլուխը և կանգնեցրել է խաչը 1438 թ.—Սիսական 525։

— Ամիրվելի անունը ստույգ հիշատակությամբ հիշված է 1538 թ.—Սմբատեան, Գեղարքունի 445։

— Ամսաչան (այսպես ուղղել՝ Ամսաճան), որդի Գրիգորի,

ունի մի ընդարձակ Արձ. որ ավանդում է Չքր. Պատմ. Գ. 22=Շահխաթ. Բ. 106. թեև անթվական, բայց 1184—1212 թվերի շրջանում։ Արձանագրությունը ճապաղ լեզվով է և չի հասկացվում. երևի Ամսաջանը պաշտոնյա էր Շահանշահի և Շրվանշահի մոտ, որոնց շնորհիվ հողեր է ստացել Յովհաննավանքում և պատարագ է հաստատում նույն երկու պարոնների, իր կնոջ Բէսուճի և մի ուրիշ մերձավոր Ջանի հիշատակին։

— **Ամրպէկ**, որդի աթաբէկ Աւագի. Ամրպէկի դուստրն է Խուանդ խաթուն՝ կին Քուրդ իշխանի Անբերդի, հիշված 1338 թ.— ZAPh 2, 46։

— **Այտինբէկ** № 2 և **Այտին** № 3 պետք է լինեն միևնույն անձը, ըստ որում երկուսն էլ որդի են Աթաբէկի։ Այս Աթաբէկը (№ 3) որդի է Ջալալի և թոռն «մեծ Աթաբէկի». վերջին անունով պետք է հասկանալ Աթապէկ № 1, որ իրոք Ջալալի պապն է։ Մատթէոս կաթուղիկոս, Այդին և Խիմշայ եղբայր են և որդիք Աթաբէկի (№ 3).— Բարխուդ. Պատմ. Աղուանից էջ 142 Աթաբէկի որդիքն է համարում Այտին և Աղբաստ. ըստ մեզ վերջինս որդին է Ջալալի։

— 1. **Այնսալ**, որդի Ջաջուռ Բ իշխանի Խաղբակեան, հիշված 1220-ական թվերին.—Բարխուդ. Պատմ. Աղուանից, Ա. 144. բայց Յովսէփեան՝ Խաղբակեանք, իր տոհմագրության մեջ չգիտե այսպիսի անուն։

— 2. **Այնսալ**, որդի Ջաջուռ իշխանի, Արցախ գավառի Խոխանաբերդում։ Այնսալի դո՞ւստրն է Վանենի, որ ստացավ 1232 թվին գրված մի Ավետարան և նվիրեց Հաւապտուկ վանքին.—Բարխուդարեանց, Աղուանից երկ. 235։

— **Անագովլէ**, որդի Սմբատի. գնել է Գիշուկի տունը և նվիրել Հոռոմոսի վանքին՝ 1247 թ.—Արձ. Շիրակ 20 ա։

— **Անայիտ**, կին Մխիթարի, որ նվերներ արեց Արտաւազայ վանքին 1161 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 365։

— **Անա-պիքէ**, իգ. հիշված է 1695 թ.—Ջեռ. Վասպ. 982։

— 1. **Անանիա** առաջնորդ Խաղտեաց Ալնոց վանքի, 1203 թ.— Տաթև, 1927, 182։

— 2. **Անանիա** (№ 6) Մոկացի, կաթուղիկոս Հայոց. նշանավոր է այս կաթուղիկոսի մի գրվածքը՝ «Տեառն Անանիայի Հայոց կաթուղիկոսի յաղագս ապստամբութեան տանն Աղուանից, որ ընդ ժամանակս ժամանակս լեալ իցէ ձեռնադրութիւնն արտաքոյ սուրբ Լուսաւորչի աթոռոյն», Հրատ. Արրտ. 1897, էջ 129—144։ Այս գրվածքի մեջ մանրամասն պատմում է իր ճամփորդությունը Աղուանք

և Սմբատ՝ հակաթոռ կաթողիկոսների հեռացման առթիվ։ Միաժամանակ տալիս է երեք խոստմնագիր՝ Սիւնեաց Վահան, Ջուանշիր և Վասակ իշխանների, որոնք խոստանում են մնալ Հայոց կաթողիկոսի հպատակության տակ։ Կարևոր է այս գրությունների թվականը.—Օրմանյան Անանիա Մոկացու թվականը դնում է 946—968. նրա ժամանակակից թագավորներն էլ Աբաս Ա «930—954» և Աշոտ Գ Ողորմած «954—977»։ Անանիայի գրվածքի մեջ դրված են հետևյալ թվականները.—Սիւնիքից իր առաջին վերադարձը դնում է ՅՂԸ=949 թ. սրանից հետո՝ իր՝ Անանիայի գահակալության 13-րդ տարին (ըստ Օրմանեանի՝ 959 թ.) տեղի է ունենում Աբասի մահը (ըստ Օրմանեանի՝ 954!) և Աշոտ Ողորմածի գահակալությունը։ Քիչ հետո՝ Անանիան հայտնում է, թե իր աշխատանքները սկսեց ՅՂԱ= 942 թ. և վերջացան ՆԷ=958 թ., երբ մեռան Գրիգոր Դերենիկ թագավոր Արծրունեաց, Գագիկ կաթողիկոս Աղուանից և Յակոբ պարոնտամբ Սիւնեցի.—Անան. պատ. 141 ա, 142 բ, 143 ա.—սեռ. Անանիայի՝ անդ 129 ա, 142 ա։

— 3. Անանիա (№ 17) վարդապետ Սանահնեցի, որ և Հաղբատացի. սրա Հակաճառութեան և Մակարայ թղթի մասին երկար խոսում է Ակինեան, Թուղթ Մակարայ 82 և այլն։

— 4. Անանիա, սպասավոր եկեղեցւոյ, Ագուլիս 1481 թ.— Ամբատեանց, Երնջակ 300։

1. Անաստաս Ա Ակոռեցի, կաթողիկոս է նստել ըստ Առաքելեան, Տեղեկ. Արմֆանի 1941, № 1, էջ 65՝ 662—668 թթ.։

2. Անաստաս Ա կաթողիկոս.—Վանակ. տարեմ. 164 բ։

— Անգինէ, այժմ Կովկասում ստացել է Անգին ձևը։

— Անդրէաս՝ քահանա Կեսարիոյ Մանտիսոն գյուղի. իր օրինակ Ճայսմաւուրքը տվեց Յովհաննէս աբեղային արտագրելու համար՝ 1495 թ.—Ալպօյաճեան, Պատմ. Հայ Կես. Բ. 1850։

— Անդրոնիկոս քահանա Անաւարզայի Ս. Աստուածածին եկեղեցու 1314 թ.—Սիսուան 243 ա։

— Անի, իգ. նորամուտ անուն. գործածական է արևմտահայոց մեջ (Սով. Հյաս. 1946, հունիս 29, էջ ա, սյունակ 6-րդ)։

— Անարայիս, անսովոր անուն, որ անսովոր ձևով էլ հիշված է Հայրավանքի 1211 թվի արձանագրության մեջ.—Սիսական 40 (Սմբատեանց Գեղարքունի 435 ունի նույն արձանագրությունը, բայց այս անունը լուծյան է մատնել)։

— Անաւուխ, իբրև նոր ապացույց այն մասին, թե Անանուխ եղել է անձնանուն, հիշենք նաև այն, որ այժմ էլ գործածական է

ժողովրդի մեջ՝ Նանուխ ձևով, բայց իգական. տե՛ս Սով. Հայաս. 1945 թ. մայ. 23, էջ ա, սյուն. 6-րդ։

— 1. Անդրէաս եպիսկոպոս, առաջնորդ Կեսարիոյ, հիշված է 1478 թ. և 1481 թ. իսկ 1484 թվին էլ ասված է, որ նրա 24-րդ տարին է. ըստ այսմ՝ նստել է 1460 թ. աթոռակից ունենալով Կիրակոսին.— Ալպօյաճեան, Պատմ. Հայ Կես. Բ. 1848։

— 2. Անդրէաս սարկավագ Եւդոկիացի, ունի ժամանակագրություն (ընդհանուր), որ սկսում է Պոլսի գրավումից և հասնում է մինչև 1585 թ. (Գիտ. նյութերի ժող. № 1, էջ 219)։

— Անիար (Այրարատ 263) անունը Գեղարքունի 353 գրում է Անխար։

— Անծեղ, ար. հիշված է 1710 թ.—Քօսեան, Բարձր Հայք. Ա. 112։

— Անձրև, հայր Թուխանի՝ վանահոր Փերճերի վանուց՝ 1325 թ. երբ մեռած էր Անձրևը.—Սիսուան 153 ծան.։

— Աննա, կին Աբրահամի՝ թոռան Մարկոս քահանայի, որ գնեց մի հին Աւետարան 1439 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 83 բ։

— Աննման, հիշված նաև 1718 թ. (Բարխուդարեանց, Աղուանից երկ. 171)։

— ԱՆՈՒՄ, ար. անսովոր անուն. մի անգամ գտնում եմ հիշատակված Անում ոմն Ջքետեցի, որ Վենետիկումն էր 1697 թ.— Սիսական 288։

— Անտիգոս կա հիշված 1683 թ. երկու հոգի Իտալիայում, Լիվոռնօ.—Ուղուրլեան, Պատմ. գաղթ. Լիվոռ. 258։

— 1. Անտոն, աղօնմաղ Թիւրքի վանից (Կիլիկիա). հիշված 1314 թ.—Սիսուան 156 բ։

— 2. Անտոն, միակեաց կուսակրոն, միաբա՞ն Ակների վանից, հորեղբայր Գրիգոր քահանայի՝ ստացողի Ակների վանքում, 1336 թ.—Սիսուան 156 ա։

— 3. Անտոն Մինոր, դեսպան ուղարկվեց Լևոն թագավորի կողմից, Գրիգոր Սոգենցի հետ՝ Անգլիոյ Եդուարդ թագավորին, 1343 թ.—Սիսուան 559 բ։

— 4. Անտոն քահանա, թուղթ էր կոկում Ստեփանոս գրչի համար, երբ սա արտագրում էր Եսայի Նչեցու քերականությունը՝ Ղալաթիոյ Ս. Սարգիս եկեղեցում, 1361 թ.—Թորգոմեան, Ստամպօլոյ պատմ. Բ. 485։

— 1. Աշոտ (№ 31) Ա թագավոր Բագրատունեաց.—տես. Աշոտոյ՝ Անան. ապստ. 139 բ։

— 2. **Աշոտ** (№ 47) իբր իշխանաց իշխան հիշում է Անանիա Մոկացին՝ Սիւնիքից ի դարձին ի Շիրակ.—Սեռ. Աշոտի՝ Անան. ապստ. 139 բ. 142 ա։—Ուղ. Աշոտ՝ անդ 140 ա, 144 աբ. տալիս է նրա գովեստը 140 ա։

— 3. **Աշոտ**, թվի իշխան Կուաշ գյուղի, որ (իր որդո՞ւ) Շահանշահի արևշատության համար ջաղացք ու հողեր է նվիրել Կուաշի Ս. Ստեփանոս վանքին, 981 թ.—Արձ. Այրարատ 146, Բանաս. 1903, 27։

— 4. **Աշոտ**, մի այգի գնեց Աւագ-Սարգիս ամիրսպասալարից և նվիրեց Հոռոմայրի վանքին՝ 1186 թ.—Շողակաթ 83։

— 5. **Աշոտ** (№ 67) Նղրեցի, որդի Օշին Նղրեցու, Կոստանդին Ե թագավորի կնոջ եղբայրն էր. Լևոն Զ-ի գալուց առաջ փախել էր Եգիպտոս և հավատն ուրանալով՝ մտել սուլթանի ծառայության։ Հայ իշխանները դժգոհ Լևոնից, դիմեցին նրան և հայտնեցին, թէ պատրաստ են թագավոր դնել նրան, եթե սուլթանի զորքով գա գրավելու Սիսը (1374 թ.).—Դարդել 119, Բասմաճեան, Լևոն Ե, էջ 48։

— 6. **Աշոտ** մարզպան (№ 59) հիշված է նաև 1081 թ. Կիւրիկէ Բ-ի մի արձանագրության մեջ.—Մովսէսեան, Լոռիի Կիւր. թգ. 55։

— **Ապըլղոյ**, միաբա՞ն Գալու վանից (Կիլիկիա), հիշված 1325 թ.—Սիսուան 201 ա։

— **Ապով**, հիշված է մի խաչքարի վրայ, 1336 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 448։

— **Ապուքապ**, առաջ վրանապահ էր Դաւիթ կյուրապաղատի և Գէորգ Բարազբաձէի, որ հիմնադիրն է Աթոս լեռան Իվերոն վանքի։ Ռոմանոս կայսեր բանակում, Սուրիայում (1030 թ.), եղավ կուսակալ Եդեսիոյ և ամբողջ գավառը շենացրեց. մեռավ 1077 թ. և իրեն հաջորդեց որդին Վասիլ՝ Մանազկերտի պաշտպանը.—Ալպօյաճեան, Պատմ. Հայ Կես. Ա. 438։

— 1. **Աշուշայ Ա**, որդի Թոռնիկ Ա-ի և եղբայր Ջորտուանէլ Ա-ի, հօրեղբայր Յովհաննէս-Թոռնիկ Բ-ի, որ մեռել է 984 թ.։—Տայոց Թոռնիկեանց տոհմից է.—Ակինեան, Մատեն. հետազ. Դ. 60։

— 2. **Աճշուշայ** Բ, որդի Ջորտուանէլ Ա-ի և թոռն Թոռնիկ Ա-ի։ Տայոց Թոռնիկեանց տոհմից (Ժ դար).—Ակինեան, Մատեն. հետազ. Դ. 60։

— **Աշքաղեա**, կին Աւագ-Սարգսի, որ մի Աւետարան նվիրեց Ս. Մեսրոպի գերեզմանին (Մասրևան), 1387 թ.—Սիսական 319 բ։

— Աջանար, նվիրատու Հայրավանքի. հիշված է անթվական մի արձանագրության մեջ.—Միսական 40, Սմբատեանց, Գեղարքունի 436։

— Աջամի, որդի իշխանի, իշխան Աղուանից, նստում էր Ցօրայ ամրոցում, 1348 թ.—Բարխուդ. Պատմ. Աղուանից Ա. 132, Արցախ 67։

— 1. Առաքեալ արքեպիսկոպոս, գրել է տվել երկաթագիր մագաղաթյա մի Աւետարան, Հռոմկլայում, 1165/6 թթ.—Յովսէփեան, Նիւթեր և ուս. Բ. 14 բ։

— 2. Առաքել քահանա, ստացող. Կեսարիայում Գորգ քահանային գրել տվեց մի Աւետարան, 1191 թ.—Ալպօյաճեան, Պատմ. Հայ Կես. Ա. 892, Բ. 1839։

— 3. Առաքեալ քահանա Կարնեցի. մանուկ հասակում Կարինում գերի ընկավ թաթարների ձեռքը, տարվեց Թաւրէժ, ապա ազատվելով անցավ Գառնի ուսանելու. գնաց Աստապատ իբրև քահանա և այդտեղ իր սեփական գործածության համար օրինակեց Աւետարանը՝ 1269 թ.—Շողակաթ 203։

— 4. Առաքել քահանա, մարմարիոն քարը տվեց Մխիթար քահանային, երբ սա արտագրում էր Աւետարանը՝ Որոտանի Աղիտու վանքում, 1276 թ.—Սմբատեանց, Երնջակ 201։

— 5. Առաքել կուսակրոն քահանա, գրիչ. Յակոբ Կրակացու պատմելով Ջերմաղբյուրի վանքում օրինակեց Փիլոնի գործերը, 1325 թ.—Միսուան 547 ա։

— 6. Առաքեալ, Արտազ գավառի՞ց, աշակերտ Եսայի Նչեցուգնաց աշակերտելու Բարթուղիմէոս լատին եպիսկոպոսին և դարձավ ունիթոռական, շուրջ 1332 թ.—Միսական 384 ա։

— 7. Առաքել գրիչ. Կոպիտառի դղյակում, Թորոս սարկավագի համար օրինակեց Մանրուսմունքը՝ 1338 թ.—Ջեռ. Հալէպի Ա. 24 բ։ (Գրիչը իրեն հիշում է հետևյալ ձևով. «ինդ նմին զրաղմամեղս զառա. և զա. արեան մերձաւորս իմ». Հրատարակիչը չէ նկատել. բայց պետք է կարդալ «զԱռաքել և զամենայն արեան...»)։

— 8. Առաքել, որի տապանը կա Դարբանդի Մլլա խալիլ գյուղում (Վատնեան դաշտ), 1363 թվից (կասկածելի).—Սմբատեանց, Սադիան 176։

— 9. Առաքել, որի խաչարձանը կա 1363 թ.—Բարխուդարեանց, Աղուանից երկ. 109։

— 10. Առաքել դպիր, Աստապատում օրինակեց մի Աւետարան 1369 թ.—Սմբատեանց, Երնջակ 121։

— 11. Առաքել, անհայտ հիշատակագիր ոմն 1381 թ.—Թորոս աղբ. Բ. 360։

— 12. Առաքել, որդի խութլուշայի, որ գրել տվեց մի Ավետարան 1386 թ.—Ճանիկեան, Հնութ. Ակնայ 78։

— 13. Առաքել (№ 71) նույն է № 70-ի հետ, որովհետև Ավետարանը նվիրում է «ի գերահռչակ ուխտս Ս. Յակոբ, որ է յերկիրս Ռշտունեաց», ըստ Նոտարք 155։

— 14. Առաքել (№ 90) համարել եմ համանուն որդի տանուտէր Առաքելի (Ձեռ. Վասպ. 453)։ Հայոց մեջ համանուն որդի չի լինում. սխալս առաջացել է Լալայեանի հետևյալ դարձվածից. «և զաւակաց՝ Առաքելին, Խէրապէտին և Աւետին». պետք է ուղղել «և զաւակաց Առաքելին՝ Խէրապէտին և Աւետին»։ Սրանով որդի Առաքելը կջնջվի։ Ապացույցն էլ այն է, որ էջ 455 կրկնվում է Առաքելի որդիների հիշատակությունը և չկա Առաքել որդի։

— 15. Առաքել (№ 77) Բաղիշեցի. լրացուցիչ տեղեկություններ տե՛ս Յակոբ Ղրիմեցի։ Աղբյուրների մեջ ավելացնել Ձեռ. Հալէպի Ա. 104 բ։

— 16. Առաքել կուսակրօն, որդի Դանիէլի «աշակերտի բանի», որ Մաղարդի վանքում օրինակել տվեց Ավետարանը 1427 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 414։

— 17. Առաքել (№ 77) Բաղիշեցու «Տաղ ի վերայ Յովասափու թագաւորի՝ որդւոյ թագաւորին Հնդկաց Աբեններայ» տպված է ամբողջությամբ (326 տուն) «Նկարագրութիւն հոգևոր վարուց Յովասափու որդւոյ թագաւորին Հնդկաց» աշխատության մեջ, տպ. Վաղարշապատ, 1897 թ., էջ 131—179։ Առաքել Բաղիշեցու անունը հիշված է էջ 131, 179։ Տաղի գրության թվականն է 1434։

— 18. Առաքել, եղբայր Սսոյ Կարապետ կաթուղիկոսի 1448 թ.—Սիսուան 223 բ։

— 19. Առաքել վարդապետ, ուսուցիչ Յովսէփ աբեղայի, որ Մկրտիչ Նաղաշից Ամիթում գնեց մի Աստուածաշունչ՝ 300 թանկայով, 1449 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 116։

— 20. Նույն Առաքել (№ 71) աբեղան Ռշտունյաց Բերդաձոր վանքում 1448 թվին գրել է տվել մի Ավետարան. հիշատակարանից հայտնի է, որ ինքը խաչատուրի որդին է.—Ձեռ. Վասպ. 400։

— 21. Տէր Առաքեալ, նորոգել է Ճալէթի վանքի գմբեթը՝ 1475 թ.—Բարխուդ. Աղուանից երկ. 249—250։ Հասանբէկից գնել է Ճալէթի գյուղը և նվիրել վանքին՝ 1511 թ.։

— 22. Առաքել աբեղա, ուսուցիչ և ուսուցիչ Յովհաննէս աբեղայի, որ գրեց մի Յայսմաւուրք՝ Կեսարիոյ Մանտիսոն գյուղում, 1495 թ.—Ալպօյաճեան, Պատմ. Հայ Կես. Բ. 1850։

— 23. Տէր Առաքել Թղկայ, նորոգել է Ճալէթի վանքի գլուխը և կանգնեցրել է մի խաչքար 1495 թ.—Բարխուդ. Աղուանից երկ. 249, Պատմ. Աղուանից Բ. 18։

— 24. Առաքել կաթողիկոս Աղուանից (№ 102). Հիշված է նաև Բարխուդ. Աղուանից երկ. 247, բայց 1499 թ.։

— 25. Առաքել Սէօկիւթլուեցի, կաթողիկոս Աղուանից, հաջորդեց Թովմային 1505 թ. նստել է Ճալէթի վանքում. գնել է Ճալէթ գյուղը վանքի համար՝ 1511 թ.։ Մահվան թվականը հայտնի չէ։ Սրան հաջորդում են Արիստակէս Բ, ապա Սարգիս Ա (1546 թ.).—Բարխուդարեան, Պատմ. Աղուանից Բ. 20 (այս թվականները չեն համապատասխանում վերը Առաքել № 102 տրված թվերի հետ)։

— 26. Առաքել Դաւրիժեցի պատմիչ՝ Ես. կթղ. էջ Թ և 7, 12.—Սրա մասին առանձին հոդված հրատարակեց Ռուբէն վարդապետ, «Էջմիածին» 1944, № 10—12, էջ 36—41։

— 27. Առաքել Սիւնեցի՞ն է որ հիշում է Դրնդ. 512։

— Առեստ (=Ովրեստէս) քահանա, հանգուցյալ հայր Վասիլ դպրապետի Մելիտինեցւոյ, որ օրինակեց մի ընտիր հունարեն Աւետարան, 1226 թ.—Ալպօյաճեան, Պատմ. Հայ Կես. Ա. 543 բ, 1840։

— Առկախել 1600-ական թվերին, Դրնդ. 361, 369. կարծում եմ Դարանաղցու հնարած ձևն է փոխ. Առաքել, որովհետև «ուրացող եղև Քրիստոսի, որպէս զՅուլիանոսն և զԱկիւղաս թարգմանիչն, և գնաց ի Լեհն ամենայն տամբն և անդ խայտառակեալ սատակեցաւ...»։

— Առներ, կին Ստեփանոսի, որ էր վաճառական Վենետիկում 156? թ.—Սիսուան 262 բ։

— 1. Ասադ, հայր Մելքիսեդ աբեղայի, որ Ամարասում գրել տվեց մի Աւետարան 1428 թ.—Սմբատեանց, Երնջակ 253։

— 2. Ասատ, Բագրատունի մի իշխանի հրամանով հայերեն ընդարձակ Բարաղամի վեպից «ծայրաքաղ» է արել և կազմել մի նոր օրինակ, ԺԳ/ԺԴ դարում, կամ ավելի շուտ։ Այս օրինակը ԺԵ դարի սկզբում մտել է Յայսմաւուրքի մեջ և 1434 թվին էլ Առաքել Բաղիշեցու ձեռքով ոտանավորի է վերածվել։ Բոլորը միասին հրատարակեց Մ. վարդապետ Տեր-Մովսէսեան, Վաղարշապատ, 1897 թ. «Նկարագրութիւն հոգևոր վարուց Յովասափին՝ որդւոյ թագաւորին

Հնդկաց» վերնագրով։ Ասատ անունը հիշված է այստեղ էջ լդ, լե, խը, ծ, հզ, 130։

— Ասքամվէրտի, այս անունը երկու անգամ պատահում ենք Լիվոռնոյի Միրմանեան ազնվական տոհմի ճյուղագրության մեջ. մին 1399 թ. և մյուսը 1478 թ.—Ուղուրլեան, Պատմ. գաղթ. Լիվոռն. էջ 206 (կեղծիք)։

— Ասիլ, գրիչ. օրինակել է Շիրակացու Վասն զղջման արտասուաց և այլ գործեր 1320 թ.—Աշ. Աբրահամեան, Շիրակացու մատեն. 157, 161։

— Ասլան, հայր Սարգսի, որ մի խաչքար է կանգնեցրել իր մոր՝ Շահինարի հիշատակին, խաչենի Կոճողոտ գյուղում, 1249 թ.—Արցախ 190։

— 1. Ասլանբէկ, որդի Շիրազխաթունի, որ նորոգել տվեց մի Աւետարան, 1470 թ. (№ 12 Ասլանի թոռն է).—Թորոս աղբ. Բ. 356։

— 2. Ասլանբէկ, որդի Խնդուբէկի, թոռն Ասլանի. մայրն է Շիրազխաթուն (կամ Շիրազմամա), որ նորոգել տվեց մի Աւետարան, 1470 թ.—Թորոս աղբ. Բ. 356։

— Ասըլպէկ, պարոն, Կիլիկիոյ մեծ արտագաղթի առաջնորդներից մեկը 1404 թ.—Սիսուան 542 թ.։

— Ասլիզադա, իգ. 1609 թ. Bodleian 110, և մի ուրիշը՝ Ասլիզադէ, իգ. անթվական. անդ էջ 147։

— 1. Ասլիմելիք, մղտեսի, կին մղտեսի Մելիքշահի և մայր մղտեսի Մանուկի, որ Կեսարիայում գրել տվեց մի Ճաշոց՝ 1484 թ.—Ալպօյաճեան, Պատմ. Հայ Կես. Բ. 1849։

— 2. Ասիլմէլիք (այսպես փոխել Ասիլ № 3 անունը), որդի խաչատուրի (№ 126), կոչված է նաև Ասիլ. գրել տվեց Ներսէս աբեղային մի Աւետարան և նվիրեց Սարգիս երեցին, 1488 թ.—Ձեռ. Վասպ. 240—241։

— Ասմանկուլ անունը հիշված կա նաև 1537 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 446։

— Ասպօ, ար. 1810 թ.—Ձեռ. Վասպ. 291։

— 1. Աստվածատ(ուր), միաբան աստուածընկալ ուխտի. 1207 թ.—Այրարատ 255։

— 2. Աստուածատուր քահանա, որի հիշատակին Յովհաննէսը կանգնեցրեց մի խաչքար՝ Աստուածընկալ ուխտում, 1220 թ.—Այրարատ 255։

— 3. Աստուածատուր, երեց Բագարանի. մի այգի է նվիրել

Բագարանի մայր եկեղեցում՝ Մխիթար վանահոր ձեռքով, շուրջ 1233 թ.—Արձ. Այրարատ 67։

— 4. Աստուածատուր, մականուն Գառնով, գրիչ. օրինակել է Մամխսար մայրաքաղաքում մի Աւետարան, Բարսեղ և Ստեփանոս քահանաների համար, 1275 թ.—Յովսէփեան, Նիւթեր և ուս. Բ. 37 բ։

— 5. Աստուածատուր բառի կրճատ է Աստուր, որի ավելի հին վկայությունն ունենք 1283 թվից։ Այս թվից է Աստուր, որդի Տիրատուրի և եղբայր Երեմիաս քահանայի, որ Կարնոյ Կան գյուղում գրել տվեց մի չքնաղ Աւետարան, 1283 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 644։

— 6. Աստուածատուր, որդի Սիմէոն գրիչ Բարերդցու. Թուղթ էր կոկում, երբ իր հայրը օրինակում էր Ճառընտիրը, Կաֆայում 1305 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 512։

— 7. Աստւր, որդի Աչամիի. մեռավ «կէսաւրեայ ժամանակաւ». հայրը մի խաչքար կանգնեցրեց նրա հիշատակին՝ 1348 թ.—Բարխուդ. Արցախ 67։

— 8. Աստուածատուր պարոն, հայր Բաբերդի առաջնորդ Յովհաննէս արքեպիսկոպոսի, որ մեռավ 1395 թ.—Նոտարք 7։

— 9. Աստուածատուր, որդի Ատոմի. Յակոբ վարդապետի Շաքուր քրոջ զավակն էր. 14 տարեկան էր, երբ առաջին անգամ օրինակեց Ոսկեփորիկը, իր մորեղբայր Յակոբ վարդապետի պատվերով, 1403 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 931։

— 10. Աստուածատուր քահանա, գրիչ. օրինակել է Աւետարանը Մոկաց Ս. Խաչի վանքում, Ղազար և Անտոն քահանաների համար, 1410 թ.—Ձեռ. Վասպ. 295 (հիշում է Լալայեանը № 138 ձեռագրի նկարագրության մեջ, բայց չկա հիշատակարանում)։

— 11. Աստուածատուր, կինն է Նշխուն, որդին Մարտիրոս. իր եղբոր Յովհաննէսի հետ միասին գնեցին մի հին Աւետարան, որ Մարտիրոսը նորից կազմել տվեց 1423 թ.—Ձեռ. Վասպ. 192։

— 12. Աստուածատուր, որդի Խաչատուրի և եղբայր Յովսէփ աբեղայի, որ Մկրտիչ Նաղաշից ստացավ մի Աստուածաշունչ 1449 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 115։

— 13. Աստուածատուր, նվիրատու Նեղուցի Ս. Աստուածածնի վանքի (Արզաքան), 1451 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 312։

— 14. Աստուածատուր արքեպիսկոպոս Հաղբատի, հիշված 1455 թ.—Արցախ 281։

— 15. Աստուածատուր, ոսկերիչ, որդի Ստեփանոսի և եղբայր

Կարապետ Բաղիշեցու (ծն. շուրջ 1475 թ.), որ էր գրիչ, տաղասաց, ապա և առաջնորդ Մշոյ Առաքելոց վանքի։ Նահատակվեց Մշու դաշտում՝ ավազակների ձեռքով.—ՀԱ 1937, 320։

— 16. Աստուածատուր, փեսա մղդեսի Մանուկի, որ Կեսարիայում գրել տվեց մի Ճաշոց՝ 1484 թ.—Ալպօյաճեան, Պատմ. Հայ Կես. Բ. 1849։

— 17. Աստուածատուր սարկավագ, աշակերտ Յովհաննէս գրչի, որ Կեսարիայում օրինակեց Ճաշոցը՝ 1484 թ.—Թուղթ էր կոկում և օգնում իր ուսուցչին.—Ալպօյաճեան, Պատմ. Հայ Կես. Բ. 1849։

— 18. Աստուածատուր Թութկանց, մահտեսի, որդի Հանէսի, մայրն է Բէկրի. կինն է Մրուաթ. փրկանքով ազատեց գերի ընկած մի հին Աւետարան Ոստանում, 1487 թ.—Ջեռ. Վասպ. 114—115։

— 19. Աստուածատուր գրիչ. Եղեգեաց անապատում օրինակեց Աւետարանը՝ 1494 թ.—Սմբատեանց, Երնջակ 273։

— 20. Աստուածատուր որդի Յուսէփ երեցի՝ քեռու Սահակ երեցի, որ Կեսարիոյ Մանտիսոն գյուղում օգնեց Յովանէս աբեղային գրելու Յայսմաւուրքը՝ 1495 թ.—Ալպօյաճեան, Պատմ. Հայ Կես. Բ. 1850։

— 21. Աստուածատուր, որդի Ջէմպահի՝ եղբոր Սահակ երեցի, որ Կեսարիոյ Մանտիսոն գյուղում օգնեց Յովհաննէս աբեղային գրելու Յայսմաւուրքը՝ 1495 թ.—Ալպօյաճեան, Պատմ. Հայ Կես. 1850։

— 22. Աստուածատուր քահանա Տիւրիկցի. Երուսաղէմի միաբաններից էր. մի խումբ միաբանակից ընկերների հետ Համբարձման սարից ցած էին գալիս. Նրանց մեջ էին Տէր Մանուէլ հայրապետ խորվիրապի, Պետրոս եպիսկոպոս, Աւետիք վարդապետ Արճիշեցի և այլն։ Շուկայից անցնելու ժամանակ, մահմեդականները բռնեցին, զրպարտեցին, թե նա մի անգամ մահմեդական է եղել դարձած և պահանջեցին, որ նորից ուրանա իր հավատը։ Մերժեց. քսան օրից ավելի բանտարկեցին և տանջեցին ու վերջում գլխատեցին 1496 թ.։ Վրթանես տաղասացը՝ որ ականատես եղավ այս դեպքերին, գրեց նրա վրա մի տաղ, որի առաջին կեսը տպված է Ջեռ. Հալէպի Ա. 207, իսկ երկրորդ կեսը՝ անդ, էջ 146։ Երկուսի միացմամբ ամբողջ տաղը վերականգնվում է։

— 23. Աստուածատուր, որդի Ստեփանոսի, ոսկերիչ. եղբայր Կարապետ վարդապետ Բաղիշեցի տաղասացի. նահատակվել է Մշո

անապատում հարամիներից, նախքան 1502 թիվը.—Ակինեան, Մատեն. հետազ. Դ. 313։

— Ասպատուր, հիշված է Մոկսում 1648 թ.—Ձեռ. Վասպ. 909։

— Ասփանացեան ազն (հայեր).—Անան. ապստ. 136 ա։

— Ատան անունը Ալիշանը համարում է աղավաղված Ատոմ անունից (Սիսուան 314)։ Ապացույց բերելով Սմբատ պատմիչը, որ գրում է Ատոմ (№ 5) փոխանակ ասելու Ատան, ենթադրում է, որ այս Սիր Ատանը, ինչպես նաև մնացյալ «հույները» հույն չեն, այլ հունադավան հայ։ Ատանի սերունդը և Ատոմեանները Վասպուրականից գաղթած հայեր են, Սենեքերիմ թագավորի որդի Ատոմի սերունդը, որ Սեբաստիայից գաղթեցին Կիլիկիա և ընդունելով հունադավանություն, կայսրից հողեր ստացան։

— 1. Ատոմ, կուսակրոն կրոնավոր Մաղարդայ վանից, հիշված 981 թ.—(կեղծիք).—Սմբատեանց, Երնջակ 424։

— 2. Ատոմ երեց, տաղասաց. թվականն անհայտ. իր գանձերից մի նմուշ՝ Ձեռ. Վենետ. Բ. 1142 «Պարգևատուն ամենեցուն աստուածորդին» (Լուսաւորչի վրա)։

— 3. Ատոմ, հայր Յակոբ վարդապետի, որ Աստուածատուր գրչին գրել տվեց մի Ոսկեփորիկ, 1403 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 931։

— 4. Ատոմ, հայր Աստուածատուր գրչի, որ օրինակեց Ոսկեփորիկը 1403 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 932։

— 5. Ատոմ քահանա (№ 59) և Ատոմ կրոնավոր (№ 66) նույնանում են, երկուսն էլ լինելով հորեղբայր Կիրակոս երեցի Հաւչոշենց։

— 6. Ատոմ եպիսկոպոս Անձևացեաց (№ 9). սրա մասին ավելի ընդարձակ տե՛ս Ձեռ. Վենետ. Բ. 287—289։ Նկատելի է, որ Ատոմ եպիսկոպոս Անձևացեաց և Ատոմ իշխան Անձևացեաց, ինչպես նաև Ատոմ և Արամ մատենագիր շփոթված են իրար հետ, և պետք կա ծանոթանալ ձեռագրերի հետ, մին կամ մյուսը ճշտելու համար։ Սրանց ավելացնել նաև մի ուրիշ Ատոմ, որ թեև մերթ կոչվում է Անձաւացի, բայց ստույգն այն է, որ Արծրունի է և Սենեքերիմ արքայի որդին. Սանահինում գտել է Խորենացու Տիրամօր պատկերի պատմության անեղծ օրինակը և բերել իր երկիրը (Ձեռ. Վենետ. Բ. 430, 434, 457), 1033 թ.։

— 7. Ատոմ, քարտաշ-փորագրիչ. ինքն է քանդակել Մլզնաբերդի (Գանձակ) խաչքարը 1155 թ.—Արցախ 292, Ազգագր. հանդ. Ժ. 310։

— 8. Ատոմ քահանա, գրիչ. Ուռմի քաղաքում, Պազար կոչ-

ված բացավայրում, Յովաննէս քահանայի համար արտագրել է մի Աւետարան, 1273 թ.—Ձեռ. Վասպ. 97։

— 9. **Ատոմ** քահանա (№ 34), փոխել այսպես. որդի Կարապետի, մայրն է Հէրխաթուն, կինը Դիլշատ, որդիներն են Թումա և Էվադշահ (?)։ Տանուտէր խաչատուրից նվեր ստացավ մի Աւետարան, 1418 թ., որ ապա նվիրեց Աթանան գյուղին։ Երբ քուրդ Ամիր Փիրիբէկը արշավեց Աղթամարի վրա և գրավեց ու կողոպտեց (1431 թ.), Աթանան գյուղն էլ զոհ գնաց։ Աւետարանը գերի ընկավ։ Ատոմ քահանան թեև ծերացած և երկու աչքից կուրացած՝ ամեն կողմ որոնեց և գտավ վերջապես Վանում, Յորդարանց Յովհաննէս անուն անձի մոտ։ Մեծ աղաչանքով ու պաղատանքով գնեց Աւետարանը 550 դահեկանով և վերադարձրեց Աթանան գյուղի Ս. Գէորգ եկեղեցուն (1440 թ.).—Ձեռ. Վասպ. 311—313։

— 10. **Ատոմ** քահանա, որդի Ստեփաննոսի, Գրիգոր քահանային գրել տվեց մի Աւետարան, Աղթամար, 1454 թ.—ՀԱ 1937, 579—580։

— 1. **Ատրներսեհ** Սիւնի (№ 11), նույնը Ամիր Ներսէհ ձևով հիշված է 881 թվի մի խաչքարի արձանագրության մեջ, իբր հայր Գրիգոր իշխանի.—Սմբատեանց, Գեղարքունի 607։

— 2. **Ատրներսեհ** (№ 14), թագավոր Աղուանից. որդին էր Համամ բարեպաշտի. իր որդին էլ էր Իշխանակ, որ հարել էր քաղկեդոնական դավանանքին՝ Անանիա Մոկացի կաթուղիկոսի («946—968 թթ.») ժամանակ.—սեռ. Ատրներսեհի՝ Անան. ապստ. 131 ա, 144 ա։

— 3. **Ատրներսեհ**, որդի Աբաս Թագաւորի, եղբայր Աշոտ Գ Ողորմածի և Մուշեղի. հիշված է 958 թ.—սեռ. Ատրներսեհի.—Անան. ապստ. 144 բ։

— 4. **Արան**, եղբայր Բարսեղ Ա արքեպիսկոպոսի Հաղբատի, հայր Դաւիթի՝ որ էր ամուսին Վանէի՝ քրոջ Աբաս Բ Թագավորի Կիւրիկեանց. մեռած էր 1189 թվին, երբ Դաւիթ կառուցեց նրա վրա մի եկեղեցի.—Մովսէսեան, Լոռիի Կիւր. թգ. 71։

— 1. **Արապխաթուն**, հիշված անթվական մի հիշատակարանում.—Ձեռ. Վասպ. 242—243։

— 2. **Արապխաթուն**, անթվական մի հիշատակարանում.—Ձեռ. Սեբ. ՀԱ 1929, 359։

— **Արտու խաթուն**, կին Զաքարէ իշխանի խաչենոյ, որդւոյ Վախթանկի (ժԳ դար).—Տե՛ս Զաքարէ № 15։

— Արզուխան, իգ. գործածական է այժմ էլ. տե՛ս Սովետ. Հյատ. 1945 թ. մայ. 23, էջ ա, սյունակ 5-րդ։

— 1. Արզուման.—Ջեռ. Վեննա. Ա. 640։

— 2. Արզուման, իգ. հիշված է 1490-ից հետո գրված մի հիշատակագրության մեջ (Ջեռ. Սեան. 6 ա), 1603 թ. (անդ՝ 7 ա)։ Իբրև ար. անուն հիշված է 1554 թ. (Manus. Brit. mus. 193 ա)։

1. Առիստակէս Լաստիվերտցի.—Ես. կթղ. էջ Թ։

— 2. Արիստակէս Լաստիվերտցու (№ 3) անունով կա դարձյալ «Մեկնութիւն ընթերցուածոց», որ տե՛ս Ջեռ. Վեննա. Բ. 1061, 1228 թ.։

— 3. Ռստակէս վարդապետ, գրիչ Աւետարանի, ուր թողել է նաև իր նկարը՝ 1182 թ.—Արցախ 101։

— 4. Ըոստակ[էս], միաբան Աստուածընկալ ուխտի, 1207 թ.—Այրարատ 255։

— 5. Ըռըստակէս գրիչ. օրինակեց Հեթում թագավորի քույր Զաբել[?] Հռիփսիմէ կրոնավորուհու հրամանով մի ձեռագիր՝ Կարմիր լեռան Լիսոնկայ վանքում, 1270 թ.—Բանասէր 1899, էջ 130։

— 6. Ըռըս[տակէս] քահանա, կինն է Զարմէլիք. ծնողներն են Յովհաննէս քահանայի, որ Սինեաց Քարադնիս վանքում գրել տվեց մի Աւետարան 1280 թ.—Ջեռ. Վասպ. 104։

— 7. Ռստակէս, մի խաչքար է կանգնեցրել Հերհեր գյուղում, 1290 թ.—Սիսական 111։

— 8. Ռստակէս, մերձավոր Մատթէոս երեցի, որ օրինակեց Տօնականը Վերին-Նորավանքում, 1456 թ.—Հրտր. Ագաթ. 1909 թ. յոչ. էջ ԽՋ։

— 9. Արիստակէս, որդի Աստուածատուր Գառնուկ քահանայի և եղբայր Ներսէս աբեղայի, որի միջնորդությամբ Ստեփաննոս գրիչը օրինակեց մի Աւետարան Տիվրիկի Վասոըռ գյուղում, 1469 թ.—Ջեռ. Վեննա. Ա. 752=Թորոս աղբ. Բ. 364։

— 10. Ըռըստակէս կաթուղիկոս հայոց («Վաղարշապատու») դնում է 1473 թ. մի Աւետարան գրված այս թվին Դաւիթ երեցի ձեռքով (Յովսէփեան, Խաղբակեանք 234). մինչդեռ Արիստակէս անունով կաթողիկոս չունենք այդ թվին։

— 11. Ըռստակէս, որդի պարոն Թորոսի և անդրանիկ եղբայր Էլպաշի Էմին պէկի, որ Կեսարիայում, տէր Յովանէ Նաղաշին գրել տվեց մի Ճաշոց՝ 1481 թ.—Ալպօյաճեան, Պատմ. Հայ Կես. Բ. 1848։

— 12. Արիստակէս քահանա, որ Յայսմաւուրքի օրինակը Նա-

*խմիչկանից Ագուլիս բերում-տանում էր արտագրության համար 1481 թ.—Սմբատեանց, Երնջակ 301։*

13. Ըռըստակէս, *որդի էլպաշի էմին պէկի, որ Կեսարիայում գրել տվեց մի Ճաշոց՝ 1481 թ.—Ալպօյաճեան, Պատմ. Հայ Կես. Բ. 1840։*

— 14. Արիստակէս *վարդապետ, գրիչ. օրինակեց Աւետարանը՝ Սանահինի վանքում, 1490 թ.—Սմբատեանց, Սաղիան 241։*

— 15. Արիստակէս *վարդապետ, գրիչ. Սանահինի վանքում օրինակել է Աւետարանը՝ 1490 թ. (թերևս նույն է № 40).—Բարխուդարեանց, Աղուանից երկ. 182։*

— 16. Ըռիստակէս *երէց, քահանա Կեսարիո Մանտխան գյուղի. «մարումն երետ թանաքի», երբ Յովանէս աբեղան օրինակում էր Յայսմաւուրքը՝ 1495 թ.—Ալպօյաճեան, Պատմ. Հայ Կես. Բ. 1850։*

— 17. Արիստակէս Գ *Քոլատակեցի (№ 45), ըստ Բարխ. Պատմ. Աղուանից Բ. 62 հաջորդել է Շմաւոն Բ-ին՝ 1611 թ. սրան էլ հաջորդել է Մելքիսեթ Արաշեցին։*

— 18. Արիստակէս, *հավատը չուրանալով նահատակվել է Պոլիս 1655 թ.—Թորգոմեան, Ստամպօլոյ պատմ. Բ. 816։*

— 19. Արիստակէս *նահատակ, տե՛ս Երեմ. Չէլ. Օրագր. 77։*

— Արխաճ *անունը գտնում եմ այժմ կենդանի. տե՛ս Սով. Հյուս. 1948 թ. մայ. 9, էջ բ, սյուն. 5։*

— Արծաճ *քրմապետ.—Դրնդ. 515։*

— Արմանի խաթուճ, *կին Յակոբ գրչի, որ Աղթամարում, խոջա Միրիջանի համար գրեց մի Աւետարան, 1493 թ.—Ձեռ. Վասպ. 520։*

— Արմենակոս, *հռչակեց իրեն թագավոր Հայաստանի, է դարում. նրա մահից հետո թագուհի եղավ Կալի անունով մի կին, որ շինեց Կալի Կալա քաղաքը, որ է Կարին.—Իպն Խալլիքան 69, 15։*

— Արշակ Ա *(№ 3). այս թագավորի կտրած դրամի մասին տե՛ս այժմ Տաշեան, Արշակունի դրամներ, Վիեննա 1919, էջ 170 շար. և 183, դրամի նկարով միասին։*

— Արշակ Բ, *շինել է Երզնկայում «անիրաւ» կամուրջը.—Դրնդ. 33։*

— 1. Արտաշէս Ա *(№ 2). այս թագավորին ընծայված դրամի մասին տե՛ս Տաշեան, Արշակունի դրամներ, Վիեննա 1919, էջ 172 շար. և 184—185։*

— 2. Արտաշէս Ա-*ի արշավանքը Փոքր-Ասիա և մինչև Հու-*

*նաստան չի ուրանում Գաթըրճեան Ա. 587, այլ կցում է Միհրդատի արշավանքին. Արտաշէս զինակիցն էր Միհրդատի և մասնակցեց նրա արշավանքին մինչև Աթէնք, ուր սովից նեղվելով՝ ետ դարձաւ։ Արտաշէսի թվականը դնում է Ն. Ք. 111—86։*

— 3. **Արտաշիսի** *Ա.—Գր. տղ. նէմ. 301։*

— 4. **Արտաշէս** *Բ.—Դրնղ. 581։*

— **Արտաշիր** *(№ 7) հիշված է նաև Այրարատ 194 ա՝ 1200 թվի արձանագրության մեջ, որի մասին տե՛ս և Արաս № 17։*

— 1. **Արտաւազդ** *(№ 3). այս թագավորին վերագրված դրամի մասին տե՛ս Տաշեան, Արշակունի դրամներ, Վիեննա 1919, 172, 185։*

— 2. *Հայր* **Արտաւազդ**, *վանական Այծաքարի վանից, անդամ խաչենի եկեղեցական ժողովի, որ գումարեց Անանիա Մոկացի («946—968 թթ.») կաթուղիկոսը.—Անան. ապստ. 134 բ։*

— 3. **Արտաւազ**, *հայր Սարգսի, որ էր տանուտեր Անւոյ 1057—1064 թվերի ընթացքում.—Արձ. Շիրակ 70, 101 ա։*

— 4. **Արտաւազ** *անունը հիշված է նաև 1260 թ. այս անունով մեկը իր այգին ծախել է Յովանէս քահանային, որ և նվիրել է Մակարավանքին (Ղազախ).—Արձ. Արցախ 375։*

— 5. **Արտաւազդ** *Մաղխազ (№ 32). ավելի մանրամասն տե՛ս Ջեռ. Վենետ. Բ. 287—289։*

— 6. **Արտաւազդ** *Բ. (Շիրար).—Վանակ. տարեմ. 166 ա.—սեռ.* **Արտաւազդայ՝** *անդ 166 բ, 167 ա։*

— **Արտաւան**, *որդի կամ եղբայր Հայոց Վաղարշ թագավորի (195—210)։ Գերված էր Վաղարշի հետ։ Հենց այս պատճառով Հռովմայեցոց Սևերոս կայսրը նրան Ծոփաց թագավոր նշանակեց (197 թ.).—Գաթըրճեան, Տիեզ. պատմ. Բ. 177։*

— **Արտաւան**, *տե՛ս Տեղեկ. Ակադ. 1946, № 6, էջ 71—72։*

— **Արտիմ**, *ար. հիշված 1582 թ. (Ալպօյաճեան, Պատմ. Հայ Կես. Բ. 1858)։*

— **Արֆայ** *քահանա, հորեղբայր Բարսեղ և Ստեփանոս քահանաների, որոնք Մամխար քաղաքում Աստուածատուր գրչին գրել տվեցին մի Աւետարան, 1275 թ.—Յովսէփեան, Նիւթեր և ուս. Բ. 37։*

— 1. **Աւագ**, *կանգնեցրել է Հայկավանքում մի խաչքար 1254 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 434։*

— 2. **Աւագ**, *որդի Շահնշահի, որ Ալիղըրըղ գյուղում (Նոր-*

— Բապիեան, պապ Ղևոնդի, որ միջնորդ եղավ գնելու Վաղարշապատ գյուղը իբրև կալված էջմիածնի (1443 թ.).—Ջամբռ 100։

— Բաքօ, ար. հիշված է 1684 թ.—Ձեռ. Վասպ. 966։

— 1. Բագարատ Բ մագիստրոս, որդի Յովհաննէս-Թոռնիկ Բ վանականի (+984 թ.) և թոռն Զորտուանէլ Ա-ի. Տայոց Թոռնիկեանց տոհմից. հիշված է իր հոր «Բուրաստան» կոչված ձեռագրի հիշատակարանում (977 թ.). գտնվում էր այն բանակում, որ Դաւիթ կյուրապաղատը ուղարկեց պաշարելու համար Խլաթը։ Այդ բանակում հանկարծ խռովություն ծագեց, Տայոց զորքը փախավ և նույն շփոթության մեջ սպանվեց Բագարատը (Ասող. Գ. խ)։ Ասողիկը այս դեպքը դնում է ՆԽԷ=998 թվին, որ կրկնում է նաև Ակինեան, Մատեն. հետազ. Դ, 65 և 394 (բայց էջ 72 սխալմամբ դնում է +977)։

— 2. Բագարատ Ա, որդի Զորտուանէլ Ա-ի և թոռն Թոռնիկ Ա-ի. Տայոց Թոռնիկեանց տոհմից (Ժ դար).—Ակինեան, Մատեն. հետազ. Դ. 60։

— 3. Բագարատ Գ պատրիկ, եղբորորդի Յովհաննէս Թոռնիկ Բ վանականի, թոռն Զորտուանէլ Ա-ի, Տայոց Թոռնիկեանց տոհմից (Ժ դար).—Ակինեան, Մատեն. հետազ. Դ. 71։

— 4. Բագարատ, հայր Սարգսի, որ մի խաչքար է կանգնեցրել իր մոր՝ Ազիզի հիշատակին, Խաչենի Թխախոռ գյուղում, 1228 թ.—Արցախ, 190։

— Բադր-ալ-Ջամալիի մասին (էջ 360) տե՛ս նաև Իպն Խալլիքան, էջ 148. սրա որդին է Շահնշահ։

— Բաթիճին, այն է էմիր Շէմսէդդին Աբուլ Ֆադայիլ Բաթիքին, ազգությամբ հայ էր. էլ Իմամ էն Նասըր Լի Դին Իլլահ խալիֆայի մոր ստրուկն էր. երբ Էրբիլ քաղաքը էլ Մուսթանսըր Բիլլահ խալիֆայի իշխանության ենթարկվեց, Բաթիքինն էլ նույն քաղաքի տեղակալ նշանակվեց։ Թաթարները Էրբիլը գրավեցին 1237 թվին, ուստի Բաթիքինն էլ Բաղդադ վերադարձավ, ուր մեռավ 1243 թվին և թաղվեց Շունիզիյէի մեջ (Իպն Խալլիքան 342—343)։

— Պալա (տեռ. Պալին), որդի Յակոբի, հիշված մի խաչքարի վրա, 1460 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 494։

— Բալասի, ար. այժմ կենդանի է Շամախիում.—Սմբատեանց, Սաղիան 281։

— Բալու, ար. հիշված է 1749 թ.—Արցախ, 122։

— Բախտամ, գրված Պաղտամ ձևով 1658 թ.—Արցախ 74։

— Բակուր (№ 10), երկարնակ.—Անան. ապստ. 138 աբ։

— Բակուրան (№ 5) ուղղել այսպես. Բակուրան որդի Կոստանդին իշխանի, եղբայր Կոստանդնի և Բակուրանի. մեռած էր արդեն 1278 թ. և այլն։

* ԲԱՂԴԱԴԻՒԼ, իգ. <Թրք. باغدا كل bagda gül «պարտիզում վարդ» ձևից։ Գործածված է մի անգամ անթվական մի հիշատակարանում, Սմբատեանց, Երնջակ 237։

— Բաղդագիւլ, այժմ կա. Սովետ. Հյաստ. 1945 մրտ. 31, էջ բ, և օգ. 19, էջ բ (Բախտագյուլ ձևով)։

— 1. Բաղտատ, կին Յովհաննէս քահանայի. ծնողներն են Մովսէս աբեղայի, որ Պղնձայգոյ աւագ անապատում օրինակեց Աւետարանը 1451 թ.—Ջեռ. Վասպ. 408։

— 2. Պաղտատ, կին Էլպաշի էմինի, որ Կեսարիայում գրել տվեց մի Ճաշոց՝ 1481 թ.—Ալպօյաճեան, Պատմ. Հայ Կես. Բ. 1848։

— 1. Բաղդասար (№ 12) դպրի կենսագրությունը և իր գեղեցիկ տողերից նմուշներ տե՛ս Գ. Լևոնեան, Տեղեկ. Գիտութ. և արվեստի ինստիտ. № 2, Երևան 1927, էջ 114—131։

— 2. Բաղտասար Թոխաթցի (№ 8). նահատակիս պատմությունը ունի Քօսեան, Բարձր Հայք, Ա. 184—188, հանելով Արծնեան վարժարանի № 810 ձեռագիր Յայսմաւուրքից։ Օրինակը բոլորովին նույնն է մեր Նոր Վկայքի առաջին խմբագրության հետ. միայն վերջում ավելանում է «Իսկ ես Զաքարիա յԱրարատեան տանէ ի Քանաքեռ գեղջէ, աւագ սարկաւագ սուրբ մենաստանին Յօհաննու վանից, էի անդ՝ և հրամանաւ աւագ երիցու քաղաքիս Յակոբայ, բազում հարցաքննութեամբ վերահասու եղէ և ստուգութեամբ գրեցի զամենայն որպիսութիւննս»։ Սրանով իմացվեց, որ Զաքարիան, որ հեղինակն էր երկրորդ խմբագրության (տե՛ս իր Պատմ. Բ. էջ 120), ուր թվական էլ գրել էր սխալմամբ ՌՃՅԳ, հեղինակն է նաև առաջին խմբագրության, ուր և թվականը ուղղել է ՌՃԻԱ։

— 3. Պաղտասար, որդի Յովհաննէս գրչի, որ օրինակեց Յայսմաւուրքը 1858 թ. այս թվին, մեծ մահտարաժամից մեռավ Բաղդասարը՝ իր մոր Թանսուխի հետ.—Նստարք 190։

— 4. Բաղդասար, հայր Մուղալ խաթունի և Շամշիղամարի, որոնք Վանում, Վարդան քահանային գրել տվեցին մի Աւետարան, 1461 թ.—Արցախ 139։

— 5. Բաղդասար անունը Դրնղ. 369 ծաղրով ձևափոխում է Պղտորբրին (=Պաղտասարին)։

— Բաշարաք, որդի Մարտիրոսի (առաջին կնոջից՝ Շահսուլթանից). «ղարիպամահ» եղավ Մեղրի քաղաքում. թոռն է խոջա խաչատուրի, որ Արճէշում, Յովհաննէս քահանային գրել տվեց մի Աւետարան, 1462 թ.—Ջեռ. Վասպ. 441։

— Բաշի, իգ. անունը հիշատակված է 1655 թ.—Արցախ 116։

— Պայզատէ, իգ. հնագույն հիշատակությունն է 1620 թ.—Սմբատեանց, Երնջակ 259։

— Բառնաբաս. թեև ասել էի, որ հնից չէ հիշատակված, բայց այժմ գտնում եմ կիսատ գրված Բառն... ձևով մի անուն, որ անշուշտ պետք է կարդալ Բառնաբաս՝ 1617 թ.—Ջեռ. Վասպ. 854։

— 1. Բասիլիոս, «սուրբ և խաչակրօն այրն Աստուծոյ», Հայոց ժամանակակից վարդապետների գլխավորներից էր. Անանիա Մոկացի («946—968 թթ.») կաթուղիկոսի հետ գրեց Աղուանից Սահակ կաթուղիկոսին՝ հետ դարձնելու համար նրան քաղկեդոնական դավանանքից.—Անան. ապստ. 131 ա։

— 2. Բասիլիոս, երկու համանուն քահանաներ Անաարզայի Ս. Աստուածածին եկեղեցու 1314 թ.—Սիսուան 243 ա։

— Բասմալըզ, իգ. հիշված 1606 թ.—Ճանիկեան, Հնութ. Ակնայ 85։

— 1. Պաստամ, իբրև վկա ստորագրում է 1456 թվի մի պայմանագրի.—Արցախ 187։

— 2. Բաստամ, Պաստամ (№ 1), որդի մեծ իշխան Ջալալի. հողեր է նվիրել Գանձասարի վանքին, 1471 թ.—Արձ. Շահխաթ. Բ. 375, Արցախ 178։

— Բարգոժաճ, հիշված է Մեծարանց վանից անթվական մի արձանագրության մեջ.—Բանասէր 1901, 147։

— Բարէտիկին (սեռ. Բարետիկնայ), կին Կարապետ քահանայի և մայր Բարսեղ և Ստեփաննոս քահանաների, որոնք Աստուածատուր գրչին գրել տվին մի Աւետարան, Մամիսար քաղաքում, 1275 թ.—Յովսէփեան, Նիւթեր և ուս. Բ. 37 բ։

— Բարթողիմէոս (№ 10). սրա կինն է Ալիծ. աղջիկն է Խոսրովանոյշ, որ Գրիգոր քահանայի կինն էր։ Գրիգոր քահանան Սարգիս Պիծակին գրել տվեց մի ոսկեզօծ Աւետարան, որ Բարթուղիմէոսը նվիրեց Սսում իր շինած (կամ նորոգած) Ս. Սարգիս եկեղեցուն, 1332 թ.—Շողակաթ 212։

— 2. Բարթողիմէոս, դիվանապետ արքունի մաքսատան, որի

ձեռքով գրված է մի պայմանագիր, որով Լևոն Բ-ն խոստանում է Լարանտա քաղաքը տալ եվրոպացի ասպետներին 1210 թ.—Սիսուան 292 բ։

— 3. Բարթողիմէոս Կինոսիոն, հայ ֆրերներից, Սիենայի (Իտալիա) մերձակա Տիրամօր եկեղեցու հոգաբարձու կարգվեց 1434 թ.—Ուղուրլեան Պատմ. գաղթ. ի Լիվոռ. 249։

— Բարշիմինայ, սրա տեղ Դրնղ. 512 երկիցս ունի Բարշիմայ, իսկ էջ 516 Բարշամինայ:

— Բարուխ, անցողակի հիշված է 1641 թվին գրված մի Աստուածաշնչի հիշատակարանում (Ձեռ. Վենետ. Ա. 23)։

— 1. Բարսեղ եպիսկոպոսի (№ 16) և Բարսեղ քահանայի (№ 28) մասին տե՛ս այժմ Ճանիկեան, Հնութ. Ակնայ 81 և Տաշեան, Ժողվ. առակաց Վարդանայ 58։

— 2. Բարսեղ, վանահայր Կեչառուի վանքի, 1051 թ.—Այրարատ 260, Շողակաթ 182։

— 3. Բարսեղ միայնակեաց գեղագիր, հայ-հոռոմ, գրիչ. օրինակել է Ոսկեբերանի հունարեն ճառերը՝ 1065 թ.—Ալպօյաճեան, Պատմ. Հայ Կես. Ա. 543։

— 4. Բարսեղ վանական, մի Աւետարան գրել տվեց Հայրապետ քահանային, Սեբաստիա 1211 թ.—Շողակաթ 198։

— 5. Բարսեղ, հորեղբայր Յովհաննէս գրչի, որ Դրազարկում օրինակեց Ճանձարանը, 1241 թ.—Սիսուան 233 բ, Ձեռ. Վենետ. Բ. 1066։

— 6. Բարսեղ, որդի Հայրապետի. իր եղբոր Սոստանէսի հետ միասին մի խաչ են կանգնեցրել իրենց ծնողների հիշատակին Խաչենի Խանձք գյուղում, 1253 թ.—Արցախ 159։

— 7. Բարսեղ, միաբան Կիլիկիոյ Ակների վանից, 1261 թ.—Հրտր. Ազաթ. 1909 թ. յուշ. էջ ԼԲ։

— 8. Բարսեղ, առաջնորդ Խորին անապատի (Կիլիկիա). հաջորդեց Երիանոսին և Պետրոսին։ Ունէր Ճառընտրի մի օրինակ, որ տվեց Բասիլ գրչին՝ օրինակելու համար և ինքն էլ քիչ օր հետո մեռավ, 1270 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 234։

— 9. Բարսեղ քահանա, դրամապես օժանդակեց Բասիլ գրչին՝ օրինակելու Խորին անապատում (Կիլիկիա) մի մեծ Ճառընտիր, 1270 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 234, Սիսուան 152։

— 10. Բարսեղ քահանա, որդի Կարապետ քահանայի, իր եղբոր Ստեփաննոս քահանայի հետ Աստուածատուր գրչին գրել

տվեց մի Աւետարան Մամխարում, 1275 թ.—Յովսէփեան, Նիւթեր և ուս. Բ. 37 բ։

— 11. Բասիլ արքեպիսկոպոս Սսի, հիշված 1286 թ.—Զեռ. Վասպ. 109։ Որովհետև հիշված է իբրև որդի Կոստանդին Պայլի, ուստի նույն է Բարսեղ արքեպիսկոպոսի հետ (№ 38), որ սակայն մեռել է 1275 թ.։ Միևնույն ժամանակ հայտնի չէ, թե Սսի արքեպիսկոպոսը 1286 թվին ո՞վ էր (տե՛ս Սիսուան 221 և 234)։

— 12. Բարսեղ վարդապետ, նահատակ Գոհարինեանց մարմինները թաղել է Սեբաստիոյ Ս. Հրեշտակապետ վանքի գերեզմանատնում 1287 թ.—Տապանաքարը գտնվեց 1871 թ. և փոխադրվեց նույն վանքի տաճարը։ Այս մասին տե՛ս Թորոս աղբ. Ա. 182, Փունջ լրագիր 1871 հուլ. 31 (№ 681), Արրտ. Դ տարի, 1871, էջ 311։

— 13. Բարսեղ Մաշկևորցի (№ 38). սրա հեղինակած «Մեկնութեան Մարկոսի» ձեռագրի մասին խոսում է Յովսէփեան, Շողակաթ 211 և համարում է հեղինակի ինքնաձեռագիրը 1325 թվից։ Այս դեպքում պետք է ուրեմն բաժանել Բարսեղ արքեպիսկոպոսը Բարսեղ վրդ. Մաշկևորցուց։

— 14. Բարսեղ քահանա, կազմեց Ոսկեբերանի Մեկնութիւն թղթոցն Պօղոսի, որ գրեց Գրիգոր գրիչը Ակների վանքում 1325 թ.—Սիսուան 535 ա։

— 15. Տէր Բարսեղ կրոնավոր Ագուլիսի, 1481 թ.—Սմբատեանց, Երնջակ 300։

— Բաւրինայ, իր ամուսին Գիւտի (կամ Գիւտենի) հետ ուխտի եկան Վանեվանից և նվերներ արին, 1286 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 568 (Սիսական 61 հիշում է նույն արձանագրությունը, բայց չունի Բաւրինան)։

— Բէգիջիեան, հայտնվեց այժմ սրա թվականը, որովհետև նա կինն է Մարտիրոսի՝ որդւոյ խոջա Խաչատուրի, որ Արճէշում, Յովհաննէս գրչին գրել տվեց մի Աւետարան, 1462 թ.—Զեռ. Վասպ. 441=Աշխարհբէգ։

— 1. Բէժան, հիշված 1661 թ.—Զեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 119)։

— 2. Բէժան, եղբայր Յովսէփ արքեպիսկոպոսի Արղութեան (ԺԸ դար).—Շահազիզ, Պատմ. պատկերներ 163։

— Բէյլու-բէգ, 1700-ական թվերին.—Բարխուդ. Պատմ. Աղուանից Բ. 54։

— Բէլու, մականունը Տոնմազ (աննահանջ). նշանավոր հերոս. Սիւնիքը պաշտպանելու համար կոտրել է օսմանցիներից

5800 հոգի և իր այս քաջագործությունը հիշատակել է Ջրվշտիկ վանքի արձանագրության մեջ, 1728 թ.—Արցախ 237, Պատմ. Աղուանից Բ. 92։

— Բէկի, եղբայր Գրիգոր իշխանի Խաչենեցւոյ, թոռն Գրիգոր բարի իշխանի (ԺԳ դար).—Բարխուդ. Արցախ 208, Պատմ. Աղուանից Ա. 137։

— Բէկխաթուն, դուստր Կաքաւի՝ եղբօրորդւոյ Ստեփաննոս Ղարիպշահի, որ Լիմ կղզում գրել տվեց մի Յայսմաւուրք 1457 թ.—Ձեռ. Թաւր. 104 ա, 107 բ։

— Բէկսօսի, ար. հիշված է 1686 թ.—Խաղբակեանք, 255։

— Բենէ. փորագրիչն է Կատրանիդէ թագուհու մեծ արձանագրության Անիում, կաթողիկեի շինության առթիվ 1012 թ.—Արձ. Շիրակ 70 (թվում է, թե բց. հոլով է և համառոտագրած, որով լինում է Բենիամին կամ Բենիկ)։

— Բեսուքայ, էջ 408. երևի սրա հետ նույն է Բեսուտայ (կա միայն սեռ. Բեսուտին), որ հրամայել է ձէթի հարկը անխափան տալ Երուանդաշատի Ս. Աստուածածին եկեղեցուն.—Արձ. 1299 թվից՝ Այրարատ 61։

ԲԷՍՈՒՃ, իգ. <պրս. بسوچ bēsūč «անմեղ» բառից. գըրված է նաև վրիպակով Բեուճ. մի անգամ հիշված է ԺԲ դարում. տես Ամսաչաճ անվան տակ (հավելված)։

— Պըլպուլ, ար. ավելի հին հիշատակություն 1629 թ. ունի Ալպոյաճեան, Պատմ. Հայ Կես. Բ. 1867։

— Բուպա (№ 1), հիշված է նաև Հայրավանքի 1211 թվի արձանագրության մեջ, «մեծ սպարապետ և տէր երկրիս» տիտղոսներով՝ իբր նվիրատու.—Սիսական 40, Սմբատեանց, Գեղարքունի 435 (գրված Բուբայ)։ Իսկ Նորավանքի մեծ արձանագրության մեջ 1223 թ. (Սիսական 186) կոչվում է Բուպակ (որով Աղբերիս գյուղը «զոր իմ բազկաւս առեալ էի յայլազգեաց և իմ արեամբս թափեալ», նվիրում է Նորավանքին)։

— Բուքաf Տէր-Զաքարեանց (էջ 418), ըստ Յովսէփեան՝ Խաղբակեանք 206 քննության պետք է կցել Բոքա (№ 2) անվան հետ, Ամիր-Հասան Բ-ի կինն է։ Արական անուն չլինելով և միևնույն ժամանակ վերջաձայն f-ն ջնջվելով՝ այլևս անհնար է կցել Աբուբաքր անվան։

— Պուտախ, որդի Սիրատանի, որ Կեսարիոյ Մանտիսոն գյուղում գրել տվեց մի Յայսմաւուրք 1495 թ.—Ալպոյաճեան, Պատմ. Հայ Կես. Բ. 1850։

— Բողլախ, հայր Սարգիս մեծ իշխանի և պապ իշխանաց իշխան Շալուէի, որ Սերկևլի գյուղում օրինակել տվեց Ճառընտիրը. 1441 թ.—Հրտր. Ագաթ. 1909 թ. յուշ. էջ ԽԸ։

— Պուսաիք, որդի Նուրիճանի, որ Ագուլիսում Գրիգոր աբեղային գրել տվեց մի Յայսմաւուրք՝ 1481 թ.—Սմբատեանց, Երընջակ 299։

— Բուրաստան, իգ. կենդանի է նաև այժմ. տե՛ս Սովետ. Հյստ. 1945 հուլ. 10, էջ ա, սյունակ 5։

— Բուրետ <աարբ. abū Rāita. այս անունով է կոչվում յակոբիկ ասորի այն վարդապետը, որ թղթակցության մտավ Աշոտ Մսակերի հետ և որ մեր պատմության մեջ հայտնի Բուրետն է (ընդարձակ տե՛ս Ակինեան, Մատեն. հետազ. Ա. 119—124)։

— Բուրթէլ անունը հիշված է 1559 թ.—Խաղբակեանք 249։

# Գ

— 1. Գաբրիէլ կրոնավոր, հայրապետ Արարատեան գավառի Սերկևլի գյուղի Ս. Հովհաննէս վանքի, 1441 թ.—Հրտր. Ագաթ. 1909 թ. յուշ. էջ ԽԸ։

— 2. Գաբրիէլ եպիսկոպոս, էջմիածնի 1441 թվի ժողովի առթիվ հիշված է նաև Դրնդ. 311։

— 3. Գաբրիէլ Եւդոկիացի, նկարիչ. Բաղդադ քաղաքից ճանապարհ ընկավ 1682 թ. և ամբողջ Փոքր-Ասիան ճեղքելով անցավ Ռումելի, ապա Բելգրադի վրայով՝ Բուդապեշտ, որ այն ժամանակ գտնվում էր տաճկական տիրապետության տակ։ Այս քաղաքից հայ լեզվով գաղտնի նամակներ էր գրում Վիեննա՝ Ներսէս վարդապետին, որով տաճկական զինվորական գաղտնիքները հաղորդում Լէոպոլդ կայսեր։ Ավելին տե՛ս Ներսէս.—Ալպօյաճեան, Առաքելութիւն ի Հայէշ. 66։

— 1. Գագիկ թագավոր Աղուանից, որդի Մովսէս կամ Մուշէ իշխանի և թոռն Եսայի Ապումուսէի, որ «852 թ.» գերի քշվեց Բաղդադ։ Գագիկի քույրն է Ոսկի, որ 1000 թվին, իր եղբոր թագավորության ժամանակ կառուցել է մի տաճար. մնում է սրա արձանագրությունը։ Մնում են նաև Գագիկ թագավորի աղբյուրը, պալատի տեղը և գերեզմանը՝ Տումի գյուղի մոտ.—Բարխուդ. Պատմ. Աղուանից Ա. 131 և Արցախ, էջ 79—80։

— 2. Գագիկ, եղբայր Սահակ կաթողիկոսի Աղուանից, հաջոր-

*դեց իր եղբորը 947-ին, առանց Հայոց կաթուղիկոսի հրամանի. Անանիա Մոկացին մերժեց նրան («946—968 թթ.»)։— Անան. ապստ. 133 ա, 134 ա, 135 ա. սեռ. Գագիկայ՝ անդ 133 ա, Գագկայ՝ անդ 134 բ, 144 ա։*

*— 3. Գագիկ Արծրունի թագավոր Հայոց.—Անան. ապստ. 129 բ, 131 բ.—Սեռ. Գագկայ՝ 131 ա, 133 բ, 140 բ. սրա որդին է և հաջորդը Գրիգոր Դերենիկ թագավոր. երկուսն էլ ժամանակակից Անանիա Մոկացու։*

*— 4. Գագիկ (№ 19) կաթուղիկոս Աղուանից.—Անան. ապստ. 139 ա, 140 բ. մեռավ 958 թ.։*

*— 5. Գագիկ իշխանաց իշխան (կամ թագավոր) Աղուանից, որդի Մուշէի. հիշված է 1000 թ.—Արցախ 79, 91։*

*— 6. Գագիկ Բ Բագրատունի.—Դարդել 5, 6, 7, 8, 9, 11։*

*— 7. Գագիկ կրոնավոր, որի խնդրանոք Յովհաննէս սարկաւագ վարդապետը («+1129 թ.») գրել է «Յաղագս քաղքեդոնականացն» գրությունը.—Ոսկեան, Մատեն. քնն. էջ 55։*

*— 8. Գագիկ մատնիչ, հրամանատար Հռոմկլայի. ըստ արաբ պատմիչ Բէհաէդդինի գրված է «Գայգոա որդի Գրիգորի, որդւոյ Վասլի» և նրա անունով սարքված է մի թուղթ, որով իբր թե հայերը դիմում են Սալահէդդինին և սարսափով հայտնում Ֆրեդերիկոս կայսեր մուտքը Կիլիկիա (1190 թ.)։ Նոր պատմիչներից ոմանք սխալմամբ շփոթում են Գրիգոր Տղայ կաթուղիկոսի հետ.—Սիսուան 447։*

*— 9. Գագիկ, որի անունով կանգնեցրած է մի խաչքար Քոնայում, 1191 թ.—Սմբատեանց, Երնջակ 357։*

*— Գազան, Կարսի պարիսպները շինողներից մեկը, 1234 թ.—Արձ. Այրարատ 85։*

*— 1. Գալուստ եպիսկոպոս Բաղէշի. գրել է Մարտիրոս Խիզանցի նահատակի պատմությունը։ Սա նահատակվել է 1436 թ. հունվարի 4-ին. ուստի վկայաբանությունն էլ այդ ժամանակից է։ Նոտարքի հեղինակը (էջ 108) ասում է, թե նրա ընդարձակ պատմությունը կա իր մոտ. հավանաբար դա հենց այն է, որ հրատարակել եմ մեր Նոր վկայքի մեջ, էջ 714—719։*

*— 2. Գալուստ աբեղա, գրիչ, օրինակեց Աւետարանը՝ Կեչառու վանքում, 1491 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 355։*

*— 3. Գալուստ, հայր Ջանղուրբանի, որ Կուքի գյուղում գրել տվեց մի Աւետարան՝ 1495 թ.—Սմբատեանց, Երնջակ 135։*

*— 4. Գալուստ քահանա, որդի Ջանղուրբանի, որ նրա համար*

գրել տվեց մի Ավետարան՝ Կուքի գյուղում, 1495 թ.—Սմբատեանց, Երնջակ 135։

— Գառնիկ ճգնավոր.—Դրնղ. 516։

— Գաւազան Դվնացի. իր աղջկա՝ Նաւուղի հիշատակին կանգնեցրել է Օշականում մի խաչքար՝ 1265 թ.—Այրարատ 191։

— Գդուրիկ (էջ 451) անվան համար պետք է նկատել, որ Ձեռ. Վենետ. Ա. 594 և 762 հիշված ձևերը նույն անձն են. համտ. ուսթա Թորոս և ուսթա Սարգիս եղբայրները և նրանց ազգականներից Խանչիչի, Խուրմա-խաթուն, Խաթայի անտվոր անունները, որոնք երկու տեղումն էլ կրկնվում են։ Առաջին հիշատակարանի թվականը (1618) հաստատ լինելով, ստուգվում է նաև երկրորդի թվականը, որ անհայտ է։

— Գէorf քահանա (№ 99) ուղղել այս ձևով՝ հայր Սահակ քահանայի, որ ստացավ Կոստանդին Ա Բարձրբերդցի կաթուղիկոսի Ավետարանը, 1389 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 652։

— Գինեվարդ անունը հիշատակված է նաև 1503 թ.՝ Ձեռ. Վասպ. 616, Գենեվարդ ձևով։

— Գոհար, մերձավոր (թերևս մորաքույր) Աստուածատուր գրչի, որ օրինակեց Ոսկեփորիկը 1403 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 932։

— Գorգիկ (սեռ. Գորգկանն), որդի Սարգսի. միասին շինեցին Երուանդաշատի Ս. Աստուածածին եկեղեցին 1218 թ.—Այրարատ 61։

— Գուլթէզի, իգ. հիշված է 1495 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 586։

— Գուճարշահ (տպված Դուհարշահ), Կողբացի, ամուսին Դսըլկանն, մի հող է նվիրել Բագարանի մայր եկեղեցուն, 1235 թ.—Արձ. Այրարատ 68։

— Գրիգor որդի Վասակի, իշխան, որի եղբորորդին Գրիգորաս շինեց Մաստարայի եկեղեցին (շուրջ 645 թ.).—Արձ. Այրարատ 135։

— Գրիգորաս, եղբորորդի Գրիգոր իշխանի, թոռան Վասակի. շինեց Մաստարայի եկեղեցին Թէոդորոս Գնունեաց արքեպիսկոպոսի ժամանակ (շուրջ 645 թ.).—Արձ. Այրարատ 135։

— Գուրճվան, ար. հիշված է 1665 թ.).—Ջամբռ 208։

— Գեղիկ. այս անունը հիշված է Վրթանէս եպիսկոպոս Օծոպեցու ճյուղագրության մեջ (իր տապանաքարի վրա), որ հետևյալն է. «Այս է տապան տր. Վրթանէս եպսին որդի Ամբրասիոսին թոռն Ապուտահլին որդոյ Ղութլու բէկին թոռն Գեղկա և մեծի Աբկար իշխանին» (Խաղբակեանք 248)։ Եթե վերջին տողը կարդանք «և որդի մեծի Աբգար իշխանին» և ծննդաբանական շարքը ընդունենք այս-

պես՝ Վրթանէս—Ամբրոսիոս—Ապուտահլ—Ղութլուբէկ—Գեղիկ—Աբգար, կարելի է գնել հետևյալ ժամանակագրությունը.—Վրթանէս +1493, ծն. 1420, Ամբրոսիոս ծն. 1390, Ապուտահլ ծն. 1360, Ղութլուբէկ ծն. 1330, Գեղիկ ծն. 1300, Աբգար իշխան 1270 թ.։ Գեղիկ բառն էլ մեզ բոլորովին անծանոթ լինելով՝ կարող ենք ուղղել Դեղիկ:

— Գեռաf, ար. 1644 թ.—Սմբատեանց, Սաղիան 240, 241։

— Գէլ, կին Հոնայի և մայր Հէճուպ Դաւիթի, որ շատ նվերներ է արել Յովհաննավանքին, 1300 թ.—Այրարատ 171 ա։

— Գէլմարդ.—Այրարատ 190։

— 1. Գիորգ, տե՛ս Թոդոսակ (է դար)։

— 2. Գէորգ (№ 20) Բ կաթուղիկոս Գառնեցի.—սեռ. Գէորգայ՝ Անան. ապստ. 138 բ. 135 ա. 139 ա. Գէորգ.—Անան. ապստ. Գէորգեայ՝ անդ 138 բ։

— 3. Գէորգ, որդի Պարտանի (կամ Պարսամի), եղբայր Լևոն Ե Հայկազն կայսեր Հունաց. եղբոր սպանությունից հետո (+820) գնաց իր հոր հայրենիքը՝ Աղուանք և մնաց այնտեղ.—Ուղուրլեան, Պատմ. գաղթ. Լիվոռնոյի 201 (կեղծիք)։

— 4. Գէորգ Տարոնացի, կոչված «անպարտելի». մին այն վարդապետներից, որոնք Անանիա Մոկացի կաթուղիկոսի հետ («946—968 թթ.») գրեցին Աղուանից Սահակ կաթուղիկոսին՝ հետ կասեցնելու համար քաղկեդոնական դավանանքից.—Անան. ապստ. 131 ա։

— 5. Հայր Գէորգ, վանական Ոսկեվանից. անդամ Խաչենի եկեղեցական ժողովի, որ գումարեց Անանիա Մոկացի («946—968 թթ.») կաթուղիկոսը.—Անան. ապստ. 134 բ։

— 6. Գէորգ վարդապետ Կաղաթեցի. մին այն վարդապետներից, որոնք գրեցին Աղուանից Սահակ կաթուղիկոսին, հետ դարձնելու համար քաղկեդոնական դավանանքից, որին հարել էր՝ ապստամբելով Հայոց Անանիա Մոկացի (946—968 թթ.) կաթուղիկոսի դեմ.—Անան. ապստ. 131 ա։

— 7. Գէորգ իշխան Գնունեաց. հիշված է Խաչիկ Ա կաթուղիկոսի կեղծ կոնդակում 976 թ. և Հռիփսիմէ արքայադստեր կեղծ կտակագրում, 981 թ.—Սմբատեանց, Երնջակ 419, 424. Արրտ. 1868, 33 ա։

— 8. Գէորգ գրիչ. Պետրոս Գետադարձ կաթուղիկոսի համար գրել ու կազմել է Ճառընտիր Յովհաննու Ոսկեբերանի, 1046 թ.—Ճողակաթ 192։

— 9. Գէորգ քահանա, գրիչ. օրինակել է Կեսարիայում մի Աւետարան 1191 Թ.—Ալպօյաճեան, Պատմ. Հայ Կես. Ա. 1063, 892։

— 10. Գէորգ միաբան Արմենի լեռան Յովանէ ագարակում (Կիլիկիա), 1198 Թ.—ՏաԹև 1927, 187։

— 11. Գէորգ, որի անուան մի խաչքար կա Երնջակի Ս. Կարապետ վանքի հին գերեզմանատանը, 1204 Թվից.—Սմբատեանց, Երնջակ 17։

— 12. Տ. Գէորգ հորեղբայր Մեծարանց վանքի հայրապետ Յակոբ արքեպիսկոպոսի և նույն վանքի առաջնորդ Տ. Սարգսի։ Հիշված է 1225 Թ.—Բանասէր 1901, 145։

— 13. Գէորգ վարդապետ, միաբան Կեչառուի, 1248 Թ.։

— 14. Գերգ Փառաշ («նկարիչ»?) հայր Գրիգոր և Վարդան քահանաների, որոնք Գանձասարի վանքի միաբաններից էին և գնեցին մի Աւետարան, 1237 Թ.—Յովսէփեան, Նիւթեր և ուս. Բ. 53։

— 15. Գէորգ Կիլիկեցի, գրիչ. օրինակել է Շիրակացու տոմարը, 1267 Թ.—Աշ. Աբրահամեան, Շիրակացու մատեն. 128։

— 16. Գէորգ, գրիչ. օրինակել է Շիրակացու «Ժամանակագրութիւնը» 1280 Թ.—Աշ. Աբրահամեան, Շիրակացու մատեն. 142։

— 17. Գէորգէոս, կուսակրոն կրոնավոր, որդի Ոսկեհերի. խնդրեց և ստացավ Կարապետ քահանայից Իգնատիոսի Մեկնութիւն Ղուկասու, 1363 Թ.—Սմբատեանց, Երնջակ 228։

— 18. Գէորգ աբբա, ծագումով հայ, հաբեշ կրոնավոր. գրել է հաբեշերեն շարականներ, որոնք մեծ ժողովրդականություն են վայելում հաբեշների մոտ (1440 Թ.)։ Իր գործունեության օրերին կառուցված է «Հայք» անունով և հայ ճարտարապետական ոճով մի վանք՝ «Տէսէն» քաղաքի մոտ.—Ալպօյաճեան, Առաքելութ. Հայէշ. 71։

— 19. Գէորգ վարդապետ Քեսունցի (№ 73). սրա մասին Մառը ունի առանձին ուսումնասիրություն, որ տե՛ս Բանասէր, 1901, 41—46։

— Կեօֆլու, իգ. ՌԺԳ Թվից տաճկաց (Ջամբռ 188 և 261). ԺՁ դար։

— Գեօֆչու, հիշված է մի խաչքարի վրա 1701 Թ.—Սմբատեանց, Գեղարքունի 498 (արդյոք կարդալ Գեօֆչայ, որ է Գեղարքունեաց գետը)։

— Գիգի (ընԹերցումն անստույգ), կանգնեցրել է մի խաչքար Շահապունեաց Նորս գյուղում, 1251 Թ.—Խաղբակեանք 58։

— Գիտ (№ 7) որ և Գիտեն, կինն է Բաւրինայ. ուխտի եկան

Վանեվանից և նվերներ արին.—ըստ Սիսական 61՝ անթվական է, բայց ըստ Սմբատեանց, Գեղարքունի 568՝ թվականն է 1286։

— Գիլին (սեռ. Գիլինին), իգ. հիշված 1652 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 541։

— Գիւրբաշի, իգ. հիշված է Վայոց Ձորի անթվական մի արձանագրության մեջ (Սիսական 175)։ Ըստ իս՝ պետք է կարդալ Դիւլբաշի։

— 1. Գոհար, խոսրովիդուխտի հետ միասին ստացել է ժ դարում գրված մի Աւետարան, նորոգել և նվիրել Սուքիաս վանուց երեցին, 1183 թ.—Շողակաթ 191։

— 2. Գոհարտիկին, դուստր Մովսէսի՛, կին Կարապետ քահանայի, որ Նախավկայի վանքում գրել տվեց Իգնատիոսի Մեկնութիւն Ղուկասու, 1357 թ.—Սմբատեանց, Երնջակ 227։

— 3. Գոհար, կին Ստեփանոսի և մայր Ատոմ քահանայի, որ Աղթամարում, Գրիգոր քահանային գրել տվեց մի Աւետարան, 1454 թ.—ՀԱ 1937, 580։

— 4. Գուհար, եղբորդուստր Յովհաննէս գրչի, որ օրինակեց երկու Ճաշոց՝ Կեսարիայում 1481 և 1484 թթ.։ Գուհարը սպասավորում էր նրան ամեն կերպով և գրելու թուղթն էր խազում.—Ալպօյաճեան, Պատմ. Հայ Կես. Բ. 1849։

— 5. Գոհար, անտեսուհի Բաբերդի Անլոց անապատում, 1486 թ.—Էջմիածին 1944 թ. № 1, էջ 36 բ։

— 6. Գոհար, կին Տէրունի և մայր Սահակ երեցի, որ Կեսարիոյ Մանտիսան գյուղում օգնեց Յովհանէս աբեղային գրելու Յայսմաւուրքը՝ 1495 թ.—Ալպօյաճեան, Պատմ. Հայ Կես. Բ. 1850։

— 7. Գոհար, նշանավոր գորգագործ կին, որի գործած գորգը 1860 թվից՝ գտնվում է այժմ Լոնդոնում.—ՀԱ 1937, 166։

— Գոյներ անունով ծանոթ է միայն Սիր Գոյներ, ասպետ, Կիլիկիայում 1271 թվին. թերևս ազգական կամ հարազատ Ստեփաննոսի Գոյներիցանց՝ ըստ Սիսուան 97։ Բայց Սիսուանը չի ասում, թե ո՛վ է այս Սիր Գոյները։ Նույն Սիսուանի մեջ, էջ 210 ա գտնում եմ հիշված այդ Սիր Գոյները, Սիր Կոստանցի և Սիր Ըոնաղտի հետ, այն պայմանագրում, որ կնքեց Կոստանդին տեր Սարվանդիքարի, 1241 թ. Ալաման ասպետների հետ։ Սրանից երևում է, որ այս Սիր Գոյներն էլ եվրոպացի է և հետևաբար Գոյներ անունն էլ եվրոպական է ու կարելի չէ մեկնել իբրև գոյն բառի հոգնակին։ (Սիսուան 533 ա եկեղեցական գրքերում գլխակարգությունը կար-

միր գծելու սովորությունից է հանում փոյն երիցանց (տերտերի գույն դարձվածը)։

— Գոռանդուխտ, թագուհի, կի՞ն Գագիկի՝ որդւոյ Աբասի.— Ակնարկ 22 (տե՛ս Զարբ. և Ազգապ. 5527). Ջեռ. Երուսաղեմի շատ հին։

— 1. Գորգ, հանել է մի առու 992 թ. Իգդիրի մոտ Բլուր գյուղում.—Արձանագրությունը տե՛ս Բանասէր 1901, 131։

— 2. Գորգ քահանա, գրիչ. Կեսարիայում օրինակեց Աւետարանը՝ Առաքել քահանայի համար, 1191 թ.—Ալպօյաճեան, Պատմ. Հայ Կես. Բ. 1839։

— 3. Գորգ, հիշված է Բջնիի Արզաքան գյուղի Նեղուսի Ս. Աստուածածին վանքի արձանագրության մեջ, 1271 թ.—Շահխաթ. Բ. 177, Այրարատ 258։

— 4. Գորգ, որդի Պօղոս հովվի, որ 300 դրամ նվիրեց Գրիգոր գրչին՝ գրելու համար Աւետարանը Դրազարկի կամ Փոսի վանքում, 1325 թ.—Սիսուան 234 բ։

— Գորէս, ար. ծագումն անհայտ. հիշված է 1713 թ.—Ջամբռ 170։

— Գուիդոն (№ 4). այս թագավորի մասին խոսում է նաև Դարդել, կոչելով Գուի Լուսինեան։ Թողնելով այն հողային վեճերը, որ ունեցավ սա Կիպրոսի թագավորի հետ, հիշատակության արժանի է Եգիպտոսի սուլթանի դիմումը։ Սուլթանը, լսելով որ Կիլիկիոյ գահի վրա նոր թագավոր է բազմել, դիմեց նրան և հարկ ու նվերներ պահանջեց։ Գուիդոնը խստությամբ պատասխանեց նրան և ամբողջ իր թագավորության ժամանակ մի թիզ հող անգամ չզիջեց.—Դարդել 27—44, 48, 49, 50, 52, 61, 73, 112։

— Գուլամմար, իգ. հիշված է 1655 թ.—Արցախ 116։

— Գուլգուլ անունը իբր. ար. գործածված եմ գտնում 1900 թ. (տե՛ս Սմբատեանց, Երնջակ 60 ծան.)։

— Գուլու, ար. հիշված է 1634 թ.—Ջեռ. Վասպ. 884։

— Գուլբար, դուստր Ստեփաննոսի և քույր Սալչուկ խաթունի, որ Հայրապետ քահանային գրել տվեց մի Մաշտոց, 1466 թ.— Խորոտ աղբ. Բ. 338։

— Կիւլ-պիՃէ, իգ. հիշված է 1695 թ.—Ջեռ. Վասպ. 982։

— 1. Կիյլոմ (Guillaume le Velu), պետական քարտուղար ֆրանկ լեզվի, Լեոն Գ-ի ժամանակ 1274 թ.—Սիսուան 485 բ։

— 2. Գուլիէլմոս Անտիոքացի (հա՞յ է), գլխավոր դեսպանու-

թյան, որ Հայոց Լևոն Գ թագավորի կողմից գնաց Սիկիլիա 1282 թ.—Սիսուան 363, 556 ա։

— 3. Գուլիելմոս, վանական Կիլիկիոյ Սև լեռան, 1307 թ. ավելին տե՛ս Մարտիրոս վանահայր.—Սիսուան 410։

— 4. Կուլիէլմոս Յովհաննէսեան, հայազգի ֆրերներից, Սիենայի (Իտալիա) մայր եկեղեցու ծայնապետ և երգիչ կարգվեց 1459 թ.—Ուղուրլեան, Պատմ. գաղթ. ի Լիվոռ. 249։

— Կուլլի, իգ. հիշված է 1706 թ.—Ալպօյաճեան, Պատմ. Հայ Կես. Բ. 1883։ Այլ ոմն 1718 թ. (անդ 1885)։

— Գուլխաթուն, երկրորդ կին Ջանղուրբանի, որ Կուքի գյուղում գրել տվեց մի Աւետարան՝ 1495 թ.—Սմբատեանց, Երնջակ 135։

— Գուլմէլիք, ծառայում էր Յովհաննէս միայնակեացին, երբ նա գրում էր Ճառընտիրը՝ Այրարատեան գավառի Սերկևլի գյուղի Ս. Յովհաննէս վանքում, 1441 թ.—Հրտր. Ազաթ. 1909 թ. յոշ. էջ խԹ։

— 1. Գուլփաշա, երկրորդ կին Շալուէ իշխանաց իշխանի, որ ամուսնացավ նրա հետ իր առաջին կնոջ՝ Դովլաթխաթունի մահից հետո, նախքան 1441 թ.—Հրտր. Ազաթ. 1909 թ. յոշ. էջ խԸ։

— 2. Գուլփաշայ, հարսն էր փակակալ Յակոբ կրոնավորի, սպասավորում էր Այրարատեան գավառի Սերկևիլ գյուղի Ս. Յովհաննէս վանքում, 1441 թ.—Հրտր. Ազաթ. 1909 թ. յոշ. էջ խԹ։

* ԳՈՒԼՕ. գտա այս անունը իգական ձևով և որոշիչ հոդով՝ Կուլոն. գործածված է Շամախու Առուշանայ շէն կոչված գյուղի մեջ խաչքարի վրա՝ ՇԽԴ=1095 թ. (Աղուանից երկ. էջ 202—203)։ Բայց այսքան հին թվականը կասկածելի եմ համարում։

— Գուրգէն (№ 17), իշխան աղուան, կոչված է Տէր Գուրգէն Արևելեաց իշխան.—սեռ. Գուրգենայ՝ Անան. պատմ. 144 ա։

— Գուրծի, տե՛ս Փղոսկրյա Աւետարանի նվիրո՞ղն է 1173 թ., ինչպես գրում է Սմբատեանց, Երնջակ 174։

— Կրացիանոս Նանոսեան, Սիենայի (Իտալիա) Ս. Խաչի և Գերեզմանի եկեղեցու մեծավոր, հիշված է 1462 թ.—Ուղուրլեան, Պատմ. գաղթ. ի Լիվոռ. 249։

— 1. Սեռ. Գրիգորի (Լուսաւորիչ).—Ես. կԹղ. էջ ԺԳ։—Կոչված է Գրիգոր Նաղարին, Դարդել 3, 4, 5։

— 2. Գրիգոր Լուսաւորիչ.—Անան. պատմ. 129 ա.—արփիատրիչ «լուսաւորիչ» անդ.—Գրիգոր 130 ա, 136 բ.—սեռ. Գրիգորի՝ անդ 136 աբ, 137 աբ, 138 ա։—Գրիգորիոս՝ անդ 136 բ.—բց.

Գրիգորէ՝ անդ 136 բ, 137 բ, 138 բ.—սեռ. Գրիգորայ՝ անդ 143 բ։

— 3. Գրիգոր եպիսկոպոս Յուստինիանուպոլսի հայոց (Եկեղեաց գավառում), անդամ Ե տիեզերական ժողովի, 553 թ.—Հացունի, Կարևոր խնդ. 374։

— 4. Գրիգոր, եղբայր Հերակլի և հորեղբայր Հերակլ Ա կայսեր (640).—Տե՛ս Հերակլ Ա։

— 5. Գրիգոր, տե՛ս Թոդոսակ (է դար)։

— 6. Գրիգոր-Սոփան Բ (№ 101). սրա մի քանի արձանագրությունները տե՛ս Սմբատեանց, Գեղարքունի, էջ 273, 274, 275։

— 7. Գրիգոր վարդապետ, որի վերակացությամբ շինվեց Երնջակում Շոռոթու Ս. Լուսաւորիչ վանքը, 708 թ.—Սմբատեանց, Երնջակ 488։

— 8. Հայր Գրիգորէս, վանական Նորավանից վանքի. անդամ Խաչենի եկեղեցական ժողովի, որ գումարեց Անանիա Մոկացի («946—968 թթ.») կաթուղիկոսը.—Անան. ապստ. 134 բ։

— 9. Գրիգոր Դարենիկ կամ Դերենիկ, որդի Գագիկ Արծրունւոյ. հաջորդեց իր հորը. թագավոր Արծրունեաց. ժամանակակից Անանիա Մոկացու («946—968 թթ.»). մեռավ 958 թ.—Անան. ապստ. 131 բ, 133 բ, 140 բ և սրան հաջորդեց իր եղբայրը՝ Համազասպը։

— 10. Գրիգոր (№ 108) իշխան Խաչենի, հյուրընկալեց Անանիա Մոկացուն և գումարեց Խաչենի եկեղեցական ժողովը՝ Աղվանից կաթուղիկոսական հարցի լուծման համար.—Անան. ապստ. 134 աբ, 135 ա.—սեռ. Գրիգորի՝ Անան. ապստ. 144 ա։

— 11. Գրիգոր իշխան Ռշտունեաց, հիշված է Աշոտ Գ Ողորմածի կեղծ նվիրագրում, 976 թ.—Սմբատեանց, Երնջակ 419, Արրտ. 1868 էջ 33 ա։

— 12. Գրիգոր Մագիստրոս. սրա թարգմանած Եւկլիդէսի երկրաչափության մասին տե՛ս Գ. Պետրոսեանի հոդվածը՝ Տեղեկ. Ակադ. 1945 թ. № 1—2, էջ 59—75։

— 13. Գրիգոր, կանգնեցրել է մի խաչքար Երնջակի Քարվանսարայ գյուղում, 1051 թ.—Սեդրակեան, Հնութ. Երնջակու, 110։

— 14. Գրիգոր քահանա Ակոռեցի, Սենեքերիմ Արծրունի թագաւորի գաղթի ժամանակ հաստատվել էր Սեբաստիա (1021 թ.), ուր գրել է մի Աւետարան իր սեփական գործածության համար, 1066 թ.—Տողակաթ 193։

— 15. Տէր Գրիգոր կրոնավոր, որի անվան մի խաչքար է

կանգնեցրած Երնջակի Ս. Կարապետ վանքում 1074 թ.—Սմբատեանց, Երնջակ 16։

— 16. Գրիգոր վարդապե՞տ, Գրիգոր Վկայասէրի աշակերտներից, միաբան Սեաւ լեռան Պաղահայ վանքի. Յովհաննէս գրչին օրինակել տվեց Կանոնագիրքը, որ ավարտեց Արմանի լեռան Յովհաննու անապատում, 1098 թ.—Ակինեան, Թուղթ Մակարայ 98, 102, 103։

— 17. Գրիգորիս, Արմանի լեռան Յովհաննու վանքի առաջնորդ Մեղիտէի փոխանորդն էր, 1098 թ.—Ակինեան, Թուղթ Մակարայ 99, 102։

— 18. Գրիգորէս քահանա, եղբորորդի Սեբաստիոյ Գրիգոր եպիսկոպոսի. իր եղբոր Խաչիկ քահանայի հետ խնդրեցին Թորոս գրչից և օրինակել տվին Պօղոսի Թղթերը, Դրազարկի վանքում, 1173 թ.—Սիսուան 233 ա։

— 19. Գրիգոր եպիսկոպոս, առաջնորդ Սեբաստիոյ Ս. Նշան վանից, 1173 թ.—Տաթև 1927, 187։

— 20. Գրիգոր եպիսկոպոս Սեբաստիոյ. սրա եղբորորդիներն են Գրիգորէս քահանա, Խաչիկ քահանա, և Իգնատիոս, որոնք հիշված են Դրազարկի վանքում 1173 թ.—Սիսուան 233։

— 21. Գրիգոր, վանահայր և առաջնորդ Գեղարդայ վանից. 1177 թ.—Արձ. Նիւթեր Հին Հյստ. պտմ. էջ 130։

— 22. Գրիգոր, հայր Գագիկ մատնիչի, որ տե՛ս 1190 թ.։

— 23. Գրիգոր, հանգուցյալ եղբայր Գորդ քահանայի, որ օրինակեց Աւետարանը՝ Կեսարիայում 1191 թ.—Ալպօյաճեան, Պատմ. Հայ Կես. Ա. 892, Բ. 1839։

— 24. Գրիգոր, եպիսկոպոս Սեբաստիայի, 1211 թ.—Շողակաթ 198։

— 25. Գրիգոր (№ 248) վարդապետ, որդի Աբասու. Սանահինի վանքից անցել է Հառիճի վանքը, ուր իբրև առաջնորդ է հիշվում 1219 թվին, ուստի և մահը պետք է դնել ո՛չ թե 1217—1221 թվերի միջև, այլ ավելի կրճատ 1219—1221 թվերին.—Խաղբակեանք 165։

— 26. Գրիգոր Հեչուբ, որդի Սմբատի՝ որդւոյ Մեծն Վախտանգի, որոնք Արցախի կողմնապետներն էին. Իւանէ աթաբէգը սնուցեց այս Գրիգորին, իսկ նրա որդի Աւագ ամիրսպասալարը այս Գրիգորին ճեչուբ նշանակեց և որովհետև արու զավակ չունէր, իր տան «առաջնորդ կացոյց». խնդրել է Աւագից տալ Գօշավանքն իրեն շիրիմ և նա կատարել է իր խնդիրքը.—Անթվ. արձ. Ազգագրական հանդ. Ժ 28.—Իւանէն Գօշավանքի մեռել է 1227 թ., Աւագը մեռել

է 1250 թ. ուստի և արձանագրությունը այս երկու թվերի միջև է, որովհետև ասված է «Աւագին երկար կենդանութիւն խնդրեցէք»։

— 27. Գրիգոր կրոնավոր, գրիչ. Պատուական քահանայի համար օրինակեց Աւետարանը՝ 1227 թ.—Թորոս աղբ. Բ. 366։

— 28. Գրիգոր քահանա, որդի Գերգի, միաբան Գանձասարի վանից. իր եղբայր Վարդան քահանայի հետ միասին գնեցին մի Աւետարան, 1237 թ.—Յովսէփեան, Նիւթեր և ուս. Բ. 52—53։

— 29. Գրիգորիս երգեցող Սսեցի, գրիչ. օրինակեց մի Աւետարան Կիլիկիոյ Անդուլ անապատում, Գրիգոր վարդապետի և նրա աշակերտ Պօղոսի համար, 1238 թ.—Սիսուան 230 ա։

— 30. Գրիգոր «պատուաւոր վարդապետ», որի համար Գրիգորիս երգեցող Սսեցին օրինակեց մի Աւետարան, Կիլիկիոյ Անդուլ անապատում, 1238 թ.—Սիսուան 230 ա։

— 31. Գրիգոր, գրիչ. օգնել է Յովհաննէս գրչին, որ Դրազարկում օրինակում էր Գանձարանը. Գրիգորը արտագրել է քարոզները, 1241 թ.—Սիսուան 233 բ։

— 32. Գրիգոր, որդի Սմբատայ, նվերներ է արել Մեծատանց վանից, 1241 թ.—Բանասէր 1901, 138։

— 33. Գրիգոր, անհայտ ոմն, որի տապանաքարը կա Պօղոսի գյուղի ավերակներում, 1256 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 517 (գրում է ՁԵ=1456! իմա ՋԵ=1456. ո՞րն է ուղիղ)։

— 34. Գրիգոր քահանա, վանահայր Կիլիկիոյ Ակների վանից, 1261 թ.—Հրտր. Ագաթ. 1909 թ. յռչ. էջ ԼԲ։

— 35. Գրիգոր, միաբան Կիլիկիոյ Ակների վանից, ուր թուղթ էր կոկում և օգնում Դաւիթ Բջնեցուն, երբ սա օրինակում էր Ագաթանգեղոսը 1261 թ.—Հրտր. Ագաթ. 1909 թ. յռչ. էջ ԼԲ։

— 36. Գրիգոր քահանա, մականուն Պետլող, խնդրել է գրել մի Աւետարան 1266 թ.—Սիսուան 253 բ (բայց տե՛ս Շարմաղ)։

— 37. Գրիգոր, Երուսաղէմում գրել տվեց մի Աւետարան, 1268 թ.—Ճանիկեան, Հնութ. Ակնայ 89։

— 38. Գրիգոր փակակալ, իր եղբայր Ստեփաննոսի հետ միասին կազմեցին այն ձեռագիրը, որ գրել էր տվել Հեթում թագավորի քույր Հռիփսիմէ կրոնավորուհին, 1270 թ.—Բանասէր 1899, էջ 130։

— 39. Գրիգոր, տնտես Խորնի անապատի (Սիս), հիշված 1270 թ.—Սիսուան 152 ա։

— 40. Գրիգոր, իր եղբա՛յր Սարգսի հետ մի խաչքար են կանգնեցրել իրենց հիշատակին Վերին Ախտա գյուղում, 1271 թ.—Խաղքակեանք 134, Սիսական 175։

— 41. Գրիգոր, փակակալ Սաղմոսավանից, հոգևոր հայր Մկրտիչ քահանայի, որ օրինակեց Կարբիում Խոսրով Անձևացու Մեկնութիւն ժամակարգութեան աշխատությունը, Պատարագամատոյց, Մեսրոպ երեց, Ջենոբ Գլակ և Յովհաննէս Մամիկոնեան, 1278 թ.—Պատմ. Տարօնոյ, Երևան 1941, էջ XIII։

— 42. Գրիգոր (№ 185) գրիչ, երեց էր. նույն գրչի գործն է նաև մի Նարեկ, սքանչելի, փոքր երկաթագրով գրված, Նարեկացու երեք տեսակ մանրանկարներով, շատ գեղեցիկ լուսանցազարդերով. ստացողն է Ներսէս Լամբրոնացի, պատանի ժամանակ, Հռոմկլա, 1273 թ.—Յովսէփեան, Նիւթեր և ուս. Բ. 16—17։

— 43. Գրիգոր հայրապետ, հիշված է Գեօլ գյուղի մի խաչքարի վրա (Նոր-Բայազետ). 1284 թ.—Սիսական 54, Սմբատեանց, Գեղարքունի 518 (վերջինս համարում է Գրիգոր Է, որ սակայն նստել է 1293—1307 թթ., իսկ 1284 թվին կաթողիկոս էր Յակոբ Կլայեցին. այս պատճառով պետք է ընդունել, որ այս Գրիգորը Գեղարքունեաց մի վանքի հայրապետն է)։

— 44. Գրիգոր քահանա, շնորհեց օրինակը այն Աւետարանի, որ արտագրում էր Մխիթար քահանան՝ Որոտանի Աղիտու վանքում, 1296 թ.—Սմբատեանց, Երնջակ 201։

— 45. Գրիգոր, որդի Հասանի, մայրն է Խանում՝ քույր Փառիսոսի Սենեքերիմ և Գրիգոր թագավորների. եղավ իշխան Փառիսոսի. հյուրընկալեց պարսից 3 իշխաններին (Պարղուան, Լէշքարի և Փատլուն), որոնց վերջինի դավաճանության զոհ է գնում Գրիգորի որդի Փիլիպպէն և նվաճվում Փառիսոսը.—Բարխուդ. Պատմ. Աղուանից 178։

— 46. Գրիգոր, իշխանաց իշխան, որին հիշում է Տաշրաց տեր Ջումշան՝ իբր իր գերիշխողը՝ 1297 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 618։

— 47. Գրիգոր իշխան Խաչենեցի, որդի Վահրամի, թոռն Գրիգոր բարի իշխանի, որի կինն էր Ասփա. Գրիգորի եղբայրներն են Հասան Բ, Բէգի, Ալթուն (ԺԳ դար).—Բարխուդ. Արցախ 208, Պատմ. Աղուանից Ա. 137։

— 48. Գրիգոր քահանա, հայր Սարգիս Պիծակ նշանավոր նկարչի.—Սիսուան 234 բ, 236։

— 49. Գրիգոր աբեղա, հորեղբայր Գրիգոր քահանա գրչի, որ Սեբաստիայում օրինակեց մի Աւետարան, 1307 թ.—Շողակաթ 210։

— 50. Գրիգոր, չանցլեր Թագավորության Հայոց 1307 թ.— Սիսուան 485 բ։

— 51. Գրիգոր քահանա, օրինակել է մի Աւետարան Ստեփաննոս Սեբաստացի քահանայի համար, Ս. Նշան վանքում, 1307 թ.—Շողակաթ 210։

— 52. Գրիգոր Ղազար, 1307 թ. տե՛ս Օշին Վասիլենց։

— 53. Գրիգոր, իր եղբայր Գասպարի հետ միասին մի խաչքար են կանգնեցրել իրենց ծնողների հիշատակին, Մանաշիթ գյուղում, 1308 թ.—Արցախ 252։

— 54. Գրիգոր խուլ. նշանավոր երաժիշտ, վարժապետ և առաջին քարտուղար Սսի. ժամ էր գնում ականջում ռառ ի չլսել զբանս աշխարհականս. վասն այն կոչեցաւ խուլ»։ Նորոգել է Շարականը, ավելորդները ջնջելով և պակասները ավելացնելով։ Այս Շարականը կոչվում է Խլկցի, որի հնագույն օրինակը 1309 թվից է.—Սիսուան 517 բ (տե՛ս Գէորգ № 86)։

— 55. Գրիգոր, որի տապանաքարը գտնվում է Երնջակի Ս. Կարապետ վանքի գերեզմանատանը, 1309 թվից.—Սմբատեանց, Երնջակ 311։

— 56. Գրիգոր (№ 435) եպիսկոպոս Կայնոյ. սրա սպանության դեպքը Ջամչ. Գ. 313 դնում է Կոստանդին կաթուղիկոսի ժամանակ 1310 թ.։

— 57. Գրիգոր, առաջնորդ Թիրքթի վանից, անդամ Սսոյ ժողովի 1310 թ.—Սիսուան 156 բ։

— 58. Գրիգոր (№ 704). Աղթամարցի. սրա գրած պոեմը Մարինոս Ճգնավորի մասին հրատարակեց Լ. Մելիքսեթ-Բեկ, Տեղեկ. Ակադ. 1945 թ. № 1—2, էջ 77—89։

— 59. Գրիգոր երեց, աղերսագիր է մատուցել Օշին թագավորին 1310 թ. (ավելին հայտնի չէ).—Սիսուան 482 բ։

— 60. Գրիգոր Դոնպնոց, աղերսագիր է մատուցել Օշին թագավորին 1310 թ. (ավելին հայտնի չէ).—Սիսուան 482 բ։

— 61. Գրիգորիս արքեպիսկոպոս Տայոց, 1313 թ.—Հայասնի. Կարևոր խնդ. 268։

— 62. Գրիգոր կաթուղիկոս. հիշված ՉԿԸ=1319 թ.—Սմբատեանց, Երնջակ 117։ (Հրատարակիչը համարում է Գրիգոր Է, որ նստել է «1293—1307 թթ.»։ Այս թվին Գրիգոր անունով կաթուղիկոս չկա)։

— 63. Գրիգոր «աստուածասէր այր», որդի Փօղոս հովվի, որ 300 դրամ նվիրեց Գրիգոր գրչին (որդի Միխայլի) և պատրաստեց

80 տետր մագաղաթ ու տվեց Գրիգորին, որպեսզի օրինակի Ավետարանը Դրազարկի կամ Փոսի վանքում, 1325 թ.—Սիսուան 234 բ։

— 64. **Գրիգոր**, որդի Միխայլի միայնակեցի և քեռորդի Սարգիս Պիծակ նշանավոր նկարչի։ Դրազարկի կամ Փոսի վանքում վանահայր Հայրապետ քահանայի հորդորով գրեց մի Ավետարան 1325 թ.—Սիսուան 234 բ։

— 65. **Գրիգոր** Ակներցի, Կիլիկիայի Ականց անապատում օրինակել է իր համար Ներքող կամ Ճառ խաչի, 1325 թ.? (ըստ Ձեռ. Հալէպի, Ա. 246 բ).—Ուստի թերևս նույն է № 431։

— 66. **Գրիգոր** (№ 431) ավելի ուշ՝ արտագրել է Ակների վանքում Ոսկեբերանի Մեկնութիւն Մատթէի, 1329 թ.—Սիսուան 155 ա։

— 67. **Գրիգոր** միաբան Ակների վանից 1329 թ.—Սիսուան 155 բ։

— 68. **Գրիգոր** միակեաց, եղբորորդի Սամուէլ քահանայի. իր եղբոր՝ Մարտիրոսի հետ միասին բնակարան տվին Գրիգոր գրչին, երբ սա արտագրում էր Մատթէի մեկնութիւնը Ակների վանքում, 1329 թ.—Սիսուան 155 բ։

— 69. **Գրիգոր** քահանա, գրել տվեց Սարգիս Պիծակին մի գեղեցիկ Ավետարան, որ նվիրվեց Ս. Սարգիս եկեղեցուն, 1332 թ.—Տողակաթ 212։

— 70. **Գրիգոր** առաջնորդ Թիւրքթի վանից (Կիլիկիա), Կոստանդին գրչին գրել տվեց Յունաց Մաշտոցի կանոնները 1332 թ.—Սիսուան 156 բ։

— 71. **Գրիգոր** գրիչ, Գանցէ բերդում օրինակեց Շարակնոցը 1336 թ.—Սիսուան 533 բ։

— 72. **Գրիգոր** քահանա, եղբորորդի Անտոն միակեացի, գրել տվեց Հունաց Մաշտոցի մի կանոնը Ակների վանքում, 1336 թ.—Սիսուան 156 ա։

— 73. **Գրիգորիս** քահանա, Յովհաննէս քահանայի հետ միասին Աբրահամ քահանայի պատվերով Երզնկայում օրինակեց Տոմարը, 1342 թ.—Աշ. Աբրահամեան, Շիրակացու մատեն. 122։

— 74. **Գրիգոր** Սոգենց, Լևոն թագավորի կողմից, Անտոն Մինորի հետ միասին դեսպան ուղարկվեց Անգլիոյ Եդուարդ թագավորին 1343 թ.—Սիսուան 559 բ։

— 75. **Գրիգոր** դպիր, գրիչ. Բարթողիմէոս առաքյալի վանքի առաջնորդ Յովհաննէս արքեպիսկոպոսի հրամանով օրինակեց Մաշտոցը՝ 1345 թ.—Սարգիսեան, Քննադ. Մանդ. 13։

— 76. **Գրիգոր** Սուքիասեանց, գրիչ. Խրիմի Սուրխաթ քաղա-

քում օրինակել է Մանրուսմունքը ՊԱ=1353 թ.—Էջմիածին, 1951 օգոստ. 34 ա։

— 77. Գրիգորիս արքեպիսկոպոս Վերիոյ, Աւետիս Արզրումնցու խնդրանոք Իտալիոյ Պիզա քաղաքում օրինակեց Միսալը՝ 1358 թ.—Գաթըրճեան, Պտրգմտ. 470։

— 78. Գրիգոր, հայ արքեպիսկոպոս, որ նստում էր Իտալիոյ Պիզա քաղաքում, Spassavento թաղում, Հայոց 1320 թվին կառուցած Ս. Անտոն վանքում. հիշված է 1353—1372 թվերին.—Սիսական 450 բ։

— 79. Գրիգոր, առաջնորդ Մաղարդայ վանից 1381 թ.—Սմբատեանց, Երնջակ 180։

— 80. Գրիգոր (№ 568) Ծերենց խլաթեցու մասին Փիրղալէմեան, Ջորս ընկերք, տպ. Թիֆլիս 1882, էջ 176 տալիս է հետևյալ հավելվածական տեղեկությունները.—Ծերենցը սպանվել է Ռոժկանցի քրդերի ձեռքով (հետևաբար Ռոժկանը ցեղապետի անուն չէ)։ Գրել է ութոտնյա չափով ոտանավոր Պատմութիւն կամ Տարեգրութիւն, որ սկսվում է 1386 թվից (Յովհաննէս կախիկ վարդապետի մահից) և հասնում է մինչև Շահրուխի երկրորդ արշավանքը Հայաստան և Աղամայ բերդի առումը՝ Ղարա-Եուսուֆի որդի Սքանդարի ձեռքով, մոտ 50 տարվա պատմություն։

— 81. Գրիգոր, Կիլիկիոյ մեծ արտագաղթին մասնակցող քահանաներից մեկը 1404 թ.—Սիսուան 542 բ։

— 82. Գրիգոր վարդապետ (Օրբելեա՞ն), լրացրեց Ստեփաննոս եպիսկոպոս Օրբելեանի գրել տված Աւետարանի թերոյթները 1406 թ. և ապա վաճառեց խաչպան Յոհանէս երեցին, 1411 թ.—Սմբատեանց, Երնջակ 232, 235—236։

— 83. Գրիգոր քահանա, գրիչ. Վայոց Ձորում օրինակեց Աւետարանը՝ 1407 թ.—Սմբատեանց, Երնջակ 153։

— 84. Գրիգոր եպիսկոպոս, օրհնեց և հիմնարկեց Քարքանջ գյուղում Սահակ նահատակի մատուռը, վանահայր Սաղիանի՝ 1417 թ.—Սմբատեանց, Սաղիան 31, 163։

— 85. Գրիգոր վարդապետ, գրիչ. օրինակեց Պատարագամատոյցը Գառնոյ գավառի Մանուէլի անապատում (Այրիվանք), 1429 թ.—Գաթըրճեան, Պտրգմտ. 560։

— 86. Գրիգոր, որդի խոսէն-բէկի և եղբայր Հայրապետ կրոնավորի, որ գնեց մի Աւետարան 1431 թ.—Նոտարք 98։

— 87. Գրիգոր պարոն, որդի մեծ իշխան Սարգսի և եղբայր

Ջիշխանաց իշխան Շալուէի (№ 7). «խակակոտոր եւ յաշխարհէս», 1441 թ.—Հրտր. Ազաթ. 1909 թ. յոչ. էջ խԸ։

— 88. Գրիգոր եպիսկոպոս Հարսնքէֆի, որդի Առաքելի, որ էր եղբայր Սսոյ Կարապետ կաթուղիկոսի 1448 թ.—Սիսուան 223։

— 89. Գրիգոր քահանա Աղթամարցի, գրիչ. № 604 հիշված է նաև Նոտարք 162 (1449 թ.) և նույն է № 593 Գրիգոր քահանայի հետ։

— 90. Գրիգոր, նվիրատու Նեղուցի Ս. Աստուածածին (Արզաքան) վանքի, 1451 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 312։

— 91. Գրիգոր քահանա, որդի Աղախանի. գրիչ. Աստմ քահանայի համար, Աղթամարում գրեց մի Աւետարան. 1454 թ.—ՀԱ 1937, 579—580։

— 92. Գրիգոր Ա կաթուղիկոս Աղուանից, հաջորդեց Աթանաս Գ-ին. թվականը հայտնի չէ. բայց 1455 թվին արդեն գահի վրա էր (ըստ մի հիշատակարանի, որ տե՛ս Բարխուդ. Պատմ. Աղուանից 212—213)։ Չամչ. Գ. 488 հիշում է Գրիգոր Հանեցի, կաթուղիկոս Աղուանից (տե՛ս № 585), որին օրհնության գիր է գրել Կիրակոս կաթուղիկոս Վիրապեցին 1441 թ.։ Բայց ըստ մի տապանագրի 1441 թ. մեռել է Դաւիթ է կաթուղիկոս Աղուանից, որին հաջորդել են Մատթէոս Գ, Աթանաս Գ և ապա Գրիգոր Ա. ըստ այսմ այս կաթուղիկոսները միայն ամիսներ գահակալած պիտի լինեն 1441 թվի ընթացքում։

— 93. Գրիգոր աբեղա, գրիչ. Ագուլիսում օրինակեց մի Յայսմաւուրք, 1456 թ.—Սմբատեանց, Երնջակ 316 (մեծ ցուցակ, էջ 7)։

— 94. Գրիգոր, որի տունը կողոպտվեց Սսում, Թուրքմենների արշավանքի ժամանակ, 1461 թ.—Սիսուան 544 բ։

— 95. Գրիգոր քահանա, որդի Ստեփաննոս քահանայի և Մինայ խաթունի, որ 1409 թվին նորոգեց, կազմեց ու ծաղկեց Տայշող գյուղում այն Աւետարանը, որ Յովհաննէս քահանան երկու տարի առաջ գրել էր տվել Ոստանում, Կարապետ քահանային։ Այս Գրիգոր քահանայի հիշատակարանից են հետևյալ տողերը, որոնք վերաբերում են Յովհաննէս քահանային. «Պահեսցէ Տէր Աստուած հոգով և ուրախ սրտով, զկորիկն յշարկէ հոլով, որ ծաղկողն ուտէ շուտով, ի գարուն եւնէ բարով, թալնած ինք ու մէկ չուխով, քաղցած ինք ու մէկ հացով, այս երթայ, չէ մնալով. Աստուած, ողորմեա՛յ մեզ խիստ շուտով».—Ջեռ. Սեբ.=ՀԱ 1925, 259։

— 96. Գրիգոր գրիչ, Արևիս գյուղում օրինակեց Աւետարանը 1471 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 397։

— 97. Գրիգոր, որդի մղտեսի Մանուկի, որ Կեսարիայում գրել տվեց մի ճաշոց՝ 1484 թ.—Ալպօյաճեան, Պատմ. Հայ Կես. Բ. 1849։

— 98. Գրիգոր պարոն, հայր տանուտէր Յակոբի, որ Սալնապատում, Մկրտիչ աբեղային գրել տվեց Աւետարանը, 1485 թ.— Արցախ 148։

— 99. Գրիգոր վարդապետ, Էջմիածնումն էր և ուներ մի օրինակ Գէորգ Սկևռացու Մեկնութիւն Եսայեայ, 1489 թ.—Ալպօյաճեան, Պատմ. Հայ Կես. Բ. 1846։

— 100. Գրիգոր աբեղա, որդի Պետրոս քահանայի, գրիչ. օրինակեց մի Յայսմաւուրք Ագուլիսում 1481 թ. և Բուստայ անապատումն էլ օրինակեց Աւետարանը՝ 1489 թ.—Սմբատեանց, Երնջակ 274—275, 299—301։

— 101. Գրիգոր, որդի Շիրինի՝ հորեղբոր Սիրատանի, որ Կեսարիոյ Մանտիսոն գյուղում գրել տվեց մի Յայսմաւուրք 1495 թ.—Ալպօյաճեան, Պատմ. Հայ Կես. Բ. 1850։

— 102. Գրիգոր, որդի Սահակ երեցի, որ Կեսարիոյ Մանտիսոն գյուղում օգնեց Յովհաննէս աբեղային գրելու Յայսմաւուրքը 1495 թ.—Ալպօյաճեան, Պատմ. Հայ Կես. Բ. 1850։

— 103. Գրիգոր, որդի Գալուստի և եղբայր Ջանղուրբանի, որ Կուքի գյուղում գրել տվեց մի Աւետարան՝ 1495 թ.—Սմբատեանց, Երնջակ 135։

— 104. Գրիգորիս, կաթուղիկոս Աղուանից 1564 թ.—Սմբատեանց, Սաղիան 243. նույնը 1560 թ. անդ 246։

— 105. Գրիգոր, կաթուղիկոս Աղուանից (№ 722), ընտրվեց էջմիածնի Փիլիպպոս կաթուղիկոսի առաջարկությամբ՝ Գանձասարում, գահակալեց 1634—1653 թթ.։ Սրա օրով Խաչենի, Շիրվանի և Շամախու թեմերը բաժանվում են Գանձասարից և անցնում էջմիածնին։ Գանձակի խանը սրան բանտարկել էր և մեծ փրկանք ստանալով միայն ազատել։ Նա էլ սկսեց շրջել դրամ հավաքելու համար, 1650 թ.։ Մեռել է 1653 թ., գերեզմանը գտնվում է Գանձասարի վանքի գավթում.—Բարխուդ. Պատմ. Աղուանից Բ. 66, Արցախ 176, 227, Ջամբռ 79։

— 106. Գրիգոր Պասմաճեան, պատրիարք Պոլսի. իր հիշատակարանը տե՛ս Բանասէր 1905։

— 107. Գրիգոր, որդի Աստուածատուրի, Պոլսի Վլանկա թաղից, փապուճճի (մաշիկ կարող). Նահատակվել է Պոլսում 1792 թ.

մնում է իր տապանաքարը.—Թորգոմեան, Ստամպօլոյ պատմ. Բ. 657։

— 108. Գրիգոր վարդապետ Ռստանցի, տաղասաց. իր տաղերից է «Այսօր նոր խառնումն եղեալ, Աստուած և մարդ միաւորեալ անժամանակ...». (Ձեռ. Հալէպի Ա. 203 ա)։ Թվականն անհայտ։

# Դ

— Դաճնրթէճ, պետք է ուղղել Թահիրթէն (պրս. طاهرتن). տե՛ս Hammer, Histoire de l'Empire ottom. Paris 1835, հտ. 2, էջ 20—21. գրում է Taherten։

— 1. Դանիէլ Մինոր, որին Լևոն թագավորը դեսպան ուղարկեց պապի մոտ՝ Թորոս Միքայելենցի հետ միասին։ Պապը ժողով գումարեց և Դանիէլ Մինորը երկար պատասխան գրեց ամբաստանության դեմ, 1341 թ.—Սիսուան 559 ա. երկրորդ անգամ էլ գնաց դեսպան՝ 1344 թ. անդ՝ 559 բ։

— 2. Դանիէլ, հայ քահանա, որը հմուտ էր հայերենի և լատիներենի. պապը գրել տվեց մի թուղթ և այս Դանիէլի հետ ուղարկեց Կիլիկիա՝ Գուիտոն («1343—1344 թթ.») Լուսինեան թագավորին, պահանջելով, որ հայ եկեղեցին հնազանդի լատին եկեղեցուն։ Գուիտոնը տվեց իր համաձայնությունը և Յովհաննէս Գրագեցի եպիսկոպոսին և երկու ասպետի՝ սույն Դանիէլ քահանայի հետ ուղարկեց պապին։ Երևի սրանք ներկայացրին նաև հավատո դավանության թուղթ, որ գրել էր նույն Դանիէլը և որ մինչև այժմ մնում է Փարիզի Ազգային մատենադարանում.—Դարդել 40—42։

— Դասապետ անունը ԺԴ դարից էլ գործածված է դեռ, ինչպես ցույց է տալիս Ձեռ. Վասպ. 11՝ հիշված 1578 թ.։

* ԴԱՐԵՋԱՆ, այս անվան բուն ձևն է Նեստան-Դարեջան, որ առաջին անգամ գործ է ածել վրաց դյուցազներգակ բանաստեղծ Շոթա Ռուսթավելին իր «Վագրենավոր» պոեմում (իբրև իր գլխավոր հերոսուհիներից մեկի անունը. ԺԳ դար)։ Այնուհետև նույն անունը տարածվեց Վրաստանում Նեստան-Դարեջան, Նեստանդար և Դարեջան ձևերով։ Համարվում է պրս. نیست اندر جهان nīst andar jihān «չկա աշխարհի մեջ, չնաշխարհիկ» ձևից (ամբողջը հաղորդեց վրացագետ Ս. Երեմյանը, 1947 թ.)։

— 1. Դաւիթ գրիչ, Վարազվաչէ Ա-ի աղջկա որդին, որ է Յովհաննէս Թոռնիկ Բ վանականի եղբոր թոռը. Տայոց Թոռնիկեանց

տոհմից. Օշքի վանքում վանական էր. Թոռնիկ Բ-ի պատվերով գրել է վրացերեն մի ձեռագիր, որ կոչվում է Բուրաստանք, 917 թ.— Ակինեան, Մատեն. հետազ. Դ. 71—73։

— 2. Դաւիթ եպիսկոպոս Խոռխոռունեաց. հիշատակվում է այն խոստմնագրում, որ Բաղաց միտրոպոլիտ Վահան եպիսկոպոսը տվեց Անանիա Մոկացի կաթուղիկոսին՝ 958 թ.—Անան. ապստ. 142 բ։

— 3. Դաւիթ, վանական Փառիսոսի վանից. անդամ Խաչենի եկեղեցական ժողովին, որ գումարեց Անանիա Մոկացի («946—968 թթ.») կաթուղիկոսը.—Անան. ապստ. 134 բ։

— 4. Դաւիթ վանական, իր վանական եղբայրների հետ ստորագրում է ինչ-որ պայմանագրի, 1067 թ.—Արցախ 226։

— 5. Դաւիթ Բջնեցի, «հիվանդությա՞ն» պատճառով ուխտի գնաց Երուսաղէմ, Հռոմ, Ս. Յակոբ (Սպանիոյ), վերադարձին գնաց Կիլիկիոյ Ակներ վանքը։ Այստեղ կար մի Ագաթանգեղոս, որ երկաթագիր լինելով դժվարընթեռնելի էր։ Վանականների պատվերով Բջնեցին նույնը նորից արտագրեց մաքուր և ընթեռնելի բոլորագրով 1261 թ.—Մանրամասն ուսումնասիրություն իր մասին տե՛ս Հրտր. Ագաթ. 1909 թ. յուշ. էջ ԻԹ—ԼԴ։

— 6. Դաւիթ (№ 57) Ջ կաթուղիկոս Աղուանից.—Անան. ապստ. 144 ա։

— 7. Դաւիթ թարգման, ծառայում էր Բաթու խանի մոտ։

— 8. Դաւիթ ոմն վանակա՞ն, որի ձեռքով Հասան և Ելթի Շիրանշահանց մի Աւետարան են նվիրել Եղիշէ առաքեալի վանքին, 1266 թ.—Արցախ 227։

— 9. Դաւիթ, 1271. տե՛ս Մոնսոր։

— 10. Դաւիթ քահանա, միաբան Ակների վանից (Կիլիկիա), 1329 թ.—Սիսուան 155 բ։

— 11. Դաւիթ (№ 55) Ե կաթուղիկոս Աղուանից.—Անան. ապստ. 139 ա։

— 12. Դաւիթ, վանահայր կամ հայրապետ Մոկաց Ս. Փրկիչ վանքի, հաջորդել է Յովհաննէսին. հիշված է 1413 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 274 ա։

— 13. Դաւիթ (№ 187) տանուտիրոջ գերդաստանը հետևյալ ձևով կարելի է դասավորել.—Դաւթի հայրն է Գալոց, մայրը՝ Թուրվանդ, կինը՝ Եթար, եղբայրը՝ Խաչատուր, որի կինն է Մարգարիտ։ Տանուտեր Դաւթի որդին է Մուրատ, աղջիկները՝ Ջինար, Համբէկի և Նսէ՞ֆ. Ջինարի որդին է Աւդիշ. Դաւթի եղբայր Խաչատուրի

որդիքն են Տէր Գրիգոր և Մելքիսեթ։ Տէր Գրիգորի կինն է Սալլում, դուստրը Գոզալ, իսկ Մելքիսեթի կինն է Շահում, աղջիկը՝ Թուրվանդ։ Այս բոլորը հիշված են 1437 թվին. մեռել է Մուրատը այ" թվից առաջ.—Ձեռ. Վասպ. 379—380։

— 14. Դաւիթ, «նորաբողբոջ, դեռաբուսիկ» որդի իշխանաց իշխան Շալուէի. հիշված է 1441 թ.—Հրտր. Ազաթ. 1909 թ. յուշ. խԸ։

— 15. Դաւիթ երեց, գրիչ. Վայոց Ձորի Սրկղունք գյուղում օրինակեց մի Ճառընտիր 1478 թ.—Հրտր. Ազաթ. 1909 թ. յուշ. էջ Ծ։

— 16. Դաւիթ (№ 240) Թ Առաջաձորեցի, կաթուղիկոս Աղուանից, գահակալել է ՌԻԲ=1573 թվին՝ հաջորդելով ուրացյալ Գրիգորին, որ գահ էր բարձրացել 1556 թվին և ուրացել էր նույն 1573 թվին. խաչենցիք կախում են նրան Գանձասարի զանգակատնից և սպանում 1574 թվին. սրան հաջորդեց Փիլիպպոս Տումեցի (կամ Թումեցի), նույն 1573—1574 թվին.—Ձեռ. Դադեան, Ա. 89 բ, Բարխուդ. Պատմ. Աղուանից Բ. 21, Ջամբռ 78։

— Դէլոյիխան, ար. թ.?.—Արցախ 201։

— Դիլիջան անվան ավելի հին հիշատակություն ունենք՝ Տիլիջան 1535 թ. (Հրտր. Ազաթ. 1909 թ. յուշ. էջ Ծ)։

— Դովլաթխաթուն, առաջին կին իշխանաց իշխան Շալուէի. մեռավ նախքան 1441 թ. և Շալուէն ամուսնացավ երկրորդ անգամ Գուլփաշայի հետ.—Հրտր. Ազաթ. 1909 թ. յուշ. էջ խԸ։

# Ե

— Եթար, կին տանուտեր Դաւիթի, որ Թացու գյուղում Յովսէփ գրչին գրել տվեց մի Աւետարան, 1437 թ.—Ձեռ. Վասպ. 379։ (Այսպիսով Եթար անվան հնագույն հիշատակությունը՝ որ դրել էի 1557 թ., այժմ կբարձրանա մինչև 1437 թ. և հետևաբար Սմբատեանցի հիշած 1336 թիվը շատ ավելի հավանական կդառնա)։

— Եղբայրիկ, Համազասպեան, «արագախօս և կորովամիտ», մին այն վարդապետներից, որոնք Անանիա Մոկացի կաթուղիկոսի («946—968 թթ.») հետ գրեցին Աղուանից Սահակ կաթուղիկոսին՝ հետ կասեցնելու համար նրան քաղկեդոնական դավանանքից։—Անան. ապստ. 131 ա։

— Եղևոն, որդի Աստոմ քահանայի, որ Աղթամարում գրել տվեց մի Աւետարան, 1454 թ.—ՀԱ 1937, 580։

— 1. **Եղիա** (Տէր), շինեց խաչենի Առաջաձոր գյուղի մոտի անապատը 1249 թ.—Արցախ 189 (թերևս նույն է № 13)։

— 2. **Եղիա**, արքեպիսկոպոս, առաջնորդ Մշոյ Ղազարու վանքի. 1496 թ.—Ակինեան, Մատեն. հետազ. Դ. 311։

— 3. **Եղիա**, արքեպիսկոպոս, առաջնորդ Մշու Առաքելոց վանքի, 1496 թ.—ՀԱ 1937, 320։

— **Եղիշէ**, եպիսկոպոս Վայոց Ձորի 1478 թ.—Հրար. Ազատ. 1909 թ. յուշ. էջ Ծ։

— 1. **Եղիսաբեթ**, քույր Ատոմ քահանայի՞, որ Աղթամարում գրել տվեց մի Ավետարան, 1454 թ.—ՀԱ 1937, 580։

— 2. **Եղիսաբէթ**, կին Ստեփաննոսի և մայր Մովսէս աբեղայի, որ օրինակեց Ավետարանը՝ Բաբերդի Անլոց անապատում, 1486 թ.—Էջմիածին 1944, № 1, էջ 36 բ։

— 1. **Եսայի**, «բանիբուն փիլիսոփայ և անհաս նկարող, որ երփն երփն գունով ծաղկափթիթ զարդարեաց զհրաշափառ տօնական և կազմեալ զսա», որ օրինակել էր Մատթէոս երեցը Վերին Նորավանքում, 1456 թ.—Հրար. Ազատ. 1909 թ. յուշ. էջ ԽՁ։

— 2. **Եսայի**, «նորաբոյս վարդապետ», միաբան Բոլորաբերդի անապատի, 1482 թ.—Խաղբակեանք 236։

— 1. **Երանոս**, որդի Պարոնշահի, որ գրել տվեց մի Ավետարան 1329 թ.—Ձեռ. Վասպ. 179։

— 2. **Երանոս** (հտ. Բ, էջ 134), **Իրենէոս** «հետևող առաքելոց» և **Իրինէոս** եպիսկոպոս Լիոնի նույն անձն է (Նկատողութ. Ե. Տեր-Մինասյանի)։

* ԵՐԱՆՋԱՆ, ար. կազմված **Երան** անունից. ջան փաղաքշականով. հիշված է ԺԷ դարում (Ջքր. Ագուլ. 164, 166)։

— 1. **Երեմիա** ճգնավոր կրոնավոր, հոգևոր ծնող և ուսուցիչ Ավագտէր վարդապետի, որ գրիչ և միանգամայն առաջնորդ էր Սրկղունից Սպիտակաւոր վանքի և մեռել է 1498 թվից քիչ առաջ.—Խաղբակեանք 233։—Նույն է **Երեմիա** աբեղա № 25։

— 2. **Երեմիա** երաժիշտ (№ 33). սրա տապանաքարի արձանագրությունն է. «Այս է շիրիմ հանգիստ և բնակարան Երեմիայի երաժշտի որք ընթեռնոյք յաղաւթս յիշեցէք ի թվ ՉԷ (=1258, որ կարելի է նաև կարդալ ՁԷ=638)։ Այս գերեզմանն է ակնարկում Տիգրան Կամսարականը «Հայր Կոմիտասին» նվիրված «Հայկական գեղեցկություններ» վերնագրով հոդվածի մեջ, որ տպված է «Գոհարներ հայ գրականության», Բոստոն, 1916, էջ 230։ (Նկատողութ. Ե. Տեր-Մինասեանի)։

— Եւթեմիոս, որդի Ապուլհերիթի, որ կրոնական անունով կոչվում է Ս. Հովհաննես Հագիորիտ և Աթոսի վրացական վանքի հիմնադիրն է։ Մոր կողմից Եւթիմիոսը Տայոց Թոռնիկյաններից Ապուհարպ Ա-ի թոռն է։ Տայոց Դաւիթ կյուրապաղատի մահից (1000 թ.) հետո իբրև պատանդ գնացել էր Պոլիս։ Ստացել է «սուրբ» կոչումը.—Ակինեան, Մատեն. հետազ. Դ. 61։

— Եւում, ար. հիշված է 1713 թ. (Ձեռ. Թաւր. 131 բ). նույնը ճշտում ձևով գտնում եմ ԺԸ դարում (Զամբռ 175)։ Ծագումն անհայտ։

— Եւստափիոս, հայ եպիսկոպոս, որ իր աշակերտների հետ միասին այցելել է Եթովպիա, կրոնական առաքելությամբ (նախքան ԺԱ դար).—Ալպօյաճեան, Առաքելութ. ի Հապէշ. 71։

# Զ

— 1. Զապէլ, թագուհի, դուստր Ամորիի Լուսինեան, կին Լևոն Բ-ի.—Դարդել 14 կոչում է Զիբիլ։

— 2. Զապէլ, թագուհի, դուստր Լևոն Բ-ի.—Դարդել 15, 16։

— 3 Զապէլ, թագուհի, կին Օշին թագաւորի և մայր Լևոն Ե թագաւորի.—Դարդել 26։

— 4. Զապէլ, դուստր Օշին մարաջախտի, ամուսնացավ լատին իշխան Պալիան Իպլինեանի հետ.—Սիսուան 371 բ։

— 5. Իզապէլ, դուստր Հեթում Ա-ի և քույր Լևոն Գ-ի. ամուսնացավ Կիպրոսի Ամորի Լուսինեան իշխանի հետ, որից ունեցավ 5 որդի. սրանցից Գուի եղավ Հայոց թագավոր, Ջեհան՝ եղավ իշխան և գունդստապլ թագավորության, և այս վերջինիս որդին էլ է Լևոն Զ.—Դարդել 16, 27 (Զապէլ № 5 և 7 իրար է միացրել)։

— 6. Զապէլ, Լուսինեան, դուստր Գուի կամ Գւիդոն (№ 4) թագավորի Հայոց. Լևոն Զ-ի հորեղբոր աղջիկն էր. դիմեց Կիպրոսի Պետրոս թագավորին և ստացավ Կիպրոսի Aradippo բերդը՝ ի բնակություն։ Երբ Լևոն Զ գերի էր Եգիպտոսում, այս Զապէլն էլ դիմեց սուլթանին և խնդրեց Լևոնի ազատությունը։ Հռոդոս կղզում Լևոն և Զապէլ հանդիպեցին իրար 1382 թ.—Դարդել 61, 64, 164, 185։

— 7. Զապէլ, քույր Օշին թագավորի. ուներ չորս որդի. Օշին պայլը, որ Լևոն Ե-ի խնամակալ էր կարգված, խեղդեց Զապէլին և նրա 4 որդոց բանտարկեց. երկուսը (Հիւգ և Հանրի) մեռան բանտում, երկուսին էլ նավ դնելով քշեց Հռոդոս կղզին.—Դարդել 28, 29, 30, 31, 34, 37։

— **Զանան**, *իգ. ԺԷ դա՞ր.—Զեռ. Վասպ. 994։*

*ԶԱՌՆԻՇԱՆ, իգ. գործածական է Մեղրիում (տե՛ս Հ. Մկրտչյան, Նովելներ և ակնարկներ, Երևան, 1945, էջ 183)։*

— **Զառնիշան**, *այժմ կա, ինչպես Սով. Հյստ. 1947, № 99, ապր. 27, էջ ա, սյուն. 3-րդ։*

— **Զարդեղ**, *կանգնեցրել է մի խաչքար՝ Ջրաղացի ձորում, 1215 թ.—Խաղբակեանք 60։*

— **Զարտօ**, *ա՞ր. 1810 թ. (Զեռ. Վասպ. 290)։*

— **1. Զաֆարիա**, *«դեռաբուսիկ և պատուական հոգևոր եղբայր» Սիմէոն քահանայի, որ նրա խնդիրքով գրեց մի Մանրուսմունք, Կիլիկիոյ Գալու վանքում, 1336 թ.—Սիսուան 201 ա։*

— **2. Զաֆարա**, *հայր Բուպայի (№ 2), որ Ամիր-Հասան Բ Պռօշեան (+1351 թ.) իշխանի կինն էր.—Խաղբակեանք Ա. 206։*

— **3. Զաֆար**, *քարտաշ. շինեց մի խաչքար Կարապետ քահանայի համար, Սևան 1448 թ.—Շողակաթ 139։*

— **4. Զաֆարիա**, *գրիչ, օրինակեց մի Աւետարան Աւխուռ վանքում, 1496 թ.—ՀԱ 1937, 321։*

— **5 Զաֆարիա**, *դպիր, եղբորորդի Արծկէի Յակոբ եպիսկոպոսի, որ նրա օգնությամբ Արծկէում օրինակեց մի Աւետարան, «ի խնդրոյ Ստեփաննոսի որդւոյ Մովսէսի», 1499 թ.—Ակինեան, Մատեն. հետազ. Դ. 123։*

— **6. Զաֆարիա**, *տեր Գագայ և Տաւուշի, Գարդմանի և Տէրունականի և այլ գավառների։ Սրա հարսնացուն էր Խաթուն, դուստր Հասանի Դեսումեանց։ Խաթունն իր երկու եղբայրների՝ Սենեքերիմի և Սևադայի հետ եկավ Զաքարիայի մոտ. երկու եղբայրները մեռան և Խաթունը նրանց հիշատակին շինեց Հաղբատի Ս. Աստուածածին եկեղեցին (թիվն անհայտ).—Արձ. Երզնկեանց՝ Հնախ. տեղագր. 35։*

— **Զէյթուն**, *իգ. գործածական է այժմ, բայց շատ սակաւ. հիշված է Սովետ. Հյստ. 1945 թ., մայիս 23, էջ ա, սյունակ 6-րդ։*

— **Զիբիթա**, *իգ. 1692 թ. հրտր. Ագաթ. 1909 թ., յուշ. էջ ԺԶ։*

— **Զինատր**, *հիշված է Հաղբատի հասարակաց գերեզմանատան մեջ մի տապանաքարի վրա.—Երզնկեանց, Հնախ. տեղագր. 63, 67։*

# Է

— **Էտիլմէլիք**, *կին պարոն Սինանի Կամենիցացոյ, որ շինեց Կամենիցի Ս. Նիկողայոս եկեղեցին, 1398 թ.—Կամենից 160։*

— Էնէրէկ, արար վորավար Եգիպտոսի, որ ուզեց գահը գրավել, բայց երեք ամիս իշխանություն վարելուց հետո տապալվեց։— Դարդել 160—163։

— Էր Հայկազն. սրա մասին ավելի ընդարձակ տե՛ս այժմ Վ. Թերզիբաշյան, Տեղեկ. Ակադ. 1946, № 6, էջ 57—59։

# Թ

— Թագուհի, կին Պետրոսի և մայր Կոստանդին քահանայի. Սսոյ Ս. Նշան եկեղեցու, 1323 թ.—Սիսուան 223 ա։

— 1. Թադէոս եղբայր. դեսպան ուղարկվեց Լևոն թագավորի կողմից Հռոմի պապի մոտ, 1324 թ.— Սիսուան 391, 558 բ։

— 2. Թադէոս քահանա, միաբա՞ն Վերին Նորավանից, 1456 թ.—Հրատ. Ազաթ. 1909 թ. յուշ. էջ ԽՁ։

— Թամո՞ւս (տես. Թամսին). կին մեծ իշխան Սարգսի և մայր իշխանաց իշխան Շալուէի, որ Սերկևլի գյուղում գրել տվեց մի Ճառընտիր, 1441 թ.—Հրատ. Ազաթ. 1909 թ. յուշ. էջ ԽԸ։

— Թանկրի, հիշված է ԺԹ դարում ոմն Մելիք Թանկրի՝ Սիւնեաց իշխաններից (Սիսական 18 և 210)։

— Թանսուխ, աշախին Յովհաննէս միայնակեացի, երբ նա գրում էր Ճառընտիրը Այրարատեան գավառի Սերկևլի գյուղի Ս. Յովհաննէս վանքում, 1441 թ.—Հրատ. Ազաթ. 1909 թ. յուշ. էջ ԽԹ։

— Թարխան (№ 2), կին Մելքոնի. ուղղել որդի Մելքոնի, ըստ որում Թարխան իգական անուն չէ։ Մելքոնի կինն է Թուրվանդա (№ 12)։

— Թաֆան խաթուն, կին Աւագպարոնի և մայր Ջանխաթունի, որ նվերներ է արել Յովհաննավանքին, Համազասպ եպիսկոպոսի առաջնորդության (1279—1300 թթ.) օրով.—Ջքր. պատմ. Գ. 26. Այրարատ 171. Հմմտ. Թուրֆան:

— Թեզա, իգ. հիշված է 1581 թ.—Ջեռ. Վասպ. 694։

— 1. Թենիկ, երևի փախցրած է. տե՛ս Շալուէ № 7։

— 2. Թենիկ, դուստր մեծ իշխան Սարգսի և քույր իշխանաց իշխան Շալուէի. հիշված է 1441 թ.—Հրատ. Ազաթ. 1909 թ. յուշ. էջ ԽԸ։

— 1. Թէոդորոս (№ 33) նկարիչ, որդի Քրիստափոր քարագործի. թվականը ավելի է ճշտում Գարեգին եպիսկոպոս՝ Կեանք և գիր, Գահիրէ 1948, էջ Գ, Դ և 1, այն է 1082 թ.։ Շուրջ այս թվերին գրել

է մի Աւետարան Մատթէոս կրոնավորի և նրա եղբոր՝ Վահանի համար։

— 2. Թէոդորոս սարկավագ Անաւարզայի Ս. Աստուածածին եկեղեցու 1314 թ.—Սիսուան 243 ա։

— Թոդոս[ակ], ճարտարապետ, որ Գորի քաղաքի մոտ (Վրաստան) շինեց Ատենի Սիոն կոչված հռչակավոր տաճարը, Մցխեթայի բլրի Ս. Խաչի օրինակով՝ է դարում.—Տեղեկ. Ակադ. 1945, № 5, էջ 4։ Իր ընկերակից վարպետներն էին Ահարոն, Գիորգ և Գրիգոր։

— 1. Թոռնիկ Ա, Տայոց Թոռնիկեանց նախահայրն է. ապրել է Ժ դարի սկիզբը. իր սերունդները աքսորվել են կայսեր հրամանով 945 թ.։ Ճյուղագրությունը կազմել է Ակինեան, Մատեն. հետազ. Դ. 49—88, տոհմածառը գտնվում է էջ 72, որի ամփոփումը դնում եմ այստեղ. 1) Թոռնիկ Ա, Թոռնիկեանց նախահայրն է. 2) ունի երեք որդի՝ Աշուշայ Ա, Չորտուանէլ Ա (կինն է Մարիամ) և Ապուհարպ Ա. 3) Չորտուանէլ Ա ունի 5 որդի (Յովհաննէս-Վարազվաչէ, Բագարատ Ա, Յովհաննէս-Թոռնիկ Բ, Ապուհարպ Բ, Աշուշայ Բ). 4) Ապուհարպ Ա ունի մի դուստր, որի ամուսինն է Յովհաննէս-Ապուլհերիթ (սրա որդին է Ս. Եւթիմիոս) և մի ուրիշ որդի (որի որդին է Չորտուանէլ Բ). 5) Յովհաննէս-Վարազվաչէ ունի 3 որդի (Միքայէլ, Չորտուանէլ Գ, Թոռնիկ Գ) և մի դուստր, որի որդին է Դաւիթ գրիչ. 6) Յովհաննէս-Թոռնիկ Բ ունի որդի (Բագարատ Բ Մագիստրոս). 7) Չորտուանէլ Ա-ի որդիներից մեկն էլ (անունն անհայտ) ունի երկու որդի (Բագարատ Գ պատրիկ և Չորտուանէլ Դ պատրիկ). 8) Չորտուանէլ Գ ունի մի որդի, որ է Վարազվաչէ Բ. 9) Վարազվաչէ Ա-ի աղջկա որդին է Դաւիթ գրիչ։ Սրանք բոլորը թեև հայազգի, բայց ընդունած լինելով հունադավանությունը, համարվել են վրացի։ Ամեն մեկի մասին ավելի մանրամասն տե՛ս առանձին։

— 2. Թոռնիկ Բ (№ 4), որդի Չորտուանէլ Ա-ի և թոռն Թոռնիկ Ա-ի. Տայոց Թոռնիկեանց տոհմից. նախապես զինվորական ծառայության մեջ էր. 976 թվին ընդունեց կրոնական կոչում և Յովհաննէս անունով մտավ Թորթումի վանքերից մեկը, հավանորեն Օշքի (Ուշքի, հյ. Աշունք) վանքը, ուր օրինակել տվեց «Բուրաստան» կոչված հավաքածուն։ Այս հավաքածուն պարունակում էր Ս. Եփրեմի և Ոսկեբերանի ճառերը՝ վրացերեն լեզվով (977 թ)։ Այս թվին էր, որ Վարդ Սկլերոս ապստամբեց կայսեր դեմ. Թէոֆանէ կայսրուհին խնդրեց Յովհաննէս-Թոռնիկ վանականից՝ առժամանակ թողնել իր վանքը և ապստամբի վրա գնալ։ Չկարողացավ մերժել կայսրուհու աղաչանքը։ Յովհաննէս-Թոռնիկը գնաց Տայոց Կիւրապաղատ Դաւիթի

մոտ, ստացավ նրանից 10 000 զորք և իշխանաց իշխան Ջոջիկի հետ միասին արշավեց Վարդի դեմ։ Խորտակեց նրա բանակը և իրեն էլ մինչև Նփրկերտ հալածեց։ Սրա վրա Թէոփանէ կայսրուհին մեծամեծ կալվածներ նվիրեց Թոռնիկին։ Ասող. Գ. ժե պատմում է այս դեպքը և Թոռնիկին կոչում է «յազգէն Վրաց», որովհետև հունադավան էր։ Թոռնիկի պատվերով էր, որ Կարնոյ երկրում գրվել է մի «Գանձարան», նույնպես վրացերեն լեզվով (981 թ.)։ Այս շրջանից է դարձյալ այն խաչքարը, որ Թոռնիկ վանականը կանգնեցրել է Կարնոյ մոտ՝ հայերեն արձանագրությամբ. «Անուն Աստուծոյ. ես Յովանէ որդի Զորտվանէկի կանգնեցի զխաչս զայս ի ժամանակին Վասիլ և Կոստանդին» (տե՛ս Սարգիսեան, Տեղագր. էջ 79)։ Կարնից Թոռնիկը հեռացավ գնաց Ոլիմպոսի վանքը, ուր գտնվում էր իր հորեղբոր՝ Ապուհարպի աղջկա ամուսինը՝ Յովհաննէս Ապուլհերիտ Հագիորիտ վանականը. բայց այդտեղ լսելով, որ նա գնացել է Աթոս, ինքն էլ գնաց նրա մոտ։ Ապուլհերիտը բացել էր Աթոսում մի վրացական վանք, ուր մտավ նաև Թոռնիկը իբր վանական։ Թոռնիկը այն բոլոր ստացվածքը, որ նվեր էր ստացել Թէոփանէ կայսրուհուց, նվիրեց Ապուլհերիտին և նա էլ այդ գումարով կառուցեց Աթոսի «Իվիրոն» վրացական վանքը, որ նույն լեռան բոլոր վանական հաստատությանց մեջ ամենից նշանավորն եղավ։ Նույն վանքին նվիրեց նաև այն երկու վրացերեն ձեռագրերը, որոնք գրել էր տվել Տայքում և Կարինում։ Մեռավ 984 թ.։ Սրա որդին է Բագարատ Բ Մագիստրոսը, որ տե՛ս առանձին.—Ակինեան, Մատեն. հետազ. Դ. 54—65, Ասող. Գ. ժե, իէ, լէ, խ։

— 3. Թոռնիկ (№ 6). Ակինեան, Մատեն. հետազ. Դ. 70 միացնում է սրա հետ Թոռնիկ Գ, որդի Վարազվաչէի՝ եղբոր Յովհաննէս Թոռնիկ Բ վանականի և թոռն Զորտուանէլ Ա-ի, Տայոց Թոռնիկեանց տոհմից։ Այս Թոռնիկը Վրաստանում զորավար էր նախապես. իր բռնակալության պատճառով ամբաստանվեց կայսեր առաջ, որը զրկեց նրան իշխանությունից և Ադրիանուպոլիս վանքը դրավ, ուր ստացավ Լևոն անունը։ Թոռնիկը զայրացավ, գրգռեց շրջակա դուքսերին և նրանց հետ միանալով արշավեց Կոստանդին Թ Մոնոմախոս կայսեր դեմ (1047 թ.)։

— 4. Թոռնիկ Եւթիմիոս, Տայոց Թոռնիկեանց տոհմից. խոսել է մի դամբանական՝ Աթէնքի Նիկողայոս միտրոպոլիտի վրա՝ 1175 թ.—Ակինեան, Մատեն. հետազ. Դ. 74։

— 5. Թոռնիկ Գէորգ, կոչված μαΐστωρ τῶν ρητόρων. Տայոց Թոռնիկեանց տոհմից. գրել է Ներբողեան Իսահակ Անգելոս կայսեր

վրա և մի ուրիշը Գեորգ պատրիարքի (1192—1199 թթ.) վրա.— Ակինեան, Մատեն. հետազ. Դ. 74։

— 6. **Թոռնիկ** Դ, Տայոց Թոռնիկեանց տոհմից. Սկիւլիցէս հիշում է նրան «Թոռնիկ ὁ Χοτὲρτζης» ձևով. զորավար, որ հունական բանակում կռվում էր Խլաթի առաջ, 1071 թ.—Ակինեան, Մատեն. հետազ. Դ. 73—74։

— 7. **Թոռնիկ** Դեմետրիոս, Տայոց Թոռնիկեանց տոհմից. եպիսկոպոս Կաստորիայի. հայտնի է Լատինացոց դեմ գրած իր հակաճառություններով (ԺԲ դար).—Ակինեան, Մատեն. հետազ. Դ. 74։

— 8. **Թոռնիկ** Դեմետրիոս Կոմնենոս, Տայոց Թոռնիկեանց տոհմից. Յովհաննէս Դ Լասկարիսի (1258—1259 թթ.) օրով պետական վարչության մեջ բարձր դիրք էր գրաված. սրա աղջիկը ամուսնացավ Թէոդորոս Պետրալիփոսի հետ.—Ակինեան, Մատեն. հետազ. Դ. 74։

— 9. **Թոռնիկ** Կոստանդին, Տայոց Թոռնիկեանց տոհմից. սպանված սեբաստոկրատոր տիտղոսը՝ 1260 թ.—Ակինեան, Մատեն. հետազ. Դ. 74։

— 10. **Թոռնիկ** Թէոդորոս, Տայոց Թոռնիկեանց տոհմից. կոչվել է «մեծիմաստ ծերունի». ասում են, թե իր մահվան անկողնում ողբացել է Պոլսի մոտալուտ անկումը՝ 1261 թ.—Ակինեան, Մատեն. հետազ. Դ. 75։

— 11. **Թոռնիկ** Դեմետրիոս (Δημήτριος Τορνίκιος ὁ Πιγκèρνης), որի կինն է „Αννα ἡ Τορνικίνα ἡ Πιγκέρνισσα„. սրանց զավակներն են Յովհաննէս Կանտակուզենոս, Անդրոնիկոս և աղջիկները՝ Մարիամ և Իրենէ։ Տայոց Թոռնիկեանց տոհմից են։ Մակեդոնիայում Զաւանտիսի մոտիկ Վելիցիսթա գյուղում ունեին կալվածներ, որ նվիրեցին Աթոսի Պանտոկրատոր վանքին, 1338 թ.— Ակինեան, Մատեն. հետազ. Դ. 75։

— 12. **Թոռնիկ** Անդրոնիկոս Կոմնենոս, Տայոց Թոռնիկեանց տոհմից. հիշվում է սրա տապանագիրը՝ ԺԳ դա՞ր.—Ակինեան, Մատեն. հետազ. Դ. 74։

— 13. **Թոռնիկ** Միքայէլ. Տայոց Թոռնիկեանց տոհմից. ստացել է գունդստապլի աստիճանը՝ 1320 թ.—Ակինեան, Մատեն. հետազ. Դ. 75։

— 1. **Թովմաս** Արտաւան, հայ պատրիկ Բիւզանդական պետության մեջ, ԺԱ դար. մնում է իր կնիքը. այլուստ ոչինչ հայտնի չէ։—Տէր-Սահակեան, Հայ կայսերք, Բ. 576։

— 2. **Թումայ**, հոգևոր եղբայր Կիրակոս միայնակեացի, որ

գնեց Իգնատիոս Հռոմոսցու գրած մի Աւետարանը և նվիրեց Մարտիրոս քահանային, 1400 թ.—Ցովսէփեան, Նիւթեր և ուս. Բ. 65 բ։

— 3. **Թումա** (№ 84), որդի Մկրտիչ քահանայի, որ Բերկրիում Յակոբ կրոնավորին գրել տվեց մի ծաղկազարդ Աւետարան, 1418 թ. (Նոտարք 55)։ Սրա հետ նույնն է Թուման (№ 3), (վերջածայնը որոշիչ հոդ է), որդի Մկրտիչ քահանայի, որ Բերկրի քաղաքի առաջնորդն էր 1422 թ. (Ջեռ. Վասպ. 350)։ Սրա եղբայրն է Պետրոս ծաղկարար։ Հայրը նշանավոր Մկրտիչ քահանան է, որդի Օզբէկի։

— 4. **Թումայ** ոմն, որի կինն է Նակի. ունեին մի ձեռագիր Աւետարան, որ շնորհեցին Վարդան եպիսկոպոսին՝ Ծպատի անապատում արտագրելու նպատակով, նրբի Թումայ քահանայի համար, 1421 թ., Ջեռ. Վասպ. 332։

— 5. **Թումա** տանուտէր, որին որդեգրեց տանուտեր Յովհաննէսը (Վանում) և թերևս իր տանուտերությունը նրան հանձնեց։ Թուման Վարդանին կազմել է տվել Յովհաննէս տանուտերի ճառընտիրը 1453 թ., որ նույն Յովհաննէսը նվիրել է Թումային.—Հրար. Ազատ. 1909 թ. յոջ. Ծ—ԾԱ։

— 6. **Թումայ** սարկաւագ, թուղթ էր կոկում Գրիգոր քահանայի համար, երբ սա արտագրում էր Աւետարանը Ատոմ քահանայի համար, 1454 թ.—ՀԱ 1937, 580։

— **Թորգոմ** պարտիզակցի, վարժարաբ Երուսաղեմի, հաշորդեց Եղիշե Դուրյանին և գահակալեց 1931 թ.։

— 1. **Թորոս** միաբանց, միաբան Ակների վանից. թուղթ էր կոկում Դաւիթ Բշնեցու համար, երբ սա օրինակում էր Ազաթանգեղոսը 1261 թ.—Հրար. Ազատ. 1909 թ. յոջ. էջ ԼԲ։

— 2. **Թորոս** ստեփանոսը (№ 48), ըստ Սիսուան 196 արտագրել է Մեծքարում նաև մի Աւետարան 1260 թվից մի քանի տարի հետո, «վասն Ներսիսի սպասաւորի բանի՝ ձեռնտուութեամբ արեանառուին իւրոյ՝ «մաքրակրօն արհիեպիսկոպոսին Տէր Յակոբայ», որ յամի 1268 ամբարձաւ ի գահ կաթուղիկոսութեան, և գիտնական մականուանիւր. միւս եւ Աւետարանի գրիչ յամի 1293, յաստուածարնակ ուխտս Մեծայր» (Դժբախտաբար շատ խառն և երկիմաստ տողեր են)։

— 3. **Թորոս**, պարոն, փոխանորդ գունդստապլի Հայոց Թագավորի Այասում, հիշված 1304 թ.—Սխոռեան 366 բ, 367 ա։

— 4. **Թորոս** պայտար, 1307 թ.—Տե՛ս Օշին Վասիլենց։

— 5. **Թորոս** Յովհան, 1307 թ.—Տե՛ս Օշին Վասիլենց։

— 6. Սիր **Թորոս** Միխայլենց, գլխավորն էր Այասի մաքսատան 1314 թ.—Սիսուան 368 ա։

— 7. **Թորոս** երեց, հանգուցյալ քահանա Անաւարզայի Ս. Աստուածածին եկեղեցու 1314 թ.—Սիսուան 243 ա։

— 8. **Թորոս** Սիր, եղբայր Գրիգոր և Յովհաննէս միաբանների Թիւքքթի վանքի (Կիլիկիա), հիշված են 1314 թ.—Սիսուան 156 բ։

— 9. **Թորոս**, «հացկտուր» (միաբաններին հաց բաժանող) Թիւրքթի վանից (Կիլիկիա), հիշված 1314 թ.—Սիսուան 156 բ։

— 10. **Թորոս** գրիչ. պանդուխտ էր ի Կիպրոս, ուր օրինակեց Նոր Կտակարանը, Կիպրոս էջ 1318 թ.—ՀԱ 1937, 381։

— 11. **Թորոս**, հորեղբայր Ասատ քահանայի, որ Աղթամարում գրել տվեց մի Աւետարան, 1454 թ.—ՀԱ 1937, 580։

— 12. **Թորոս** եպիսկոպոս Կոպիտառայ բերդի 1467 թ.—Սիսուան 535 բ։

— 13. **Թորոս** պարոն, հայր Վասիլի, որ կարգվել էր Լևոն Զ-ի կողմից արքունի գանձին խնամակալ 1374 թ.—Դարդել 79, 109, 135։

— 14. **Թորոս** արքեպիսկոպոս, առաջնորդ Մշու Ղազարու վանքի, 1496 թ.—Ակինեան, Մատեն. հետազ. Դ. 311։

— 15. **Թորոս** արքեպիսկոպոս, առաջնորդ Մշու Առաքելոց վանքի, 1496 թ.—ՀԱ 1937, 320։

— **Թումաշ** (երկիցս), տր. թ.?.—Ջեռ. Վասպ. 716. (1590-ից ուշ)։

— **Թուխթէնի** պարոն, կին Սուլթանի և մայր Մատթէոս երեցի, որ օրինակեց Տօնականը Վերին Նորավանքում, 1456 թ.—Հրատ. Ագաթ. 1909 թ. յուշ. էջ ԽԶ։

— **Թուխծամ**, թվի երկրորդ մայր Մատթէոս երեցի, որ օրինակեց Տօնականը Վերին Նորավանքում, 1456 թ.—Հրատ. Ագաթ. 1909 թ. յուշ. էջ ԽԶ։

# Ի

— **Իբրահիմ** փաշա, հայ քահանայի որդի. Սուլթան Սիւլէյմանի օրով կազմակերպեց ատարազների կերպասն ու ձևը, որ հայ արհեստավորի շնորհքն էր և որոնք որպես նորաձևություն փոխադրըվեցին Եվրոպա 1530 թվին» (Ատրպետ, Ծորոխի-աւազանը, Վիեննա 1929, էջ 41)։

— Իկիքաղա, որդի Սուլգանի և եղբայր Մատթէոս երեցի, որ օրինակեց Տօնականը Վերին Նորավանքում, 1456 թ.—Հրատ. Ագաթ. 1909 թ., յուշ. էջ խՋ։

— 1. Իգնատիոս, եղբորորդի Սեբաստիոյ Գրիգոր եպիսկոպոսի. իր եղբայրներն են Գրիգորէս քահանա և Խաչիկ քահանա, որոնք հիշված են Դրազարկի վանքում, 1173 թ.—Սիսուան 233 ա։

— 2. Իգնատիոս վանական, միաբան Վերին Նորավանից, 1456 թ.—Հրատ. Ագաթ. 1909 թ., յուշ. էջ խՋ։

— Իսամ, ար. 1737 թ.—Արցախ 161։

— Իշխան, եղբայր Յակոբ փակակալի. սպասավորում էր Արարատեան գավառի Սերկևլի գյուղի Ս. Յովհաննէս վանքում, 1441 թ.—Հրատ. Ագաթ. 1909 թ., յուշ. էջ խԹ։

— Իսրայէլ (№ 9), քանդակագործ. սրա հնագույն և մեծ արձանագրությունն է Տիգրան Հոնենցինը 1215 թվից, որ ստորագրում է ԻՂ ԳՉ (=Իսրայէղ գրիչ).—Շիրակ 75—78։

— Իւանէ Օրբելեան, կինն է Թուստղան. 1177 թ. Անիի կառավարիչ.—Շիրակ 100 բ։

# Լ

— Լալ Արտազեցի (№ 1), նախապես Ծսայի Նչեցու մոտ էր սովորում, գնաց Բարթուղիմէոս լատին եպիսկոպոսին աշակերտելու և դարձավ ունիթոռական վարդապետ, միաբան Քռնիի վանուց «1330 թ.».—Սիսական 384 ա, Ազգապ. 1845։

— 1. Լևոն երեց, աշակերտ Կոստանդին քահանա Շարահիսանց, ընտիր գրիչ, 1306 թ.—Սիսական 517 բ։

— 2. Լևոն սպա, որ Դրազարկի Թորոս երաժշտի հետ դեսպան գնաց Անգլիոյ Եդուարդ Ա թագավորին, 1307 թ.—Սիսուան 412 բ։

— 3. Լևոն որդի Պաղտինի և եղբայր Գրիգորի, որ նորոգեց Անցմնցուկ գետի կամուրջը 1450/60 թ.—Սիսուան 538 ա։

— 4. Լևոն, որի տունը կողոպտվեց Սսում, Թուրքմենների արշավանքի ժամանակ, 1461 թ.—Սիսուան 544 բ։

— 5. Լևոն, որդի Յովհաննէս քահանայի Կանչ բերդի. Զարմանդուխտ հերոսուհու ցեղից. հիշված է 1473 թ.—Սիսուան 184 ա։

— Լուսվարդ, նորակերտ իգ. անուն (տե՛ս Սովետ. Հյաս. 1945 հուլ. 10, էջ ա, սյուն. 6-րդ)։

# Խ

— Խադ աբեղա, հիշված է նաև 1534 թ.—Ձեռ. Վասպ. 647։

— 1. Խաթուն, «միւս կենակից» Ֆարաճի, որ Հալէպում, Մելքիսեթ գրչին գրել տվեց մի Աւետարան, 1478 թ.—Ձեռ. Հալէպի Ա. 96 բ։

— 2. Խաթուն, դուստր Հասանի Դխումեանց. իր երկու եղբայրների՝ Սեննեքերիմի և Անադայի հետ խաչենից եկավ Գագի և Տաւուշի տեր Զաքարայի մոտ՝ ամուսնանալու նրա հետ. երկու եղբայրները մեռան և նրանց հիշատակին Խաթունը շինեց Հաղբատի Ս. Աստուածածին եկեղեցին (թվականն անհայտ).—Արձ. Երզընկեանց, Հնախ. տեղագր. 35։

— Խանխաթուն, իգ. թ.?—Արցախ 200։

— Խաղբակ կամ Հաղբակ, որդի Միրիշեկի, եղբորորդի Ջումալ Բ-ի, Պռոշեան տոհմից. հիշված են 1475 թ.—Խաղբակեանք 222, 236։

— Խանբէկի անվան ավելի ուշ հիշատակութիւնն է Ղամպէկի, ո՞ր. հիշված է 1798 թ.—Ձեռ. Հալէպի Բ. 76 բ։

— Խանէս, ար. թ.?—Ձեռ. Վասպ. 550։

— 1. Խաչատուր դպիր Երուսաղեմացի, միաբա՞ն Գալու վանից (Կիլիկիա), կազմեց այն Մանրուսմունքը, որ գրեց Սիմէոն քահանան 1325 կամ 1336 թ.—Սիոնւան 201 բ։

— 2. Խաչատուր, որդի Գալոցի և եղբայր տանուտէր Դաւթի, որ Թացու գյուղում գրել տվեց մի Աւետարան 1437 թ.—Ձեռ. Վասպ. 379։

— 3. Խաչատուր կրոնավոր, Արարատեան Սերկևլի գյուղի ուսուցիչն ու քահանան էր. 70 տարեկան հասակում մեծ նեղությամբ ուխտի գնաց Երուսաղէմ. վերադարձին գնեց թուղթ և հասցրեց Յովհաննէս միայնակեացին, որպեսզի օրինակեր Ճառընտիրը նույն Սերկևլի գյուղում, 1441 թ.—Հրար. Ազաթ. 1909 թ., յուշ. էջ ԽԹ։

— 4. Խաչատուր, որդի Յովանէսի, եղբայր Սարգիս կրոնավորի, որ Երուսաղէմում արտագրեց Գանձարանը 1457 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 166 բ։

— 5. Խաչատուր, միջնորդ եղավ գրության կամ գնման այն Աւետարանի, որ օրինակեց Ներսէս աբեղան Աղթամարում, 1461 թ.—Ձեռ. Վասպ. 438։

— 6. Խաչատուր կրոնավոր, գրել տվեց կամ գնեց մի Յայս-

մաւուրք և նվիրեց Մարմետի եկեղեցուն 1462 թ.? (բայց գուցե ավելի ուշ).—Նոտարք 209։

— 1. Խաչիկ, միաբան Սեաւ լեռան Պաղլահայ վանից. Կանոնագրքի իր մի օրինակը երկար ժամանակ շնորհեց Յովհաննէս գրչին՝ արտագրելու համար Արմանի լեռան Յովհաննու անապատում, 1098 թ.—Ակինեան, Թուղթ Մակարայ 102, 103։

— 2. Խաչիկ քահանա, եղբորորդի Սեբաստիոյ Գրիգոր եպիսկոպոսի. իր եղբոր Գրիգորէս քահանայի հետ Թորոս գրչին գրել տվին Պօղոսի թղթերը, Դրազարկի վանքում, 1173 թ.—Սիսուան 233 ա։

— 3. Խաչիկ, կինն է Աղիզմէլէք, ծնողներն են Գրիգոր քահանա գրչի, որ Աղթամարում, Սուլթանմէլէքի համար օրինակեց մի Աւետարան, 1452 թ.—Ձեռ. Վասպ. 415։

— 4. Խաչուկ, որդի խոջա Յովհաննէսի, որ ժառանգեց Տարոնի իշխան իր հորեղբորորդի խոջա Յովսէփի Մուշում գրել տված Աւետարանը՝ 1488 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 263 (տպ. Խաչուկ)։

— Խասպէկ երեց (№ 3). բուն անունն է Խաչատուր Խասպէկ երեց Կաֆացի, որի մասին ընդարձակ տե՛ս Ակինեան, Մատեն. հետազ. Դ. էջ 173—189. տալիս է նրա արտագրած ձեռագրերի հիշատակարանները, գրած տաղերի ցուցակը (ընդամենը 7 տաղ) և նրա մահվան առթիվ գրված երկու ողբ ամբողջությամբ։

— Խատապ, որդի Ծարեցի Զարմանի. վկա է գրվում մի Աւետարանի գնման, 1356 թ.—Արցախ 261։

— Խէրէf, դուստր կամ եղբորդուստր տանուտէր Սահակի, որ Խիզանում գրել տվեց մի Աւետարան, 1474 թ.—Ձեռ. Վասպ. 470։

— Խէրադին, տանուտէր Սերկեւլ գյուղի (Արարատեան գավառ), 1441 թ.—Հրտր. Ազգաթ. 1909 թ., յոր. էջ ԽԹ։

— Խէրխաթուն, կին Սուլտանի՝ որդւոյ Առաքելի, որ էր եղբայր Աստոյ Կարապետ կաթուղիկոսի՝ 1448 թ.—Սիսուան 223 ա։

— Խուբլուբուղա, աթաբեգ և ամիրսպասալար, որդի աթաբէգ և ամիրսպասալար Սադունի. թողել է մի արձանագրություն Անանի եկեղեցում 1287 թ. Անանի հարկերի ներման համար (Կ. Ղաֆադարեան, Անանի երկլեզվ. ծծկ. արձ. Երևան 1945, էջ 20)։ Այս արձանագրության գյուտով միանում են երեք տարբեր Խութլուբուղաները, որոնք հիշել եմ հտ. Բ, էջ 557։

— Խուտիկ օղլու, հավատքը չուրանալով՝ քարկոծմամբ նահատակվեց Կարին, 1672 թ.—Թորգոմեան, Ստամպօլոյ պատմ. Բ. 517։

— Խուրամ անունը հիշված է նաև Սիսական 393 ա (ԺԶ դար)։
— Խուրում, ար. հիշված է 1570 թ. հայրն է Յովհաննէս Խոշկաշինեցու.—Սիսական 366 բ։

# Ծ

— Ծիտաս (Τζίτας), քաջամարտիկ զորավար (ἄνδρα πολεμικὸν καὶ ἱκανώτατον, որ Յուստինիանոս կայսրը ստրատելատ նշանակեց Հայաստանի՝ վերջ տալով Հայաստանի սահմանագլխի վրայի փոքր-փոքր հրամանատարությանց, ինչպես նաև մինչև նույն ժամանակ գոյություն ունեցող դուքսերի և կոմսերի դրության։ Այս ժամանակից սկսած հայերը խումն բազմությամբ սկսեցին զինվորագրվել ստրատելատի հրամանի տակ և մեծամեծ ծառայություններ մատուցին Բյուզանդական պետության (528 թ.).—Գելցեր, Սկզբնաւորութ. Բիւզ. բանակաթեմերու, Վիեննա, 1903, էջ 12։

# Կ

— 1. Կարապետ քահանան (№ 100) ոչ թե մարմնավոր, այլ հոգևոր եղբայրն է Գէորգ երեցի (№ 101), որովհետև Գէորգի եղբայրները (Մովսէս դպիր, Յովհաննէս և Մկրտիչ) արդեն հիշված են Ջեռ. Սեր.=ՀԱ 1926, 241։
— 2. Կարապետ, ծերունի միաբան Ակների վանից Կիլիկիոյ, 1261 թ.—Հրտր. Ազաթ. 1909 թ., յուշ. էջ ԼԲ։
— 3. Կարապետ, միաբան Երզնկայի Ս. Կիրակոս վանքի 1304 թ.—Թորոս աղբ. Բ. 421։
— 4. Կարապետ, ծաղկեց Ոսկեբերանի Մեկնութիւն Թղթոցն Պօղոսի, որ գրեց Գրիգոր գրիչը Ակների վանքում 1325 թ.—Սիսուան 535 ա։
— 5. Կարապետ աբեղա, կազմել է տվել մի Աւետարան, 1372 թ.—Արցախ 262։
— 6. Կարապետ քահանա, եղբայր Զաքարիա փիլիսոփայի և հայր Դանիէլ նշանավոր գրչի և Թումա կրոնավորի (№ 140), որոնք Աղթամարում գրել են զանազան ձեռագրեր (տե՛ս Դանիէլ № 30)։ Հիշատակված է իր որդիների ձեռագրերում. այսպես՝ Նօտարք 20, 107, 135. Թորոս աղբ. Բ. 277. Ջեռ. Վասպ. 311, 366, 375, 383. ըստ Նօտարք 135 ծան. 1 «էր սա ճարտար քարտուղար՝ յաւուրս Զաքարիա Բ նահատակ կաթուղիկոսի Աղթամարայ և յաջորդի նորին Դաւթի Գ-ի». 1433։

— 7. Կարապետ կրոնավոր, հոգևոր հայր Թումա գրչի, որ օրինակեց մի Ճաշոց 1441 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 244։

— 8. Կարապետ, որդի Ստեփաննոս քահանայի. մայրն է Մինա. գրիչ. գրել է մի Ճառընտիր Յովհաննէսի համար, որ Սղկայի վանքում Վարդան կազմարարին կազմել տալով նվիրեց իր հոգևորդի Թումայ տանուտերին, 1453 թ.—Հրատ. Ագաթ. 1909 թ. յուշ. էջ Ծ—ԾԱ։—Նույնն է Կարապետ № 202։

— 9. Կարապետ վարդապետ Բաղիշեցի, տաղասաց. ծնվել է Բաղէշում շուրջ 1475 թ. հայրն է Ստեփաննոս, մայրը Ալամշահ։ Աբեղա էր Մշու Առաքելոց վանքում 1496 թ., երբ կազմեց և նորոգեց մի հին Աւետարան։ 1502 թվին գնաց Միջագետք, ուր Բերդածոր գյուղում օրինակեց մի Մաշտոց։ 1513-ին Մշոյ Եղրդուտի վանքում օրինակեց մի Սաղմոսարան։ 1526 թվին Մշոյ Առաքելոց վանքում օրինակեց մի Յայսմաւուրք։ 1540 թվին դառնում է արքեպիսկոպոս և Առաքելոց վանքին առաջնորդ է կարգվում՝ ծերունի առաջնորդ Թադէոս արքեպիսկոպոսի կենդանության ժամանակ, որ կանխավ որդեգրել էր նրան և իրեն էլ կտակակատար էր կարգել։ Այս միջոցին է, որ Կարապետ Բաղիշեցի արքեպիսկոպոսը շինում է Առաքելոց վանքի ժամատունը, ինչպես հիշված է նույն վանքի արձանագրության մեջ (1555 թ.)։ Ունի տաղեր ու գանձեր, թվով 6, որոնց թվումը տալիս է Ակինեան։ Տաղերի մեջ ամենից գեղեցիկն է՝

«Պուլպուլն է հագեր ի յոտրն կօշիկ,
Զվարդն կու փնտռէ սիրով անուշիկ.
Ձայն է արձակեր, կու կանչէ վարդ, վարդ,
Վարդ, վարդ դու զուարթ,
Ես պուլպուլ, դու վարդ»։

Ամենից երկար տաղերն են Տաղ արարածոց (344 տող անհամ ոտանավոր աշխարհագրություն) և Ողբ ի վերայ արշաւանաց Շահ Իսմայէլի (236 տող անարժեք ոտանավոր), որոնք ամբողջությամբ հրատարակված են՝ Ակինեան, Մատեն. Հետազ. հտ. Դ, Վիեննա, 1938, էջ 311—350։

— Կարին, նախարար Հայկազանց. բնակվել է Եփրատի ափին և իր անունով է կոչվել Կարին քաղաքը (տե՛ս Քօսեան, Բարձր Հայք, Ա. էջ 24, քաղելով Երեմիա Մեղրեցու բառարանից).—Առասպել։

— Կեանջում աղա ոմն Շուշեցի, թիվն անհայտ.—Սմբատեանց, Երնջակ 475։

— 1. Կիրակոս երեց Ջօշկանց կամ Հաբջոշենց (№ 141 և 150 նույն են)։

— 2. Կիրակոս եպիսկոպոս Ամթայ (Տիգրանակերտի), անդամ Ե տիեզերական ժողովին, 553 թ.—Հացունի, Կարևոր խնդ. 374։

— 3. Կիրակոս վարդապետ, վանահայր Ոշտունեաց Բերդաձոր վանքի 1446 թ.—Նոտարք 154 (ծան. 3-րդ)։

— 4. Կիրակոս. որդի Ատոմ կրոնավորի և հորեղբորորդի Բաղիշեցի Հաբջոշենց Կիրակոս երեցի, որ մի Աւետարան նվիրեց Կապուտ գեղի Ս. Յակոբ եկեղեցուն, 1487 թ.—Ջեռ. Վասպ. 115—116։

— Կիրայ, կին Սիրունի և մայր Յովհաննէս քահանայի, որ Կրակայ գյուղում գրել տվեց մի Աստուածաշունչ 1317 թ.—Սիսուան 547 բ։

— Կիրիոն «եռամեծ վարդապետ», որի աշակերտն է Սեթ վարդապետ և եղբայրն է Աւետիս միակեաց. վախճանվել է Երուսաղէմում. արտագրել է Եսայի Նչեցու Մեկնութիւն քերականին. բոլորի թվականն էլ անհայտ. բայց նրանից արտագրել է Ստեփանոս գրիչը 1361 թ.—Թօրգոմեան, Ստամպօլոյ պատմ. Բ. 484։

— Կոզմաս, կոչված նաև Կոմս, Կաֆացի վաճառական, որ Պոլսի Ղալաթիա թաղում շինեց Ս. Լուսաւորիչ եկեղեցին. 1391 թ.—Թորգոմեան, Ստամպօլոյ պատմ. Բ. 477։

— Կոմս (№ 3), Կաֆացի հայ վաճառական. ստուգվեց, որ սրա բուն անունն է Կոզմաս, որ Պոլիս է գնացել 1391 թ. գնել է Ղալաթիայում հող, որի վրա շինել է Ս. Լուսաւորիչ եկեղեցին։ Նույնը վերաշինվել է 1436 թ.—Թորգոմեան, Ստամպօլոյ պատմ. Բ. 475—486։

— 1. Կոստանդին Ուռհայեցի, «յոյժ ճարտար» գրիչ, որի գրած օրինակից արտագրեց Աւետարանը՝ Գրիգորիս երգեցող Սսեցին 1238 թ.—Սիսուան 230 ա։

— 2. Կոստանդին վաճառապան 1307 թ. տե՛ս Օշին Վասիլենց։

— 3. Կոստանդին, որդի Մեծպարոնի և եղբայր Յակոբ երեցի, որ կազմեց այն Մանրուսմունքը, որ օրինակեց Ստեփանոս գրիչը Դրազարկում, 1313 թ.—Սիսուան 234 ա։

— 4. Կոստանդին, երկու համանուն քահանաներ Անաւարզայի Ս. Աստուածածին եկեղեցու, 1314 թ.—Սիսուան 243 ա։

— 5. Կոստանդին Դ (№ 144) թագավորը ըստ իր հոր՝ Պաղտին մարաջախտի անձնական հիշատակարանի արձանագրության ծըն-

վել է 1313 թ.—Միսուան 413 ա, իր անդրանիկ քույր Ալիծից (№ 4) մի տարի հետո։

— 6. Կոստանդին, հյուրատես Թիրքթի վանից (Կիլիկիա), հիշված 1314 թ.—Միսուան 156 բ։

— 7. Կոստանդին քահանա, գրիչ. օրինակեց Աստուածաշունչը՝ Յովհաննէս քահանայի պատվերով, Կրակայ ավանում, 1317 թ.—Միսուան 547 բ։

— 8. Կոստանդին արքեպիսկոպոս Դրազարկի, ջանցլեր թագավորության Հայոց 1321 թ.—Միսուան 485 բ։

— 9. Կոստանդին քահանա Սսոյ Ս. Նշան եկեղեցու, որդի Պետրոսի և Թագուհու, հայր Տիկնաց Տիկնայ, որ մեռավ 1323 թ.—Միսուան 223 ա։

— 10. Կոստանդին, հոգևոր հայր Գրիգոր գրչի, որ Ակների վանքում օրինակեց Ոսկեբերանի Մեկնութիւն թղթոցն Պօղոսի, 1325 թ.—Միսուան 535 ա։

— 11. Կոստանդին Մարաշցի քահանա. 100 դրամ նվիրեց իբր օգնություն Գրիգոր գրչին, որ օրինակում էր Աւետարանը Դրազարկի կամ Փոսի վանքում, 1325 թ.—Միսուան 234 բ։

— 12. Կոստանդ ծխաւոր (ասպետ), Գուիդոն թագավորի կողմից դեսպան ուղարկվեց Անգլիոյ Եդուարդ թագավորի մոտ 1343 թ.—Միսուան 559 բ։

— 13. Կոստանդին զորավար, դեսպան ուղարկվեց Հայոց թագավորի կողմից Ֆրանսիայի և Անգլիայի թագավորների մոտ, 1349 թ.—Միսուան 559 բ։

— Կուբար, թիվն անհայտ.—Ջեռ. Վասպ. 606։

— Կոփրեդ, հայր Վահրամ մարաջախտի (+1220 թ.), որի անունը թեև Ֆրանկ է, բայց ինքը Ֆրա՞նկ է. Լևոնի 1210 թվի պարգևագրում կոչված է Gofred.—Միսուան 334։

— Կռօղ (գրված հյց. զԿըրօղ), ծագումն անորոշ. ար. մի անգամ գործածված եմ գտնում անհայտ թվականով (ԺԶ դա՞ր).—Ջեռ. Վասպ. 780։

— Կրեճիտէս Մամիկոնեան, Տարօնի Թոռնիկ (№ 2) իշխանի մահից հետո, նրա կնոջն ու անչափահաս որդուն փոխադրեց Պոլիս (Ժ դար).—Ակինեան, Մատեն. հետազ. Դ. 80—81։

— Հալապ անունը ավելի ուշ հիշված է 1746 թ. (Ոսկեան, Եղիա Մուշեղեան, էջ 5)։

— Համամ իշխանը, որ ըստ Չամչ. Բ. 339 դրինք վրացի, ըստ

Տաշեան (Հայ բնակ. Սև ծովէն մինչև Կարին, էջ 23) հայ է, վրաց Վաշտեան կամ Վաշտէ իշխանի քեռորդին. շինեց Համամաշէն=Համշէն ավանը՝ Քաջքար լեռան ստորոտում։ Թվականը Ջամչ. դնում է 632, իսկ Տաշեան՝ 627—628 թթ.։

— 1. Հայրապետ (№ 45), Խօթնաքլուր (կամ Խօթնաղբիւր) գյուղից, աշակերտ Եսայի Նչեցու. գնաց աշակերտելու Բարթուղիմէոս լատին եպիսկոպոսին և դարձավ ունիթոռական վարդապետ, միաբան Քռնիի վանուց «1330 թ.».—Սիսական 384 ա, Ազգապ. 1845։

— 2. Հայրապետ վարդապետ, ուսուցիչ Յակոբ գրչի, որ Աղթամարում օրինակեց Աւետարանը խոջա Միրիջանի համար 1493 թ.—Ձեռ. Վասպ. 520։

— Հանզադա, կին Կաքաւի՝ եղբորորդւոյ Ստեփաննոս Ղարիպշայի, որ Լիմ կղզում գրել տվեց մի Յայսմաւուրք 1457 թ.—Ձեռ. Թաւր. 104 ա, 105 բ։

**ՀԱՍՐԱԹ**, ար. <արար. حسرات hasrāt «կարոտ» բառից. մի անգամ գտնում եմ հիշատակված 1745 թ. (Ոսկեան, Եղիա Մուշեղեան, էջ 40)։

— Հռաղամիստ. սրա վրա գրված մի քանի ուրիշ ողբերգութիւնների և նրանց քննության մասին տե՛ս այժմ Վ. Թերզիբաշյան, Տեղեկ. Ակադ. 1946, № 6, էջ 62—65։

— Հռուփինոս եպիսկոպոս Սեբաստիոյ Հայոց, անդամ Ե տիեզերական ժողովի, 553 թ.—Հացունի, Կարևոր խնդ. 375։

# Ղ

— Ղազար վարդապետ, միաբան Մշոյ Ղազարու վանից, 1496 թ.—Ակինեան, Մատեն. հետազ. Դ. 311։

— Ղայեաթ իգ. անվան հիշատակությունը 1673 թվից տե՛ս Քօսեան, Բարձր Հայք Ա. 157։

— Ղուլ-օղլի Երզնկացի, աշուղ ԺԵ դարի սկզբում.—Տեղեկ. Ակադ. 1946 թ., № 2, էջ 79։

— Ղուրպաթ, իգ. 1708 թ.—Ձեռ. Վասպ. 563։

— Ղուցի անունը հիշված է նաև 1710 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 329 բ)։

# Ծ

— Ծան, իգ. հիշված է 1327 թվից հետո գրված անթվական մի հիշատակարանում.—Ջեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 462)։

# Մ

— Մախթում, հիշատակված է Ներքին Ագուլիսի եկեղեցու մի խաչքարի վրա ՋԻԷ=1478 թ.—Աղգագր. հանդ. ԺԱ, էջ 313։

— Մանդի, հտ. Գ, էջ 170 ջնջել ամբողջությամբ, որովհետև հայ չէ և Յովան քահանային նահատակողն է. տե՛ս Յովան № 952։

— Մանում, իգ. հիշված 1511 թ. (Ակինեան, Մատեն. հետազ. Դ. 125)։ Տե՛ս Մաղսում։

— Մանանայ, կին Լիպարիտի և մայր Յովհաննէս եպիսկոպոսի, որ Խարբերդում գրել տվեց մի Ճաշոց 1466 թ.—Թորոս աղբ. Բ. 479։

— Մանանայ անունը հիշված կա նաև 1677 թ.—Թորոս աղբ. Բ. 454։

— Մասիկ, երևի քարտաշն է այն տապանաքարի, որ նվիրված է Աննա խաթունին, Լոր գյուղում, 1277 թ.—Աղգագր. հանդ. Գ. 162։

— 1. Մաթէոս կրոնավոր, իր եղբայր Վահանի հետ մի Աւետարան է գրել տվել Թէոդորոս գրչին, շուրջ 1082 թ.—Գարեգին կթղ.՝ Կեանք և գիր, Գահիրէ 1948, էջ Ա—Դ։

— 2. Մատթէոս քահանա, գրիչ. օրինակել է Շարականը՝ Եղեգաց գավառի Ցաւղացքար վանքում, 1437 թ.—Թորոս աղբ. Բ. 463։

— 1. Մարգարէ, իր և իրայնոց հիշատակին խաչքար է կանգնեցրել Եղեգիսում, 1253 թ.—Սիսական 150, իսկ նկարը՝ էջ 153։

— 2. Մարգար վարդապետը (№ 18) Օծոպեցի էր, աշակերտ Եսայի Նչեցու և դասընկեր ու գործակից Յովհաննէս Քռնեցու.—Սիսական 375, 483, 489։

— 3. Մարգարէ Օծոպեցի, աշակերտ Եսայի Նչեցու, գնաց աշակերտելու Բարթուղիմէոս լատին եպիսկոպոսին և դարձավ ունիթոռական. հիշված է իբրև վարդապետ և կազմարար, շուրջ «1330 թ.».—Սիսական 375, 384 ա, Աղգապ. 1845։

— 4. Մարգարայ քահանա, միաբան Մշոյ Ղազարու վանքում.

1496 թ.—Ակինեան, Մատեն. հետազ. Դ. 312. տե՛ս Մարգար № 56։

— 5. Մարգարէ դպիր, որդի Սուլթան բեկի, Գեղարքունեաց կած գյուղից, ԺԵ դար.—Սիսական 523 բ։

ՄԱՐՀԱՆ, իգ. ծագումն ինձ անհայտ. գուցե և սխալատիպ. մի անգամ գտնում եմ հիշատակված՝

— Մարճան, կին Սասնայ Հանդաբերդցու, որ ուխտի է գնացել Գանձասարի վանքը, նվերներ է արել և պատարագ ստացել իր և իր կնոջ համար, 1271 թ.—Արցախ 178։

— 1. Մարտիրոս, որդի խոջա Խաչատուրի, որ Արճէշում, Յովհաննէս քահանային գրել տվեց մի Աւետարան, 1462 թ.։ Մարտիրոսի մայրն է Սուլթանխաթուն. առաջին կինն է Շահսուլթան, որից ունեցավ երեք որդին՝ Բաշարաթ, որ «ղարիպամահ» եղավ Մեղրիում. երկրորդ կինն է Բէկիջիհան (սխալ տպված՝ Բէկի-Սիհան), որից ունեցավ փոքր որդին՝ Աղաջանը.—Ջեռ. Վասպ. 441։

— 2. Մարտիրոս Երզնկացու (№ 151) մասին ավելի մանրամասն տեղեկություններ տե՛ս Ալպօյաճեան, Առաքելութիւն ի Հապէշ. 95—96։

— Մէլէք, կինն է Կարապետ քահանայի. ծնողներն են Յովհաննէս գրչի, որ օրինակեց Յայսմաւուրքը 1458 թ.—Նօտարք 190 (գրում է Տիրուհի մէլիք. ուղղում եմ տիրուհի (երիցկին) Մէլէք)։

— Մելիք, կին Ստեփաննոսի. ծնողներն են Վարդան գրչի, որ Կողուց վանքում օրինակեց Աւետարանը 1461 թ.—Նօտարք 198։

— Մելիք խաթուն, կին Մկրտիչ քահանայի. ծնողներն են Աւետիս քահանայի, որ Վանում, Վարդան գրչին գրել տվեց մի Յայսմաւուրք 1465 թ.—Նօտարք 222։

— Մեծտիկին. տե՛ս Կիր Վասիլ, 1287 թ.։

— Մէնէր պարոն, հիշել եմ հտ. Գ. էջ 415, 1608 թվից. հիշված է իր եղբայր Արազիզի հետ իբրև իշխան Աղբակի, «որ բազում խնամս տանեն ի վերայ քրիստոնէից»։ Վերջին դարձվածից երևում է, որ հայ չեն, այլ քուրդ։

— Միրանդ կամ Միրանց, վաճառական, բնակվում էր Իտալիոյ Պիզա քաղաքում 1282 թ. իր որդին է Պետրոս, որ տե՛ս առանձին.—Սիսական 450 բ։

— 1. Մխիթար հիւպատոս, Կրտին որդին, տանուտեր նշանակվեց Անի քաղաքում Հոնաց Կոստանդին (1057—1064) կայսեր ժամանակ.—Արձ. (անթվական) Շիրակ 70, 101 ա։

— 2. Մխիթար, 1196. տե՛ս Արհեստք էջ 166։

— 3. Մխիթար վարդապետ, մի խաչքար է քանդակել տվել Վայոց Ձորի Բաշքենդ գյուղի Ս. Յակոբ եկեղեցու պատի վրա 1247 թ.—Սիսական 129, Արրտ. 1889, էջ 50։

— 4. Մխիթար, միաբան Գամաղիէլի վանքի. հիշված է 1397 թ.—Ձեռ. Վենետ. 1286։

— 1. Մկրտիչ վարդապետ, որդի Օրպէլի. մայրն է Դովլաթ. հոգևոր ծնողներն են Կարապետ կրոնավոր և Յակոբ. Արճէշ քաղաքում, իր հոգևոր եղբայր Կարապետ քահանային գրել տվեց մի Մաշտոց (1432 թ.), որի օրինակը շնորհեց Թովմա վարդապետ Մեծոփեցին (պատմիչը), Մինաս դպիրը ծաղկեց, Յովհաննէս կրոնավորը ավելացրեց «Սօթն օրէնք»-ը և հիշատակարանը, իսկ Հայրապետ կրոնավորն էլ կազմեց.—Նոտարք 100—101։

— 2. Մկրտիչ, եղբորորդի տանուտեր Մարտիրոսի, որ Բերկրիում գրել տվեց մի Ավետարան 1473 թ.—Ձեռ. Վասպ. 467։

— 3. Մկրտիչ, որդի Շաքարի և եղբայր Ատոմի, որ իր Հաբիբ (№ 4) կնոջ հետ մի Ավետարան գրել տվեց Աղբակի Երնկանի գյուղում, 1498 թ.—Ձեռ. Վասպ. 526։

— 4. Մովսէս վարդապետ, գրիչ. օրինակել է Ավետարանը՝ Մեծոփայ վանքում, 1362 թ.—Բիւրակն 1900, 103 ա։

— Մուղալ, որդի Յարաճի, որ Հալէպում մի Ավետարան գրել տվեց 1478 թ. Մուղալը նույն ձեռագիրը նվիրեց Ս. Աստուածածին եկեղեցուն.—Ձեռ. Հալէպի Ա. 97։

— Մրւաթ, դուստր Ստեփաննոսի և քույր Յոհանէս կրոնավորի, որ Բերկրիի Եղավանքում գրել տվեց մի Ավետարան, 1422 թ.—Ձեռ. Վասպ. 347։

# Յ

— 1. Յակոբ Ա (№ 11), եպիսկոպոս Սիւնեաց. հիշված է 1292 թվի մի արձանագրության մեջ (Ազգագր. հանդ. Գ. 129)։

— 2. Յակոբ կուսակրոն քահանա (№ 156), որդի Ալեքսան քահանայի և եղբայր (ո՛չ հորեղբայր) Յովհաննէս գրչի, որ Խիզանի Ս. Խաչ վանքում օրինակեց Գրիգոր Տաթևացու Քարոզգիրքը, 1413 թ.—Նոտարք 42։

— 3. Յակոբ № 216 և № 218 նույն են. ուստի պետք է միացնել։

— 4. Յակոբ № 219 որդի Յովհաննէս քահանայի Արծկէ

1464 թ. նույն է № 217-ի հետ. և թոռն է Յակոբ քահանայի (№ 218)։

— 5. Յակոբ որդի Ղուլեկի (№ 270). այս նահատակի մասին մի նոր տեղեկություն տալիս է Քոսեան, Բարձր Հայք, Ա. 157 և 250։

* ՅԱՂՄՈՒՐՇԱՅ, ար. <Թրք. ياغمور yaɣmur «անձրև» բառից + պրս. شاه, որ փաղաքշական մասնիկ է։ Հմմտ. Եաղմուր և Անձրև անունները։ Հիշված է մի անգամ՝

— Յեաղմուրշայ, պատանի, որին գետը տարավ ու խեղդեց Ագուլիսում, 1425 թ.—Միսական 326 ծան.։

— Յովէլ, սարկավագ Ներսէս Մեծի. դարձավ եպիսկոպոսապետ կամ կաթուղիկոս Վրաց, հաջորդելով Յակոբին, թեև ազգով հայ էր.—Պատմ. վր. ԺԲ (գրված է Յակոբ և սեռ. Յակոբայ).—Իսկ Վրաց. աղբ. Ա. 21, 175 գրվում է Յովել (կամ Յոբ)։

— 1. Յովհաննէս եպիսկոպոս, առաջնորդ Կարնոյ 1042—1043 թթ. (Քոսեան, Բարձր Հայք, Ա. 103)։

— 2. Յոհաննէս կրոնավոր, Մարմետցի. որդի Մուշի. աշակերտել է Թադէոս վարդապետին. հեղինակն է Մեկնութիւն մարգարէութեան Եսայեայ։ Հեղինակի ինքնական բնագիրը, գրված Մարմետում 1118 թ., մնում էր էջմիածնի Մատենադարանում.—Շողակաթ 195։

— 3. Յովհանէս, որդի Վասակի. մայրն է Շուշիկ. եղբայրներն են Հասան և Վաչէ. այս բոլորը մեռած էին 1198 թվից առաջ. ինքը Մակարավանքի միաբան եղբայրների օգնությամբ նրանց հիշատակին կառուցեց վանքի փոքր մատուռը 1198 թ.—Արցախ 375։

— 4. Յոհանէս վարդապետ, միաբան Երզնկայի Ս. Լուսաւորիչ վանքի 1287 թ.—Գարեգին կթղ. Կեանք և գիր, Գահիրէ 1948, էջ Բ։

— 5. Յովհաննէս քահանա Կարմիրվանեցի, մորեղբայր Կոստանդին արքեպիսկոպոսի, որ գրել տվեց մի Յայսմաւուրք 1311 թ., երբ Յովհաննէսը մեռած էր.—Բակուրան, Կիպրոս կղ. 108։

— 6. Յոհաննէս կրոնավոր, որդի Ստեփաննոսի և Աւթայի. գրել տվեց մի Աւետարան Յակոբ աբեղային՝ Բերկրիի Եղավանքում, 1422 թ.—Ջեռ. Վասպ. 347—349։

— Յոհանջան, հիշված 1710 թ.—Ջեռ. Վեննե. Ա. 142։

— Յովսիան գրիչ, Տուրուբերանեաց Բերդակ գյուղում, Շախիկ և Թումայ քահանաների պատվերով գրել, նկարել և կազմել է մի Աւետարան, 1306 թ.—Ջեռ. Վասպ. 149։

— Յուսիկ եպիսկոպոս, առաջնորդ Կարնոյ 1491 թ.—Քոսեան, Բարձր Հայք Ա. 103։

— Նասիր, գրիչ. Սուրխաթում (Խրիմ), Գրիգոր աբեղայի համար օրինակեց Աստուածաշունչը 1346 թ.—Թորոս աղբ. Բ. 426։

— 2. Նասիր, գրիչ. օրինակել է Ճաշոցը Խրիմում, 1358 թ.—Բիւրակն 1900, 103 ա։

— Նշչունիկ (սեռ. Նշչունկէ). Հայրանուն կամ մայրանուն «տանուտէրանց Նշչունկէ Վարդանին...»: 1742 թ.—Ջեռ. Վասպ. 565։

— Նոր-պարոն, թ.?.—Ջեռ. Վասպ. 545։

— Նորվիլ Դաշտեցի, հավատը ուրացավ և Օսմանցոց կողմն անցավ, երբ մեծ բանակով նրանք արշավել էին Հայոց վրա։ Մխիթար սպարապետը և Աւետիք քահանան դարանի մտան և հանկարծ հարձակվելով տաճիկների վրա Ուզունբէնդ կոչված կիրճում, շատերին կոտորեցին, մնացյալը Երասխի մեջ թափելով խեղդեցին։ Վերցրին անբավ ավար, նաև 32000 հարկի թուղթ, որ այրեցին և ուրացյալ Նորվիլին էլ սպանեցին (1727 թ.).—Սիսական 304 բ։

— Նուարաք խաթուն, դուստր Կիր Վասլի, որ ուխտի եկավ Երզնկայի Ս. Լուսաւորիչ վանքը 1287 թ.—Տես Կիր Վասիլ։

# Շ

— Շալչում խաթուն, թ.?.—Ջեռ. Վենետ. Ա. 657։

— Շալչում, թ.?, անդ, այլ, էջ 658։

— Շահսանամ, իգ. Սովետ. Հյաս. 1949 թ. մարտի 5, էջ ա, սյուն. 5-րդ։

— Շաֆէ, ի՞գ.։

# Ո

— Ոլամայ օղլի Հայրաթբէկ քուրդ, Շահաբասի օրով.—Առաք. պատմ. 1884, էջ 9։

# Պ

— Պարոնվարդ, ար. 1633 թ.—Ջեռ. Վասպ. 882։

# Ջ

— Ջալալբէկ, պարոն, հայրն է Մակուեցի Գրիգոր կաթուղիկոսի, որ գահ բարձրացավ 1443 թ.—Նոտարք 130։

— Ջանազիզ, մերձավոր Սարգիս եպիսկոպոսի, որ Գուգարաց Կոթիփորոյ Ընկուզագոմ վանքում օրինակեց Յայսմաւուրքը 1427 թ.—Նոտարք 85։

— Ջանիբէկ (№ 3), կինն է Նիգար, ծնողներն են Կիրակոս (№ 141 և 150) երեց Ջօշկանց գրչի. հիշատակության մեջ ավելացնել Ձեռ. Վասպ. 116 (1487 թ.)։

— Ջանիկ ս? 1585.—Ձեռ. Վասպ. 702։

— Ջանղուլի ոմն, հիշված է Տաթևի 1332 թվի մի արձանագրության մեջ, որ կալայեանի արտագրածը լինելով (Աշգագր. հանդ. Գ. 141) մնում է անհասկանալի։

— Ջհանշայ (№ 1), որդի Հասանի Դոփեան. հիշատակության մեջ ավելացնել նաև Նոտարք 40 (1411 թվից). տե՛ս և Աղբուղա № 7։

# Ս

— 1. Սաքախմելիք, կին Թաղազարի. ծնողներն են Թուրվանդայ խաթունի, որ Յովհաննէս գրչին գրել տվեց մի Աւետարան, 1448 թ.—Ձեռ. Վասպ. 402։

— 2. Սաքանմէլիք, իգ. 1596 թ.—Ձեռ. Վասպ. 749։

— Սատաք, իգ. թ.? 1321-ից ուշ.—Թորոս աղբ. Բ. 346։

— Սալվար, հիշված ձևերի վրա ավելացնել Սէլվէր իգ. 1779 թ.—Ձեռ. Հալէպի Ա. 358։

— Սալվինազ. սրա փոխարեն Սելվինազ ձևը գտնում եմ հիշատակված 1828 թ. (Քոսեան, Հայք ի Զմիւռն. Բ. 100)։

— Սալդաթ, կին Ստեփաննոսի և մայր Արաբշայ տանուտերի, որ իր երեք եղբայրների հետ Աղբակի Նրնկանի գյուղում գրել տվեց մի Աւետարան 1490 թ.—Ձեռ. Վասպ. 511։

— 1. Սարգիս եպիսկոպոս Կարուց. ստորագրում է Սսոյ 1243 թվի եկեղեցական ժողովի կանոններին, որոնք Վարդան վարդապետը բերավ Կիլիկիայից Հյուսիսային Հայաստան 1246 թ.—Ջամչ. Գ. 229։

— 2. Սարգիս Կաֆացի, միացնել Սարգիս № 313 և 377. Պետրոսեան 170 և Ակինեան, ՀԱ 1935, էջ 33—34։

— Սարդ-Մելիք, դուստր Թադէոսի և քույր Զօրայի, որ Կոնթեր գյուղում Երեմիա գրչին գրել տվեց մի Մաշտոց 1474 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 339։ (Տպված է մանրատառ սարդ Մելիք. ուստի կամ Վարդ Մելիք կամ Սարդ Մելիք)։

— Սիոն, որդի Յովհաննէսի և եղբայր Վարդան կրոնավորի, որ Աղթամարում Թումայ աբեղային գրել տվեց մի Աւետարան, 1420 թ.—Ձեռ. Վասպ. 322։

— 1. Սմանդար, հայր Յովհաննէսի, որ գնեց մի Շարական և նվիրեց Արպելանի վանքի միաբան Յովհաննէս սարկավագին, 1449 թ.—Նոտարք 160։

— 2. Սմանդար, վաղամեռիկ որդի Փաշայի, որ իր որդիների և իր ամուսնու հիշատակին Վանում գրել տվեց մի Աւետարան, 1451 թ.—Ձեռ. Վասպ. 411։

— 3. Սմանդար, քեռին է տանուտեր Խդրշահի, որ Վանում, Ազարիա գրչին գրել տվեց մի Աւետարան, 1484 թ.—Ձեռ. Վասպ. 496։

— 4. Իսմանդար, 1552 թ.—Ձեռ. Վասպ. 654։

— 5. Ասմանդար, 1585 թ.—Ձեռ. Վասպ. 702։

— 6. Ասմանդար, 1710 թ.—Ձեռ. Վասպ. 657։

— Սօսըն (տես. Սօսընին), քրոջ որդի Ատոմի, որ Աղբակի Երնկանի գյուղում գրել տվեց մի Աւետարան, 1498 թ.—Ձեռ. Վասպ. 526 թ. (տե՛ս և Հաքիք № 4)։

— (Մելիք)-Սօսուն, 1707 թ.—Ձեռ. Վասպ. 507։

— Տես. Սաւըճին ս?, 1508 թ.—Ձեռ. Վասպ. 632։

# ՀԱՅՈՑ ԱՆՁՆԱՆՈՒՆՆԵՐԸ

*Անձնանունը այն գլխավոր միջոցներից մեկն է, որով հասարակությունը կամ հասարակությունը զանազանում է իր անդամներից այս կամ այն անհատին՝ մյուս անհատներից։ Այդ միջոցը ավելի է բնորոշվում կամ զարգանում, երբ անձնանվան վրա ավելանում է մի մականուն, կամ հայրանունը, կամ ազգանունը և կամ այդ բոլորը միասին։ Կարող ենք ասել պարզապես Վահան, ավելի ճշտած՝ Գայլ Վահան, կամ Վահան որդի Հմայակի և կամ Վահան Մամիկոնյան և այլն։*

*Մարդկային հասարակության մեջ չկա թեկուզ ամենավայրենի մի ցեղ, որի անդամները անձնանուն չունենան։ Անձնանունը համաշխարհային մի երևույթ է։*

*Շատերը կարծում են և կամ ա՛յնպես են հավատացած, թե անձնանունները ծագում չունեն, այսինքն աննշանակ ձայներ են, և կամ ավելի գիտական ձևով արտահայտվելով՝ արմատական բառեր են։ Այս կարծիքը առաջացել է նրանց մեջ հասարակ անունների համեմատությամբ։ Ինչպես որ՝* սեղան, ջուր, արև, փայտ, ծառ *բառերը արմատ են և մենք միջո՛ց չունենք վերածելու նրանք իրենց մասերին, նույնպես են համարվում նաև անձնանունները՝* Միքայել, Տիգրան, Երվանդ, Թադեոս, Հովսեփ *և այլն։*

*Այս կարծիքը ճիշտ չէ։ Հասարակ անունների մեջ կան և պետք է որ լինեն արմատներ կամ արմատական բառեր, բայց անունների մեջ չկա արմատական բառ։ Բոլոր հատուկ անունները, լինեն նրանք մարդու, թե տեղի (լեռան, ծովի, լճի, գետի, քաղաքի, գյուղի և այլն), կազմված են հասարակ գոյականներից, և են բարդ կամ ածանց բառեր։ Ուրիշ խոսքով՝ ամեն հատուկ անուն մի բառ է, նշանակությամբ օժտված հասարակ անուն։*

*Մեր հասարակության մեջ այս սխալ կարծիքը առաջացած է հատկապես ա՛յն պատճառով, որ մեր ամբողջ շրջապատը լցված լինելով անթիվ, անհամար օտար անուններով, որոնց իմաստը անծանոթ է մեզ, ենթադրում ենք, թե անունները առհասարակ անիմաստ ձայներ են։*

Թե ինչպես կարելի է իմանալ, թե այսինչ անունը հայկակա՞ն է, թե օտար, պետք է դիմել ստուգաբանության։ Եթե մի որևէ անուն մեզ համար և մեր լեզվով որևէ իմաստ տալիս է, ուրեմն հայկական է. իսկ եթե ոչինչ չի նշանակում, ուրեմն օտար է։ Այսպես օրինակ՝ Աստվածատուր, Խաչատուր, Տիրատուր, Հրաչյա, Վարդգես, Նորայր, Ժիրայր, Հրայր, Մարգար և այլն հայկական անուններ են, որովհետև հայերեն են և հայերենով մի բան նշանակում են։ Աստվածատուր նշանակում է Աստուծո տվածը, Խաչատուր՝ խաչի տվածը, Տիրատուր՝ Տիրոջ տվածը, Հրաչյա՝ հրային աչքեր ունեցող, Վարդգես՝ որի. գեսը, այսինքն մազերը վարդի նման են, Նորայրը՝ նոր այր, նոր մարդ է, Ժիրայրը՝ ժիր այր, ժիր մարդ է, Հրայրը՝ հուր այր, այսինքն կրակե մարդ է, Հրանդ՝ հուր է անդ, այնտեղ՝ սրտում կրակ կա վառված, Մարգարը՝ մի մարգարե է, ապագայի գուշակ և այլն։

Իսկ Պետրոս, Պողոս, Լևոն, Գուրգեն, Գրիգոր, Փիլիպոս, Արզուման, Ռուբեն, Ալավերդի, Սենեքերիմ և այլն հայերենի մեջ ո՛չ մի իմաստ չունեն, հետևաբար հայկական անուն չեն։ Նրանք օտար անուններ են և յուրաքանչյուրը պատկանում է այն ազգին, որի լեզվով ստուգաբանվում է կամ որից որ առնված է։ Պետրոս հունարեն է և հունարենում Πέτρος նշանակում է «քար».— Պողոս լատիներեն է և լատիներեն paulus կամ paullus նշանակում է «փոքրիկ».—Լևոն հունարեն և լատիներեն է. այս երկու լեզվով Leo, Λέων նշանակում է «առյուծ».—Գուրգեն պահլավերեն կամ պարսկերեն է և պարսկերեն կամ պահլավերեն gurg, gurgen նշանակում է «գայլ, փոքրիկ գայլ».—Գրիգոր հունարեն է և հունարեն Γρηγόριος նշանակում է «արթուն».—Փիլիպոս հունարեն է, որովհետև ծագում է հունարեն φιλο «սիրել» և ιππος «ձի» բառերից և նշանակում է «ձիասեր, ձի սիրող».—Արզուման պարսկերեն հատուկ անուն է, որովհետև ծագում է պարսկերեն arzumend «փափագող, ցանկացող» բառից.—Ալավերդի տաճկական անուն է, որովհետև ծագում է Ալլահ «Աստված» և վերդի «տվեց» բառերից.—Ռուբեն եբրայեցերեն է և եբրայեցերեն rau bēn նշանակում է «տե՛ս, որդի՛».—Սենեքերիմ ասորեստաներեն է և այս լեզվով sin aḫḫē eriba նշանակում է «Աստված եղբայրներս շատացրեց»։

Իգական անունները արականներից այն առավելությունն ունեն, որ նրանց մեջ հայկականները համեմատաբար ավելի շատ են։ Այսպես, օրինակ՝ հայկական ծագում ունեն Սիրանուշ, Մաքրուհի, Տիրուհի, Թագուհի, Սրբուհի, Իսկուհի, Հասմիկ, Մանիշակ, Վար-

դուհի, Լուսնթագ, Մայրանուշ, Համասփյուռ, Ծրջանիկ, Արմենուհի, Արշալույս, Արևհատ, Արեգնազան, Նազենիկ, Վարսենիկ և այլն, և այլն։ Իգական անունների այս դրական կողմը, սակայն, մի բացասական երևույթի արդյունք է—հին հայոց մեջ կնոջ անունը տալը ամոթ էր համարվում, և փոխանակ կնոջ իր սեփական անունով կոչելու, ասում էին «այսինչի աղջիկը»։ Սրանից են առաջացել Տիգրանուհի, Խոսրովիդուխտ, Սահականուշ, Սմբատուհի, Սըմբատանուշ և այլն, որոնք ո՛չ թե իրապես անուն են, ինչպես կարծում ենք սխալմամբ, այլ նշանակում են «Տիգրանի աղջիկը, Խոսրովի աղջիկը, Սահակի աղջիկը» և այլն։ Տրդատի քույրը կոչվում էր Խոսրովիդուխտ, որովհետև Մեծն Խոսրովի աղջիկն էր, Սմբատ Բագրատունու երկու աղջիկները կոչվում էին Սմբատանուշ և Սըմբատուհի։ Մինչև այժմ էլ Ղարաբաղի կամ Զանգեզուրի գյուղերում կանայք և օրիորդները կոչվում են նույն ձևով. «Բալասանի աղջիկ», փոխանակ ասելու Արուսյակ և այլն։ Երևույթը շատ տարբեր չէ եվրոպական երկրների այն սովորությունից, որով ամեն մի օրիորդ իր հոր ազգանունով և ամեն մի կին իր ամուսնու ազգանունով է կոչվում, առանց իր ծննդական անվան հիշատակության։ Ֆրանսիացոց մեջ կնոջ բուն անունը տալը ամենամեծ անարգանքն է. այդպես են կոչվում միայն փողոցային կանայք։ Այս պատճառով է ահա, որ մեր հին մատենագրությունն էլ չափազանց ժլատ է իգական անունների վերաբերմամբ։ Հայոց պատմության մեջ իգական անուն չկա։ Այս բացասական երևույթի դրական արդյունքն այն եղավ, որ երբ անցյալ դարի կեսին սկսեց հայկական ինքնագիտակցության զարթնումը, հայկական իգական անուններ չունենալու պատճառով՝ ազատ ասպարեզ բացվեց բառակերտության և սկսեցին հորինել ամեն տեսակի իգական նորանոր անուններ։

Հայոց մեջ բուն հայկական անունների զգալի մասը օտար է։ Համարյա նույն դրության են նաև մեր շրջակա ազգերը. այսպես, ռուսների մեջ զուտ ռուսական կամ սլավական ծագում ունեցող Վսեվոլոդ, Վլադիմիր, Սվյատոսլավ, Յարոսլավ, Լյուդմիլա և այլ անունների կողքին կան՝ Իվան, Սերգեյ, Նիկոլայ, Դմիտրի, Ալեքսանդր, Պյոտր, Պավել, Սերաֆիմ, Յակով, Խրիստաֆոր և այլ օտար անունները։ Պարսիկների մեջ բնիկ իրանական անուններ այժմ շատ քիչ են, այսպես՝ Խոսրև, Գուրգեն և այլն, իսկ Ահմեդ, Ալի, Հասան, Հյուսեին, Սուլեյման, Աբբաս և այլն օտար են։ Այսպես է նաև տաճիկների, վրացոց, քրդերի մեջ։

Այսպես չեն սակայն արաբները, հնդիկները, չինացիք, եբրա-

յեցիք, չէին նաև հին հույները, լատինները և այլն։ Արաբական բոլոր անունները՝ Ալի, Օսման, Օմար, Հասան, Հյուսեին, Աբբաս և այլն զուտ արաբական են և արաբերեն լեզվով ունեն իրենց իմաստը. Ալի նշանակում է բարձր, Հասան նշանակում է գեղեցիկ, Հյուսեին՝ սիրունիկ և այլն։ Հնդիկների բոլոր անունները հնդկերեն են և նրանց մեջ օտար անուն չկա։ Չինական անունները միշտ եռավանկ են, ինչպես, օրինակ՝ Կոն Ֆու-ցի, Լի Հունկ-չանկ, Սուն Յանցեն և այլն. սրանց մեջ առաջին վանկը ազգանունն է, մյուս երկուսը՝ անուն և հայրանուն։

Սեփական կամ օտար անուններ ունենալու երևույթը կապված է սեփական կրոն ունենալու փաստի հետ։ Եբրայեցին ունի իր սեփական կրոնը, որ է Մովսիսականությունը և պահում է իր սեփական անունները՝ Մովսես, Աբրահամ, Իսահակ, Դավիթ, Սողոմոն և այլն։ Արաբը ունի իր սեփական կրոնը, որ է մահմեդականությունը և պահում է իր արաբական անունները։ Հնդիկը, չինացին ունեն իրենց սեփական կրոնները՝ բրահմանականություն, բուդդայականություն, կոնֆուցիականություն, լաոցեականություն և այլն, ուստի և պահում են իրենց սեփական անունները։ Իսկ այն ազգերը, որոնք ընդունել են մի ուրիշ ժողովրդի կրոնը, ընդունել են նաև նրանց անունները։ Տաճիկները, քրդերը, աֆղանները ընդունել են մահմեդականությունը, որ արաբների կրոնն է, ուստի սեփական անուն չունեն. նրանց անունները բոլոր արաբերեն են։ Պարսիկները, հին ժամանակ, երբ հետևում էին իրենց սեփական զրադաշտական կամ մազդեզական կրոնին, ունեին զուտ պարսկական (իրանական) անուններ, իսկ այն օրից, երբ ընդունեցին մահմեդական կրոնը, և մինչև այժմ, գործ են ածում միայն արաբական անուններ։ Այս կողմից հետաքրքիր օրինակ են տալիս փարսիները, այն է՝ Պարսկաստանի և Հնդկաստանի արդի կրակապաշտ պարսիկները, որ մինչև այսօր պահում են անաղարտ հին պարսկական (իրանյան) անունները։

Եվրոպան հնապես երկու բաժին ուներ. հյուսիսը և արևելքը բարբարոս էին, իսկ հարավը և արևմուտքը բռնում էին հույներն ու հռոմեացիք, որոնք շատ հին և շատ առաջադեմ մշակույթ էին ստեղծել։ Այս երկուսն էլ ունեին իրենց սեփական անունները, հույները՝ զուտ հունարեն և հռոմայեցիք՝ զուտ լատիներեն։ Մեզանից 1900 տարի առաջ, այս երկու աշխարհներում սկսեց քարոզվել քրիստոնեությունը, որ վերջապես ընդհանուր կրոն դարձավ ու տի-

բայեռնեց ամբողջ Եվրոպայում և Ասիայի արևմտյան մասում, Իսպանիայից մինչև Հայաստանի արևելյան սահմանը։

Երբ հույները և լատինները ընդունեցին քրիստոնեությունը, Ավետարանի հետ պիտի ընդունեին նաև Հին Կտակարանը, որ քրիստոնեության պատվանդանն էր կազմում և հրեաների սրբազան մատյանն էր։ Այս պատճառով էլ հրեական այն անունները, որոնք սովորական էին Հին Կտակարանի մեջ, գործածական դարձան նաև հույների և լատինների մեջ։ Բայց հույները և լատինները, ունենալով նաև սեփական մեծ քաղաքակրթություն, հարուստ լեզու և մեծահարուստ հին գրականություն, չկարողացան հրաժարվել այս բոլորից, և նորի հետ պահեցին նաև հինը։ Այսպիսով, քրիստոնեության մեջ ընդունվեցին, մի կողմից՝ հրեական (եբրայական) և, մյուս կողմից՝ հունական ու լատինական անունները։ Եվ այն բոլոր ազգերը (հայ, վրացի, ռուս, գերմանացի, հունգարացի, անգլիացի և այլն), որոնք ընդունեցին հունա-լատինական քրիստոնեությունը, ընդունեցին նաև հրեական, հունական և լատինական անունները։ Ուր որ կային հին կյանքի սեփական անուններ, մեծագույն չափով ջնջվեցին՝ իբրև կռապաշտության մնացորդ, տեղի տալով նոր կրոնի՝ քրիստոնեության բերած հույն-լատին և եբրայական անուններին։

Այժմ մասնավորենք մեր խոսքը հայոց գործածած անունների մասին։

Ո՛չ մի բան այնքան հավատարիմ կերպով չի ներկայացնում մեր պատմական կյանքի զանազան ելևէջները, մեր կրած ազդեցությունները օտար ժողովուրդներից, ինչպես և մեր ներքին ձգտումները, որչափ հատուկ անունները:

Մենք գիտենք, որ հատուկ անունները երկու տեսակ են՝ տեղանուններ և անձնանուններ։ Տեղանունները ավելի հարատև, հաստատուն և տևական բնույթ ունեն, քան անձնանունները։ Որևէ լեռ, լիճ, ծով ու գետ մշտնջենական կյանք ունի. որևէ քաղաք կամ գյուղ հարյուրավոր ու հազարավոր տարիների կյանք ունի. հետևաբար և նրանց անունը ընդհանրապես մնայուն և տևական է։ Բայց անձերի կյանքը առ առավելն մի դարի տևողություն ունի։ Անցնում է սերունդը, փոխվում են գաղափարները, փոխվում են ազդեցությունները և անուններն էլ նրանց հետ միասին անհետանում են, տեղի տալով նորանոր ձևերի։

Անձնանունների տևականությունը որոշ չափով կախված է մի քանի հանգամանքներից, որոնք են.

1. **Բառի կարճությունը.**—*Չափազանց երկար անունները շուտ են մոռացվում կամ գոնե այնքան են կրճատվում, որ այլևս անճանաչելի են դառնում.*—Աբեղճագով, Ագաթանգեղոս *իրենց երկարության պատճառով հաջողություն չեն գտել կամ շուտ են մոռացվել։ Առաջինի չափ երկար է* Աստվածատուր, *որ թեև շատ սովորական անուն է, սակայն ո՛չ մի տեղ չի պահված իր բուն ձևով, այլ զանազան կրճատումներով դարձել է՝* Աստատուր, Աստուր, Աստիկ, Ասօ, Ծատուր, Ծատի:—*Առհասարակ սիրելի են երկավանկ անունները. երկուսից ավելի վանկ ունեցող անունները կրճատվում են. սրա համար է, որ* Մարտիրոսը *դառնում է* Մարտո, Մրտո, Մարտիկ.—Մկրտիչը *դառնում է* Մկըր, Մկօ, Միկիտ, Միկիչ, Մուկուչ.—Հռիփսիմեն *դառնում է* Հռոփ, Հռոմ, Հուտի.—Եղիսաբեթը *դառնում է* Եղիս, Եխսա, Եխսօ, Սաբեթ, *իսկ եվրոպական լեզուների մեջ էլ՝* Էլիզ, Էլիզա, Լիզա, Իզաբելլա, Զաբել, Բելա *և այլն։*

2. **Բառի ներդաշնակությունը.**—*Յուրաքանչյուր ազգի և ժողովրդի գեղարվեստական ճաշակի համաձայն՝ խժալուր և տգեղաձայն համարված անունները բնականաբար շուտով ջնջվում են, իսկ ախորժելի հնչյուն ունեցող անունները միշտ ավելի են փնտրվում։*

3. **Նշանակության գեղեցկությունը.**—*Անիմաստ կամ տգեղ համարված մի անուն ավելի շուտ է հնանում և քաշվում ասպարեզից, քան թե նշանակությամբ գեղեցիկ մի անուն.*—Վարդուհի *շատ հին անուն է, գոյություն ուներ 5-րդ դարում, հիշվում է Հայսմավուրքի մեջ և դեռ երկար պիտի ապրի։ Այսպես նաև՝* Շուշան *կամ* Շուշանիկ: *Նույնչափ ախորժելի են* Մանիշակ, Սիրանուշ, Հրանուշ, Վարսենիկ *և այլն, մինչդեռ* Ագապի, Եվպրաքսիա, Հեղինե, Կատարինե *մոռացված ու անհետացող անուններ են արդեն։*

4. *Այն հանգամանքը, որ պատահաբար այն անունը կրող անձերը եղել են նշանավոր և անմոռանալի մարդիկ, պատճառ է դարձել, որ այն անունները երկար ապրեն. այսպես՝* Աբգար, Վարդան, Հայկ, Ներսես, Սահակ, Մեսրոպ *անմոռանալի անուններ են, որովհետև մեր պատմության մեջ ունեցել ենք այս անուններով կոչված նշանավոր անձնավորություններ. իսկ* Վասակ, Հուդա, Մերուժան *մեռած, անգործածելի անուններ են, որովհետև այս անուններով գտնված են նշանավոր մատնիչներ և դավաճաններ։ Անունը ինքնին այստեղ նշանակություն չունի. Վասակ բառը իրապես ավելի գեղեցիկ է, քան Վարդան. բայց ուրացող Վասակի վատ հիշատակը մոռացնել է տվել այդ անվան գեղեցկությունն ու ներդաշնակությունը։*

5. Կրոնական կամ ազգային գաղափարները.—*Սրանք ժամանակի բերմունքի համեմատ են. կար ժամանակ, երբ կրոնական զգացմունքը կյանքի գլխավոր վարիչն էր. այն ժամանակ անունները ավելի կրոնական էին, ինչպես՝* Աստվածատուր, Թորոս, Կիրակոս, Մարկոս, Ղուկաս, Մատթեոս, Պետրոս, Պողոս *և այլն։ Կրոնական զգացմունքը անցավ գնաց և տեղի տվեց զուտ ազգային շրջանին։ Դա էր անցյալ դարի կեսին։ Այն ժամանակ կրոնական անունները այլևս անախորժ դարձան և նրանց տեղ սկսեցին հայ ազգային անունները*—Վարդան, Երվանդ, Զարեհ, Գուրգեն, Արտաշես, Հրաչյա, Զարմայր, Պարույր *և այլն։*

*Եթե ուզենանք հայ անձնանունները դասավորել իրենց ուրույն խմբերով և ներկայացնել այն աղդեցությունները, որոնց ենթարկված են նրանք մեր հնագույն շրջանից սկսած մինչև այսօր, կտեսնենք, որ նրանք կազմում են 15 խումբ, որ համապատասխանում են 15 շրջանի, որոնք հետևյալներն են՝ ժամանակագրական կարգով.*

## 1. ՆԱԽԱՀԱՅԿԱԿԱՆ ԱՆՈՒՆՆԵՐ

*Նախահայկական անունները պատկանում են այն ժողովրդին, որ գրավում էր Հայաստանը։ Հայոց լեզուն, անշուշտ, շատ բան վերցրեց նրանցից. այս կարգին են պատկանում մեր տեղանունները։ Գրեթե ստույգ է, որ Հայաստանի տեղանունները ամենամեծ մասամբ նախահայկական (խալդյան) փոխառություններ են. ինչպես՝* Արարատ, Վան, Արճեշ, Կարին, Մասիս *և այլն, և այլն, որոնք հայերենով չեն կարող մեկնվել ամենևին։ Քիչ առաջ բերված պատճառաբանությամբ՝ շատ ավելի սակավաթիվ են անձնանունները։ Սրանց մեջ կարող ենք հիշել* Արամ և Մանավազ: *Առաջինը, անշուշտ, ծագում է խալդյան* Արամե *նշանավոր թագավորի անունից։ Երկրորդը շատ նման է հնչում* Մենվաս *արքայական անվան, բայց դա պատահական է և* Մանավազ *իրանական անուն է։ Մի կողմ ենք թողնում այն բազմաթիվ անստույգ ձևերը, մասնավորապես նախարարական տոհմանունները, որոնք զանազան հեղինակների կարծիքով՝ ծագում են նախահայկական խալդյան անուններից։*

## 2. ԱՆԾԱՆՈԹ ԱՆՈՒՆՆԵՐ

*Խորենացին իր Պատմության Ա գրքում տալիս է մեզ հայ անունների մի խումբ, որոնց ծագումը բոլորովին անհայտ է։ Այս*

կարգին են պատկանում Հայկ, Արմենակ, Արամայիս, Ամասիա, Հարմա, Արա, Դարդոս և այլն, և այլն, որոնք ապահովապես հայերեն չեն, քանի որ չեն կարող մեկնվել հայերենով։ Թե արդյոք սրա՞նք էլ պատկանում են խալդյան շրջանին և կամ հաթյան անունների մնացո՞րդ են և կամ փռյուգական որևէ լեզվի՞ց են փոխ առնված և կամ թե վերջապես Խորենացու հնարածնե՞րն են (գոնե մի քանիսը), կարելի չէ գիտության այժմյան վիճակում ստուգապես որոշել։ Ստույգ է ինձ համար, որ Մուշեղ, հայոց պատմության մեջ այնպես սովորական մի անուն, փոխ է առնված հաթյան Մուրշիլի անունից։ Այս անունով են կոչվում հաթյան մի քանի թագավորներ (տե՛ս իմ Հայոց լեզվի պատմություն, Ա հատոր, էջ 149)։

## 3. ԲՈՒՆ ՀԱՅԿԱԿԱՆ ԱՆՈՒՆՆԵՐ

Բուն հայկական անունների առաջին շրջանը ընկնում է Արշակունյաց ժամանակ։ Ագաթանգեղոս, Բուզանդ, Կորյուն, Խորենացի, Փարպեցի և Եղիշե ավանդում են մեզ այս կարգի բազմաթիվ անուններ, որոնք կրկնվում են նաև հաջորդ պատմիչների մոտ։ Այս անունները զուտ հայկական են, որովհետև մեկնվում են հայերեն լեզվով. ինչպես՝ Արձան, Տիրայր, Այրուկ, Աստղիկ, Գյուտ, Թաթիկ, Թաթուլ, Թոռնիկ, Իշխան, Եղբայր, Երանյակ, Զարմայր, Բազուկ, Գոռակ, Առնակ և այլն։ Բուն հայկական անունների մեջ շատ սովորական են կենդանիների և թռչունների անունները, ինչպես՝ Առյուծ, Այծեմնիկ, Կորյուն, Արտույտ, Գառնիկ, Եզնիկ, Ցլիկ, Ընձուղ, Մրջյունիկ և այլն։

Բուն հայկական անունները, ինչպես ասացինք, պատկանում են Արշակունյաց շրջանին, ավելի որոշ խոսելով՝ նախաքրիստոնեական հայության։ Քրիստոնեությունից հետո սրանք սկսում են կամաց-կամաց տեղի տալ. Մեծ Անիշխանության կեսից հետո, արաբական տիրապետության և Բագրատունյաց թագավորության ժամանակ չափազանց սակավաթիվ են դառնում և Ռուբինյանց ժամանակ բոլորովին անհետանում են։ 19-րդ դարի կեսից հետո, երբ սկսեց հայկական զարթնումը, բուն հայկական անունները նորից կենդանացան և նրանցից լավագույնները, այսինքն իմաստով գեղեցիկները, պատմության էջերից դուրս բերվելով, նորից գործածվել սկսեցին՝ ոմանք կրոնական, ոմանք էլ աշխարհական շրջանակներում, ինչպես՝ Տիրայր, Կորյուն, Եզնիկ, Գառնիկ, Զարմայր, Երանյակ, Իշխան, բայց ոչ Մրջյունիկ, Ցլիկ, Արտույտ և այլն։

## 4. ՊԱՀԼԱՎԱԿԱՆ ԱՆՈՒՆՆԵՐ

*Պարթևական ազդեցությունը հայոց վրա չափազանց մեծ է։ Պահլավերենը հայ ազնվականության լեզուն էր. պալատականները և նախարարները այդ լեզվով էին խոսում, դիվանական հարաբերությունները այդ լեզվով էին կատարվում։ Զարմանալի չպիտի թվա ուրեմն, եթե ասենք, թե հին հայոց անունների որոշ մասը, որոնք մենք զուտ ազգային անուններ ենք համարում, պարզապես պահլավական փոխառություններ են. այսպես, օրինակ,* Վարդան, Վահան, Բագարատ, Աշոտ, Ասպետ, Գրակ, Արտակ, Մենուա, Սմբատ, Մարգաս, Սեպուհ, Սուրեն, Կարեն, Խոսրով, Խոսրովիդուխտ, Համազասպ, Արտաշես, Գիսակ, Գուրգեն, Անուշ, Աշխեն, Առաստոմ, Արշակ, Սանատրուկ, Արտավազդ, Տրդատ, Վռամշապուհ *և այլն, և այլն։*

*Պահլավական անուններն էլ իրանյան տիրապետության անկումից հետո սկսեցին մոռացվել. Ռուբինյանց իշխանության ժամանակ ամենամեծ մասամբ ջնջված են արդեն. մնում են միայն նրանք, որ ներկայացնում են մեր պատմության ամենամեծ դեմքերը, ինչպես՝* Վահան, Վարդան, Տրդատ *և այլն։ Հայկական զարթնումին նորից կենդանացան նրանք և այսօրվա հայության ամենասիրելի անուններն են։*

## 5. ԱՍՈՐԱԿԱՆ ԱՆՈՒՆՆԵՐ

*Քրիստոնեությունն ընդունելուց հետո, հայերը առաջին անգամ ընկան ասորական ազդեցության տակ։ Հունաստանը հեռու էր, իսկ Միջագետքը շատ մոտիկ։ Բազմաթիվ ասորի քարոզիչներ կային մեր երկրում, ուր նրանք իրենց լեզուն տարածում էին եկեղեցու բեմից։ Եկեղեցական պաշտամունքի լեզուն ասորերենն էր. Ավետարանը ասորերեն էր կարդացվում. հայ երիտասարդները իրենց ուսումը Եդեսիայի դպրոցումն էին ստանում. Աստվածաշունչը առաջին անգամ ասորերենից թարգմանվեց։ Այս ժամանակաշրջանում մեր մեջ մտան մի խումբ ասորերեն անուններ, ինչպես՝* Արշամ, Աբգար, Եղիշե, Գադիշո, Բարզափրան *և այլն։ Ասորական ազդեցությունը կարճատև եղավ. շուտով վրա հասան հունական և հետո զուտ հայկական քաղաքակրթությունը, որոնք խեղդեցին ասորականը։ Ասորական անուններն էլ ջնջվեցին և նրանցից հազիվ մեկ-երկուսը կյանք ունեն այսօր. այն է՝* Աբգար *և* Եղիշե, *որոնք ապրում են շնորհիվ այն հանգամանքի, որ ներկայացնում են մեր առաջին քրիստոնյա թագավորի (ըստ ավանդության) և մեր ամենից սիրելի բանաստեղծ պատմագրի անունը։*

## 6. ԵԲՐԱՅԱԿԱՆ ԱՆՈՒՆՆԵՐ

*Եբրայական քաղաքակրթությունից խորապես ազդված ազգերի մեջ գտնվում ենք նաև մենք։ Ճշմարիտ է, թե այս ազդեցությունը անմիջական հարաբերությանց արդյունք չէ և հույների միջոցով հասել է մեզ, բայց այնքան սաստիկ է եղել այն, որ շատ տարբեր ձև չպիտի ունենար, եթե անմիջական հարաբերության ծնունդը լիներ։ Քրիստոնեության և Աստվածաշնչի միջոցով եբրայեցերենից անցել է մեզ անձնանունների մի մեծ թիվ, որ 1600 տարուց ի վեր մեր ամբողջ կյանքն է լցնում՝* Ադամ, Եվա, Աբել, Աբրահամ, Սեթ, Սահակ, Դանիել, Գաբրիել, Դավիթ, Եսայի, Հակոբ, Զաքարիա, Սողոմոն *և այլն, և այլն հայ ժողովրդի բոլոր խավերի համար այնպես ծանոթ, այնչափ սովորական, այնքան հայացած և այն աստիճան ընտանի անուններն են, որ դեռ դարեր ու դարեր պիտի ապրեն. և հազիվ թե կարելի լինի ասել, որ երբևիցե պիտի կարենան ջնջվել հայության և աշխարհի միջից։*

*Եբրայական անունները անցել են մեզ Աստվածաշնչի թարգմանության միջոցով, և որովհետև մեր Աստվածաշունչը թարգմանված է հունարենից և ո՛չ թե ուղղակի եբրայեցերենից, ուստի այս անուններն էլ կրում են հունական կնիք։ Այստեղ ամենացայտուն կետը հետևյալն է—հունարեն լեզվի մեջ չկա շ ձայնը. ուստի ուր որ եբրայերենը ունի շ, հույնը դնում է* ս: *Մենք էլ, թեև ունենք շ ձայնը, բայց հետևելով հունարենին՝ դնում ենք* ս: *Այսպես, օրինակ՝ եբրայեցին ասում է* Երուշլիմ, *իսկ մենք ասում ենք* Երուսաղեմ: *Այս երևույթը ընդհանուր է բոլոր եվրոպական ազգերին։*

## 7. ՀՈՒՆԱԿԱՆ ԱՆՈՒՆՆԵՐ

*Հույնը քրիստոնեության տարածիչ և համաշխարհային քաղաքակրթության դայակն է եղած. չկա աշխարհիս մեջ մի ազգ, որ հունական քաղաքակրթությանը որևէ բանով պարտական չլինի։ Զինացիք անգամ հունարենից փոխառյալ բառեր ունեն։ Առանձնապես մեր ազգը ամենամեծ չափով ազդված է հույներից։ Եթե մեր նախաքրիստոնեական քաղաքակրթությունն ամբողջապես պարթևական քաղաքակրթությունն էր, մեր հետքրիստոնեական քաղաքակրթությունն էլ լիովին հունական է։ Մեր գրականության մի մասը հունականի ընդօրինակությունն է. մեր առաջին գրքերը հույն հեղինակներից են թարգմանված. և այս բանը շարունակվել է մինչև Ռուբինյանց թագավորությունը. Աստվածաշունչ, Ավետա-*

րան, Մաշտոց, Վարք Սրբոց, Հայսմավուրք, Խորհրդատետր՝ հունարենից են թարգմանված կամ հունականի օրինակով խմբագրված։

Այսպիսի խոշոր ազդեցության բնական արդյունքն է նաև հատուկ անունների մի առատ թիվ, որ 4-րդ դարից սկսած մինչև այսօր տիրապետում է հայ կյանքի վրա. օրինակ՝ Անաստաս (հարություն), Ղևոնդ (առյուծ), Վասիլ (թագավոր), Գեորգ (երկրագործ), Գրիգոր (արթուն), Թեոդորոս (աստվածատուր), Փիլիպոս (ձի սիրող), Կիրակոս (տերունի), Հռիփսիմե (անկյալ), Ագապի (սեր), Ստեփան (պսակ) և այլն։

## 8. ԱՐԱԲԱԿԱՆ ԱՆՈՒՆՆԵՐ

Վերևում ցույց տվեցինք, թե անձնանունները առհասարակ կրոնական բնույթ ունեն և ըստ այնմ կրոնակից ազգերից առնվելով՝ նրանց կրոնի հետ էլ տարածվել են։

Ի նկատի ունենալով այս տիեզերական երևույթը, տարօրինակ է, անշուշտ, այն հանգամանքը, որ հայերը, նույնիսկ քրիստոնեության ամենից պայծառ տարիներում, ընդունել են կրոնապես իրենց թշնամի ազգերի անձնանունները, ինչպես արաբների և թյուրքերի։ Չգիտեմ թե ի՛նչպես պետք է մեկնել այս երևույթը։ Անշուշտ մահմեդականները չստիպեցին մեզ, որ մենք բռնի կերպով ընդունենք իրենց անունները։ Սրևի այս էլ գերիշխան տարրի բնական ազդեցության արդյունքն է, ազդեցություն՝ որ ամեն ձևի ու ամեն հանգամանքի մեջ էլ իր գործը տեսնում է, և փոքր, նվաճված ազգերը իրեն է քաշում, իրեն է միացնում։

Մեր հին պատմության մեջ ծանոթ արաբական անուններ են. Աբլխարիպ, Արուսանլ, Համամ, Մլեհ և այլն։ Ոմանք նաև գործածված են հայ թարգմանությամբ, ինչպես Ճնճղուկ, որ արաբական Համամ համանիշի թարգմանությունն է։

## 9. ԼԱՏԻՆԱԿԱՆ ԱՆՈՒՆՆԵՐ

Ռուբինյանց օրով, հարաբերությանց աճման հետ, շատացավ նաև լատինական անունների գործածությունը, ինչպես՝ Անտոն, Լևոն, Զաբել, Ալիս, Հեթում, Օգոստինոս և այլն։ Ռուբինյանց պետության անկումով լատին անունները ջնջվեցին և այսօր հազիվ մի քանիսը կենդանի են նրանցից։

## 10. ՀԱՅ ԿՐՈՆԱԿԱՆ ԱՆՈՒՆՆԵՐ

*Քրիստոնեության տարածումից հետո, եբրայական և հունական անունների հեղեղման ժամանակ, ծագեց հայոց մեջ մի նոր միտք, այն է՝ թարգմանել օտար քրիստոնեական անունները։ Հունական* Անաստաս *անվան դեմ դրին* Հարություն, Ապոստոլի *դեմ՝* Առաքել, Թեոդորոսի *դեմ՝* Աստվածատուր, Ստավրիի *դեմ՝* Խաչիկ, *եբրայական* Սեթի *դեմ՝* Մխիթար *և այլն։ Այս երևույթը, անշուշտ, հունագետ հայրերի գործն էր և ազգային նախանձախնդրության մի ձեռնարկ հայոց մեջ։ Ուշադրություն չեն դարձրել նրանք այն հանգամանքի վրա, թե արդյոք այդ թարգմանված անունների բնաձևը իրապես գործածակա՞ն է հայոց մեջ, թե ոչ։ Օրինակի համար՝* Անաստաս, Թեոդորոս *և այլն հայոց ծանոթ անուններ են եղած, բայց* Ապոստոլ, Ստավրի *և այլն գործածական չեն եղած մեր մեջ։ Թարգմանության հետ զուգընթացաբար մտել են նաև նոր նմանակերտ անուններ, բոլորն էլ քրիստոնեական կյանքի բացատրություններ, հայ ժողովրդի մտքին ու սրտին մոտիկ ու հասկանալի բառեր, որով մեր անձնանունների բառարանը կրկնապես ընդարձակվել է։ Այսպես են՝* Համբարձում, Զատիկ, Գալուստ, Մարգար, Տիրատուր, Խաչատուր, Քրիստոստուր, Խաչերես, Ծերոն, Կարապետ, Մկրտիչ, Ավետիս, Ավագ, Մաքրուհի, Սրբուհի, Տիրուհի *և այլն, և այլն, որոնք, սկսած այն օրից մինչև այժմ, ավելի կամ նվազ չափով գործածական են մեր մեջ։ Մեր մտավոր զարգացման պատմության տեսակետով շատ հետաքրքիր էր որոշել, թե ե՛րբ է այս անունների ծագման ժամանակը։*

## 11. ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԱՆՈՒՆՆԵՐ

*Հայ կրոնական անուններից դուրս կան բազմաթիվ ուրիշ անուններ, որոնք թեև հայերենի մեջ կազմված անուններ են, բայց քրիստոնեական հավատալիքների շուրջը չեն պտտվում, այլ իրենց իմաստով ներկայացնում են ավելի իրական կյանքը և շատ անգամ ներկայացնում են աշխարհիկ բանաստեղծական սիրուն պատկերներ։ Օրինակ՝* Թուխծամ*—մազերը սև,* Շաղոսկի*—որ ոսկի է շաղում,* Վարդիթեր*—վարդի թերթ,* Հերիքնազ*—հերիք ինչքան նազ ես անում։ Այս շարքի անուններից են՝* Ջանազան, Վարդերես, Լույսպարոն, Նորարև, Վարդըմպու, Անձրևվարդ, Նորվարդ, Նորտիկին, Վարդմանուկ, Քնարիկ *և այլն։*

*Հայ հասարակ ժողովրդի, շինականի բնիկ, հարազատ, յուրա-*

*կերտ անուններն են սրանք, որ եկեղեցական դասի պաշտած կրոնական անունների և ազնվական դասակարգի սիրած օտար անունների շրջանակում բացառիկ փայլով ցոլում են։*

## 12. ՍԵԼՋՈՒԿ-ԹԱԹԱՐԱԿԱՆ ԱՆՈՒՆՆԵՐ

*Հայ ժողովրդական անուններին գրեթե ժամանակակից են այն բազմաթիվ անձնանունները, որ հայ ժողովուրդը փոխ է առել թաթար, սելջուկ և նորապարսիկ մահմեդական ազգերից։ Հայ ժողովուրդը ընդհանրապես շատ լավ գիտեր այդ լեզուները, որով շատ դյուրավ թափանցում էր անձնանունների ներքին իմաստին և նրանց մեջ տեսած գեղեցիկ պատկերներից հրապուրված՝ վերցնում ու որդեգրում էր նրանք։ Օրինակ՝* Ասլան*—առյուծ,* Ջիվանշիր*—մատաղ առյուծ,* Բաճալու*—թանկագին,* Բայրաք*—դրոշակ,* Գուլբաճար*—գարնանային վարդ,* Գուլդաստա*—վարդի փունջ,* Գուլմելիք*—վարդերի թագուհի,* Գուլնիգար*—վարդանկար,* Հախբանդա*—ծառա Աստուծո,* Հախնազար*—Աստվածատես,* Նբար*—բավական է,* Թամամ*—կատարյալ,* Թանգրիղուլի*—Աստուծո ծառա,* Թուրֆանտա*—նորահաս նուբար,* Խութլումելիք*—(թաթարերեն) երջանիկ կամ օրհնյալ թագավոր։*

## 13. ԵՎՐՈՊԱԿԱՆ ԱՆՈՒՆՆԵՐ

*Բոլորովին նոր ժամանակի փոխառություններ են սրանք, որ առնված են ֆրանսերենից, իտալերենից և անգլերենից. գործածական էին բացառապես արևմտահայոց, հատկապես կաթոլիկ հայոց մեջ, ինչպես՝* Ժոզեֆ *կամ* Ճուզեփո *(Հովսեփ),* Ճիվան *(Հովհաննես—իտալական Ջիովաննի),* Վալանտին, Ալբերտ, Էդուարդ, Վիկտորիա, Էժեն, Վերժին, Ադոլֆ, Ռոդոլֆ *և այլն, և այլն։ Սրանցից իտալական ձևերը արդեն անհետացան արևմտահայոց մեջ, իսկ մյուսները շատ գործածական չեն այժմ, բացի իգական անուններից, որոնք արականներից ավելի սիրելի են դարձած այն պատճառով, որ իգական անձնանունների մի ճոխ մթերք պակասում է արևմտահայոց մեջ։ Վերջին ժամանակներս Կովկաս էլ մուտք գործեցին եվրոպական անունները, ինչպես՝* Էմմա, Էլեոնորա *(կրճատ՝* Նորա), Ջուլետա, Օֆելյա, Վալենտինա, Էդուարդ, *մինչև իսկ՝* Նապոլեոն, Համլետ, Հենրի *և այլն։*

## 14. ՌՈՒՍԱԿԱՆ ԱՆՈՒՆՆԵՐ

*Վերջին ժամանակներս զուտ ռուսական անունները սկսել են թափանցել ռուսահայ աշխարհում (Կովկաս և մանավանդ Ռուսաստան)։ Ռուսահայերից ոմանք ռուսական համապատասխան մի անուն փնտրում գտնում են իրենց վաղեմի անվան տեղ և այս ձևով էլ գործածում առհասարակ. այսպես՝* Նիկողոսը *դառնում է* Նիկոլա, Գևորգը՝ Գեորգի *կամ* Եգոր, Հովհաննեսը՝ Իվան, Գրիգորը՝ Գրիգորիյ *և այլն։*

*Այս աշխատանքը այնքան է առաջ գնացած, որ բոլորովին անհամապատասխան անուններ էլ շատ անգամ լծորդվում են իրար պաշտոնապես, բավական է, որ երկու բառերի մեջ նմանահնչյուն մի տառ կամ մի ձայն գտնվի։ Այսպես՝* Մկրտիչը *դառնում է* Նիկիտա, Հարությունը՝ Արտեմ *կամ* Արտյոմ, Սանակը՝ Սավա, Մարտիրոսը՝ Մարտին, Վաղարշակը՝ Վոլոդյա, Արշակը՝ Արկադիյ *և այլն, որոնք իրար հետ ո՛չ մի առնչություն չունեն ամենևին։ Այս «արվեստի» մեջ նշանավոր են հատկապես Նոր-Նախիջևանի հայերը։*

*Առանձնապես հարգի և սովորական են փաղաքշական անունները, ինչպես՝* Միշա *(Միքայել),* Սաշա *(Աղեքսանդր),* Մաշա *(Մարիամ),* Թոդյա *(Թեոդորոս),* Լիզա *(Եղիսաբեթ),* Կոլյա *(Նիկողայոս),* Կատյա *(Կատարինե) և այլն։*

*Նոր ռուսական անուններ են՝* Վլադիմիր, Օլգա, Օլյա, Օլինկա, Դուսյա, Դունյա, Մարուսյա *և այլն։*

## 15. ՀԱՅ ԱԶԳԱՅԻՆ ԱՆՈՒՆՆԵՐ

*Այս անվան տակ դասավորում եմ այն հայերեն անձնանունները, որոնք հայկական ազգային ինքնագիտակցության զարթնումից հետո սկսեցին գործածվել մեր մեջ, այն է վերջին 80-ամյակում։ Այս ազգային ինքնագիտակցությունը, որ մերժելով զուտ կրոնական և օտար անունները, պատմության էջերից դուրս բերեց գրեթե մոռացված հայ պատմական անունները և նրանք ընդհանուր գործածության դրեց, չբավականացավ միայն դրանցով և սկսեց ստեղծել հատուկ անուններ, բոլորն էլ զուտ հայերեն լեզվով և հայ ազգային գաղափարների շրջանակում։*

*Ահավասիկ այսպիսի նոր անունների մի փոքր ցանկ—*Հայաստան, Արմսի, Մասիս, Արարատ, Արմենուհի, Հայկուհի, Ազատ, Սիրանուշ, Վարսանուշ, Հրանուշ, Հրազդան, Հրայր, Հրաչուհի, Բերկրուհի, Վշտիկ, Մարտիկ *(ո՛չ թե* Մարտիրոս *բառից կրճատված, այլ հայերեն* մարտիկ *«կռվող»),* Հայկազն, Հայկարամ,

Աղավնի, Արծվիկ, Համիկ, Քնարիկ, Արփենիկ, Ազնիվ, Սիրական, Լուսիկ, Լուսնթագ, Գեղունի, Ազատունի, Փայլակ և այլն։

Անունները կախում ունեն նաև տեղից ու հանգամանքից։ Հայության բոլոր հատվածները, թե՛ Հայաստանում և թե՛ գաղթավայրերում, միշտ մի միակ տիրապետության հպատակ չեն եղել և հետևաբար մի ազդեցության չէին ենթարկված։ Պահլավական անունները կարող էին Հայաստանի արևելյան մասերում տարածված լինել, մինչ հունական անունները՝ ավելի արևմտյան մասերում, իսկ ասորական անունները՝ հարավային մասերում։ Տեղական զանազանությունը ավելի որոշ է ներկայումս. Կովկասի հայերը գործ են ածում ռուսական անուններ, որոնցից ո՛չ մեկը չի մտած արևմտյան Հայաստան և գաղութները։ Հունգարիայի, Լեհաստանի և Ռումինիայի հայերը բնականաբար ունեն հունգարական, լեհական և ռումինական անուններ, որոնք մեր մեջ բնավ մուտք չեն գործած։

Հանգամանքներն էլ մեծ ազդեցություն ունեն անունների տարածման վրա—բարձր դասակարգը, իբրև նորության ու փայլի սիրահար, սովորաբար հինն ու բնիկը շուտ է մոռանում, օտար անունները ավելի է սիրում և նրանց առաջին փոխառուն է, մինչդեռ հասարակ ժողովուրդը իր ունեցածին ավելի հավատարիմ է։ Պահլավական անունները առաջին անգամ ազնվական դասակարգի մեջ մտան. թագավորները, իշխաններն ու նախարարները սիրում էին կոչվել Արշակունի ու Սասանյան արքայական տների անուններով։ Ասորական, եբրայական և հունական անունները կրոնական դասակարգի մեջ մուտք գործեցին նախապես և նրա միջոցով տարածվեցին ժողովրդի մեջ։ Դրա համար է, որ երբ մեկը ընդունում է կրոնական կոչում, նրա աշխարհական անունը (մանավանդ եթե հեթանոսական է) հանում են և տեղը դնում կրոնական անուն, որ լինում է հունական, եբրայական կամ ասորական։ Այսպես՝ երբ Տրդատը թողեց արքայական գահը և ճգնավոր դարձավ, կոչվեց Հովհաննես։ Ռուբինյանց Հեթում սպարապետը երբ թողեց սուրը և վանք մտավ, կոչվեց Անտոն։ Այս սովորությունը շարունակվում է մինչև հիմա։ Հայ ազգային անունները գլխավորապես Կոստանդնուպոլսում հնարվեցին և կամաց-կամաց դեպի Արևելք տարածվեցին։ Երբ ես ծնվեցի (Կոստանդնուպոլիս, 1876 թ.) կարծեմ երկրորդն էի, որ Հրաչյա անունն ստացա. մինչդեռ այժմ Հրաչյա անունը սովորական է դարձել։ Եթե գնանք մի խուլ գյուղ, մեր լսած սովորական անունները պիտի լինեն եբրայական, հունական և թուրքական անունները. իսկ բուն հայկական, պահլավական, եվ-

րոպական, ռուսական և հայ ազգային անունները՝ հազիվ երբեք։ Մինչդեռ Կոստանդնուպոլիս, Երևան և ուրիշ կրթված կենտրոններ (Թիֆլիս, Զմյուռնիա), առաջինները արդեն անգործածական են դարձել և ավելի այս վերջինները գոյություն ունեն։

Նախորդ հոդվածում ես խոսեցի անունների ծագման մասին։ Իմ ասածների ամփոփումը այս է.—Անունը այն միջոցն է, որով հասարակության մի անդամը (անհատը) զանազանվում է մնացյալ անդամներից։ Ամեն անուն մի բառ է, որ ունի իր որոշ նշանակությունը։ Անունները հաճախ ազգից ազգ փոխ են առնվում և ընդհանրանում։ Հայերը թեև ունեն իրենց բնիկ սեփական անունները, բայց դրանք շատ քիչ են։ Մեր գործածած անունները մեծավ մասամբ օտար են. պահլավերեն, պարսկերեն, հունարեն, եբրայերեն, թյուրքերեն և զանազան եվրոպական լեզուներով, որոնց մեջ գտնում ենք նաև ռուսերեն անունները։

Այժմ խոսում եմ ազգանունների մասին։

Երբ համայնքը փոքր է, անունը բավական է անհատը համայնքի մնացյալ անդամներից զանազանելու համար։ Օրինակ, մի գյուղում, ուր 10—20—30 տնվոր միայն կա, երկու սեռը բաժանելով, նրա կեսի չափ միայն տղամարդ և այնքան էլ կին պիտի լինի։ Ուստի եթե մի 100 անուն լինի, այդ թիվը բավական է. ամեն մարդ էլ կիմանա, թե ո՛վ է Կարապետը, կամ ո՛վ է Գրիգորը։

Բայց երբ համայնքը մեծանում է, տների թիվը բարձրանում է 100-ների և 1000-ների, այն սակավաթիվ անունները այլևս բավական չեն։ Ուստի կամ պետք է անունների թիվը շատացնեն, ինչ որ անում են, և կամ անուններին պիտի ավելացնեն զանազանիչ մի երկրորդ միջոց։ Զարգացման այս առաջին աստիճանը կազմում է ածականը։ Անվան վրա դնում են մի ածական։ Վերցնում են նույն անհատի արտաքին կամ ներքին նկարագրից հատկանշական որևէ կետ։ Օրինակ. հռոմայեցվոց ինքնակալներից մեկը կոչվում էր Հուլիոս. սա մի սովորական անուն էր հռոմայեցվոց մեջ. կային շատ Հուլիոսներ. ուստի այս Հուլիոսը մյուս Հուլիոսներից զանազանելու համար կոչեցին Հուլիոս Կեսար։—Ի՞նչ է նշանակում կեսար.—Կեսար նշանակում է փորը ճղած։ Երբ Հուլիոսի մայրը երկունքի մեջ էր, ծնունդը շատ դժվար եղավ. բժիշկները ստիպվեցին ճղել մոր փորը և երեխային այնպես դուրս բերել. Հուլիոսը կոչվեց փորը ճղած Հուլիոս։ Այնուհետև Հուլիոս Կեսարը մի մեծ ինքնակալ դարձավ և նրա Կեսար վերադիրը նշանակեց «մեծ ինքնակալ». այս է կայսր բառը։

*Ածականով անուններ շատ սովորական են թե՛ պատմության և թե՛ մեր հասարակ կյանքի մեջ. օրինակ՝* Լենկ-Թիմուր *(Կաղ Թիմուր),* Իվան Գրոզնիյ *(Իվան Ահեղ),* Աշոտ Ողորմած, Գայլ Վահան, Աշոտ Երկաթ, Գող Վասիլ, Ցլիկ Ամրամ, Քոռ Թաթոս, Ձոլախ Սարգիս, Փալթառա Մարտին, Նապրասնի Գորգի *և այլն։*

*Ածականներից հետո կարելի է գնել անհատի տեղը, ծնված կամ բնակված քաղաքը. այսպես՝ ունենք* Գրիգոր Նարեկացի, Գրիգոր Տաթևացի, Մովսես Խորենացի, Խաչատուր Տարոնացի, Գևորգ Սկևռացի, Ներսես Լամբրոնացի *և այլն։*

*Երրորդ միջոցն է հայրանվան գործածությունը. այսպես՝* Գրիգոր որդի Հովհաննու, Տրդատ որդի Խոսրովու, Սմբատ որդի Աշոտի: *Թյուրքերի մեջ՝* Հյուսեին օղլի Ալի, Ալի օղլի Սուլեյման *և այլն։ Արաբների մեջ՝* Հասան իբնի Ալի, Ալի իբնի Վեհաբի, Մեհեմմեդ իբնի Սուլեյման: *Ամենքիս հայտնի է ռուսաց մեջ ընդունված սովորությունը, հայրանունը իբրև պատվանուն.—*Նիկոլայ Ալեքսանդրովիչ, Վլադիմիր Սերգեևիչ, *իգականի մեջ՝* Աննա Գրիգորևնա, Սոֆիա Գերասիմովնա *և այլն։*

*Այս երեք միջոցներն էլ կարող ենք կոչել անհատական կամ ավելի շուտ մականուն, քան թե ազգանուն։ Ազգանունը այն է, որ դրվում է մի գերդաստանի ամբողջ սերնդի կամ սերունդների վրա և կարող է դարեդար շարունակվել։ Այսպես՝* Մամիկոնյան, Բագրատունի, Արծրունի, Գնունի, Սլկունի, Խորխոռունի, Հովնունի, Ջյունական *և այլն, և այլն, հին հայոց նախարարական տոհմերը, որոնք շարունակվել են երկար դարեր և արաբական շրջանում հետզհետե վերջացել։*

*Կան ազգեր, որոնք հայրանվան վրա կանգնում են և ազգանվան չեն անցնում. այսպես էին թյուրքերը և պարսիկները, որոնք գիտեին միայն* Հյուսեին օղլի Ալի *կամ* Հյուսեին Փաշերի Ալի. *և միայն վերջին քսանամյակում, հետևելով եվրոպական կարգերին, անցան ազգանվան։ Հետաքրքիր է կարճեմ իմանալ, թե ինչպես պարսիկները անցան ազգանվան։ 1918 թվականին էր, պարսից կառավարությունը հայտարարեց, թե այսուհետև տիտղոսները պիտի ջնջվեն և ամեն մարդ իրեն համար մի ազգանուն պիտի ընտրե։ Ամեն մարդ ընկավ մտածողության խորքը և մի որևէ տեղից մի բան հնարեց և թերթում հայտարարեց, թե ես այսինչ ազգանունն եմ վերցնում։ Այլևս ոչ ոք այդ ազգանունը վերցնելու իրավունք չուներ։ Երկու տարի տևեց այդ գործողությունը և ամեն ընտանիք կամ գերդաստան տարբեր ազգանվան տեր դարձավ։*

Արաբներն էլ կանգնել են հայրանվան վրա և որովհետև միայն հայրանունը քիչ էր զանազանելու համար համայնքի զանազան անդամները իրարից, ավելացրին նրա հետ նաև մի մականուն և այն անձի ո՛ր տեղացի լինելը։ Արաբների մեջ կա նաև մի ուրիշ տարօրինակ սովորություն, որ միայն արաբներին է հատուկ։ Ենթադրենք մի մարդ Հասան անունով, սա ենթադրենք թե Հյուսեինի որդին է, ուստի լինում է Հասան-իբնի-Հյուսեին. նա ասենք Բաղդադ քաղաքից է, ուստի լինում է Հասան-իբնի-Հյուսեին-էլ-Բաղդադի, նա ունի մի մականուն, ենթադրենք Ցաթթահ. ամբողջը լինում է Հասան-իբնի-Հյուսեին-էլ-Բաղդադի-Ցաթթահ։ Բայց այսքանը քիչ է. նա ամուսնացավ, ունեցավ մի որդի Ալի անունով. հայրը այժմ իր վրա վերցնում է աբու-Ալի, այսինքն «հայր Ալիի» տիտղոսը և դառնում է Հասան-իբնի-Հյուսեին-էլ-Բաղդադի-աբու-Ալի-Ցաթթահ։ Որդիները շատացան. նա ունեցավ երկու որդի ևս, մեկը Մուսթաֆա և մյուսը Սուլեյման։ Ուստի այդ մարդը դարձավ՝ Հասան-իբնի-Հյուսեին-էլ-Բաղդադի- աբու -Ալի- աբու- Մուսթաֆա-աբու-Սուլեյման-Ցաթթահ։ Արաբ պատմության և գրականության մեջ շատ ենք պատահում այսպիսի կանգունաչափ անունների. օրինակ՝ մի բանաստեղծ կա, որի անունն է՝ Իզզ-էդ-դին-Աբդուլ-Ցոտա-էլ-Աբդուլ-Վահապ-Ահմադ-էդ-դին-իբն-Իբրահիմ-էլ - Սենճանի։ Եգիպտոսի սուլթաններից մեկի քարտուղարն է Շեյխ-ար-Ռայիս-Սաֆի-ադ-Դավլա-իբնի-աբու-Մաալի-իբնի-Շարաֆի։ Արաբ ուղեգիրներից մեկը կոչվում է Աբու-Աբդալլահ-Մուհամմեդ-բին-Աբդուլլահ-բին-Մուհամմեդ-բին - Իբրահիմ-էլ-Վաթի-էդ - Դանջի-իբնի-Բատուտա-Նեմմ-էդ-Դին։ Մի արաբ բժիշկ կա, որի անունն է Ջիաէդ-դին-աբու-Մուհամմեդ - Աբդալլահ-բին-Ահմեդ - էն - Նուբաթի-էլ-Մալաքի։ Արաբ պատմիչ Իբն-Խալիքանը իր Վեֆայաթ էլ Աայան գրքում (Թրգմ. Գ. Մըսըրյան, Կահիրե, 1935 թ., էջ 8) այսպես է անվանում Խորասանի էմիրներից մեկի անունը.—էլ էմիր Կութեյբա բին աբի Սալիհ Մուսլիմ բին Ամր բին էլ Հոսեյն բին Ռաբիա բին Խալիդ բին Էսիդ էլ Խեյր բին Կուդայի բին Հիլալ բին Սալամա բին Սաալաբա բին Վաիլ բին Մաան բին Մալիք Ասասար բին Սաադ բին Կայս Այլան բին Մոդար բին Նիզար բին Մաադդ բին Ադնան էլ Բահիլի։ Սա այդ մարդու ամբողջ ցեղաբանությունն է։ Իբն-Խալլիքանը մի ուրիշ անգամ էլ տալիս է մի իշխանի երկար անունը և հետո էլ ավելացնում է. «մնացյալը չեմ հիշում»։ Դժբախտաբար ես էլ էջը չեմ հիշում։

Հայրանունները կարող են կրկնվել, այսինքն դնել պապի և պապի հոր, գուցե և պապի պապի անունը։

Արաբական սովորությունը քիչ-քիչ կամ մասամբ տարածվեց հպատակ կամ կրոնակից ցեղերի վրա. օրինակ՝ Մադագասկարի թագավորներից մեկը կոչվում է Անդրիանամպոյնիմերինա։ Իսպանացիք էլ սիրում են կազմել երկար անուններ։ Մի առակ կա։ Հարավային Ամերիկայում մի իսպանացի գիշերը անտառում կորցրել է ճանապարհը. ստիպված թակում է մի անգլիացու դուռը և խնդրում է, որ իրեն թույլ տա գիշերել. անգլիացին մութ տեղը պատուհանը բաց արած հարցնում է ո՞վ է։ Իսպանացին պատասխանում է. — Ֆերնանդո-Դելլոս-Վեստոս-Սերվանդես-Դելլոս-Մինկոս-Սանթա-Կուզենո-Դելլոս-Անտիխոնոս:—Մեր տունը փոքր է, այդքան մարդու տեղ չկա,—ասում է անգլիացին և պատուհանը փակում։

Ուրիշ ազգեր ճանաչում են անուն, հայրանուն և ազգանուն. օրինակ՝ չինացիք, որոնց բառերը շատ կարճ են, հետևում են այս սովորության. հիշենք չինական անուններից՝ Կոն Ֆու-ցի, Լի Հունգ-չանգ, Սուն Յան-ցեն, Շի Հոանկ-թի, Շուն Յու-յուն և այլն։ Սրանց մեջ առաջին վանկը ազգանունն է, երկրորդը՝ հայրանունը և երրորդը՝ անունը։ Ռուսաց մեջ էլ, ինչպես հայտնի է, գործածական է անունով և հայրանունով ազգանունը. օրինակ՝ Իվան Ֆեոդորովիչ Պալին և այլն։

Եվրոպացիք լայնորեն օգտագործում են ազգանունը։ Անունը ֆրանսիացոց մեջ այնքան անարժեք բան է, որ անուն ասելով հասկանում են ազգանուն, իսկ անվան համար գործ են ածում փոքր անուն (petit nom)։ Մի անձ կարող է ունենալ 3—4 անուն, բայց միայն մի ազգանուն։ Այսպես Փարիզի իմ դասընկերներից հիշեմ՝

Edouard-Marie-Antoine-Aude.
Louis Marie-Jean-Bodin.
Lucien-Etien-Albert-Broche.
Charles-Jean-Marie-Brou.
Pierre-Paul-Narcisse-Fernand-Chilot.
Joseph-Jean-Baptiste-Vendryès.

Այս ընդհանուր ծանոթություններից հետո մասնավորենք մեր խոսքը հայոց ազգանունների վրա։

Հին հայոց մեջ հասարակ ժողովուրդը երևի գործածում էր անուն-հայրանուն. իսկ ազնվականները կրում էին ազգանուն։ Ազգանունները հնագույն շրջանում ձևանում էին ունի մասնիկով, որն

